МАТЕНАДАРАН
ИНСТИТУТ ДРЕВНИХ РУКОПИСЕЙ ИМЕНИ
МАШТОЦА ПРИ СОВЕТЕ МИНИСТРОВ АРМ. ССР

# ПАМЯТНЫЕ ЗАПИСИ АРМЯНСКИХ РУКОПИСЕЙ

## V—XII ВВ.

Составил А. С. МАТЕВОСЯН

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1988

ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ



# ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

## Ե—ԺԲ ԴԴ.

Աշխատասիրությամբ Ա. Ս. ՄԱԹԵՎՈՍՅԱՆԻ



ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1988

Տպագրվում է Մաշտոցի անվան Մատենադարանի
գիտական խորհրդի որոշմամբ

Պատասխանատու խմբագիր՝ ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս
Լ. Ս. ԽԱՉԻԿՅԱՆ

Գիրքը հրատարակության է երաշխավորել գրախոս՝ բանասիրական գիտությունների
դոկտոր Պ. Մ. ՄՈՒՐԱԴՅԱՆԸ

Հ 249 Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ Ե—ԺԲ դարեր /Մատենադարան, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր Մաշտոցի անվ. հին ձեռագրերի ին-տ; Աշխատասիր. Ա. Ս. Մաթևոսյանի; Պատ. խմբագիր Լ. Ս. Խաչիկյան։ —Եր.։ ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1988, 367 էջ, (Նյութեր հայ ժող. պատմության; Գիրք 21)

Ե—ԺԲ դարերի հիշատակարանները լույս են տեսնում որպես հայ ժողովրդի պատմության սկզբնաղբյուր, որտեղ պատմական հսկայական նյութի հետ հարուստ բաժին են կազմում մատենագրական, մատենագիտական, ձեռագրագիտական բնագավառներին վերաբերող տվյալները։ Հիշատակարանների մի մասը հրատարակվել է Գ. Հովսեփյանի «Յիշատակարանք ձեռագրաց»-ի Ա հատորում, որոնք մեր կողմից համեմատվել, ճշգրտվել և լրացվել են ձեռագրերի (Մատենադարանի) և ձեռագրացուցակների հետ։ Մյուս մասը հրատարակվում է առաջին անգամ։

Հասցեագրվում է պատմաբաններին։

Հ 0505040000 / 703(02)—88 105—88

ԴՄԴ 63.3(2Հ)1

Սիրելի ուսուցիչներիս՝
ՄՈՐՈՒՍ ՀԱՍՐԱԹՅԱՆԻ
ՊԱՐՈՒՅՐ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ
ՍՈՒՐԵՆ ՄՈՎՍԻՍՅԱՆԻ
լուսավոր հիշատակին։

## ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐԸ

### Ա

*Հայերեն ձեռագիրը ծնվել է հայ գրերի հետ միասին։ Երբ 405 թվականին Մեսրոպ Մաշտոցը Վաղարշապատ վերադարձավ Միջագետքից, իր հետ ուներ յուրաստեղծ գրերից ձևավորած հայոց այբուբենը և այդ գրերով ու նոր հորինած գրչության արվեստով Հռոփանոսի ձեռքով գրված առաջին հայագիր, հայերեն ձեռագիրը։*

*Ձեռագիր գրելու արվեստը սովորած աշակերտները Մաշտոցի ղեկավարությամբ Վաղարշապատում «...ի ձեռն առեալ այնուհետև աստուածագործ մշակությամբ ղաւետարանական արուեստն՝ ի թարգմանել, ի գրել և յուսուցանել»[1]։ Նրանք թարգմանում էին, հորինում և ընդօրինակելով բազմացնում էին հայերեն ձեռագրերն ու տարածում գավառները։*

*Հայոց գիրն ու ձեռագիրը ստեղծվեցին որպես հայ ժողովրդի պետականության և ինքնուրույնության պահպանման կարևոր գործոն, և այդ սրբազան նպատակին ծառայեցին հետագա բոլոր դարերում՝ և՛ պետականության, և՛ անիշխանության ու օտար տիրապետությունների տարիներին։*

*Ձեռագիրը պատմամշակութային հուշարձան է, տվյալ ժողովրդի պատմական զարգացման արտահայտություններից մեկը, ստեղծված որոշակի հանգամանքներում, տեղում և ժամանակում։ Ձեռագիրն իր բովանդակությունը ապագա սերունդներին փոխանցելիս ինքը ևս ներկայանում է որպես որոշակի ժամանակի գրչության արվեստը մարմնավորող նյութական և հոգևոր հուշարձան, սեփական գրով, դրանյութով, գրչության արվեստով և հիշատակարանով։*

*Հիշատակարաններով, նրանց բազմազանությամբ ու հարստությամբ հայերեն ձեռագրերը տարբերվում են ուրիշ շատ ժողովուրդների ձեռագրերից։ Այս հանգամանքը պետք է բացատրել ձեռագիրն ստեղծող ժողովրդի պատմական ճակատագրով։ Հայ ժողովրդի պետականության ու կրոնի ինքնուրույնության պահպանման և ամրապնդման համար ստեղծված հայոց գիրն*

---

[1] Կորյուն, *Վարք Մաշտոցի, բնագիրը, ձեռագրական այլ ընթերցվածներով, թարգմանությամբ, առաջաբանով և ծանոթագրություններով ի ձեռն պրոֆ. դ—ր Մանուկ Աբեղյանի, Երևան, 1941, էջ 55։ Այսուհետև՝* Կորյուն, *Վարք Մաշտոռի։*

ու մատենագրությունը (որոնց մարմնավորումն է ձեռագիրը), շատ շուտ զրկվեցին պետականությունից և մնացին երկրի ինքնուրույնությունը ոչնչացնող, ժողովրդի ոգին սպանող օտար նվաճողների դեմհանդիման։ Ձեռագիրը դարձավ ազգապահպանության, հավատապահպանության հզոր զենք։ Ձեռագիր գրողը, գրել տվողը, ձեռագիր փրկողը, պահպանողը՝ ազգի, հավատի, լեզվի, գրի պաշտպաններ էին և արժանի էին փառաբանության ու հիշատակ ունենալու։ Եվ հիշատակարանները փառաբանում էին նրանց։

Հիշատակարանը ներկայացնում էր ձեռագիրը, նրա ծնունդը, ստեղծման հանգամանքները, նպատակը, պատմությունը։ Այն ձեռագրի անկապտելի մասն էր, տվյալ ձեռագրի ստեղծման վավերացումը, նրա գրչության հանգամանքների պատմությունը։

Հիշատակարանը է «մատեան, դիւան, պատմական մասն Սուրբ գրոց, յիշատակագրութիւն, արձանագրութիւն և վերջաւան մատենագրի կամ գրչի»[2]։ Աստվածաշնչում կարդում ենք. «Հրամայեցի ախաանել ի մատեանս յիշատակարանաց»[3], «...ուր կային գիրք յիշատակարանաց»[4], «Զայս ինչ գրեալ էր ի գիրս յիշատակարանին»[5] և այլն։ Ընդգծված կապակցությունները («մատեանս յիշատակարանաց», «գիրք յիշատակարանաց») նշանակում են պատմության մատյաններ, պատմության գրքեր, պատմագրքեր։ Եղիշեն ոչ միայն ամբողջ Ավետարանն է անվանում «յիշատակարան»[6] և հույների պատմագրքերը («որպէս մեք իսկ ունիմք զանսուտ յիշատակարանսն զառաքինի նախնեացն ձերոց»)[7], այլև իր Պատմության առանձին եղանակները. «Գրեցաւ յիշատակարանս յայս վասն նորա, առ ի կշտամբումն յանդիմանութեան մեղաց նորա. զի ամենայն որ զայս լուեալ գիտասցէ նզովս, ի հետ արկցէ և մի լիցի ցանկացող գործոց նորա»[8]։ Նույնպիսի մի հիշատակություն ունի Եղիշեն նույն Պատմության վերջում[9]։

Հայոց զորքի առաջ արտասանած նշանավոր ճառից հետո, Վարդան զորավարի մասին Եղիշեն երբ գրում է. «Եւ ըստ պատերազմական կարգին զբաց արանց զյիշատակարանս հանապազ երկրորդէր առաջի նոցա»[10], նշանակում է «...քաջ տղամարդկանց պատմությունները շարունակ կրկնում էր նրանց առաջ»[11], կամ «...ընթերցան զգիր պղատանաց Հայոց աշխարհին և զյիշատակարանս նախնեաց»[12], նշանակում է «նախնիների պատմությունները»։

---

[2] «Նոր Հայկազեան բառարան», հ. Բ, Վենետիկ, 1836, էջ 359։

[3] «Աստվածաշունչ» Ա Եզր, Բ—26 (ստ և ամենուր յիշատակարան բառի ընդգծումը մերն է—Ա. Մ.)։

[4] Անդ. Ա Ծզր, Զ—21։

[5] Անդ, Բ Եզր. Զ—2։

[6] Եղիշե, Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին, աշխատությամբ Ե. Տեր-Մինասյանի, Երևան, 1957, էջ 81։ Այսուհետև՝ Եղիշե, Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին։

[7] Անդ, էջ 72։

[8] Եղիշե, անդ, էջ 140։

[9] Եղիշեի սույն հիշատակարանը բերված է որպես գրչի հիշատակարան։ Սակայն քննությունը ցույց է տալիս. որ ինչպես վերը բերված, այնպես էլ անտեսված հիշատակարանը հեղինակի գործն է։ Այդ մասին տե՛ս սատ, էջ 6, ծանոթություն № 2։

[10] Եղիշե, անդ, էջ 104։

[11] Եվ ոչ «...քաջ տղամարդկանց հիշատակության արժանի գործերը...» և այլն, ինչպես թարգմանության մեջ (Տե՛ս. Եղիշե, Վարդանանց պատմությունը. Երևան, 1958, էջ 96)։

[12] Եղիշե. անդ, էջ 72։ Թարգմանության մեջ պահպանված է «հիշատակարանները»։

Հիշատակարան է կոչում Կորյունը Մաշտոցին նվիրած իր գիրքը. «... զմտաւ ածելով յիշատակարանս առանձին մատենանշան ծաղկեցուցանել»[13]։

Այդպիսին է Փավստոս Բուզանդի Հայոց պատմությունը. «... Այսինքն են սոքա չորք մատեանք և չորեքին միոյ իրաց յիշատակարանf են յիշեցուցիչ պատմութեանցն ազգացն Հայաստան աշխարհին... այսինքն կարգ անցելոց իրաց, գործք և վարք մինչև ցիւրաքանչիւր ելս յաշխարհէս»[14]։ Ստեփանոս Տարոնացին «Յիշատակարան» է կոչում իր Պատմությունը վերջում գրված հիշատակարանի խորագրում, «բան վախճանի փառատրական ի սպառուած Յիշատակարանիս»[15]: «Գրեցաք զայս քաղցրաբան պատմութիւն հանդէսի դպրութեանց յիշատակարանաց առաջնոցն -ոչ ընդհանրական,— գրում է Ստեփանոս Օրբելյանը իր Պատմութեան մասին,—այլ առանձին Սիսական աշխարհիս, և կոչի յիշատակաց մատեան»[16]: Մովսես Խորենացու Հայոց պատմությունը «գրական ճիշատակարան» է համարում Մ. Աբեղյանը[17], իսկ Ստ. Մալխասյանը «Անմահ ճիշատակարան» հայ գրականության[18]: Վերջինս «Պատմական ճիշատակարաններ» է համարում մեր Պատմագրքերը[19]։

Հունական մատենագրությունից արված մի թարգմանության վերջում կարդում ենք. «Զայսոսիկ մեզ Դորոթէոս՝ ի հեթանոսական և եբրայականն համահաւաքեալ աւանդեաց՝ հռոմայեցի յիշատակարանաւf, զոր մեք որպէս պիտանի դիւրընկալ յայտնի բազմաց արարաք համադրութիւն եկեղեցական»[20]։

Ձեռագիրը, որն իր մեջ պարունակած մեծ և փոքր իրադարձությունների ու մարդկանց պատմությունների մատյան-հիշատակարան էր, ժամանակի ընթացքում ունենում է նաև իր ստեղծման պատմություն-հիշատակարանը, որ գրվում էր մատյանի վերջում և կոչվում ձեռագրի հիշատակարան։ Հիշատակարան հասկացությունը պահպանելով իր բուն էությունը, այստեղ սահմանափակում է ընդգրկման շրջանակները, բավարարվելով ձեռագրի ստեղծման իրողության և նրա հետ առնչվող իրադարձությունների արձանագրմամբ։ Այն, առաջին հերթին, ձեռագիր-հուշարձանի ստեղծման վավերացումն ու պատմությունն է, հիշատակարանը։

Ձեռագիր մատյանը նաև հիշատակ է։ Ստացողը իր միջոցներով ձեռագիր է գրել տալիս ի հիշատակ իր և իր ծնողների, հարազատների և այլոց, և

[13] Կորյուն, Վարք Մաշտոցի, էջ 23։

Նկատի չունենալով «յիշատակարանի» «պատմութիւն» նշանակությունը, սույն նախադասությունը ճիշտ չեն թարգմանել աշխարհաբար և ռուսերեն։ Աշխարհաբարում թարգմանված է այսպես. «մտածում էի մի առանձին մատյանի մեջ գրված հիշատակարաններ ծաղկեցնել» (էջ 23), փոխանակ «մտածում էի պատմությունը առանձին մատենագրել» (կամ «ծաղկեցնել»)։ Այդ է հաստատում նաև քիչ հետո գրված նախադասությունը. «Ուստի ...գրաւեալ անաչառ հրամանէն հասելոյ, փութանակի և առանց յապաղելոյ զառաջի եդեալն (սկսայ) մատենագրել», այսինքն, անում է այն, ինչ քիչ առաջ մտածում էր։ «Առանձին» բառը վերաբերում է «յիշատակարանին», «պատմություն առանձին» մատենագրել», այսինքն, միայն Մաշտոցի և գրի մասին գրել։

[14] Փավստոս Բուզանդ, Պատմութիւն Հայոց, Վենետիկ, 1889, էջ 1։

[15] Ստեփանոս Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, ս. Պետերբուրգ, 1885, էջ 284։

[16] Ստեփանոս Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Տփխիս, 1910, էջ 505—506։

[17] Մ. Աբեղյան, Երկեր, հ. Գ, Երևան, 1968, էջ 314։

[18] Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց, Երևան, 1968, Ներածություն, էջ 13։

[19] Փավստոս Բուզանդ, Պատմություն Հայոց, Երևան, 1968, Ներածություն, էջ 18։

[20] Բ. Սարգիսյան, Ցուցակ Վենետիկի, Վենետիկ, հ. Բ, 1924, էջ 44։

նվիրում որևէ մեկին կամ որևէ տեղի, դարձյալ ի հիշատակ։ «Ընդ նմին», այն հիշատակ է նաև գրչի, ծաղկողների և ձեռագրի վրա աշխատող այլ անձանց, որոնք հիշվում են այդտեղ։ Եվ այս մարդկանց համար ձեռագիր-հիշատակի հիշատակարանը՝ նրանց հիշատակների ընդունարանն է («ընդունարան յիշատակաց») և ձեռագրի ստեղծման պատմությունը, «յիշեցուցիչ պատմութեանցը»։

Այդպիսի բնույթ ունեն և՛ ձեռագրի գրչի, և՛ մատենագրական երկի հեղինակի, և՛ թարգմանչի հիշատակարանները։ Մովսես Խորենացին պատվիրատու Սահակ Բագրատունուն այսպես է գիմում. «Ընկալեալ զքո խընդիրդ՝ աշխատասիրեցայց ածել ի կատարումն, յանմահ յիշատակ թողուլ զայս քեզ և որ զկնի քո գալոց են ազգք»[21]։ Պատմական վիթխարածավալ դեպքերի հիշատակարան-պատմությունը հիշատակարան է նաև պատվիրատուի, ինչպես նաև Խորենացու հիշատակի համար, իրողություն, որն արձանագրված է նրա Պատմության Առաջաբանում։

Ամեն անգամ ձեռագիրը արտագրելիս գրիչը գրում է իր հիշատակարանը, ուստի ձեռագրի հիշատակարան ասելով, հասկանում ենք նախ և առաջ գրչի հիշատակարան։

Ձեռագրերում գրչի կամ ձեռագրի ավարտման հիշատակարաններից բացի կան նաև հետագայում գրված հիշատակարաններ։ Իր գոյության ընթացքում ձեռագիրը անցնում է ժամանակի միջով և ենթարկվում պատեհ և անպատեհ փոփոխությունների. նորոգվում է կամ լրացվում, գերվում է և փրկագնվում, վերստին կազմվում է, վաճառվում կամ նվիրվում, գործածվում իբրև դասագիրք և, իհարկե, միշտ ընթերցվում։ Ձեռագրի հետ կատարվող սույն գործողությունները հաճախ իրենց գրավոր արտացոլումն են գտնում նրա ազատ էջերում, լուսանցքներում կամ մուծված թերթերի վրա։ Սրանք ձեռագրի հետագայի հիշատակարաններ են։ Եթե նախորդ հիշատակարանները ձեռագրի ստեղծմանը և ստեղծողներին էին վերաբերվում և գրվում էին գերազանցապես գրչի, ապա ստացողի և կամ մասնակիցներից որևէ մեկի ձեռքով, ապա հետագա հիշատակարանները վերաբերվում են նրա գոյատևմանը, նրա նորոգողներին, փրկողներին, պահպանողներին և ներկայացնում տարբեր ժամանակներ ու վայրեր։ Այս բոլոր հիշատակարանները միասին ամբողջացնում են արդեն մեզ հասած ձեռագիր հուշարձանի պատմությունը։

Բ

Հայերեն ձեռագրերի հիշատակարանները առաջացել են ձեռագիր-մատյանի զարգացման որոշ աստիճանում, իրենց հերթին ապրել զարգացման, բարեփոխման պրոցես՝ ձևի և բովանդակության տեսակետից։ Երբեմն հպանցիկ, երբեմն հիմնավոր իրենց մեջ ներառել են հասարակական տարբեր երևույթների մասին վկայություններ, հարստացել են ընդգրկմամբ և դարձել պատմագրական ինքնատիպ ստեղծագործություններ՝ իրենց առանձնահատկություններով։

Մինչև Թ դարը թվականով ոչ մի հայերեն ձեռագիր չի հասել մեր օրերը, և նրանց հիշատակարանների մասին գաղափար կազմելը դժվար է։

---

[21] Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, Տփխիս, 1913, էջ 6։

Այդ պակասը պետք է վերագրել ոչ այնքան ձեռագրեր քիչ գրելուն, որքան դրանց ոչնչացմանը։ «Թ՚շնամիք աստուածապաշտութեան բազում անգամ արշաւեալ կորուսին զկտակարանս եկեղեցւոյ և զվարդապետս նոյնպէս սպանեցին»[22],—գրում էր է դարի կեսերին Ներսես Գ կաթողիկոսը։ Նույն ժամանակաշրջանի պատմիչը ողբում է «զմատենից և զկտակարանից հրկիզութիւն»-ը[23]։ Աղվանից կաթողիկոսների շարքը և նրանց գործը ամբողջացնել չկարողանալով, Ժ դարի պատմիչը պատճառը նույնպես համարում է «յանօրինաց» կողմից մատյանների հրկիզումը և նրանց գտնվելու տեղերի անհայտությունը. «Հրկէզ եղեալ են յանօրինաց և կտակարանք և սպասք, և տեղիք կալոյ նոցա մեզ անյայտք»[24]։ Իսկ 1170 թ. Բաղաբերդում, ուր «վասն անառիկ ամրութեանն յամենայն վանօրէից անդ էին կուտակեալ զսրբութիւնս և զգրեանս... կտակարանք յոլովք, որք թուով աւելի քան զտասն հազար զորս ամբարեալ էին անդ, ամենայնն առհասարակ գերի վարեցան եւ ցան և ցիր եղեն ընդ երեսս աշխարհի»[25]։ Այդ բարբարոսությունը շարունակվում է նաև հետագա դարերում։ 1292 թ. Հռոմկլան գրավող հրոսակները «գերեցին եւ աստուածային սուրբ կտակարանսն, որ ի բազում ամաց ամբարեալ էր ամենայն կաթողիկոսաց և թագաւորաց... և զաւետարանսն ոսկետուփ մանրեալ փշրեցին»[26]։ Մինչդեռ աղբյուրների վկայությամբ ձեռագրերի ընդօրինակությունը Վաղարշապատի, Արշարունյաց, Սյունյաց և այլ դպրոցներում մեծ չափերի էր հասնում։ Միայն Արշարունյաց դպրոցում Զ դարի սկզբներին երեսունվեց վարդապետ ձեռագրեր էին արտագրում[27]։ Իսկ քանի՞ այդպիսի դպրոց է եղել։ Դժբախտաբար շատ քիչ տեղեկություններ ունենք թե՛ այդ ժամանակի դպրոցների, և թե՛ ընդօրինակված ձեռագրերի մասին։

Մեզ հասած ինքնուրույն և թարգմանական մատենագրական երկերում պահպանվել են հիշատակարանային որոշ տվյալներ, որոնք պատկերացում են տալիս այդ ժամանակ ստեղծված ձեռագրերի և հիշատակարանի զարգացման նախնական փուլի մասին։ Հեղինակները իրենց և պատվիրատուի անունները, գրության դրդապատճառների վերաբերյալ սուղ տվյալներ են թողել երկի խորագրում և առաջաբանում, իսկ թարգմանիչները՝ հավանաբար միայն վերջում, որոնք հետագա ընդօրինակողների կողմից դուրս են գցվել։

Ե դարում գրիչները հիշատակարան գրելու սովորություն չեն ունեցել։ Այդ հաստատվում է հետևյալ փաստով. 1069 թ. Հովհաննես գրիչը Նարեկա վանքում ընդօրինակում է մի Ավետարան, որի գաղափար օրինակի մասին գրում է. «Որ էր վկայեալ աւրինակն յամենայն գիտնականաց Հայւոց, զոր ասէին աւանդութենէ գրեալ ձեռամբ Սրբոյն Մաստրովբայ վարդապետի և թարգմանչի»[28]։ «Աւանդութենէ» բառը ցույց է տալիս, որ ձեռագիրը Մեսրոպ Մաշտոցի ձեռքով գրված լինելը ավանդությամբ է հավաստվել և ոչ թե

---

[22] Ղ. Ալիշան, *Հայապատում*, հ. Ա, Վենետիկ, 1901, էջ 12։

[23] *Անդ*։

[24] Մովսես Կաղանկատվացի, *Պատմութիւն Աղուանից աշխարհի*, Թիֆլիս, 1917, էջ 390։

[25] Ստեփանոս Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական*, էջ 336։

[26] Տ. Պալյան, *Ցուցակ Կեսարիոյ*, Վիեննա, 1963, էջ 57։

[27] Գ. Հովսեփյան, *Յիշատակարանք ձեռագրաց*, հ. Ա, Անթիլիաս, 1951, էջ 7։ Տե՛ս նաև, էջ 12, ծթ. 5։ Այսուհետև *Յիշատակարանք*։

[28] Մատենադարան, ձեռ. № 10434, էջ 285ա.

ձեռագրում գրված հիշատակարանի վկայությամբ։ Այս նշանակում է նաև, որ նույնիսկ Մաշտոցը ձեռագրում իր անունը չի գրել, այսինքն՝ հիշատակարան չի գրել։

Վկայություններ կան նաև Սահակ Պարթևի կողմից Ավետարան գրելու վերաբերյալ, գարձյալ շարադրված երրորդ դիմքով, որոնցից հնագույնը 1113 թվականից է. «Եւ ետու... աւարտել... ի ստոյգ եւ յ(ը)նտիր գաղափարէ Սրբոյն Սահակայ թարգմանչի...»[29]։ Ղազար Փարպեցու Հայոց Պատմություն և Թուղթ առ Վահան Մամիկոնյան գործերը առաջին անգամ միատեղ արտադրող խմբագիր -գրիչը իր կատարածի մասին տեղեկություն է հաղորդել իր իսկ գրած Առաջաբանում և ոչ ձեռագրի վերջում՝ հիշատակարանում. «...ՋԵրրորդ Պատմութիւնս Հայոց երանելի իմ Ղազար պատմագրեաց։ Ընդ նմին գրեցաք եւ զԹուղթս...»[30]։ Սույն ձեռագիրը դրվել է Ղազար Փարպեցու մահից հետո, բայց գրիչը հեղինակին ժամանակակից է և նրան անձամբ ծանոթ։

Վերջապես, Ե—Զ դարերում ձեռագրի վերջում հիշատակարան գրելու սովորույթի բացակայությամբ պետք է՝ բացատրել այն փաստը, որ շատ գրվածքներ և ձեռագրեր (հետագայում գրված) ավարտվում են միայն «Փառք ամենասուրբ Երրորդութեանն, ամէն» նախադասությամբ, նույնիսկ այն դեպքում, երբ հիշատակարան գրելու համար բավականին ազատ տեղեր են եղել[31]։

Թարգմանիչների հիշատակարանների կամ հիշատակարանային տվյալների արձանագրման եղանակի վերաբերյալ շատ հետաքրքրական մի վկայություն է պահպանվել Ե դարից։ 1368 թվականին արտագրված մի Կանոնագրքի վերնագրերից մեկում կարդում ենք. «Սահմանադրութիւն կարգաց ընկալեալ ի նահատակէն տեառնէ Գրիգորէ, թարգմանեցաւ ի ձեռն Եղնակայ, հրամանաւ երանելոյն Սահակայ եպիսկոպոսապետին Հայոց եւ նորին աթոռակցաց, թէ որպէս սահմանեցաւ կարգ ուխտի եւ որոշումն վանաց»[32]։ Այս գրված է Ե դ. սկզբներին, երբ Սահակ Պարթևը իր կանոններն էր շարադրում՝ նրանց մեջ մուծելով նաև կանոնական հին նյութեր։ Նրանցից մեկը ավարտվում է վերջաբան-հիշատակարանով[33], որը հավանաբար հետագայում է շարադրված խորագրի հիման վրա. «Այս Սահմանադրութիւն կարգաց գրեցաւ հրամանաւ երանելւոյն Սահակայ մեծ հայրապետի Հայաստան աշխարհի, ընկալեալ ի քաջ նահատակէն՝ ի տեառնէն՝ Գրիգորէ, թարգմանեցաւ միայն յունէ ի հայ»[34]։

Անշուշտ, այս տիպի և խորագրեր և վերջաբան-հիշատակարաններ շատ են եղել, որոնք հետագա ընդօրինակությունների ժամանակ համառոտվել կամ անտեսվել են, թերևս գրանյութը խնայելու մտահոգությամբ։ Դեռևս 696 թվականին Փիլոն Տիրակացին Սոկրատ Սքոլաստիկոսի Եկեղեցական Պատմությունը թարգմանելիս. «մասնաւոր ծայրաքաղ» է անում

---

[29] Մատենադարան, ձեռ. № 6763, էջ 20։

[30] Ղազար Փարպեցի, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1907, էջ 408։

[31] Այսպես են Մատենադարանի №№ 5547, 2877 և այլ ձեռագրերը։

[32] Մատենադարան, ձեռ. № 659, էջ 227բ։

[33] Լ. Խաչիկյան, Օտարալեզու հայ գրականությունը IV դարում, «Բանբեր Համալսարանի», № 1, Երևան, 1973, էջ 33։

[34] Մատենադարան, ձեռ. № 659, էջ 263ա։

«յաղագս նուագութեան քարտի և մագաղաթի»[35]։ Իսկ Ստեփանոս Սյունեցին խնդրում է պահպանել թարգմանության հիշատակարանը. «որք առնուք յաւ-րինակ յայսմանէ, գրեսջիք և զբանս զայսոսիկ առ ի յիշատակ բարեխաւսու-թեան առ Քրիստոս, զի դրեալք եղիցիք և դուք ի դպրութեանն կենաց..., փո-խեցէք զբանս յիշատակի ի յոյս փրկութեան աշխատողացն և յիշողաց դա-սիս»[36] կամ գրիչն աղաչում է. «Գրեսցեն և զյիշատակարանս բովանդակ ի նմին և մի հատցեն ի սմանէ բան մի» (Մատենադարան, ձեռ. № 1347, էջ 418ա)։

Գ

Եթե Ե և հաջորդ դարերից մեզ ամբողջական ձեռագրի հիշատակա-րաններ չեն հասել, ապա այդ ժամանակներից մենք ժառանգել ենք հա-րուստ մատենագրություն, որոնց առաջաբանները կամ խորագրերը հի-շատակարանային տվյալներ են պարունակում մասնավորապես երկի բնույ-թի, հեղինակի ու ստացողի մասին։ Այդ առաջաբանները կոչվում են տար-բեր անուններով—«Առաջաբանութիւն», «Նախագիտելիք», «Նախերգան», «Նա-խագիր», «Ներածութիւն» և այլն։ «Ամենայն ոք,—կարդում ենք առաջաբան-ներից մեկում,—որ զգիրս աստուածայինս ի ձեռն առնուցու, նախկի զմա-կագրութիւն նորա ընթեռնու, և նովաւ հասու լինի՝ եթե մարգարէական իցէ արդեաւք, և եթէ առաքելական, կամ թէ ի ներշրջական արհեստից ի բանի-բուն արանց ասացեալ, զի առաջաբանութիւն գրոցն է պատկեր նորին։ Զոր աւրինակ մարդ ի պատկերէն իւրմէ ճանաչի, նոյնպէս և գիրք ի նախերգա-նէն... Եւ այս ի մանկանց եկեղեցւոյ ի սկզբանէ աւանդեալ եղեւ, զի առ յապա եկելոցն համառաւտ բանիւ ի ցոյց և ի տեսիլ ածել զբաւանդակն... Քանզի նախադասեալ բանն՝ երիս եղանակս բացայայտէ. նախ եթէ յորո՞ւմ ժամանակի գրեցաւ, և կամ թէ յո՞ւմմէ հարկաւորեցաւ, և կամ թէ յի՞նչ պէտս գրեցաւ»[37]։ Մատենագրական երկը աշխարհ է գալիս, որպես ձեռագիր։

Ինչպես կտեսնենք, այս «երիս եղանակս» է ընկած նաև հիշատակա-րանների հիմքում, և այս տեսակետից առաջաբանները, որոշ չափով լրաց-նում, ավելի շուտ՝ լցնում են հիշատակարանների պակասը։

Իհարկե, առաջաբանը և հիշատակարանը մատենագրական տարբեր միավորներ են ոչ միայն մատյանում զբաղեցրած իրենց տեղերով։ Սակայն տարբեր լինելով հանդերձ, նրանք կատարում են նաև միևնույն պարտակա-նությունը՝ պատասխանելով «յորո՞ւմ ժամանակի գրեցաւ... յո՞ւմմէ հարկա-ւորեցաւ և... յի՞նչ պէտս գրեցաւ» հարցերին։ Այդ հարցերին հեղինակը պա-

---

[35] Գ. Հովսեփյան, *Յիշատակարանք*, էջ 50։ Կամ «քարտէս ոչ ունելով բաւական» (Մա-տենադարան, ձեռ. № 45, էջ 295ա)։

[36] Գ. Հովսեփյան, Անդ, էջ 54։

Հունարենից կատարված թարգմանություններում երբեմն թարգմանել են նաև հիշատա-կարաններ, «Պատմութիւն եւ խաւսք Եղիազիոսի Յաղագս սուրբ եւ փառաւորեալ հայրապետին Բարսղի» երկի վերջում կարդում ենք. «Ես Եղիազիոս, գրեցի զյիշատակ սրանչելեաց մեծի հայրապետին Բարսղի, որում ականատես եւ սպասաւոր լի, որ եւ յետ փոխելոյ յաշխարհէս երանելի քահանայապետին ես կալայ զաթոռ եպիսկոպոսութեան...» (Բ. Սարգիսյան, Ցուցակ Վենետիկի, հ. Բ, էջ 44)։ Պահպանվել են նաև «Յաղագս Երկոտասան առաքելոց» երկի Դո-րոթեոսի և Գեորգ զորավարի Վարքի Պասիկրատեսի հիշատակարանները (Նույն տեղում, էջ 44, 31)։

[37] Սարգիս Շնորհալի. *Մեկնութիւն եօթանց թղթոց կաթուղիկեայց*, Կոստանդնուպոլիս, 1828, էջ 5։ Տե՛ս առտ, էջ 169։

ասխանում է իր երկի առաջաբանում՝ իր խնդիրներին համապատասխան, իսկ դրիչը՝ իր արտագրած ձեռագրի վերջում, հիշատակարանի պահանջներին համապատասխան, որը վերաբերում է ոչ միայն բովանդակությանը, այլև ձեռագրի, գրության հանգամանքներին, և՛ ենթահարցերի պատասխանների միջոցով այն ընդարձակում՝ հնարավորության սահմաններում։ Օրինակ՝ «Յորո՞մ ժամանակի գրեցաւ» հարցին հիշատակարանը հաճախ պատասխանում է ոչ միայն սոսկ թվականով (կամ միայն հայկական թվականով), այլ հոգևոր և աշխարհիկ տիրողներին հիշատակելով, նրանց բնութագրումով, կամ այդ ժամանակ տեղի ունեցող պատմական-քաղաքական, ռազմական իրադարձությունների ներկայացմամբ և այլն, որոնցով հիշատակարանը դառնում է պատմական կարևոր սկզբնաղբյուր։

Այժմ տեսնենք, թե մատենագրական երկերի առաջաբանները ինչպե՞ս են լցնում հին շրջանի ձեռագրական հիշատակարանների պակասը։

Մեսրոպ Մաշտոցի մասին մեզ հասած պատմությունից տեղեկանում ենք, որ «Պատմութիւն վարուց և մահուան առն երանելւոյ սրբոյն Մեսրոպայ վարդապետի մերոյ թարգմանչի» գրվել է «ի Կորիւն վարդապետէ յաշակերտէ նորին» (խորագիր)։ Մինչ Կորյունը մտածում էր Հայաստան աշխարհի աստվածապարգև գրի, նրա ստեղծողի լուսավոր ուսման և հրեշտականման առաքինի կրոնավորության մասին Պատմություն գրել, նրան է հասնում այդ ժամանակ կաթողիկոսի տեղապահի պաշտոնը կատարող Հովսեփի խնդրանք-հանձնարարականները (առաջաբան)[38]։ Վերջում (վերջաբան) Կորյունը լրացնում է երկի հորինման հետ կապված տեղեկությունները, հայտնում է, որ ինքը Պատմությունը շարադրել է ոչ թե գրույցներից, «այլ որոց մեր իսկ ականատես եղեալ կերպարանացն՝ և առընթերակաց հոգևորական գործոց... և նոցին արբանեակ ըստ աւետարանական հրամանացն»[39] և որ այն գրել է «յՕրինակ քաջալերիչ հոգևոր ծնընդոց իւրեանց և որք նոքօք աշակերտելոց իցեն յազգս ազգաց»[40]։

Եղիշեի «Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին» երկի խորագրից և առաջաբանից տեղեկանում ենք, որ այն գրված է Դավիթ երեց Մամիկոնյանի խնդրանքով, կոչվում է «Վասն Հայոց պատերազմին»[41] և ունի յոթ եղանակ և այլն։ Եղիշեի Պատմության մեջ պահպանվել է երկու հիշատակագրություն։ Առաջինը Վեցերորդ եղանակի վերջում է[42], որ հիշեցինք վերևում, իսկ երկրորդը՝ Պատմության վերջում, որը դուրս էր նետվել բնագրից[43]։

Խորենացու Պատմության խորագիրը տվյալներ է պարունակում գրվածքի կառուցվածքի, հեղինակի և պատվիրատուի մասին, «Հայոց պատմութիւն, երիս հատուածս ասացեալ Մովսիսի Խորենացւոյ ի խնդրոյ Սահակայ Բագ-

---

[38] Կորյուն, Վարք Մաշտոցի, էջ 22, 24։

[39] Անդ, էջ 96, 98։

[40] Անդ, էջ 98։

[41] «...Զբանն վասն որոյ պատուիրեցեր՝ արարի, ով քաջ, վասն Հայոց պատերազմին հրամայեցեր...» Եղիշե, Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, էջ 3։ Համտ. Մ. Աբեղյան, Երկեր, հ. Գ, էջ 329։

[42] Եղիշե, Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, էջ 140։

[43] Մատենադարան, ձեռ. № 1888, էջ 122բ, համտ. Եղիշե, Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, էջ XXI։

րատումւոյ»[44]։ Պատմությունն սկսվում է հեղինակի ողջույնից՝ ուղղված Սահակին։ Այս և սրան հաջորդող գլուխներում պատասխան է տրվում առաջարանի վերը բերված հարցումներին։ Որոշ տվյալներ կան հեղինակի մասին «Ոգբ»-վերջարանում, գրքերն ու ցանկերն ամփոփող նախադասություններում[45]։

Ղազար Փարպեցու Պատմության Առաջաբանից իմանում ենք իրենից առաջ Հայոց պատմությանը նվիրված մատյանների ու նրանց հեղինակների, ապա իր մասին։ Հայոց Պատմության առաջին գիրքը գրել է Ագաթանգեղոսը[46]։

Երկրորդ գիրքը գրել է Փավստոս Բուզանդը, շարունակելով այնտեղից, որտեղ Ագաթանգեղոսն ավարտել է իր Պատմությունը[47]։

«Երրորդ Պատմութիւնս այս ի կարգէ նորին դրոց շարագրեալ տկարութեանս մերում»,—շարունակում է Փարպեցին և հասցնում՝ «մինչև ցօր սկզբան մարզպանութեանն Հայոց Վահանայ Մամիկոնէից տեառն և մեծի զօրավարին Հայոց և մարզպանի»[48]։ Վահան Մամիկոնյանը ոչ միայն պատվիրում է Ղազար Փարպեցուն գրել Հայոց պատմություն («որոյ հասեալ հրաման առ իս Ղազար Փարպեցի), այլև հանձնարարում է թե որտե՞ղից սկսել, ինչպես գրել և ինչո՞ւ այդպես գրել[49]։

Է դարից ունենք թարգմանության, հեղինակային և ձեռագրի հիշատակարաններ. Դավիթ թարգման Տարոնացին Համազասպ Մամիկոնյանի (654—661 թթ.) հրամանով, Դամասկոսում թարգմանում է Բարսեղ Կեսարացու «Ի ծնունդ Փրկչին» ճառը[50]։ Աբասի որդի Ջորափորեցին 678 թ. թարգմանում է Սեղբեստրոսի վարքը[51], իսկ Փիլոն Տիրակացին՝ Ներսեհ Կամսարականի պատվերով՝ Սոկրատի Եկեղեցական պատմությունը[52]։ Այստեղ ա-

---

[44] Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, էջ 1։

[45] Խորենացու Պատմության Առաջին գրքի ցանկն ավարտվում է այսպես. «Կատարեցան ցանկք Առաջին գրոց Ծննդաբանութեան Հայոց Մեծաց» (4), իսկ Գիրքն սկսվում է «Գիրք Առաջին, Ծննդաբանութիւն Հայոց Մեծաց» (5) և ավարտվում «Կատարեցաւ գիրք Առաջին Ծննդաբանութեան Հայոց Մեծաց» (38)։ Երկրորդ գիրքն ավարտվում է «Բովանդակեցան գիրք Երկրորդ, Յառաջադիմութեան Հայոց Մեծաց»: Երրորդ գրքի ցանկն սկսվում է «Աւարտումն Պատմութեան Հայոց Մեծաց» (251), «Աւարտեցան ցանկք Երրորդ գրոց, յանկելանելոյ Պատմութեան Հայոց (Մեծաց)» (256), և, վերջապես, գրքի վերջում. «Աւարտեցան գիրք Երրորդ, յանկելանելոյ Պատմութեան Հայոց Մեծաց» (366)։ Այս փաստերը ցույց են տալիս, որ Խորենացու երկը սկզբնապես ունեցել է «Պատմութիւն Հայոց Մեծաց» (ընդգծ. մերն են—Ա. Մ.) խորագիրը։ Խորենացու Պատմության վերնագրի հետ տեղի է ունեցել այն, ինչ Եղիշեի Պատմության վերնագրի հետ (տե՛ս Մ. Աբեղյան, Երկեր, հ. Գ, էջ 329)։ Մեր կարծիքով, Խորենացին այդպես է գրել և անվանել իր Պատմությունը, որպեսզի ապացուցի, որ Հայոց Պատմությունը սկսվում է ոչ այնտեղից, որտեղից Ագաթանգեղոսն է սկսել և Բուզանդը շարունակել, այսինքն, ոչ քրիստոնեական շրջանով, այլ ավելի վաղ, որ Մեծ Հայոց Պատմությունն ավելի հնից է գալիս։ Այս է պատճառը, հավանաբար, որ Փարպեցին իր Հայոց Պատմության մեջ Խորենացու Մեծ Հայոց պատմությունը չի հիշում, այլ շարունակում է Ագաթանգեղոսին ու Բուզանդին, դառնալով Հայոց Պատմության երրորդ գրքի հեղինակը։

[46] Ղազար Փարպեցի, Պատմութիւն Հայոց, էջ 1։

[47] Ղազար Փարպեցի, Անդ, էջ 1։

[48] Անդ, էջ 2։

[49] Անդ, էջ 5—6։

[50] Տե՛ս սատ, էջ 16։

[51] Սոկրատ Սքոլաստիկոս, Եկեղեցական պատմութիւն, Վաղարշապատ, 1887, էջ ԺԷ։

[52] Անդ։

ռաջին անգամ հանդիպում ենք ստացող Ներսես Կամսարականի ընդարձակ հիշատակարանին։ Սույն երեք հիշատակարաններն էլ դրված են երրորդ դեմքով։ Վերջին երկուսում նշված են թվականը, ստացողը և թարգմանիչը։

Անանիա Շիրակացին Անաստաս կաթողիկոսի հանձնարարությամբ մինչև 665 թ. շարադրում է «Վասն սրբոց տանից Աստուծոյ» ճառը[53]—«Յայտնութեան» և «Զատկի» տոներին նվիրված բաժիններով, որն ավարտում է. «...կազմեցի ես՝ Անանիայ որդի Շիրակայնւոյ...»[54] վերջաբան-հիշատակարանով։ Իսկ «Քննիկոնի» գործնական թվաբանությունից առաջ Շիրակացին գրում է իր Առաջաբան-պատճառաբանությունը՝ համարողության արվեստը Հայաստան բերելու և «Քննիկոնը» գրելու անհրաժեշտության հիմնավորմամբ[55]։ Սույն շարադրանքն ունի և՛ հիշատակարանի, և՛ առաջաբանի պահանջներին համապատասխան տվյալներ։

Մատենադարանի № 10680 ձեռագիրը, որը հայտնի է «Վեհամոր Ավետարան» անունով, հնությամբ հասնում է է դար։ Ավետարանների վերջում կան փոքր հիշատակագրություններ, ընդ որում Մաթևոսի վերջում հիշված է գրության վայր «Սուրբ երրորդութիւն» վանքը։ Վերջին թերթերը թափելու պատճառո՞վ, արդյոք, գլխավոր հիշատակարանը չկա։

Ինչպես ցույց են տալիս նշված փաստերը, Ը դարի երկրորդ կեսին հիշատակարաններն արդեն հարստանում էին։ Այդ ժամանակի ձեռագրից արտագրված պետք է համարել Մատենադարանի № 3004 ձեռագիրը, որն ընդօրինակված է «գերի, մեղաւոր Վասիլի» ձեռքով, Կաղան քաղաքում, 1642 թ.։ Վասիլը մասնագիտությամբ գրիչ չէ։ Բավականին անկանոն է գիրը, իսկ բնագիրը՝ սխալաշատ։ Սակայն ձեռագիրը ցույց է տալիս, որ նրա գաղափար օրինակը շատ հին է եղել։ Ղուկասի և Հովհաննեսի Ավետարաններում, բոլոր ընթերցվածների («Աւետարանք գլխաւորք»), այսինքն, ավետարանների գլուխների սկզբում, կարմիր թանաքով գրված է «Աւետարան ըստ Ղուկասու»՝ 41 անգամ և «Աւետարան ըստ Յոհաննու»՝ 56 անգամ։ Առաջին երկու Ավետարանները այդպես չեն։ Այս բացատրվում է նրանով, որ ձեռագիրը երկու տարբեր գրիչներ են գրել (ինչպես նկատելի է հին ձեռագրերում), որոնցից մեկը պահել է իր ժամանակի գրության կարգը, մյուսը՝ ոչ։ Այսպիսի նշումներով ձեռագիր առայժմ մեզ ծանոթ չէ։ Ստեփանոս Սյունեցին Ը դարի սկզբում կարգավորում է Ավետարանների գլուխները բնագրում նշանակելու կարգը և հակառակ վերը նշված եղանակի, ընթերցվածները նշանակում է բաժանարարներով։ Ուրեմն, մինչ այդ կամ այդ ժամանակ է գրվել սույն ձեռագրի գաղափար օրինակը և հիշատակարանը, որի մեջ տրված են Քրիստոսի կյանքի կարևոր դրվագները, և որոնք հետագայում դառնում են Ավետարանների նկարազարդման (մանրանկարչության) թեմաներ[56]։

Հիշատակարանում տրված է ձեռագրի (տվյալ դեպքում Ավետարանի) բովանդակությունը, ինչպես հեղինակները նշում էին առաջաբաններում։ Սա

---

[53] Այս գործը մեզ է հասել հայերեն հնագույն թղթյա ձեռագրում (Մատենադարան, № 2679), որպես երկու առանձին միավորներ (էջ 11բ, 19բ, 20ա, 28ա) Ա. Մաթևոսյան, Անանիա Շիրակացու «Քննիկոնը», «Լրաբեր», 1974, № 8։

[54] Անանիա Շիրակացի, Մատենագրություն, Երևան, 1944, էջ 299։

[55] Ա. Մաթևոսյան, Անանիա Շիրակացու «Քննիկոնը», Լրաբեր, 1974, № 8։ Այս և մի քանի այլ նմուշներ բերում ենք սույն հատորում (№№ 7—10, 14, 18, 25—27, 61, 108, 198)։

[56] Մատենադարան, ձեռ. № 3004, էջ 261ա—262 բ։ Տե՛ս ստ, էջ 32—33։

ավետարանների հիշատակարանների սկզբնական ձեն է։ Հետագայում պարզ «Փառքը» ձևափոխվում է, իսկ ձեռագրի բովանդակությունը ներկայացնելու փոխարեն, հաճախ վերամբարձ ու ճոռոմ ոճով ավետարանիչների ու ավետարանների խորհրդանիշներն են փառաբանվում՝ զանազան համեմատություններով։

Ը դարից հանդիպում ենք թարգմանական գործերի առավել կանոնավոր հիշատակարանների, գրված Կոստանդնուպոլսում, նշանավոր մատենագիր, մեկնիչ և թարգմանիչ Ստեփանոս Սյունեցու ձեռքով, որոնցում նշված են թարգմանվող գործը, նրա հեղինակը, թարգմանիչները, վայրը և այլ տվյալներ։

Այսպես. «Ի վեցհազարերորդի երկերիւրերորդի քսաներորդի չորրորդի ամի արարածոց աշխարհի, ըստ Յունարէն՝ թվոյ ի չորեքտասաներորդի ընդիքտիոնին, երկրորդ ամի թագաւորութեանն Անաստասի, թարգմանեցան գիրքըս Պարապմանց եւ Թղթոց սրբոյն Կիւրղի եպիսկոպոսապետին Աղեքսանդրի, ի ստոյգ աւրինակաց ի Կոստանդնուպաւլսի, ի ձեռն Դաւթի Հիւպատոսի և խագաւորական սեղանոյ կենառի, եւ ի ձեռն Ստեփանոսի քերդողի, աշակերտի Մովսէսի Սիւնեաց եպիսկոպոսի։

Արդ, մաղթեմ աստուածասէր պաշտաւն[ե]այսդ սրբոյ սեղանոյ, որք առնոյք աւրինակ յայսմանէ, գրեսջիք և զբանս զայսոսիկ առ [ի] յիշատակ բարեխաւսութեան առ Քրիստոս, վի դրեալ եղիցիք և դուք ի դպրութեանն կենաց, ամէն»[57]։

Կյուրեղ Աղեքսանդրացու Պարապմանց և Թղթոց գրքերը թարգմանվել են 715 թ., Բյուզանդիայի թագավոր Անաստասի թագավորության երկրորդ տարում, Կոստանդնուպոլսի ստույգ օրինակներից, Դավիթ հյուպատոսի և Ստեփաննոս Սյունեցի քերթողի ձեռքով, որը Սյունյաց եպիսկոպոս Մովսեսի աշակերտն էր։ Առաջին անգամ այստեղ է, որ հանդիպում ենք ձեռագրի հետ միասին հիշատակարանը արտագրելու վերաբերյալ թարգմանչի և գրչի խնդրանքին[58]։

Պահպանվել է Սյունեցուց նաև՝ հեղինակային մի հիշատակարան, որը բավականին անորոշ է. չունի թվական, ստացողի և գրչի անուն, միայն գործի բնույթի պարզաբանումն է։ Այդ Ջորից Աւետարանչաց մեկնութիւնն է, որտեղ·«Ի Մաթէոսեան Աւետարանն գրեցաւ ըստ կարգի, իսկ ի յայլ աւետարանիչսդ՝ որ ինչ մեկուսանայր ի Մաթէոսեան Աւետարանէն, և զայս ընձեռեցի ձերոց հրամանի հնազանդեալ...»[59], դիմում է նա «պատուական քահանայապետին», որն, ինչպես նշում է Գ. Հովսեփյանը, Դավիթ Արամոնեցի կաթողիկոսն է (728—741 թթ.)[60]։ Սույն մեկնության սկզբում Ստեփանոս Սյունեցին մեկնել է նաև համաբարբառի խորանները[61]։

Մինչև Թ դարի կեսերը ձեռագրերի թվակիր հիշատակարաններ թեև չկան, բայց հեղինակային հիշատակարանները և հիշատակարանային տվյալները հնարավորություն ընձեռեցին հիշատակարանների ղարգացման, ձևավորման բնույթի մասին որոշ գաղափար կազմելու։ Տարբեր դարերում, տար-

---

57 Մատենադարան, ձեռ. № 1500, էջ 576ա։ Տե՛ս աստ, էջ 24—25։

58 Անդ։

59 Մատենադարան, ձեռ. № 5551, էջ 288ա։

60 Գ. Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 57, ծթ. 1։

61 Ա. Մաթևոսյան, Վեհափառի Ավետարանը, «էջմիածին», Ե, 1978, էջ 40։

քեր բնույթի հիշատակարաններում, հիշատակարանային այս կամ այն տարրը հետագայում համադրվում, զուգորդվում, հարմարեցվում է հիշատակարանի ընդհանուր հյուսվածքին, որի կատարյալ օրինակին հանդիպում ենք արդեն Թ դարում։

## Դ

Նախորդ դարերից պահպանված թարգմանությունների ու անհատական ստեղծագործությունների վիթխարի քանակը, հայ դպրության զարգացման առաջադիմական նպատակամղումը, ձեռագրական սակավաթիվ, բայց օրինակելի նմուշների գրչության արվեստի կատարելությունը, գրատեսակների բազմազանությունը և մշակվածությունը, նրանց ըստ պատշաճին միաժամանակյա կիրառությունը ձեռագրերում, մատյանների ձևերի զանազանությունը, մագաղաթի, թանաքի որակը, ինչպես նաև այս ամենի մասին մատենագրական վկայությունները ցույց են տալիս, որ հայ գրչության արվեստը Ե—Ը դարերում ունեցել է բավականին զարգացած մակարդակ։

Պետականությունը կորցրած հայ ժողովրդի կենսական նպատակը պետականության վերականգնումն էր, որի իրականացմանն էր ծառայում նաև հայ դպրությունը։ Անկախություն ձեռք բերելու փոխարեն, Հայաստանը Է դարի կեսերին ընկնում է արաբական տիրապետության տակ, որի դեմ ժողովրդի պայքարը չի դադարում։ Մետաղյա զենքի կողքին մարտնչում էր նաև եղեգնյա գրիչը։ Նախնիների պատմագրական երկերի կողքին, որոնք բազմացվում ու տարածվում էին, գրվում են նորերը, ստեղծվում են դավանաբանական նյութերի ժողովածուներ։ Հայ մտավորականների մտահոգության առարկան է դառնում հայ իրականության մեջ ճշգրիտ գիտությունների արմատավորման խնդիրը։ Անանիա Շիրակացին հորինում է «Քննիկոն» հանրագիտարանային դասագիրքը, որի մեջ ամփոփվում է հունական դաստիարակության սիստեմի մեջ մտնող գիտելիքների հանրագումարը՝ հարմարեցված հայ իրականությանը։ Հայրենասեր հեղինակը թվաբանական խնդիրներում նույնիսկ փառաբանում է հայ հերոսների քաջությունը և խելքը, աշխարհագրության բաժնում մուծում Հայաստանի և հարևան երկրների աշխարհագրությունը. ընդ որում Հայաստանը ներկայացնում է պատմական ամենաընդարձակ սահմաններով՝ որպեսզի այդ սահմանները չմոռացվեն։

Ը դարում կազմվում է դավանաբանական «Գիրք թղթոցը», Հովհան Օձնեցի իմաստասերը խմբագրում է Կանոնագիրք Հայոց ժողովածուն, Շապուհ Բագրատունին և Ղևոնդ Երեցը շարադրում են իրենց Պատմությունները, Սողոմոն Մաքենացին կարգավորում է Տոնական ժողովածուն, ընդօրինակվում են ազգային և թարգմանական դրական բազմաթիվ գործեր։

Թ դարում գրչության արվեստի զարգացումը կապվում է Հայաստանի ներքին և արտաքին հարաբերություններում տեղի ունեցած բարենպաստ փոփոխությունների հետ, որոնք իրենց հերթին կապված էին ֆեոդալական հարաբերությունների զարգացման և Արաբական խալիֆայության թուլացման հետ։

Հայաստանում այդ ժամանակ զորեղացել էին Բագրատունյաց, Արծրունյաց և Սյունյաց նախարարական տները իրենց տիրույթներով։ Ոչ միայն անկանոն էին վճարում հարկերը արաբներին, այլև նվազեցրել էին հարկերի քանակը, որի հետևանքով աշխուժացել էր այդ իշխանությունների ներ-

րին կյանքը։ «Հայոց իշխանների ժառանգական հողատիրության վերականգնումը, մի կողմից, և հարկերի նվազումը, մյուս կողմից, նպաստեցին երկրում սկսվող տնտեսական վերելքը և ամրապնդեցին անկախության համար մղվող պայքարի նյութական հնարավորությունները»[62]։ Ներքին և արտաքին նպաստավոր պայմանների հետևանքով հայ ժողովրդի դարավոր պայքարը պսակվեց հաջողությամբ, Հայաստանն ազատագրվեց օտար տիրապետությունից, պատմական Հայաստանի տարածքի մեծ մասի վրա հաստատվեց Բագրատունյաց հայկական թագավորությունը։ Արշակունյաց թագավորության անկումից չորս և կես դար հետո վերականգնվեց Հայկական պետականությունը։

Ինքնուրույն պետականությունը հնարավորություններ է ստեղծում երկրի տնտեսական, քաղաքական, մշակութային կյանքի զարգացման համար, երկրում արտադրվող նյութական բարիքները ծառայում են երկրի տնտեսական վերելքին և շինարարական աշխատանքներին։ Քաղաքներում զարգանում են արհեստներն ու առևտուրը, փոխվում է կենցաղը։ Կառուցվում են վանքեր և դրանց կից դպրոցներ։ Հիմնվում են գրչատներ, բազմացվում ձեռագրեր, փոխվում է նրանց տեսքը՝ արտաքին և ներքին զարդարվածությամբ. մանրանկարչությունը և գեղեցիկ կազմերը, ժողովածուների աշխարհականացվող բովանդակությունը, նոր գրանյութ թղթի կիրառությունը, դյուրագիծ բոլորգրի՝ գրչության հիմնական գիր դառնալը և այլ հանգամանքներ նպաստում են, որ ձեռագիրը ավելի հիմնավոր մտնի կենցաղի մեջ։ Ձեռագիր ունենալ ցանկացողների թիվը մեծանում է, ավելի շատանում են ձեռագիր ձեռքբերողներն ու նվիրաբերողները։ Այս բոլորը նպաստում են գրչության արվեստի զարգացմանը և փոփոխություն մտցնում նաև հիշատակարանների ձևի և բովանդակության մեջ։

Հայերեն ձեռագրերի հիշատակարանների նախնական, համեմատաբար կատարյալ օրինակը մեզ տալիս է Լազարյան Ավետարանը։ Թվականն հայտնի առաջին ձեռագրի սեղմ և փոքրիկ հիշատակարանը, շատ քիչ բացառությամբ, ընդգրկում է այն հարցումների պատասխանները, որոնք կազմում են հայերեն հիշատակարանների կմախքը, և որոնց շուրջը հյուսվում են հետագա հարուստ բովանդակությամբ հիշատակարանները։

Լազարյան Ավետարանի գրիչ Սահակ Վանանդացին Հիշատակարանում նախ փառաբանում է ամենասուրբ երրորդությունը (ա)՝ «Փառք պատիւ եւ գովութիւն Սուրբ Երրորդութեանն, այժմ եւ հանապազ, յաւիտեանս, ամէն», խնդրում է օգտագործողներին՝ հիշել իրեն (բ)՝ «Զգրաւղ սորա եւ զաշխատաւորս, որ ոք ընթեռնու եւ կամ գրեսցէ յաւրինակէս, յարժանաւոր աղաւթս ձեր յիշեսջիք». Ներկայացնում է ձեռագիրը (գ)՝ «Գրեցաւ սուրբ Աւետարանս այս», գրության ժամանակը (դ)՝ «ՅԼԶ (887) թուականութեան Հայոց», այն հաստատելով ժամանակի հոգևոր և մարմնավոր իշխանությունների ներկայացուցիչների վկայակոչմամբ (ե)՝. «Ի հայրապետութեանն Գեորգայ Հայոց կաթողիկոսի եւ յիշխանութեանն Աշոտի իշխանաց իշխանի, եւ ի տէրութեանն Սբատայ Բագրատունեաց», հիշում է իրեն և հարազատներին (զ)՝ «Ես Սահակ Վանանդացի, որդի Վարդա Վանանդացւոյ, որում կրկին Մլեհ կոչէին... (չորս տող մաշված և անընթեռնելի է) «ի մաքրութիւն հոգւոյ իմոյ եւ

[62] «Հայ ժողովրդի պատմություն», հ. 3, Երևան, 1976, էջ 15։





կողակցի իմոյ զտանել ողորմութիւն յաւուրն այցելութեան», և խնդրում է մեղքերի թողություն (է)՝ «Աղաչեմ զձեզ սիրողք Քրիստոսի, ուր ընթեռնու զսուրբ Աւետարանդ, անմոռաց յիշմամբ հայցել յամենեցունց յաւարչէն զթողութիւն իմոց յանցանաց»[63]։ Եթե հաշվի առնենք, որ գրչության վայրը առանձին չի հիշում, որովհետև այն հասկացվում է իր և հոր մականուններից (ը)՝ «Վանանդացի», և ստացողը նշված չէ, որովհետև գրիչը նաև ստացողն է» (թ)՝ կունենանք հայերեն ձեռագրի հիշատակարանի նախնական օրինակի անթերի նմուշ։

Հայերեն ձեռագրերի հիշատակարանները հիմնականում պահպանելով կառուցվածքային սույն առանձնահատկությունները, հետագայում փոփոխություններ են կրում բովանդակության հարստացման տեսակետից, երբեմն ընդարձակելով բաղադրիչ տարրերից մեկի կամ մի քանիսի մասին տեղեկությունները, կամ, որպես հիշատակագրություն, ձեռագրական որոշ միավորներում, խիստ համառոտ, կրկնվում են հաճախակի (ինչպես Յայսմաւուրք, Տոնական և այդ կարգի ժողովածուներ) ու գրվում համարյա ամեն մի վարքից, վկայաբանությունից կամ ճառից հետո։

Հիշատակարանների հարստացումն ու ընդարձակումը կախված էր գրիչների կարողությունից ու նախասիրությունից, ստացողի ցանկությունից, ժամանակաշրջանի իրադարձություններից։ Հաճախ նրանք կաղապարում էին այս կամ այն հիշատակարանը, փոխելով միայն դեմքերն ու դեպքերը[64]։

---

[63] Մատենադարան, ձեռ. № 6200, էջ 299ա—299բ։ Հմմտ. Ա. Մաքսոյան, Լազարյան ճեմարանի հնագույն ձեռագիրը, «Պատմա-բանասիրական հանդես», 1973, № 1, էջ 128—130։

[64] Նախ ասենք, որ ձեռագրի գրիչները պահում էին հիշատակարանների կաղապարներ ըստ բովանդակության, բաց թողնելով անունների և թվականների տեղերը (դրելով՝ «այս անուն»), որոնք պետք է լրացվեր ըստ պատշաճի։ Ահա այդպիսի մի օրինակ, որը վերաբերում է Մանրուսմունք կամ Խազգիրք երաժշտական ժողովածուներին։ Այն քաղում ենք Մատենադարանի № 2335 ձեռագրի 181բ էջից, որի առաջին տողի դիմաց, լուսանցքում գրված է «յիշ», այսինքն՝ «յիշատակարան»։

«[Փ]առք եզակի տէրութեանն և եռահիւսակ զաւանութեանն։ Համագոյ, համապայծառ, համագաղափար, զուգակշիռ, վըսեմագոյ, ինքնագոյ էութեանն և միութեանն, Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և անպայմանն յաւիտենիւ, ամէն։

Արդ յանգ ելեալ աւարտեցաւ հոգիաբուխ մատեանս, որ կոչի Մանրուսումն, ի շրջագայութեան Հայոց տումարի (այս չափ), ի գաւառս (այս անուն), ի հայրապետութեան տեառն (այս անուն), ի յերկնահանգետ և ի գերահռչակ և ի հրեշտակաճեմ և յաստուածաբնակ վանքս որ կոչի (այս անուն), որ նման է Վերինն Երուսաղէմի, ընդ հովանեաւ (այս անուն), ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս (այս անուն), որ է վարուքն մաքուր, բնութեամբ հեզ՝ լեզուաւն քաղցր, սրտիւն առատ, իմաստուն, որպէս զանուանակիցն իւր, աւտարասէր որպէս Աբրահամ (որչափ որ կամիս՝ ասայ), առ ոտս (այս առաջնորդի), ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի (այս անուն)։

Արդ ստացաւ կրօնաւոր ոմն (այս անուն), որ է ժիր և արի ի գործս առաքինութեան, անապատասուն, վարժեալ և սնեալ առ ոտս (այս անուն), իբրև զլապտեր վառեալ ի մէջ եկեղեւոյ, և իբրև զանուշահոտ խունկ հաճոյացեալ Աստուծոյ, և իբրև ծիծառն բանաւոր կանգնեալ ի մէ[ջ] տաճարի, և որպէս զմ[ե]ղու կարօտեալ երկնային ցօղին, այսպէս և սա ցանկացաւ եղև այսմ գրոցս և ետ գրել զսա ի վայելումն անձին իւրոյ, և յիշատակ ծնաւղաց իւրոյ։

Արդ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա, ընդ նմին և զիս զանարժան գծաւղս (այս անուն), որ կամաւն Աստուծոյ սկսայ և աւգնականութեամբ նորին կատարեցի, յիշեցէք Աստուած ողորմայիւ միով, զի կարող է Աստուած ի ձեռն այլոց՝ այլոց ողորմութիւն առնել, և ձեզ դիւրին է ասելն և մեզ կարի պիտանի, և ձեզ յիշողացդ և մեզ յուսացելոցս ողորմեսցի Քրիստոս Աստուած»։

Երբեմն ընդարձակելով հիշատակարանը, վնրածում էին պատմագրական փոքրիկ երկի։ Դեռևս 893 թ. Ստեփանոս գրիչը Մաշտոց Եղվարդցու կարգավորած Հայոց եկեղեցու ծիսարան-Մաշտոցը ընդօրինակելիս, հիշատակարանին ձուլում է կաթողիկոսի վարքը և ստեղծում հիշատակարանի մի եղանակավորում, որին հանդիպում ենք նաև հետո։

Գրիգոր Նարեկացու Ողբերգության Մատյանի հիշատակարանին միակցվում է Նարեկացու վարքը, Ներսես Լամբրոնացու Սաղմոսաց Մեկնության հիշատակարանին՝ Լամբրոնացու վարքը, Հեթում արքայորդու Ճաշոցի հիշատակարանին՝ ստացողի տոհմաբանությունը, կամ ձեռագրի վերջում գրիչը բացառապես նկարագրում է իր ապրած ժամանակաշրջանը, հիշատակարանային աննշան տվյալներով՝ ինչպես Գրիգոր Խլաթեցին՝ Գանձարանի վերջում, որն հայտնի է «Հիշատակարան աղէտից» վնրնագրով։ Սրանք ձեռագրի հիշատակարաններ են՝ նրա բաղադրիչներից մեկի արտակարգ հարստացմամբ։

Ժ դարից հետո մատենագիրները իրենց պատմագրական երկերը, առաջաբանից բացի, օժտում են նաև հիշատակարաններով։ Նարեկացին ոչ միայն իր Մեկնությունները, այլ նաև Մատեան ողբերգութեան պոեմը ավարտում է հիշատակարանով—«Յիշատակարան մատենիս դրութեան» խորագրով, Ստեփանոս Ասողիկը՝ իր Պատմութիւն Տիեզերական երկը՝ «Բան վախճանի փառատրական ի սպառուած Յիշատակարանիս, Արիստակես Լաստիվերցին՝ Վասն անցիցն անցելոցս պատմությունը՝ «Բան յիշատակարանի նոյն գրոյս» հիշատակարաններով, իսկ Մաթեոս Ուռհայեցին հիշատակարան է թողնում գլուխների վերջում, որոնց երկրորդ մասերը առաջաբան են հաջորդ գլուխների։

Հեղինակային հիշատակարանները ընդօրինակվում, իսկ հետագայում հրատարակվում են այդ գործերին կից, իսկ երբեմն էլ մեկնաբանվում՝ երբ մեկնվում էին այդ երկերը, ինչպես Նարեկացու Մատյանի հիշատակարանը[65]։

## Ե

Ծանոթանանք հիշատակարանների բաղադրիչներին և նրանց առանձնահատկություններին։

Միջնադարում ոչինչ առանց Աստծու միջամտության չէր կատարվում։ Ըստ այդմ գրքերի ընդօրինակության գործը նույնպես սկսվում և ավարտվում էր Սուրբ Երրորդության շնորհիվ։

Հիշատակարանները սովորաբար սկսում են «Փառքով»։ Քանի որ բոլոր դրությունները, մատյանները, ստեղծագործությունները ավարտվում են «Փառքով», և որովհետև հիշատակարանը նույնպես արձանագրում է ձեռագրի ավարտը, բնականաբար այն պետք է սկսվեր դրանով։ «Փառքը» ավետում է ձեռագրի ավարտը։ Սուրբ Երրորդությունը գրչին կարողություն է ավել, որ նա «կենաւք տառապանաւք եւ բազում պանդխտութեամբ» ավարտի սկսած գործը, որը վեր էր իր կարողությունից, «Զի որպէս նաւավարին յափն ծովուն հասանելն խնդութիւն է, նոյնպէս և գրչի յետին գիծս»։

«Փառքում» այնուհետև դրվատվում է ընդօրինակվող ձեռագիրը, նրա պարունակությունը։ Այս առումով, բնականաբար, Աւետարանի հիշատա-

[65] Մատենադարան, ձեռ. № 5518, էջ 304բ։

կարանի դրվատանքը տարբերվում է մի այլ, ասենք Յայսմավուրքի դրվատանքից։ «Փառքում» գովերգվում է ձեռագրի նախօրինակը կամ գաղափար օրինակը, որը եղել է «ստույգ և ընտիր»։ Նույնիսկ երբեմն հիշվում է, թե որ նշանավոր վարդապետը կամ հռետորն է այն սրբագրել, կամ որ թվականից է այդ օրինակը։ Սույն տեղեկությունները մատենագրական-ձեռագրական մեծ արժեք ունեն, որոնք հաճախ անհայտացած երկերի ու ձեռագրերի մասին գաղափար են տալիս և լրացնում հայ գրչության արվեստի մասին մեր գիտելիքները։

Պատահում է երբեմն, որ «Փառքը» հիշատակարանի ամենաընդարձակ մասն է կազմում և արժեքավոր քիչ բան է տալիս։

Այնուհետև սկսվում է պատվիրատուի (ստացող) դրվատանքը։ Այստեղ էլ գովերգությունը շատ է։ Հաճախ նրանք կոչվում են «հանճարեղ», «իմաստուն այր» և այլն։ Սակայն երբ մենք քննում ենք իրողությունը ըստ էության, և բառերը՝ ոչ այսօրվա ըմբռնմամբ, մեղմանում է չափազանցությունը։

Հայերեն ձեռագրերը մեծ մասամբ գրվել են անապահովության պայմաններում։ Հիշատակարանները լի են իրականության սրտաճմլիկ նկարագրություններով, որոնք անտանելի լինելուց առաջ անհավատալի են թվում։ Ծանր ու տաժանելի այս պայմաններում, ահա մեկը. «Ի հալալ արդեանց իւրոց», կամ «ի քրտնածին աշխատանաց» ձեռագիր է պատվիրում, այսինքն՝ վերը փառաբանած գրքի արժեքը գիտակցում է, զգում նրա անհրաժեշտությունը իր և ժողովրդի համար, և ստանում է այդ աստվածային գանձը, որը կրոնական, մեկնողական, պատմական, գեղարվեստական բովանդակություն ունի, և նվիրում որևէ եկեղեցու՝ մանուկներ կրթելու համար, որևէ գյուղի, որպեսզի առանց Աւետարանի չմնա, որն այնքան անհրաժեշտ է այլասեռ տիրապետության տակ իր դավանանքը պահպանելու համար։ Ստացողների մեջ հանդիպում ենք թագավորի ու մշակի, դպիրի ու կաթողիկոսի, այրի կնոջ ու վաճառականի, վանքի միաբանության և գյուղի ամբողջ համայնքի։

Ստացողները նաև գրչության արվեստին տոն տվողներ էին։ Ձեռագրի պատվերը տալուց հետո, նրանց ցանկությամբ էր ընտրվում գրատեսակը, մատյանի ձևավորման չափն ու որակը, գրանյութն ու գաղափար օրինակը, և ոչ միայն պահանջում էին, այլ անձամբ միջամտում։ Երեմիա քահանան գրում է, որ Գևորգ Սկևռացու Եսայու մեկնության համար «երկու անգամ առ թագաւորըն (Հեթում Բ) իմ երթեալ խնդրեցի զարարեալ աւրինակն եւ ետ գրել զսա Լևոն դպրի լաւ և արհեստի գրչի...»։ Ստացողների գործունեությունը ստիպում էր, որ գրիչները իրենց հմտությունը կատարելագործեն, այլապես պատվեր չէին ստանա։ Ստացողների հոծ բանակին ենք պարտական հայերեն ձեռագրերի նյութական կողմի ապահովման և փրկության համար։

Հաջորդը ձեռագրի գրչության տեղի և ժամանակի գրանցումներն են։ Որտե՞ղ է գրվել ձեռագիրը։ Ձեռագրերի գրչության վայրերը հայ միջնադարյան մշակույթի կարևոր կենտրոններն են, ուր ծաղկել են ոչ միայն գիրն ու գրչությունը, այլև գիտությունն ու գրականությունը։ Դրանց մեծ մասը դպրոցներ են եղել, իրենց ուսուցիչներով, աշակերտներով, ուսումնական ծրագրերով ու ներքին կյանքով։

Հայ գրչության կենտրոնները հայ ժողովրդի աշխարհասփյուռ պանդխտության հավերժական վկաներն են։ Որտեղ ոտք է դրել հայը, այնտեղ ձե-

ռագիր է գրել, հիշատակարան է հորինել և հիշել այդ երկիրը. Բյուզանդիա ու Իտալիա, Իրան ու Հնդկաստան, Լեհաստան ու Ռուսաստան, Սիրիա ու Հրեաստան և այլ երկրներ։ Ուստի հիշատակարանները, ոչ միայն Հայոց, այլև հիշյալ երկրների պատմության համար արժեքավոր աղբյուրներ են դառնում։

Գրչության վայրերի հիշատակագրությունները հնարավորություն են ընձեռում վերականգնելու, վերաշարադրելու հայ վանքերի, դպրոցների, համալսարանների և մշակութային այլ կենտրոնների պատմությունը։

Եթե գրչության տեղը ձեռագրի ծննդավայրն է, ապա ժամանակի նշանակումը՝ ծննդյան թվականը։

Հիշատակարանում ձեռագրի թվականը տարբեր ժամանակներում նշանակվել է տարբեր եղանակներով։ Գրիչները թվականը գրելուց բացի այն ամրապնդում և հավաստում են այդ ժամանակի հոգևոր և աշխարհիկ առաջնորդներին հիշելով, նրանց կատարած գործը արձանագրելով և, մանավանդ, այդ ժամանակ տեղի ունեցած քաղաքական իրադարձությունները, ժողովրդի ծանր վիճակը, տառապանքները, ավերածությունները նկարագրելով։

Եթե մինչև այստեղ հիշատակարանը պատմամշակութային երևույթների արձանագրություն էր, ապա այսուհետև զուտ պատմական, քաղաքական, սոցիալական երևույթների, հայ ժողովրդի տառապանքների ականատեսի գրչով կատարված նկարագրությունը. «Դրանք անգնահատելի փաստալից աղբյուրներ են ժամանակի պատմության մի շարք բնագավառների ուսումնասիրման համար,— նշում է Լ. Խաչիկյանը,—գրված լինելով պատմվող դեպքերին ականատես և ականջալուր մարդկանց կողմից, նրանց հաղորդած տեղեկությունները վստահելի են, նրանց հեղինակները ըստ մեծի մասի, լինելով հասարակության աշխատավոր խավերից... մոտ են կանգնած եղել ժողովրդին... դրանցել են այնպիսի կարևոր պատմական տվյալներ, ինչպես և կենցաղային մանրուքներ, որոնք անտեսվել կամ վրիպել են միջնադարյան պատմագիրներից շատերի տեսադաշտից...»[66]։

Հիշատակարանների այն մասը, ուր նկարագրվում են նվաճողների բարբարոսությունները և հայ ժողովրդի կրած տառապանքները, վերածվում են առաջին մասի հակադրության. մի կողմից, մարդկային դարավոր մշակույթի նորացում, պահպանում, արարում և դրանց փառաբանություն ու դրվատում, որին ձեռնամուխ են եղել հայ գրիչն ու ստացողը, մյուս կողմից՝ այդ ստեղծագործ ժողովրդի ոչնչացում, հուշարձանների կործանում, ձեռագրերի այրում՝ մարդկային ցեղի ու մշակույթի թշնամի նվաճողների կողմից։

Հիշատակարանի վերջին մասը հիշատակն է, ուր վավերացվում է ձեռագրի ստեղծման նպատակը, այսինքն ո՞ւմ և ինչի՞ համար է գրվել տվյալ մատյանը։

Ձեռագրերի գրության շարժառիթները բազմաթիվ են, սեփական ընթերցանության, ուսման համար, որևէ մեկի կամ ընտանիքի հիշատակի համար, որը անպատճառ նվիրվում է մոտակա վանքին, դպրոցին կամ ուսուցչին, անձնական կյանքի այս կամ այն նշանավոր իրադարձության առթիվ և այլն, և այլն։

---

[66] Լ. Խաչիկյան, *ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ*, Երևան, 1950, Առաջաբան, էջ VII։

*Հիշատակարանի այս մասում հիշվում են գրչության շարժառիթներին առնչվող բոլոր անձինք, իրենց մերձավորներով, հաճախ այնպիսի մանրամասնությամբ, որ կարելի է կազմել նրանց տոհմածառը, ընդ որում հիշվում են նախ հանգուցյալները, ապա՝ ողջերը։ Այստեղ արձանագրվում է նաև նվիրատվության փաստը,—ո՞ւմ է պատկանում ձեռագիրը, և ո՞վ է նրա վայելողը։*

*Հիշատակարաններից տեղեկանում ենք նաև գրիչների մասին։ Հայ ժողովրդի գրավոր մշակույթի ստեղծման, փոխանցման, պահպանման անխոնջ մշակներն են գրիչները, որոնք ոչ միայն ընդօրինակում, սրբագրում, խմբագրում ու զարդարում էին ձեռագրերը, այլև հիշատակարաններ էին գրում, որոնց մեջ փառաբանում, խրախուսում, ոգևորում էին ստացողներին, ներկայացնում իրենց ժամանակը, ինչպես որ ըմբռնում ու տեսնում էին, և ամենից քիչ իրենց մասին էին հիշում, այն էլ միայն նվաստացնող մակդիրներով՝ «անարժան», «փցուն», «անգէտ», «գրաւէր» և այլն։ Գրիչները գրչության արվեստի գործադրողներն են և գիտության ու մշակույթի գործավորները, ուստի իրենց աշխատանքը նմանեցնում են երկրագործի աշխատանքին. «Ես՝ տառապեալ գրաւղս... զտիւն ամենայն տքնեալ ի վերայ փայտեղէն տախտակի. եղեգնակոխ արաւրով և խոսուն ակաւսաւք, հինգ շար կենդանի ամլաւք, եռահիւսակ, միահեծան ընդ միմեանս շարայարեցի ըբանս...»[67]։ Ծանր էր գրչի աշխատանքը՝ գիտելիք, համբերություն, հավատ, նվիրվածություն էր պետք ձեռագիր ստեղծելու համար. ուստի նրանք տիրապետում էին «արուեստի գրոյն» վայելչագրությանը, քերթողությանը կամ քերականությանը «որ կարգեալ են մեծն թարգմանիչքն իսկ», որպեսզի գրիչները կարողանան «ստուգիւ գաղափարեալ զգիրս», և «հմտութիւն բանին», որպեսզի քաջատեղյակ լինեն ընդօրինակվող բնագրին։*

*Հմուտ գրիչները կոչվում էին «հռետոր», «քաջ քարտող», «գրչապետ» և այլն։ Սակայն միշտ չէ որ հմուտներն էին ընդօրինակում։ Շատերը միջոց չունենալով ձեռագիր գրել տալու, իրենք էին ընդօրինակում կամ ստիպված հանձն էին առնում կատարել այդ աշխատանքը։ Երբեմն գրում էին «համարձակութեամբ գրչի առաւել քան գիտութեամբ արուեստի» կամ «թեև գիրս հոռի է, բայց օրինակիս ընտրութիւնն մեծագոյն է», և կամ «ես դրագիր չէի, այլ հարկ արարին ի վերայ իմ գրել»։ Ուրեմն հիշատակարաններն օգտագործելիս պետք է հաշվի առնել սույն հանգամանքը, ճանաչել գրչին։*

*Գրիչները հիշատակարաններում, առավել հիշատակագրություններում, իրենց ազատ էին զգում, փիլիսոփայում էին, գրում պատկերավոր լեզվով՝ արձակ և չափածո, խոսքը հաճախ համեմում առակներով ու ասացվածքներով, երկրի ու իրենց վիշտն են ողբում, ցավը լալիս, սիրտը բաց անում ընթերցողի առաջ։ Ոչ մի ձեռագիր, այս տեսակետից, բացառություն չի կազմում, իսկ հիշատակարանների ժողովածուները դրանում համոզվելու շատ առիթներ են տալիս։ Հայրենիքը խոշտանգող բարբարոսական արշավանքներից մեկի ականատեսը գրում է. «Այժմ աւելի են գերիքն յաշխարհի քան զաղատքն, և ամենայն սիրտ բեկեալ եւ զաւրհասն առաջի ունի. Երանի որ ոչ էր ժամս այս»[68] հուսակտուր ավարտում է խոսքը։*

---

67 Գ. Հովսեփյան. *Յիշատակարանք*, էջ 803։

68 Սյուրմեյան. *Ցուցակ Հալէպի*, հ. Ա., Երուսաղեմ, 1935, էջ 353։

«Մի մեղադրէք ծաղկիս վատութեան, միտս շմորել էր, արտասուքս ի դեղրումբն կու խառնէր ի տզոցս կսկծում, որ յԱստուած փոխեցան Գ· տղայ, որ նման էին ոսկւոյ և մարգարտի։ Աչերս չէր յիստակել արտասուաց, ստա՞ղ եզկնլոյս, որ զարն ի րում ձեռն ի ծնաւտիս հայիմ յնփրատէս, ա՞հ հանեմ հոգւոյս»[69]։ Ստեփանոս Կաղզվանցին թշնամու վայրագությունները նկարագրելիս կարծես Եղիշեից է գրիչն առել. «... Եւ զնազելի տիկնայս և ղաղախնայս և զկրօնաւորեալ կուսանսն՝ զդստերս մեծատանց և զաղքատաց հրապարակախազ առնէին և զանբիծ մանկունսն ի գիրկս մարցն սպանանէին, և զարիւնն ընդ կաթին խառնեալ՝ տային մաւրն ըմպել, և ընդ սրբութիւն սրբոցն զանհնարին չարիսն գործէին, զոր անվայելուչ համարեցաք զճառելն։

Ո՞վ հրաշիցն անճառութեան, ո՞հ աստուածասէր եղբարք, ոչ կարէ բերան պատմել և ոչ լեզու ճառել զանհնարին աղէտն և զհրաբորբոք կըսկիծն...»[70]։

## Ձ

Հիշատակարաններում գրիչները փառաբանում, օրհնում, ոգևորում են հայրենիքին, ժողովրդին, հավատին անձնվիրաբար ծառայող ստացողներին, լինեն դրանք շարքային թե բարձրաստիճան, աշխարհական թե հոգևորական։ Ավետիս գրիչը Կեռան թագուհու համար գրած Ավետարանի հիշատակարանում ստացող թագուհուն ցանկանում է, որ իր առաջնեկին, որը փոխարինելու է թագավորին, լավ դաստիարակել և հասցնել «ի չափ հասակի կատարմանն... ժառանգել զթագն հայրենի, և կեցեալ ըստ աւրինացն Աստուծոյ վարժեալ գրովք աստուածայնովք և զինուք սպառազինաւք՝ յաղթող լինել ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի»[71]։ Իսկ Հովսեփ գրիչը մեծ գոհունակությամբ է արձանագրում Ռուբեն սպարապետի Սալահետտինի զոռոցներին տված պատասխանը և գործողության վճռականությունը։ Եգիպտոսը, Դամասկոսը, Եգեսիան և Ամիթը գրավելուց հետո Սալահետտինը «չոգաւ անց գետովն Եփրատ, եկն առ ստորոտով Սուրբ լերինն, զոռսյր ընդդէմ սպարապետին Հայոց Ռուբինայ եւ լսէր խստագոյն պատասխանիս ի նմանէ. կամէր մտանել յաշխարհս քրիստոնէից և ոչ կարէր, վասն զի եւ քրիստոնէից զունդն զաւրաժողով էին ընդդէմ նորա, մահ ի մտի եդեալ ամենեցուն...»[72]։

Եվ այսպես հաճախակի դրվատվում են հայրենասիրական արարքները, նզովվում դավաճանությունը, խրախուսվում գիտության և ուսման հետևելը, ձեռագիր գրելը, գրել տալը, պահպանելը, հաջորդ սերունդներին փոխանցելը։ Հիշատակարաններում կան խորհուրդներ, որոնց իմանալը պարտադիր է ձեռագիրն ուսումնասիրողներին. «Վարդապետք ասեն թէ անպատշաճ է զգիտութիւնս խնայել և ոչ բաշխել այլոց, վասն բազում պատճառի... և անպատշաճ է զգիտութիւն և զուսումն խնայել և թաքուցանել»[73]։ Ձեռա-

---

69 Գ. Սրվանձտյան. *Թորոս Աղբար*, հ. Ա, Կ. Պոլիս, 1879, էջ 374։

70 Բ. Կյուլեսերյան, *Ցուցակ Անկիւրիոյ*, Անթիլիաս, 1957, էջ 1118։

71 Ա. Մաթևոսյան, *Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, ԺԳ դար*, Երևան, 1984, էջ 416։

72 Ն. Պողարյան, *Ցուցակ, Երուսաղեմի*, հ. Թ, Երուսաղեմ, 1979, էջ 350։ (Ընդգծումն իմն է)։

73 Մ. Քեշիշյան, *Ցուցակ Զմմառի*, Վիեննա, 1964, էջ 394։

*դիրը չպիտք է թաքցնել ընթերցողից. «Ջի ղՆՆ զինաւորին է»։ Բայց՝ ասպիտակ լաթով բռնէք և փառավոր պահէք,—ղգուշացնում է մեկ ուրիշը,—զի ամեն գրի մեկ աչք է սպիտակացուցած—գրած», քանի որ անխնամ վարվողներին լավ բան չի սպասում. «Ով որ անարժան բացել է և կարդացել է, նա իւրն աղէկ չէ եղեր»[74]։*

*Հայերեն ձեռագրերի հիշատակարաններում քաղաքական անցուդարձերն արտացոլող մասերը վաղուց են օգտագործվել պատմագրական երկերում և պատմագիտական ուսումնասիրություններում, որպես հավաստի սկզբնաղբյուրներ, նրանց հասարակական-քաղաքական մշակութային կյանքի տարբեր ոլորտներ ընդգրկող բնույթը ստիպում էր, որ հիշատակարանների օգտագործման ավելի գործնական և առավել նպատակահարմար եղանակներ գտնվեն։ Եվ այն գտնվեց։ Դրանք ժողովածուներ են, որոնցում ժամանակագրական կարգով հավաքվելու էին ձեռագրերի հիշատակարանները։ Այդ ժողովածուներում ձեռագրական առանձին հիշատակարանները, որոնք գրվել են տարբեր մարդկանց կողմից, տարբեր վայրերում, մերթ հպանցիկ, մերթ հիմնավոր արձագանքել կյանքի այս կամ այն երևույթին, հավաքվում-դասավորվում են առանձին ժողովածուի մեջ ըստ որոշակի ժամանակահատվածի տարիների, և աղոտ արձագանքներն ու միակողմանի ակնարկները համադրվելով՝ լրացնում, ամբողջացնում են միմյանց, թանձրացնում են փաստերը և դրանք դարձնում վավերական և վստահելի։*

*Հայերեն ձեռագրերի ժողովածուների մեջ առանձին տարիներով հավաքված հիշատակարանները ըստ գրչության վայրերի իրենց արտացոլումն են գտնում տեղանունների ցանկում, իսկ ըստ ձեռագրերը գրողների, ստացողների և այլ մասնակիցների՝ հավաքվում, դասդասվում են անձնանունների ցանկում։ Ուսումնասիրողը ձեռքի տակ է ունենում ձեռագրի հիշատակարանը՝ գրչության հանգամանքներով՝ որոշակի ժամանակի և տարածության մեջ։ Ձեռագրերի հիշատակարանների ժողովածուները, այսպիսով դառնում են ժամանակագրական որոշ սահմաններում պատմագրական հսկայական նյութ ամփոփող մատենագրական նոր, ամբողջական մատյաններ, որոնց նշանակությունը անգնահատելի է հայ ժողովրդի պատմության, և մեզ՝ հարևան ժողովուրդների, ինչպես նաև այն երկրների պատմության համար, որտեղ գրվել են այդ հիշատակարանները։*

---

*[74] Մատենադարան, ձեռ. № 177, էջ 469ա։ Գրիչներ առանձին վերաբերմունք ունեն իրենց գրած հիշատակարանի նկատմամբ։ Նրանք շահագրգռված են նրա առկայությամբ և հարատևող գոյությամբ, որպես ձեռագրի անքակտելի մասի, որպես նրա ստեղծման պատմության և ստեղծողների հիշատակի վավերագրի։ Ուստի հաճախ պատվիրում էին, որ ձեռագիրը կարդալիս, ընթերցվի նաև հիշատակարանը. «Աստուած զայն քահանան և զայն տանուտէրն աւրհնէ, որ Աւետարանս լաւ պահի և զյիշատակարանս կարդալ տայ...»։ Նրանք բողոքում են հիշատակարանը եղծողների, անունները փոխողների դեմ, որպես չար սովորություն։ «Որք ժառանգէք զսա,—խնդրում է Հովհաննես գրիչը,—անուն կամ գիր մի քերէք զառաջնոցն ու զձերն ի տեղն գրէք, այլ՝ յայլ տեղի գրեցէք զձերն անուն... Մի, մի գործէք, զի չար է և մեծ չար» (Մատենադարան, ձեռ. № 5708, էջ 130ա)։ Պարսամ գրիչը ավելի գործնական միջոց է առաջարկում. «Դարձեալ կրկին և երեքկին» աղաչելով որ «մի առնիցէք զչար սովորութիւնն հատանել զյիշատակարանս գրոց», նրան կից մի քանի անգրել թուղթ է թողնում և գրում. «Արդ՝ ահա թողաք զկնի սորա յոլով թուղթ անգիր. եթէ կամիցիք, անդ գրեսջիք զձերն և զմերս յիշատակ թողջիք աստ» (Մատենադարան, ձեռ. № 4130, էջ 688բ)։*

*Այդ է պատճառը, որ ոչ միայն հրապարակ են գալիս հիշատակարանների նորանոր ժողովածուներ, այլև թարգմանվում են այլ լեզուներով*[75]։

* * *

*Ե—ԺԲ դարերից մեզ են հասել իրենց կատարելությամբ, քանակով և ծավալով հիշատակարանային տարբեր միավորներ։ Դրանց մի հատորում միասին հրատարակելը թելադրում է ներկայացնելու յուրահատուկ եղանակ. Սովորաբար հիշատակարանները ժողովածուներում բերվում են ըստ տարիների. յուրաքանչյուր տարի սկսվում է նոր էջից, գլխագրերով։ Նրա վերևում գրվում են հայկական (տառերով) և փրկչական (թվերով) թվականները, որոնք այնուհետև դրվում են այդ թվականի բոլոր հիշատակարանները զբաղեցնող էջերի սկզբում՝ գծի վրա, անկախ այն բանից, թե էջում քանի հիշատակարան է տեղավորված։ Եվ այդպես հաջորդ տարիները։ Այլ է վիճակը սույն հատորում։ Քանի որ Ե, Զ, Է, Ը, Թ, Ժ, ԺԱ դարերից հիշատակարանները կամ հիշատակային բնույթի միավորները բոլոր տարիներից չեն, այլ երբեմն մի քանի տասնամյակից մի միավոր է միայն մեզ հայտնի, որ դրանց մի մասը անթվական է և ենթադրաբար տեղադրված այդ դարում, մենք նոր էջով սկսում և գլխագրի վրա ոչ թե տարին, այլ դարն ենք նշանակում, և այն կրկնում այդ դարի բոլոր հիշատակարանները ընդգրկող էջերի սկզբում։ Ե, Զ դարերի հիշատակարանները ներկայացնում ենք անընդհատ շարահարությամբ, որոնք իրարից անջատվում են հերթական համարներով։*

*Է, Ը, Թ, ԺԱ դարերի հիշատակարանները նույն ձևով ենք ներկայացնում, բայց միավորները իրարից անջատվում են ոչ միայն հերթական համարներով, այլ նաև գրության թվականներով, որոնք դրվում են համապատասխան միավորի վերնագրի ձախ (հայկական) և աջ (փրկչական) լուսանցամեծ կողմերում։ Քանի որ հայկականը լրիվ գործածություն չուներ, համարեցնում ենք փրկչականին, 551-ի վրա ավելացնելով համապատասխան թիվ։ ԺԲ դարի հիշատակարանները, որոնք քանակով, կատարելությամբ և ծավալով տարբերվում են նախորդ դարերի հիշատակարաններից, ներկայացնում ենք ավանդական ձևով, ամեն մի տարին սկսելով նոր էջից։*

*ԱՐՏԱՇԵՍ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*

---

[75] Այդ մասին տե՛ս «Հայերեն ձեռագրերի հիշատակարանների ժողովածուները» առաջաբանը մեր «Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, ԺԴ դար» հատորում, էջ 5—11։ Տե՛ս նաև՝ Հ. Թախշինյան, Հայկական ձեռագրերի հիշատակարանները, Երևան, 1980։



Ե V

1

## ԱՒԵՏԱՐԱՆ
## ՅԱՒՐԻՆԱԿԷ ՍՐԲՈՅՆ ՄԱՍՏՐՈՎԲԱՅ ԹԱՐԳՄԱՆՉԻ

*Երևան 10434 (1069 թ.)*

*[Գրեցաւ] զսուրբ Աւետարանս... մանաւանդ վասն ստու[գու]թեան սորին եւ ընտրութեան բանի, եւ հրամանի՝ եւ տնհատի, եւ ամենայն արուեստի, որ էր վկայեալ աւրինակն յամենայն գիտնականաց Հայ-*
2·7ա *ոց, //զոր ասեին աւանդութեանէ գրեալ ձեռամբ Սրբոյն* Մաստոմբայ *վարդապետի եւ թարգմանչի*[1]։

2

## ԱՒԵՏԱՐԱՆ
## ՅԱՒՐԻՆԱԿԷ ՍՐԲՈՅՆ ՍԱՀԱԿԱՅ ԹԱՐԳՄԱՆՉԻ

*Երևան 6764 (1113 թ.)*

20ա *Եւ եւոու աւարտեալ ...ի ստոյգ եւ յ(ը)նտիր գաղափարէ Սրբոյն* Սահակայ *թարգմանչի՝ յստակ եւ ականակիտ, որպէս եւ փրկչէն ա-սացան...*

---

[1] *Մաշտոցի ձեռքով գրված ձեռագիրը պահվել է Նարեկա վանքում և պատկանել Անանիա Նարեկացուն, ինչպես վկայում են գաղափար օրինակի հիշատակագրությունները (Տե՛ս աստ, էջ 55)։ Այդ օրինակից արտագրվել է Մատենադարանի № 10434 ձեռագիրը, իր մեջ պահպանելով այս եզակի վկայությունը։ Մաշտոցի օրինակից արտագրված մեզ հայտնի միակ նմուշն է սա, ուր պահպանվել է նաև նրա անվան «Մաստրովբ» հնագույն ձևը։*

*Մեսրոպ անվան հնագույն գործածությանը հանդիպում ենք Բյուզանդական աշխարհիկ և հոգևոր առաջնորդներին առաքած Սահակ Պարթև կաթողիկոսի թղթերում (Մ. Խորենացի, Պատմութիւն Հայոց), որոնք գրված են 420-ական թվականներին։ Աշտիշատի ժողովը հրավիրում են «Սուրբն Սահակ եւ երանելին Մեսրոպ» 430 թվականին («Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 220)։ Այդ ժամանակին է վերաբերում նաև հույն Թեոդորոս Մոպսուեստացու թուղթը, ուր Մեսրոպ անունը հիշվում է Մաստուբիոս ձևով (Մաստ(ր)ուբիոս—Մաստ(ր)ուվիոս) (Հ. Բարթիկյան, Թեոդորոս Մոպսուեստացու* ΜΑΣΤΟΥΒΙΟΣ-*ի և բյուզանդական Մաշտոցյան տոհմի մասին (X դար), «Լրաբեր» Հաս գիտ., 1984, № 7, էջ 74—75)։*

*Մեսրոպ անվամբ է հիշատակվում Հայ դպրության հանճարեղ արարիչը Մովսես Խորենացու ողջ Պատմության մեջ, գրված 4՛4 թվականին։ Բանն այն է, որ իր երկում Խորենացին անձնավորություններին ներկայացնում է անուններով. Սուրբ Գրիգոր և ո՛չ Գրիգոր Լուսավորիչ, Սուրբ Սահակ և ո՛չ Սահակ Պարթև, Վարդան, Հմայակ, Համազասպյան և ո՛չ Վարդան Մամիկոնյան, Հմայակ Մամիկոնյան, Համազասպյան Մամիկոնյան և այլն։ Բնականաբար նաև Մեսրոպ, և ո՛չ Մեսրոպ Մաշտոց։*

*Մաշտոց անունը Մեսրոպին տրվել է հետագայում։ Հնագույն հիշատակությունը դարձյալ Խորենացու Պատմության մեջ է, և հիշվում է որպես Եվսեբիոս Կեսարացու Եկեղեցական պատմության թարգմանել տվող, որը իրականացվել է 415—420 թթ. (Տե՛ս աստ՝ էջ 2)։ Տեղեկությունը բերվել է որպես քաղվածք։*

*Մաշտոց անունը գործածում է Կորյունը (մինչև 449 թ.) նաև՝ Շահապիվանի ժողովի ժամանակ, Մեսրոպ անվան հետ, առանձին-առանձին (444 թ. «Գիրք թղթոց», էջ 220)։ Միասին հիշում է Մեսրոպ Վայոցձորեցին «Մեսրովբ, որ անուանեցաւ Մաշդոց» ձևով, («Պատմութիւն սրբոյն Ներսիսի, Պարթևի Հայոց հայրապետի», Վենետիկ 1853 թ., էջ 83 և 110)։*

## 3
## ԵՒՍԵԲԻՈՍԻ ԿԵՍԱՐԱՑԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ

*Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց, Երևան, 1981, էջ 136*

*Հեղինակ՝* Մովսէս Խորենացի

*Եկլէսիաստէ գիրք* Եւսեբի Կեսարացւոյ, *զոր ետ թարգմանել երանելի վարդապետն մեր* Մաշտոց *ի հայ լեզու*[1]։

## 4
## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ
*Երևան 193 (1299 թ.)*

*Ուղղող—*թարգմանիչ

169բ *Ուղղեալ է զաւրինակս զայս յ*Աղեքսանդրացւոց *և յ*Երուսաղէմացւոց *աւրինակէ, դարձեալ և ի* Ձորեփկընւոյն Ովրիգենի:

*Գրեցաւ Երկոտասան մարգարէս ըստ Եւթանասնիցն և երկուց թարգմանացն*[2]։

## 5
## ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ ԿԱՐԳԱՑ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ
*Երևան 659 (1368 թ.)*

ա

257բ *Սահմանադրութիւն կարգաց ընկալեալ ի նահատակէն տեառնէ* Գրիգորէ, *թարգմանեցաւ ի ձեռն* Եզնկայ, *հրամանաւ երանելոյն* Սահակայ *եպիսկոպոսապետին Հայոց եւ նորին աթոռակցաց, թէ որպէս սահմանեցաւ կարգ ուխտի եւ որոշումն վանաց։*

բ

261բ Կանոն Լուսաւորչին

*Այս Սահմանադրութիւն կարգաց հրամանաւ երանելւոյն* Սահակայ *մեծ հայրապետի* Հայաստան *աշխարհի, ընկալեալ ի քաջ նահատակէն՝ ի տեառնէն* Գրիգորէ՝ *թարգմանեցաւ միայն յունէ ի հայ։*

*Արդ, եթէ ոք անհնազանդեալ Կանոնիս նորոգոձևեալ կամեսցի զկար-*

---

[1] «Եկեղեցական պատմության» թարգմանությունը կարող էր տեղի ունենալ միմիայն 29 փետրվարի 416—28 փետրվարի 420 փրկչական թվին (Գ Տէր-Մկրտչյան, Հայագիտական ուսումնասիրություններ, գ. Ա, Երևան, 1979, էջ 399)։

[2] Գրչի վկայությամբ ձեռագիրը գրված է «ի սաստիկ և յընտրելագոյն աւրինակէ, ի վաղուցհետէ ստուգեալ և ճշմարտեալ ի նոյն պայմանի բայիւք, և բառիւք, և տառիւ անթերի և անսղալ գոլով։ Չի թէպէտ և յաղագս մերոցս կարեացս ի սոյն ձեռնարկեցաք, սակայն և առաւել ևս վասն աւրինակի, և գաղափար այլոց լինելով սա՝ ըստ յարմարութեան բանիցն» (ձեռ. № 193, էջ 171ա)։

գեալ Սահմանադրութիւնս, մի ընկալցի մասն եւ վիճակ ժառանգութեան յարքայութեանն Քրիստոսի եւ Աստուծոյ։ Եւ որ ոք միաբանեալ կատարեսցէ՝ ընկալցի ղաւրհնութիւն ի Տեառնէ, հաղորդելով պարգեւացն եւ անվախճան հանգստեանն երջանկին Գրիգորի եւ հաւր մերոյ Սահակայ, եւ նոցին հետեւելոց ճշմարիտ ուղղափառութեան, որք ի մեծ եւ երեւելում աւուրն են պսակելոց յամենաբաւական աջոյն անթարգմանելի պայծառութեամբ մշտընջենաւորեալք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 6

## ԱԹԱՆԱՍԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՑ ՎԱՐՔ ԵՐԱՆԵԼԻՈՅՆ ԱՆՏՈՆԻ ԵԳԻՊՏԱՑԻՈՑ ՄԻԱՅՆԱԿԵՑԻ

Աթանաս, Մատենագրութիւնք, Վենետիկ, 1899 թ., էջ Ի

Վայր՝ Երուսաղէմ

Թարգմանեցաւ գիրս այս ի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ, յամի Ն—որդի Ծ—որդի (450)[1] գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, յամին յորում հանգեաւ քաջընթաց երանելին Մաշտոց:

## 7

## ԱԳԱԹԱՆԳԵՂԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

Երևան, 1983, էջ 16, 18, 493

Հեղինակ՝ Ագաթանգեղոս

Արդ՝ ջան յանձին կալեալ մտանել ի պատմագիր մատենիցս խորութիւն, ցուցանել այնոցիկ, ոյք իմաստութեամբ կամիցին ոմնկնդիր լինել աւգտակար Պատմութեանս։ Արդ՝ հրաման հասեալ առ իս ումն Ագաթանգեղոս, որ ի քաղաքէ ի մեծն Հռովմայ, և վարժեալ հայրենի արուեստիւ, հռոմայերէն և յունարէն ուսեալ դպրութիւն, և ոչ կարի ինչ անտեղեակ լեալ ձեռնարկութեան նշանագրաց. և ի վերայ այսոցիկ հասեալ ի դուռն Արշակունեաց, յամս քաջի և առաքինւոյն, ուժեղ և պատերազմողն Տրդատայ, որ քան զամենայն նախնիսն քաջ եղեալ՝ ղանցոյց արութեամբքն, որ ընպշամարտ սկայազաւր քաջութիւնս գործեաց ի մարտս պատերազմաց։ Ոչ զիւր ինչ քաջութիւն՝ սուտ հրամայեաց մեզ վիպասանել, և ոչ զքմազարդ բանից ինչ առասպելս աւելի քան զարժանն ընթանալ. այլ իրք որ եղեալք վասն յեղանակաց յեղափոխ ժամանակաց, մարտամբոխ պատերազմաց, սուրակոխ բազմահեղ արեանց կոտորածոյ, անհոն զաւրաց շփոթելոց, գերութեան աշխարհաց, աւերածոյ գաւառաց, քանդելոյ քաղաքաց, մատնելոյ աւանաց, հարկանելոյ բազմութեան մարդկան վասն քաջութեան քինախնդիր վրիժուց։

---

[1] Հրատարակիչը ծանոթագրել է «ՆԽ (440) պիտի և ոչ ՆԾ (450)», Գ. Հովսեփյանը բերելով Յիշատակարանքում (էջ 1019—1020), այն համարում է «կասկածելի և անվավեր»։

*Արդ՝ հասեալ առ իս հրաման ի մեծ արքայէն Տրդատայ՝ կարգել ինձ ի ձեռնարկութենէ նշանագիր ժամանակագրացն՝ պատմել նախ զհայրենեացն գործս քաջութեան քաջին* Խոսրովու, *և որ ինչ գործք գործեալք քաջութեան մարտից պատերազմացն, ընդ շրջշրջումն տէրութեանն փոխելոյ ընդ կոյսս հարկանելոյ, և ազգաց խռովելոյ. և կամ վասն մահուանն քաջին* Խոսրովու, *թէ ուստի և կամ զիարդ և կամ որպէս, և կամ զինչ անցք անցին. և կամ վասն հաւրամոյն քաջութեանն* Տրդատայ, *և որ ինչ գործ գործեաց յամս յաւուրս իւրոց ժամանակաց. և կամ վասն սիրելեաց վկայիցն Աստուծոյ, թէ որպէս և կամ զիարդ եկեալ իբրև լուսաւորք ծագեցին, փարատել զմէգ խաւարի ի* Հայաստան *աշխարհէս. կամ որպէս զանձինս իւրեանց փոխանակեցին ընդ Աստուծոյ ճշմարտութեանն. և կամ որպէս գթացեալ Աստուծոյ՝ այց արար Հայոց աշխարհիս, ի ձեռն առ միոջ եցոյց զսքանչելիս մեծամեծս, որ համբերութեամբ բազում և ազգի ազգի փորձութեանց և կապանաւոր վշտաց մենակռիւ մենամարտիկ երկպատական բռնութեան* յԱրտաշատ *քաղաքի վասն Քրիստոսի յաղթութեամբ տարեալ, որոյ զվկայ անուն ժառանգեալ, որ ի մահ հասեալ մտեալ, և կամաւքն Աստուծոյ այսրէն դարձեալ՝ ի վերակացութիւն առնայր յերկիրս Հայոց։ Սա մտեալ ի դրունս մահու՝ դարձեալ անտի կամօքն Աստուծոյ, վարդապետութեանն Քրիստոսի պատգամաւոր գտեալ, յետ Աստուծոյ սքանչելագործ պատուհասին մարդասիրութեան։ Իսկ բարեացապարտն* Տրդատ *յանկարծակամ՝ կենացն ասպնջական ցանկալի ամենեցուն լինէր, որ աշխարհածնունդ հայրենեացն որդի գտանէր շնորհաւքն Աստուծոյ, և յաւիտենական կենացն մերձաւոր լինէր։ ...*

*Իսկ մեք որպէս ընկալաք զհրամանս քոյոյ թագաւորութեանդ, քաջդ արանց* Տրդատ, *գրել զայս ամենայն՝ որպէս աւրէն է ժամանակագիր մատենից՝ ըստ այնմ ձևոյ դրոշմեցաք, ըստ աւրինակի յունական ճարտարութեանն արկեալ ի ջար զամենայն։*

## Ց

## ՓԱՒՍՏՈՍԻ ԲՈՒԶԱՆԴԱՑԻՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

Վենետիկ, 1832, էջ 1

*Հեղինակ՝* Փաւստոս Բուզանդ

Խոստաբանութիւն Նախադիտելի

*Այս ինչ է ի դպրութիւնս երրորդ՝ պատմութեանցս. ժամանակագիր կանոնք մատենից, և առ նմին դպրութիւնք երեք, այսինքն են սոքա չորք մատեանք. և չորեքին միոյ իրաց յիշատակարանք են, յիշեցուցիչք պատմութեանց ազգացն* Հայաստան *աշխարհին որդւոց Թորգոմայ։ Այսինքն կարգ անցելոց իրաց, գործք և վարք մինչև ցիւրաքանչիւր ելս յաշխարհէս քահանայապետաց սրբոց արանց աստուծոյ, և թագաւորաց տէրանց աշխարհաց* Արշակունեաց, *և զաւրավարաց՝ արանց ա-*

նուանեաց քաջ նախարարաց, և խաղաղութեան և պատերազմին և շի-
նութեան և աւերածոյ և արդարութեան և անաւրէնութեան և աստուա-
ծապաշտութեան և ամբարշտութեան. ժամանակագիր արարեալ ի թա-
գաւորութենէն Խոսրովու որդւոյ Տրդատայ մինչև ի միւս վերջին ժա-
մանակն վատթարելոյ թագաւորացն Հայոց, և ի քահանայապետութիւ-
նէն Վրթանայ որդւոյ Գրիգորի առաջնոյ քահանայապետի, մինչև ցայ-
նոսիկ ի վերջինսն՝ որք կային գլխաւորք եպիսկոպոսք Հայոց, մի ըստ
միոջէ կարգաւք թուաւք և համարաւք կանոնեալ դրոշմեալ նկարեցի իւրա-
քանչիւր գլխովք։ Եւ չորս խոստմամբս չորից չորեցունց դպրութեանցս
յիւրաքանչիւր իւր գլուխս պատուաստեցի մինչև ի կատարած սորին, առ ի
զաւգուտն ժառանգել՝ որք միանգամ կամին սրտի մտաւք հասու լինել
սմին, զոր ասելոցս եմ։

## 9

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ ԵՒ ՄԱՀՈՒԱՆ ԱՌՆ ԵՐԱՆԵԼՒՈՅ ՍՐԲՈՅՆ ՄԵՍՐՈՎՊԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՄԵՐՈՅ ԹԱՐԳՄԱՆՉԻ Ի ԿՈՐԻՒՆ ՎԱՐԴԱՊԵՏԷ ՅԱՇԱԿԵՐՏԷ ՆՈՐԻՆ

Երևան, 1941, էջ 1, 36, 74, 96, 98

Հեղինակ՝ Կորիւն

Զավքանավեան Ազգին և զՀայաստան աշխարհին զաստուածա-
պարգեւ գրոյն, եթէ երբ և յորում ժամանակի մատակարարեցաւ և
որպիսի արամբ այնպիսի նորոգատուր աստուածեղէն շնորհս երեւե-
ցաւ և վասն նորին լուսաւոր վարդապետութեան և հրեշտակաբար կրաւ-
նիցն առաքինութեան զմտաւ ածելով յիշատակարանս առանձին մա-
մենանշան ծաղկեցուցանել և մինչ դեռ անդէն ի խորհրդանոցի մտա-
ցըս վասն յուշ արկանելոյ միայնագործ հոգայի, եկեալ հասանէր առ իս
հրաման առն միոյ պատուականի Յովսէփ կոչեցելոյ, աշակերտի առն
այնորիկ, և ընդ նմին այլոց եւս քաջալերութիւն աշակերտակցաց մերոյն
վարդապետութեան։ Ուստի և իմ մասնաւոր աշակերտութեան վիճակ
առեալ, թեպէտ և էի կրսերագոյն, և առաւել քան զկար մեր, գրաւեալ
անաչառ հրամանին հասելոյ, փութանակի և առանց յապաղելոյ զառաջի
եղեալն մատենագրել։ Զորս և մեր համաւրէն աղաչեալ երկախառնել
ընդ մեզ աղօթիւք՝ յանձնարարութեամբ աստուածեղէն շնորհացն, զի
կամակարագոյնս և ուղղագոյնս նաւիցեմք զհամատարած ալեաւքն
վարդապետական ծովուն։

Ապա յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ՝ դէպ լինէր ոմանց
եղբարց ի Հայաստան աշխարհէս, դիմել իջանել ի կողմանս Յունաց,
որ և Ղեւոնդէս առաջնոյն անուն էր, և երկրորդն՝ Կորիւնս...

## 10

## ԵՂԻՇԷԻ ՎԱՍՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԵՒ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԴԱՒԹԻ ԵՐԻՑՈՒ ՄԱՄԻԿՈՆԻ ՀԱՅՑԵԱԼ

*Երևան, 1888 (1207 թ.), Երևան, 1957 թ., էջ 8*

*Հեղինակ՝* Եղիշէ

**ա**

*Ջրանն վասն որոյ պատուիրեցեր՝ արարի, ո՛վ քաջ, վասն Հայոց պատերազմի հրամայեցեր, յորում բազումք առաքինացան քան զսակսւս։*

*Ահա նշանագրեցի յայսմ եւթն յեղանակիս...*

**բ**

84ա *Գրեցաւ յիշատակարանս այս վասն նորա*[1] *առ ի կշտամբումն յանդիմանութեան (վասն) մեղաց նորա, զի ամենայն որ ղայս լուեալ իմասցի, նզովս զհետ նորա արձակեսցէ և մի լիցի ցանկացող գործոց նորա*[2]*։*

**գ**

122բ *Գրեցաւ յիշատակարանս այս վասն սուրբ նահատակութեան նախարարացն Հայոց և սուրբ կանանցն, ընդ որում և զմեզ արժանի արասցէ Սուրբ Երրորդութիւն տանել զյիշատակս նոցա, զի որք հաւատով տանեն զյիշատակս նոցա, մասնակից արասցէ սրբոց իւրոց, ի փառս ամենասուրբ Երրորդութեանն այժմ և միշտ և յաւիտեանս, յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն, ամէն*[3]*։*

---

*[1] Գրված է Վեցերորդ եղանակի վերջում, «նորա» ասելով, նկատի ունի Վասակ Սյունեցուն։*

*[2] Այս պարբերությունը Պատմության բոլոր ձեռագրերում, ինչպես նաև բոլոր հրատարակություններում բերված է որպես Եղիշեի շարադրանք, իսկ երկրորդը (բ)՝ նույնիսկ բոլոր գրիչները չեն պահպանել, համարելով ուրիշի հավելում, որովհետև գտնվել է Պատմության վերջում։ Գրիչներին հետևելով հրատարակիչները նույնպես հազվադեպ պահպանված սույն հատվածը չեն տպագրել Պատմության հետ, այլ դիտել են որպես գրչի հիշատակարան (Ե. Տեր-Մինասյան, Եղիշեի Պատմության տպագիրներն ու ձեռագիրները. «Եղիշէի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին», Երևան, 1957, էջ XXI)։ Այնինչ «յիշատակարանս» ասելով, երկու դեպքում էլ Եղիշեն նկատի ունի համապատասխան եղանակները, պատմությունները, որոնց վերջում գրված են դրանք։ Հիշատակագրությունների հնագույն նմուշներն են սրանք, որ հետագայում այնքան հիմնավոր տարածվեցին հատկապես Տաւնական և Յայսմաւուրք ժողովածուների մեջ, զետեղվելով համարյա ամեն մի վարքի, վկայաբանության, ճառի և այլ միավորի վերջում։*

*[3] Սույն մատյանում մի կազմի մեջ երկու տարբեր ձեռագրեր են ամփոփված, ընդ որում առաջինը (թերթ 1—129)՝ Եղիշեի երկն է, գրված 1207 թ., երկրորդը (թերթ 130—355)՝ ժողովածու՝ գրված ԺԿ դարում։*

## 11

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՍՈՒԱ ԵՒ ԴԱՏԱՒՈՐԱՑՆ, ԶՈՐ ԱՐԱՐԵԱԼ Է ԾԱՅՐԱՔԱՂ ՏԵԱՌՆ ԵՂԻՇԷԻ ՀԱՅՈՑ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Երևան 1267 (ԺԴ դար)

Հեղինակ՝ Եղիշէ

210բ Նոյնպէս և տառապեալ ի ղուճ անգեալ առաջի սրբասնեալ եղբարց, ի խորոց սրտէ պաղատիմ յոգւոց հանելով և արտաս[ու]ելով, ղի արժանի յիշատակի առնէք՝ յիշել անմախաբար և խնդրել զթողութիւն մեղաց, զի և ղերծայց յահագին հրոյն, աղաչեմ։

## 12

## ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅ ԹԱԴԷԻ ԱՌԱՔԵԼՈՅ

Զարբհանալյան, Թարգմանութիւնք նախնեաց, էջ 13

Թարգմանիչ Սամուէլ

Ես Սամուէլ եպիսկոպոս, անարժան ծառայ Քրիստոսի, թարգմանեցի զՎկայութիւնն սուրբ առաքելոյն Թադէոսի, և զսրբոյ կուսին Սանդըխտոյ, և ետու ամենայն Հայաստան աշխարհի[1]։

ՆՀԴ 474

## 13

## ՄՈՎՍԷՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ

Տփխիս, 1913 թ., էջ 5, 7, 10, 12

Հեղինակ՝ Մովսէս Խորենացի

Ծննդաբանութիւն Հայոց Մեծաց
Մովսէս Խորենացի Յաղագս մերոյս ի սկզբան յայսմ
բանիցս Սահակայ Բագրատունւոյ խնդալ[2]

Զանսպառ խաղացմունս ի քեզ աստուածայնոցն շնորհացն և զանդուլ հոգւոյն ի վերայ քոց իմացուածոցդ զշարժմունս ծանեայ ի ձեռն գեղեցիկ խնդրոյս, յառաջ քան զմարմնոյդ՝ զհոգւոյդ ընկալեալ զծանուցութիւն, որ և սիրելի իսկ իմոց ախորժակացս է, առաւել ևս սովորութեանցս։ Վասն որոյ ոչ միայն գովել արժան է քեզ, այլ և ի վերայ քո աղաւթել՝ առ ի լինել քեզ միշտ այսպիսի։

...Յաղագս որոյ հեշտաբար ընկալեալ զքո խնդիրդ՝ աշխատասի-

[1] Գ. Զարբհանալյանը գտնում է, որ Սամուելը Վկայաբանությունը թարգմանել է Խորենացու «Հայոց Պատմության» գրությունից առաջ։

[2] Թվականը նշանակում ենք ըստ Դավթի ժամանակագրության (Զեռ. № 2679, էջ 162ա՜; իսկ խորագրի մասին տե՛ս աստ՝ էջ ԺԲ—ԺԳ, ծթ. 45։

*ըեցայց ածել ի կատարումն, յանմահ յիշատակ թողուլ զայս քեզ և որ զկնի քո գալոց եւ ազգք... յիշատակեսցուք ի կարգի պատմութեանս, յորժամ զորգի ի հաւրէ ծննդաբանելով ազգաբանիցեմք զբովանդակն իսկ զ*Հայաստանեայցս *նախարարութիւնս, զամենեցուն զուստն և զիարդն յայտնելով համառաւտ և հաւաստի, որպէս ի յունականս ոմանս կայ ի պատմութիւնս։*

*...Զի թէպէտ և եմք ածու փոքր, և թուով յոյժ ընդ փոքու սահմանեալ... սակայն բազում գործք արութեան գտանին գործեալ և ի մերում աշխարհիս, և արժանի գրոյ յիշատակի...*

*Բայց ընդ քո յոյժ զարմացեալ եմ ընդ մտացդ ծննդաբանութիւն, որ ի սկզբանցն մերոց ազգաց մինչև ցայժմուսս միայն գտար զայսպիսւոյ մեծէ իրէ բուռն հարկանել, և մեզ խոյզ խնդրոյ առաջի արկանել— երկար և շահաւոր գործով զազգիս մերոյ կարգել զպատմութիւնն ճշտիւ՝ զթագաւորացն և զնախարարացն ազգաց և տոհմից, թէ ով յումմէ, և զինչ իւրաքանչիւր ոք ի նոցանէ գործեաց. և ով ոք ի ցեղիցս որոշելոց ընտանի և մերազնեայ, և ոյք ոմանք եկք ընտանեցեալք և մերազնացեալք. և զգործս և զժամանակս իւրաքանչիւր գրով դրոշմել, ի ժամանակէ անկարգ ամբարտակին շինուածոյ մինչև ցայժմ—գեղեցիկ զայս քեզ համարեալ ի փառս և անչյան հեշտութիւն...*

*Աւարտեցան գիրք երրորդ, յանկ ելանելոյ* Պատմութեան Հայոց Մեծաց:

## 14
## ՂԱԶԱՐԱՅ ՓԱՐՊԵՑԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

*Երևան, 1982 թ. էջ 6, 8, 14*

*Հեղինակ՝* Ղազար Փարպեցի

*Սկիզբն Առաջին գրոց Պատմութեանն Հայոց, որում սկիզբն արարեալ պատմեաց ստուգիւ այրն երանելի* Ագաթանգեղոս, *սկսեալ ի մահուն* Արտաշրէ *յորդւոյ* Սասանայ *բռնաւոր* Ստահրացւոյն, *և զդարձ աշխարհիս Հայոց յանգիտութենէ կռապաշտութեան յաստուածագիտութեան ճշմարտութիւն ի ձեռն սրբոյ նահատակին* Գրիգորիսի. *յորոյ անուն և զգիրսն անուանեալ կոչեն «Գրիգորիսի»։*

*Երկրորդ գրոց սկիզբն արարեալ պատմելոյ ի կարգէ Առաջին գրոցն՝ գիրս բազմափոփոխս աշխարհիս Հայոց, զբարեաց և զչարեաց, զվարս և զգործս զարանց սրբոց և զպղծոց, զժամանակի պատերազմաց և զխաղաղութեան։ Պատմեալ զայս ամենայն* Փոստոս *ումն* Բուզանդացի, *մինչև ցթագաւորութիւնն* Արշակայ *(որդւոյ* Պապայ, *որդւոյ* Արշակայ,) *որդւոյ* Տիրանայ. *առ որով թագաւորութեամբ բաժանեալ աշխարհս Հայոց՝ պատառեցաւ յերկուս ծուէնս, ըստ օրինակի հնացեալ ձորձոյ։ Եւ աւարտեալ աստանօր զբան Պատմութեան իւրոյ՝ մնացուցեալ հանգոյց. զոր անուանեալ կոչեն զանուն գրոցն Հայոց պատմութիւն։*

*Երրորդ Պատմութիւնս այս ի կարգէ նորին ոոոց շարադրեալ տկա-*

բութեանս մերում, յոր հարկաւորեալ հրամանաւ իշխանաց և բանիւ սուրբ վարդապետաց՝ տուաք զանձինս յայսպիսի գործ կարևոր... եւ գրել զայս ամենայն մինչև ցօր սկզբան մարզպանութեանն Հայոց Վահանայ Մամիկոնէից տեառն և մեծի զօրավարին Հայոց և մարզպանի. և դադարեալ հանդուցից յայնմ տեղւոջ զբան վաստակոց պատմութեանցս այսոցիկ։

Որում արթնամիտ խորհրդականութեամբ ուշադրեալ այսմ ամենայնի մտաւոր և քաջ այրն Վահան տէրն Մամիկոնէից, զօրաւարն Հայոց և մարզպանն, որ բազում և անհամար ուզզութեանց աշխարհիս Հայոց ի ժամանակս իշխանութեան իւրոյ եղեւ արարող, անձամբ և զայլս յորդորելով զբազումս։ Սա որպէս և այլ ամենայն բարւոյ իրօք հոգացեալ զՀայաստան աշխարհի իրս՝ առաւել ևս զայս ի դէպ և պատշաճ համարեցաւ. ի մնացեալ տեղւոյ պատմութեան Երկրորդ գրոցն աճեցուցանել յառաջ և գրել յայնմհետէ զեղեալս յաշխարհիս Հայոց։ Բազում զգուշութեամբ գրել և կարգել մի ըստ միոջէ զամենայն գհոգևորացն զառաքինութիւնս և զարանց քաջաց զկատարումն։ Որպէս զի զհոգևորացն զբարի վարսն լուեալ բազմութեան ժողովրդոցն՝ նմանողք լինել ցանկասցին մարդիկ ճգնութեանց նոցա, և քաջքն լսելով զայլոց զգործսն յառաջագոյն քաջացելոցն՝ յաւելեալ յանձանց քաջութիւն՝ անուանի յիշատակ թողցեն զկնի իւրեանց՝ անձանց և ազգի։ Իսկ ծոյլքն և վատքն հայելով յանձինս և լսելով զայլոց զպարսավանս՝ ի բարի նախանձն կրթեալք ջանասցին լաւանալ։

Ըստ այսմ օրինակի զդուշացեալ ստիպեցուցանէ զմեզ տէրն Մամիկոնէից Վահան, զօրավարն Հայոց և մարզպան. որոյ հասեալ հրաման առ իս Ղազար Փարպեցի...



Զ VI

## 15

## ՂԱԶԱՐԱՅ ՓԱՐՊԵՑՒՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ԵՒ ԹՈՒՂԹ ԱՌ ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

*Փարպեցի, «Պատմութիւն Հայոց», Երևան, 1982 թ., էջ 448*

Խմբագիր–գրիչ

*... Զերրորդ Պատմութիւնս Հայոց երանելի իմ* Ղազար *պատմագրեաց։ Ընդ նմին դրեցաք և զԹուղթս, զի ընթերցասէրքն զՊատմութիւնս կարդալով, ընդ նմին և զԹուղթս ընթերցեալ՝ զփորձ առցեն նորա լաւութեան բանին*[1]*։*

## 16

## ԳԻՐՔ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ ԵՒ ՄՆԱՑՈՐԴԱՑ

*Երևան 1522 (ԺԲ դ.)*

*Գրիչ՝* Գէորգ մականուամբ՝ Մանկիկ

*Վայր՝* Յոհաննու վանք

181ա *Աստանօր*[2] *յանկ ելեալ աւարտեցաւ հրեշտակապատում տառս աստուածային մատենից, որ պատմէ զվէպս անցեալ ժամանակաց ընտրեալ յառաջագոյն ազգին Իսրայէլի զկարգ թագաւորաց, և զյորովայնէ կոչումն սրբոց մարգարէիցն և կոչի Թագաւորութեան գիրք. առ սմին եղեալ զՄնացորդսն և զՄնացորդաց մնացորդսն. զոր յոյժ ցանկացօղ եղեալ ոմն ի յընտրեալ քահանայից Աստուծոյ* Աշոտ *կոչեցեալ, և ի խնդիր ելեալ իբրև ական պատուականի, ետ գծագրել զսա ի յարդար ստացուածոց իւրոց։ Քանզի սոյն այս այր ընտրեալ գոլով ըստ մարմնական քաղաքականութեան ի հռչակեալ մայրաքաղաքէն* Դունայ*, կեցեալ սակաւիկ ինչ ամս ընդ ամուսնութեան կարգս, և մնացեալ այրի՝ ոչ ունելով զաւակ մարմնական՝ յանապատս փութացեալ, զաւակ ստանալով զտառս աստուածային մատենից, որ և ստացեալ զսա ձեռամբ տրպի և աղկաղկի* Գէորգ *կոչեցելոյ՝ մականուամբ* Մանկիկ*, ի տիս համբերութեան ի մայրաքաղաքէն* յԱնւոյ[3] *եկեալ և պանտխտացեալ ի դրան Սրբոյ Կարապետիս։*

---

[1] *Գրիչը ժամանակակից է Փարպեցուն և մտերիմ, ուստի գրած պետք է լինի Ե դարի վերջերին կամ Զ դարի սկզբներին։*

[2] *Հիշատակարանը քաղում ենք. «Յոհաննու վանից» կոդակից, որ արտագրված է Զաքարիա սարկավագի ձեռքով և մուծված Մատենադարանի № 1522 Տաւնականում (էջ 483ա—493բ), և, ապա, իր իսկ շարագրած Պատմութեան մեջ (ձեռ. 3024, էջ 133բ)։ Վանքի կառուցման մասին հիշելիս, գրում է. «եւ այլեւս վկայութիւնք գրոց գոի, եւ Թագաւորութեանց և Մնացորդաց գիրք մի կայ ի վանքս և յիշատակարանն գրեալ է ի նմա, այսպէս». և շարադրում է հիշատակարանը (էջ 184ա—184բ)։*

[3] *«Անւոյ» փոխարեն Ղ. Ալիշանը առաջարկում է «Դընոյ» (Այրարատ, էջ 165, ծթ. 3)։ Ստացող Աշոտը նույնպես՝ էր «ի հռչակեալ մայրաքաղաքէն Դունայ»: «Մայրաքաղաք» են կոչվում նաև եպիսկոպոսանիստ վանքերը։*

*Եւ եղև գործառնութիւնս այսմ իրի յայսմ ամի, յորում վերստին նորոգեցաւ Սուրբ Կարապետս մեծահռչակ՝ քարամբ պատուականօք. քանզի յառաջ փայտիւ էր ծածկեալ գլուխ սորա, զոր այս այր* Աշոտ *բազում աշխատութիւն յանձն առեալ՝ կիսատ թիակօքն զկիրն ի վեր հանելով՝ տայր ի շալակս եղբարցն տանել։ Արդ՝ ընդ հովանեաւ սուրբին Սբբոյն Կարապետիս, գծագրեալ եղև այս քաղցրաճաշակ պատմութիւնս՝ ի մէջ բազմախուռն միաձնեցեալ եղբայրութեանս, և տուաւ ի սոյն եղբայրանոցս սուրբ, յիշատակ հոգւոյ իւրոյ։*

184բ *Եւ ետոյ եղև հայր վանացս յամի թուականութեան Հայոց նոր եդելոյ երկրորդ ամի*[1], *յաւուրս տեառն* Մովսիսի *կաթուղիկոսի՝ որ ի* Վաղարշապատ: *Շնորհողին ամենայն բարեաց Աստուծոյ փառք յաւիտեանս, ամէն։ Ընդ նմին և* Գէորգ Մանկիկս *մի անտես առնէք յիշել յաղօթս։*

## 17
## ԱԹԱՆԱՍԻ ՏԱՐՈՆԱՑԻՈՅ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

*Երևան 2679 (981—1080 թթ.)*

*Հեղինակ՝* Աթանաս

*Վայր՝* (Դվին)

162բ *Յաղամա ցնոր թվականս ամք ՑՃԾԶ (6156)։ Դարձեալ սկիզբն արարի Նոր թուականին յԼԴ (34) ամիս* Յուստիանոսի *կայսեր եւ ՅԴ (304) էր Հոռոմի թուականս, [եւ ԼԱ (31) ամէն* Խոսրովայ]*[2]:

## 18
## ՃԱՌԸՆՏԻՐ

*Երուսաղեմ, 1—Գ (1418 թ.), Պողարյան, Ցուցակ, Ա, էջ 30, Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 3—10*

*Հեղինակ՝* Յովսիա

ա

376ա Քրիստոսասիրի Վարազդա՝ Գաբեղինեից տեառն աղաչեալ զՅովսիա ճըշմարտախոհ և երկիւղած ի Տեառնէ զստուգել զՊատմութիւն երանե-

---

1 *Ձեռագրում ժամանակը ցույց տվող երկու փաստ ունենք. առաջին. «Յամի թուականութեանս Հայոց նոր եդելոյ երկրորդ ամի»։ Հայոց նորաձիր թվականը 551-ն է, ավելացրած երկուս կստանանք 553 թվական։ Երկրորդ փաստն այն է, որ գրված է. «յաւուրս տեառն Մովսիսի կաթողիկոսի», որը գահակալել է 573—604 թթ.։ Ղ. Ալիշանի կարծիքով «երկրորդ ամից» առաջ գրված է եղել քսան, կամ՝ ԻԲ և արտագրողը ընթերցել է «ի Բ» («Այրարատ», անդ)։ Այս դեպքում Հայոց նորագիր 551 թվականին ավելացնելով ԻԲ (22) կստանանք 573, որը համապատասխանում է նաև երկրորդ վկայության թվականին։*

*Բայց այս ոչ թե ձեռագրի գրության թվականն է, այլ Աշոտի վանահայր ձեռնադրվելու, որից հետո պետք է գրված լինի սույն հիշատակարանը։ Հիշատակարանը համարում ենք Զ դարի չորրորդ քառորդում գրված և տեղադրում ենք այդ դարում։*

2 *Գրված է Աթանաս Տարոնացու ժամանակագրութեան վերջում, որն հասնում է մինչև փրկչական ՇԾԲ (552) թվականը և որտեղից սկսվում է Հայոց Նոր թվականը։ Սույն ժամանակագրությունը Եվսեբիոս Կեսարացու ժամանակագրության հետ միասին օգտագործել է Դավիթ քահանա մատենագիրը 10-րդ դարում իր «Ժամանակագրութիւն»-ը կամ «Կայսերք»-ը շարադրելու համար, որը մեզ է հասել հայերեն հնագույն թղթյա ձեռագրում (№ 2679)։*

*Նոր թվարկությունը հաստատվել է Դվին քաղաքում, 584 թ.։*

լեացն Թաքլոյ, և Գիտի և Թովմասու, և Վարոսի նգնաւորաց Քրիստոսի[1]:

*Եւ արդ ըստ իմում կարի կարգեցից զՊատմութիւնս վասն երանելոյն Թաքլոյ, ուստի՞ էր կամ յորմէ՞ գեղջէ և ո՞րպէս յառաջ քան զմիայնանալն վարժեալ դպրութեամբ Քրիստոսի ուսմամբն, և կամ յո՞ր թագաւորաց ամս և կաթողիկոսաց, և ո՞րպէս յայտնեաց զնա Աստուածն և ո՞րչափ ամս կացեալ կատարեցաւ, և ո՞րպէս ի տեղւոջն շինեցաւ եկեղեցի յանուն Սրբոյն Գրիգորի և Թաքլոյ վանք կոչի, և եղբարք Գիտ և Թումաս, որ են պարծանք Հայաստանեացս ի Քրիստոս, զի էր փոխանորդ վարդապետութեամբ Թաքուլ Սրբոյ Մեսրովբա և Ղևոնդի վարդապետացն Հայոց, որպէս ի Կամսարականաց յիշի Պատմութեանն, որ առաւել ասէ քան զՄեսրոպ և զԳառնիկ և զՂեւոնդ։ Նաեւ երանելին Մովսէս քերդողահայրն ի Պատմութեան ուրեմն յիշէ և այսպէս ասէ[2]. Զայսու ժամանակաւ երանելին Թաքուլ երկրորդ Անտոն ընդ վիշապս և ընդ գազանս բնակեալ ընդանենայր, և իբրև զանմարմին մարմնով հանդիսանայր, և այլ ոչինչ աւելի քան զայսոսիկ գեղեցկագոյն հիւսէ Պատմութիւնս։ Արդ այսպէս արարին սկիզբն ճշմարտագոյն տպաւորել զժամանակն սրբազանիցն...*

## Բ

*Այլ ոչ եթէ զամենայն ոճով գրեցի, այլ ի բազմաց ղսակաւն զոր ինձէն ականատես եղէ։*

*Արդ, անցելոց սխալանացն Աստուած թողութիւն արասցէ փառաւոր անձինդ, արդ, փութով եկեսցես երկրպագութիւն վկայիցս սրբոց և խնդութեամբ խնաւոր պարգևաւքն դարձցիս[3]։*

---

[1] *Ցիշատակարանքում Պատմութիւնը բերված է լրիվ և դրված է Ե—Զ դարերի տակ։ Վերնագրում վրիպել է «Վարոսի» անունը «Վարուցը» ձևով։ Բերում ենք հատվածներ, որոնք հիշատակարանային բնույթ ունեն։*

[2] *Թաթուլի մասին հիշում են Ասողիկը, Սամվել Անեցին, Վարդանը, Կիրակոս Գանձակեցին և Մխիթար Այրիվանեցին,—նկատում է Գ. Հովսեփյանը,—բայց Խորենացու Պատմության մեջ ակնարկ անգամ չկա այդ մասին։ «Պատմութիւն Կամսարականաց», ինչպես նաև Մովսես քերթողահոր վերը հիշված գործը մինչև այժմ անհայտ են։ (Ցիշատակարանք, էջ 4, ծթ. 1, 2)։*

[3] *Պատմությունը պարունակում է հնագույն տեղեկություն «Հայ մատենագրության մեջ գրչության դպրոցների մասին»,—գրում է Գ. Հովսեփյանը։ Բերում ենք այդ տեղեկությունները. «Եւ զԳարեղէնից զուէրունական աւանդն հրամաեաց ի սուրբ տեղիսն և զԱրշարունեաց հայրապետի աւանդն հրամաէաց ի Վանկոյս ի պէտս վարդապետացն, որք զգրչութեան արուեստն ունէին, և ամ յամէ գայր ժողովէր դկրաւնաւորսն և գայր ի վանս Գոկոյ և կատարէր գյիշատակն, և ապա գայր ի մեր ուխտս և աստ տաւնէր զփոխման սրբոյ, որ աւր տասն և հինգ էր Մեհեկի ամսու*

*Եւ յետ ժամանակաց Աշոտ Բագրատունի գայ ի վանքս, տամախմբէ գյիշատակ սրբոյն և դհիւրանոցն շինել հրամայէ և անուանէ զնա Այգի և հաստատուն գրով տայ ի վանքս և որ ղգէցիկ (՞) եկին ի վանքս և ուխտեցին ամ յամէ տալ յԱյգին յիսուն վեցկի և հարիւր այր և քաղաքագեաւղն Կաղագուան ուխտեցին հարիւր վեցկի երկերիւր այր անխափան։*

*Գայր և իշխանն Բագրևանդեա և Արշարունեաց Աշոտ որդի Սմբատա ի վանքս և տա զՕնաւտկոյս հաստատուն գրով, և զՈսկոյն ի Վանգոյս ի պէտս վարդապետացն, որ զգրչութեան արուեստ ունէին և զսուրբ գիրսն յաւրինէին, որք էին երեսուն և վեց վարդապետք» (Ցիշատակարանք, էջ 3)։*



Է VII

19

ԿԸ 619

## ՆՇԱՆԱԳԻՐ ԿԱՐԳԱՑ ԲԱՆԻՑ ԵԶՆԿԱՆՆ ԵՐԻՑՈՒ

*Հովսեփյան, Ցիշատակարանք, էջ 25*

*Հեղինակ՝* Եզնակ

*Քսան եւ իններորդ ամի* Խոսրովայ *արքայից արքայի*[1] *որդւոյ* Որմզդի *(619)... Եղիցի յիշատակ* Եզնակն՝ *ի թարգմանել զգիրս զայս։*

20

ՀԶ 627

## ՍՐԲՈՑ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ ՀԱՅՈՑ ՄՈՎՍԻՍԻ ԵՒ ԴԱՒԹԻ ՀԱՐՑՄՈՒՆՔ ԸՆԴ ԵՐԿԱԲՆԱԿ ՋԱՐԱՓԱՌՍՆ

*Երևան 2607 (1300 թ.)*

*Ստացող՝* Գուրգէն Խարտուղար Հայոց Մեծաց

376ա *Եւ խնդրեցին ի* Մովսէսէ *գրով տալ նոցա զՊատմութիւն Հայոց։ Իսկ նա սկսեալ գրէր զՀայոց Պատմագիրն, և այլ բազում ինչս պէս պէս ճառեալ ի տնաւրինութենէ փրկչին և բազում ինչ. արար և Քերականին մեկնութիւնն, և արարին զեղանակս երաժշտականացն ձայնաւորս բազումս ի պէտս եկեղեցւոյ, այլ վասն խաւսից վարդապետութեան ոչ էր առ ուրեք, վասն դառն ժամանակին արար։*

376բ *Եւ* Դաւիթ *գրեաց զՍահմանացն գիրսն, զոր էր առեալ փիլիսաւփայիցն, արար և զՄեկնութիւն քերականին, և ոչ ժամանեցին ելանել ի խաղաղական ժամանակի, զի զաղլցեալ և զամբարեալ զգանձն զայն զոր ի վաղ ժամանակաց ի յամանի պահեալ ունէին, զոր և ընդ իւրեանս տարան առ տուողն պարգևացն՝ ե. ննջեցին բարեաւք ի Քրիստոս։*

*Արար և* Մամբրէ *և* Պաւղոս *և* Աբրահամ *ճառս ոչ սակաւս՝ պէս պէս խորհրդոց։*

*Եւ արդ, յետ բաղում ժամանակաց գրեաց զգիրս զայս, իբրև Աստուած հասոյց զմեզ ի ժամանակս յայս, յորում Հ և Զ (627) էր թուական Հայոց։*

*Ես՝* Գուրգէն *քարտուղարս* Հայոց Մեծաց *և սուրբ թագաւորացն պռթոյապաթար, ստացող եղէ գրոցս այսմ։ Բայց զարմանալի է ի*

---

[1] *Խոսրով Բ Պարսից արքայի(590—628 թթ.) թագավորության քսանիններորդ տարին 619 թվականն է։*

*նախկի յիշատակի դրոցս, այսմիկ, եթէ դրեցաւ գիրքս այս էակքս*[1], *հրամանաւ թարգմանեալ ի յունաց ի հայս տեառն* Յովհաննիսի *Հայոց կաթողիկոսի* Գաբեղենացւոյ, *ի ԻԵ (576) թուականութեանն Հայոց։*

*Վկայէ այսմիկ* Սարգիս Արաբացի *եպիսկոպոս՝ ճշմարիտ վկայութեամբ։*

*Աւրհնութիւն և գովութիւն, և փառք, և պատիւ Հաւր եւ Որդւո և Սուրբ Հոգւոյն այժմ և միշտ յաւիտեանս։*

ՂԸ 649

## 21

## ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՎԻՃԱԿԻՍ ԱՐՏԱԶՈՒ, ԶՈՐ ԳՏԱՔ Ի ՀԻՆ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԷ ՄԻՈՋ, ՈՐ ԷՐ ԳՐԵԱԼ (Ի) ՂԸ (649) ԹՈՒԱԿԱՆ[ԻՆ] ՀԱՅՈՑ, ՋԵՌԱՄԲ ՅՈՀԱՆՆԷՍ ՍՊԱՍԱՒՈՐԷ, Ի ՍՈՒՐԲ ՈՒԽՏԷՆ ՄԱՂԱՐԹԱՅ (1330 Թ.)

«*Արարատ*», *1868, էջ 102—104*

**Յաջորդք առաքելական վիճակիս Արտազու և հրաշագործ սուրբ շիրմիս առաքելոյն Թադէոսի**

*Գրիչ՝* Յոհաննէս վարդապետ

*Վայր՝* Մաղարթայ ուխտ

*Զկնի*[2] *սորին (*Ղևոնդիոս *եպիսկոպոսի) չկարացաք գտանել թէ ոյք յաջորդեալ են ի տեսչութիւն եկեղեցւոյն առաքելական վիճակիս* Արտազու...

*Ի ժամանակս Սրբոյն* Գրիգորի Պարթևի *լեալ իցէ քրիստոնէութիւն, ընդ նմին և տեսուչ եկեղեցւոյ ի թաքուն և ի խաւարչուտ տեղւոջ։ Բայց ի լուսաւորութենէն* Տրդատայ *մեծի արքայի Հայոց և բովանդակ լուսաւորութեան տանս Թորգոմայ, որ եղև առաքելական քարոզչութեամբ սրբոյն* Գրիգորի, *որքան որ կարողացաք գտանել ի հին զրուցատրութենէ և արձանագրաց անտի հաւաքելով մի առ մի դիցուք աստ։*

*Եւ դու ընգալ շատաշչիր, ով հանդիպող, և յիշեա զմեղապարտ* Յոհաննէս *սպասաւոր բանին, զի բազումս աշխատ եղէ*[3] *զի գտանիցեմ*

*[1] Հ. Մանանդյանի կարծիքով, «էակք» կամ «էակաց գիրքը» «Ցամրդիքոսի խմբի Արիստոտելի Ստորոգութեանց և, հավանաբար նաև Ցաղագս Մեկնութեան գրոց թարգմանությունները են» և կապ չունեն վերևում նշված վերնագրի հետ («Յունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները», Վիեննա, 1928, էջ 137—141)։*

*[2] Սկսվում է եպիսկոպոսների կարգով, մինչև Գրիգոր Լուսավորիչ, այնուհետև ընդմիջարկում սույն շարունակությամբ։*

*[3] Շարունակում է Գրիգոր Լուսավորչից և հասնում մինչև Բարդուղիմեոս եպիսկոպոս, «որ ի նորոգութեան Հայ թուականին հասեալ է»։*

զժամանակագրական թիւն այլ որքան գտաք գործակցութեամբ Հոգւոյն, նշանակեսցուք։

Բացի սոցանէ չկարացաք գտանել (ասէ հաւաքողն հիշատակագրութեանս) թէ ոյք և զո ոք կարգեալ եղև տեսուչ յայսմ վիճակիս, յաղագս կործանման և աւերման քաղաքիս և վանացս, ի ձեռն բռնաւորաց և չարժից[1]։

## 22

## ՀԱՒՔԱՄՈՒ

ՃԲ 653

Կյուլեսերյան, Ցուցակ Անկիւրիո, 273 (1703), էջ 1089—1090

Գրիչ՝ Յովհաննէս

192 Գիտելի է զի Թէոդորոս րՌուշա[ու]նի կալաւ զաշխարհն Հայոց՝ ամս ԽԷ (47)։ Այս Թէոդորոս է, որ զսուրբ հայրապետն Սահակ առաքեաց ընդդէմ Մռեմետին՝ սակս չաւերելո զաշխարհն Հայոց, և եկեալ ի Խառան՝ եղեւ վախճան նորա...

Եւ զպատմութիւն սորա ես Յովհաննէս անպիտան ծառայ լիապէս գիտեմ, աղբարք։ Մեր թվականն ՃԲ (653) էր, որ այս գծեցաւ։

---

1 Այստեղից սկսվում է Զաքարիայի 1330 թվականի շարադրանքը. «Սոյնպէս և մեք զբազումս աշխատեցաք, բայց չկարողացաք գտանել։ Ուստի կրկին նորոգեցաք բազում աշխատութեամբ սուրբ ուխտս թվին ՉՀԸ (1329)։

Արդ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր, ով ընթերցողք, զվերոյիշեալ Յօհաննէս վարդապետն՝ զհաւաքողն այսմ շարակարգութեանս, ընդ նմին սպասաւոր սրբոյ Առաքելոյն շիրմի և իբր դէտս Արտազու գաւառին՝ Զաքարէա։ Գրեցաւ թվին ՉՀԹ (1330)։

Ապա շարադրում է իր որոնած գտած Պատմությունը, գրված Մեսրոպ Մաշտոցի աշակերտ Ստեփանոս Տարոնացու ձեռքով, որն սկսվում է Գրիգոր Լուսավորչից և հասնում մինչև Բարսեղ Կեսարացի ու ավարտվում Զաքարիայի հիշատակագրությամբ. «Ահա այսքան սակաւուք բաւեսցի, և զիս յիշելոյ մի դանդաղիր, ո՛վ ընթերցաւղ, աղաչեմ։ Թվին ՉՀԹ (1330)»։

Սույն երկը հրատարակել է Վահրամ վարդապետ Մանկունին։ Այն գտնվել է «խիստ մաշված հին մագաղաթյա երեք թերթերի» վրա, որ Պոլսում գտնված ժամանակ «Վեհափառ կաթողիկոսը վերոհիշյալ երեք թերթերը, հետը գիրք մ'ալ «Տօնացոյց Հայաստանեայց եկեղեցւոյ ՉԼԵ (1286) Հայոց թվականին գրված ի Սյունեաց ձեռք բերավ Պ. Թ. Միհրդատյանցէն Ս. Էջմիածնա մատենադարանին մեջ պահելու համար» (Արարատ, 1868, էջ 41, ծթ.1)։

Գ. Հովսեփյանը Յիշատակարանքը սկսում է սույն թերթերում հիշված Ստեփանոս Տարոնացու մասին վկայությամբ (1, էջ 2), իսկ 11 համարի տակ (էջ 45—46) դնում է 649 թվականի հիշատակության մասը։ Մնացածը հղելով 1329—30 թվականների շարքը, Հովհաննեսին համարում է «գրիչը, որ ապրում էր 1329 կամ 1330 թվին Մաղարթա վանքում», որին պատկանում է մագաղաթյա երեք թերթերի գրությունը։

Սակայն այդ թերթերի գրիչը՝ Զաքարիան է, ինչպես տեսնում ենք, իսկ Հովհաննեսը նախագաղափարի՝ 649 թվականի շարադրության հեղինակն ու գրիչն է։

## 23
## ՊԱՀՈՑ ԴԻՐՔ ԲԱՐՍՂԻ

ԾԺ 661

*Երևան 822 (1285 թ.)*

Վայր՝ Դամասկացոց քաղաք

156ա Ի ծնունդ Փրկչին
Դաւիթ *թարգման* Տարաւնացի *զճառս զայս յետոյ դարձոյց ի յունէն ի հայ բարբառ, ի* Դամասկացոց *քաղաքին, հրամանաւ Համազասպա կորապաղատի* Մամիկոնէնից *տեառն*[1]։
*Եւ եղիցի ալրհնութիւն Տեառն ի վերա նոցին։*

## 24
## ԱՐՈՒԽՍՏ ՀԱՄԱՐՈՂՈՒԹԵԱՆ

ԾԺԵ 666

*Երևան 4066 (1283 թ.)*

Հեղինակ՝ Անանիա Շիրակացի

10բ *Վասն որոյ իմ խնդրեալ*[2] *բազում աշխատութեամբ և ճշգրտիւ փոյթ ի մէջ առեալ բերի ղքեղ* յերկիրս Հայոց *և ի քրիստոսա[էր] վիճակ Սրբոյն* Գրիգորի:
*Եւ սկիզբն քանիամնութեան բերման թուիս, յորժամ լցեալ էր ՌԿԸ ա[մ] ի կուսական յարգանտէ Աստուածն բանի, և ի մետասաներորդի*

---

[1] *Համազասպ Մամիկոնյանը իշխել է 654—661 թվականներին։ Հիշատակարանը դնում ենք 661 թվականի տակ, որպես հնարավոր վերջին թվական։*

[2] *Այս բառից հետո գրիչը գրել է «զգաս» և գծելով սխալը, վրան կետեր է նշանակել։ Ա. Աբրահամյանը «Շիրակացու Մատենագրությունում» (Երևան, 1944) այդ աչքաթող է արել։ Չի վերծանել «փոյթ» բառը, «քաջ» բառ է ավելացրած վերջին նախադասության մեջ «զուգ» բառից հետո։ Ա. Աբրահամյանը թվականը ուղղել է այստեղ՝ ՌԿԱ (661), որը համապատասխանում է բյուզանդական Կոստանդին Թագավորի ԺԹ (19) տարվան, իսկ մի այլ աշխատության մեջ առաջարկում է 668 թվականը (Ա. Աբրահամյան, Գ. Պետրոսյան, Անանիա Շիրակացի (ռուս.) Երևան, 1970, էջ 33), որ ճիշտ չէ։ Ընդունելի է 661 թվականը, որը համապատասխանում է Անանիա Շիրակացու Տրապիզոնից հայրենիք վերադառնալու տարվան։ Այս իրողության մասին չարադրանքը կատարվել է այդ թվականից հետո և Անանիա Շիրակացու Ջատկի ճառի գրությունից առաջ, մոտավորապես 663—664 թվականներին։*

*Վերոբերյալ հատվածը պահպանվել է «Եւթնագրեանք»-ի ընդօրինակություններից մեկի վերջում, սակայն մասն է կազմում Անանիա Շիրակացու «Քննիկոն»-ի «Թվաբանութիւն» բաժնի, ուր հեղինակը հիմնավորում է այդ գիտության Հայաստան բերելու անհրաժեշտությունը և պատճառաբանում իր գործունեության կարևորությունը, ինչպես նաև նրա հետ կապված դժվարությունները։ Այս հատվածի մի մասն էլ հայտնի է որպես Շիրակացու «ինքնակենսագրութիւն»* (Ա. Մաթևոսյան, *Անանիա Շիրակացու «Քննիկոն»-ը, «Լրաբեր», 1974, №№ 7, 8)։ Շիրակացու այս և հետագա հիշատակարանները դնում ենք 666 թվականի տակ, որպես «Քննիկոնի» ավարտման տարի, որի մասն են կազմել նշված երկերը։*

*շրջագայութեանն, ի ԺԹ (19) ամի* [Կ]ոստանդիանոսի: *Ես* Անանիէ Շիրակացի *ի [գ]եղջէ* Անէնից։

*Եւ դուք, աշակերտք հայեցէք և զա[ր]մացարուք։*

## 25

## ԱՆԱՆԻԱՅԻ ՇԻՐԱԿԱՑՆՈՅ ՀԱՄԱՐՈՂԻ ԱՍԱՑԵԱԼ Ի ՋԱՏԻԿՆ ՏԵԱՌՆ

*Երևան 2679 (981 թ.)*

*Հեղինակ՝* Անանիա Շիրակացի

*Եւ քանզի չեն տեղեակ բազումք թուոց մանաւանդ շինականք, եւ վարդապետութիւն Տեառն մերոյ տարածեցաւ կալաւ զաշխարհ ամենայն, վասն այնորիկ ՇԼԲ (532) ամաց միանգամայն համարեցա|| ըստ*
20ա *թ/ո/ւոյ Աղեքսանդրացւոցն ի ՊԻԸ (828) ամէն մինչեւ յամն ՌՅԿ (1360) այնոցիկ որոց կայցեն յաշխարհի, կազմեցի ես* Անանիայ *որդի* Յովհաննիսի Շիրակայնւոյ՝ *եւ դրոշմեցի ս[ռ]անձինն զբնաւ մի մի ամ ՇԼԲ (532) ԻԸ (28) կանոն, որովք զամենայ[ն] համարն բովանդակեցի ՇԼԲ (532) կարգ. եւ զատի(կն)*[1] *մեկնեցի զմի մի կարգ առ մի մի տարի։*



## 26

## ԼՈՒՍՆԱՑՈՅՑ

*Թոփչյան, Ցուցակ Արմաշի, էջ 37 (ԺԷ դ.)*

*Հեղինակ՝* Անանիա Շիրակացի

*Արդ ես՝* Անանիա Շիրակացի *ստուգիւ քննեցի զամենայն աւուրս ընթացից եւ եղանակաց լուսնի ըստ իւրում շրջագայէ և խօրանօք փակեալ արձանացուցի, զի անաշխատ զխընդրողսն պահեսցէ, եւ եդի յառաջ զընծայումն լուսնի եւ զկնի լրումն, թէ ի քանիս ամսոյն լինի, եւ թէ ի տուընջեան, թե ի գիշերի եւ թէ յորում ժամու...*[2]

---

[1] *Բնագրում՝ «զատի» ձևով։ Այդպես է նաև տպագրում* (Շիրակացի, *Մատենագրություն, էջ 299)։ Ուղղում ենք ըստ Անդրեասի Զատկի ճառի, ուր ասված է. «Ես* Անդրեաս *եղբայր* Մանգոսի *եպիսկոպոսի, կազմեցի եւ դրոշմեցի առանձինն, զբնաւ մի մի ամ ի ԺԵ կանոն եւ երկերիւր կարգ, և Զատիկն մեկնեսցէ զմի մի կարգ, առ մի մի տարի» («Խաւսք Անդրեասի իմաստասիրի վասն Զատկաց, Մատենադարան, ձեռ. № 1999, էջ 19բ)։ Զատկի, ինչպես և Ցայտնութեան ճառը Շիրակացին գրել է Անաստաս կաթողիկոսի համար, մինչև ծառզատիկը, որը հանդիպում է 665 թվականին։*

[2] *Պահպանվել է մինչև այստեղ։ Այս Շիրակացու Տոմարի մասն է, որը զետեղված է եղել «Քննիկոնի»-ում։*







## 27

## ԱՆԱՆԻԱՅԻ ՇԻՐԱԿԱՑԻՈՅ ՔՆՆԻԿՈՆ

### [Պատճառ Քննիկոն գրոց][1]

*Երևան 699 (ԺԶ գ.)*

*Հեղինակ՝* Անանիա Շիրակացի

*Վայր՝* Անանիա գիւղ

*Ես՝* Անանիա Շիրակացի *ի* յԱնանիայ *գեղջէ, որ բաւանդակեցի*
*զդպրութիւն մերոյ ազգիս* Հայաստանեաց, *և հմուտ եղեալ աստուածա-*
*շունչ գրոց, ուր ըստ ուրէ լուսաւորէի զաչս մտաց իմոց ըստ բանի*
*Սաղմոսերգողին։ Եւ յամենայնի լսէի զերանութիւն իմաստնոց և որք*
*իմաստութեան են ի խնդիր՝ որպէս ի Սողոմոնէ է հրամայեալ—«Ստա-*
*ցիր զիմաստութիւնն, և յաւել արգել զտգիտութիւնն՝ խաւար կոչելով*
179ա *զծնողն». և՝ «Դու զգիտութիւն մերժեցեր, մերժեցից և ես զ//քեզ»։ Եւ*
*ես զարհուրելով ի յայսց սպառնալեաց և դարձեալ երանութեանն կա-*
*մեցայ ժամանել, գնալ փափագեցի իմաստասիրութեանն։ Յոյժ կարաւ-*
*տեալ արուեստի համարողութեանն, խորհեցայ՝ եթէ ոչինչ յարմարի*
*առանց թուոց՝ մայր կարծելով ամենայն իմաստից։*
*Եւ վասն զի ոչ գտանէր յաշխարհիս* Հայոց *մարդ ոք, որ գիտեր*
*իմաստասիրութիւնն, այլ և ոչ անգամ գիրք արուեստից ուրեք գտա-*
*նէին, ապա և ի* Յունացն *դիմեցի յաշխարհ։ Եւ հասեալ իմ ի* Թէոդո-
սուպալիս՝ *գափ անդ այր մի բանաւոր և հմուտ գրոց եկեղեցականաց,*
179բ *որ կոչէր* Եղիազարոս. *նա պ//ատմեաց ինձ եթէ գոյ այր համարող յաշ-*
*խարհին* Չորրորդ Հայոց, Քրիստոսատուր *անուն նորա։ Եւ իբրև չոգայ,*
*գտի զոր ասաց ինձ, եւ արարեալ իմ առ նմա աւուրս Զ (6) ամսեայ,*
*գիտացի, զի ոչ ունէր զբաւանդակութիւնն արուեստին։*
*Այնուհետև աճապարեցի երթալ ի* Կոստանդինուպալիս, *և պատա-*
*հեաց ինձ ի ծանաւթից իմոց, որք անտի էին ուղևորեալք, ասեն ցիս.*
*«Զմէ՞ այսքաննեացս յանձն առեր ճանապարհի երկայնութեան. ո՞չ ա-*
*պաքէն* Տիւքիկոս *վարդապետ* Բիւզանդիոյ *հուպ է առ մեզ ի ծովեզր*
180ա Պոնտոսի, *ի քաղաքն որ //կոչի* Տրապիզոնն, *այր լի իմաստութեամբ*
*և գիտակ հայերէն դպրութեան և լեզուի, և երևելի թագաւորաց»։ Եւ*
*հարցեալ իմ զնոսա եթէ՝ «Ուստի՞ գիտէք դուք զայս»։ Եւ նոքա ասեն.*
*«Բազում ընդ այն ճանապարհ հորդեալ տեսանէաք զյոլովս եկեալ առ*
*նա ի կողմանց վասն հզաւր գիտութեան նորա. այլ և այժմ իսկ նաւա-*
*կից մեզ եղև* Փիլաքր *սարկաւագ հայրապետին* Կոստանդինուպալսի,
*որ բազում մանկունս ածէր առ նա յաշակերտութիւն։ Եւ եկեալ մեր ի*

[1] *Սույն գործը մատենագրության մեջ հայտնի է «Անանիայի Շիրակացւոյ երիցս երանեալ վարդապետի վասն որպիսութեան կենաց իւրոց», որպես առանձին ստեղծագործություն, ուր, իբր, հեղինակը շարադրել է իր կենսագրությունը։ Մինչդեռ Գրիգոր Մագիստրոսի վկայությամբ, այն եղել է «Քննիկոնի» մասը, և գտնվել է գործնական թվաբանության սկզբում, ինչպես հանդիպում ենք մի շարք ձեռագրերում։ (Տե՛ս վերը նշված մեր հոդվածը)։*

Սինաւպ՝ պատահեալ ընկերաց մերոց, զատուցեալ ի նմանէ ճանա-
180բ պարհորդ//եցաք ի ցամաք, զոր թէ երագ երագ երթիցես, գտցես անդ
զՓիլաւրը»:

Զայս լուեալ, խնդալից սրտիւ փառաւորեցի զնախախնամաւղն Աս-
տուած, որ առ ձեռն պատրաստ ունի զփափագ ծառայից իւրոց, որպէս
և ասէն իսկ, եթէ՝ «Հայցեցէք և գտջիք»: Եւ երթեալ իմ գտի զնա ի
վկայարանի սրբոյն Եւգենիայ. եւ պատմեցի զերթն իմ առ նա: Եւ
ընկալաւ զիս ուրախութեամբ և ասէ. «Գոհանամ զԱստուծոյ, որ առա-
քեաց զքեզ ի խնդիր իմաստից, տանել քեզ զարուեստս զայս ի վի-
ճակի սրբոյն Գրիգորի: Եւ առաւել ուրախ եմ, որ յինէն աշակերտի աշ-
181ա խարհն այն, զի ես ի մանկութեանն ժամանա//կի հարուստ ամս կա-
ցի ի բարիս յերկրին Հայոց և ցնծամ զերթալ գիտութեանս ի նա, զի
ի ժամանակս յայս տիղտոպթիւն էր ի նմա»:

Եւ ետ ինձ Տէր շնորհս առաջի առնս Եւ սիրեաց զիս որպէս զորդի
իւր և պարապեաց յիս յամենայն խորհրդոց իւրոց, մինչև նախանձեալ
ընդ իս ամենայն աշակերտակցաց իմոց, որք ի դրանէն արքունի:

Եւ արարեալ իմ առ նա ամս Ը (8), ուսայ լիով զարուեստ համա-
րողութեան: Նաև դոյզն ինչ յայլոցն տեղեկացայ գիտութեանց և հմուտ
եղէ գրոց բազմաց, որք և ոչ ի մերս են թարգմանեալ լեզուս. զի ամե-
181բ նայն կայր առ նմա՝ յայտնիք // և գաղտնիք, արտաքինք, արուեստա-
կանք և պատմագիրք, բժշկականք, ժամանակագիրք. և զի՞ ես մի մի
անուանիցեմ, քանզի չիք ինչ գիրք, որ առ նմա ոչ գտանէր: Եւ թարգ-
մանութեանց այսպիսի ունէր շնորհս ի պարգևաց հոգւոյն սրբոյ, որ
իբրև կամէր թարգմանել զգիրս յունարէն դրեալս, ոչ դեգերումն ինչ
առնոյր որպէս այլ թարգմանչացն, այլ ի հայերէն ընթեռնոյր լեզու
իբրև զհայերէն դրեալս:

Բայց կամիմ ոչ տգէտս զձեզ լինել ամենահմուտ առն լաւութեան,
182ա այլ ի գիտութիւն ձեզ հասուցից պատմութեամբն՝ թէ զիա՞րդ զմե//րս
գիտէր լեզու և կամ յայնչափ վարժեցաւ յարուեստ:

Սա է յաշխարհէ Պոնտացւոց ի Տրապիզոնտ քաղաքէ, մանկութեանն
ժամանակաւ զինուորեալ ի դուռ Յոհանու զաւրավարի Տիբերի կայսեր, որ
ի Հայս և ամս յոլովս արարեալ մինչև ի ժամանակս Մաւրկայ թագա-
ւորին. եւ ուսաւ զմեր լեզու և զդպրութիւնն: Իսկ ի ժամանակի յար-
ձակման զաւրացն Պարսից ի վերայ զաւրացն Յունաց, որ եղև մերձ
յԱնտիոք, պատահեցաւ և սա վիրաւորեալ ի պատերազմին փախստեայ
անկանի յԱնտիոք. եւ ամենայն ինչք իւր առան յաւարի:

182բ Եւ իբրև // բազում աւուրս անցուցանէր ի հիւանդութեանն ունե-
նալով և զկսկիծ կորստեան ընչիցն, խնդրէր յԱստուծոյ և զբժշկութիւն
վիրացն և ուխտէր ասելով. «Թէ շնորհեսցէս ինձ կեանս առողջս, ոչ
գանձեցից գանձս անցաւորս, այլ զհետ ընթացայց գիտութեան գան-
ձու, որպէս բան իմաստնոյն ասէ. «Ընկալարուք զխրատ և մի զարծաթ,
և զգիտութիւն առաւել քան զոսկի ընտիր»:

Եւ պարգևեալ Աստուծոյ զհայցուածսն, գնաց ողջեցեալ ի սուրբ
քաղաքն Երուսաղէմ: Եւ արարեալ անդ ամիս մի՝ փոխեցաւ յԱղեքսանդ-

*րիա: Եւ ամս երիս կայր անդ ի հրահանգի։ Եւ ապա չոգաւ ի Հռոմ և
183ա արար//եալ անդ տարևոր ժամանակս, գայ ի Կոստանդինուպոլիս. և
գտանէ անդ այր երևելի, որ վարդապետէր իմաստասիրաց քաղաքին։
Եւ եկաց առ նմա յուսման ժ (10) ամս ոչ սակաւս և կատարեալ իմաս-
տասիրութեամբ, դարձաւ ի տեղի իւր։ Թէպէտ յոյժ աղաչեալ ի հայ-
րապետէն և յիշխանաց քաղաքին, զի մի գնացէ անտի, իսկ նա ոչ ան-
սայր նոցա՝ յերկիր իւր գթալով ըստ գրեցելումն։ Եւ եկեալ ստացաւ
վարս ճշմարտութեան։*

*Իսկ յետ սակաւ ամաց վախճանեցաւ վարդապետն։ Եւ ոչ ղոք
գտեալ համագունակ նմա յաշակերտաց նորին յաջորդել ի տեղի նո-
րին, յղեն աղաչանս առ ցանկալին Տիւքիկոս՝ գալ և կալ ի տեղի նորա.
183բ մի//անգամայն եւ հրաման առեալ ի թագաւորէն։ Իսկ նա ոչ առնոյր
յանձն ասելով թե՝ «Ընդ երկնայնոցն ուխտեցի թագաւորին՝ չհեռանալ
ի տեղւոջէս յայսմանէ»։ Ապա այնուհետև գային առ նա անդուստ յու-
սումն։ Բայց ես այսպէս եդի ի մտի թէ՝ յառաջատեսութիւն Աստուծոյ
սակս ի մեզ ծաւալման գիտութեան պատրաստեաց զայն։*

*Եւ արդ՝ ես տրուպս Հայաստանեաց ուստոյ ի նմանէ զհղաւր ա-
րուեստս զայս, որ թագաւորաց է ցանկալի, և բերի յաշխարհս մեր՝
առանց ուրուք լինելոյ ձեռնտու, միայն ջանիւ իմոյ անձինս, ազնա-
184ա կութեամբ աղաւթից Սրբոյն //Գրիգորի, թէպէտ և ոչ ոք եղև շնորհակալ
և մեծարաւղ իմոյ աշխատութեան, քանզի և ոչ սիրաւղ իսկ է ազգ մեր
իմաստից և գիտութեանց, այլ ծոյլք են և ձանձրացողք։ Զի իբրև եկի
ես, բազումք ընթացան առ իս յուսումն. և սուղ ինչ խելամտեալ՝ թո-
ղին զիս և գնացին, ոչ մնացեալք կատարման արուեստին, բաւական
համարեալ վարուց կենցաղոյս ղորչափիկն առին. և փոքր ինչ յինէն մե-
կուսացեալք՝ սկսան ուսուցանել զոր ոչն գիտէին, և քարոզել զանձինս
վարդապետս, որումն ոչ էին հասու։*

184բ *Կեղծաւորք և սնափառք, ցուցանեն//ունել զկերպարանս գիտութեանն
և կոչիլ ի մարդկանէ րաբբի՝ հայցեն։ Այլ և ի վերայ իմ պարսաւանս
ասէին տգիտութեան, որք յինքենէ էին յերիւրեալք, որ թէ ունէի չա-
րութիւն իբրև ղնոսն, ոչ ումեք առ ի վարդապետութիւն բանայի զբե-
րան որպէս արդարև ապերախտից։*

*Բայց քանզի զմտաւ ածեմ զտէրունական զձայն, որ ասէն. «Իմ է
վրէժխնդրութիւն և ես հատուցից»։ Եւ դարձեալ թէ՝ «Արկ զոսկիդ իմ
ի սեղանաւորս և ես եկեալ տոկոսեաւք պահանջիցեմ»։ Ապա ոչ այ-
գելի յումեքէ, որք կամեցան ուսանել, և ոչ այսուհետև արգելից։*

*Այլ և զայս (Քննիկոնը, Ա. Մ.) անմահ թողում ձեզ վարդապետ,
որք յետ իմ գայցէք յաշխարհս ուսումնասիրացդ և փափագողացդ ի-
մաստից և գիտութեանց։ Եւ Քրիստոսի ձրեաց շնորհողին փառք, պա-
տիւ և իշխանութիւն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ամէն[1]։*

---

[1] Ա. Շիրակացու «Մատենագրության» մեջ (Երևան, 1944 թ., էջ 209) և մյուս բոլոր դեպքերում Ա. Աբրահամյանը «վրդպտ» «վարդապետ» բառը, հակառակ բոլոր ձեռագրերի, վերծանում է «վարդապետք» և թյուրիմացության մեջ գնում ընթերցողին, իբր Շիրակացին դիմում է վարդապետներին-ուսուցիչներին։ Մինչդեռ Շիրակացին «վարդապետ-ուսուցիչ»

## 28

ԾԽԴ 695

### ՍՈԿՐԱՏԱՅ ՍՔՈԼԱՍՏԻՔՈՍԻ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

*Սոկրատ, «Եկեղեցական պատմութիւն», Վաղարշապատ, 1897 թ., էջ ժէ*

*Թարգմանիչ՝* Փիլոն Տիրակացի

*Վայր՝* Կոստանդնուպոլիս

ա

*Յամի վեցհազարերորդի երկերեւրորդի չորրորդի (6204—5508=696) կենցաղում անցաւորի, որպէս ունի ժամանակագրութիւն Սուրբ Սոփի աւագ եկեղեցի տիեզերական մայրաքաղաքին* Կոստանդնուպոլսի, *եւ եւթնհարուրերորդի չորրորդի Քրիստոսի գալստեանն, և ի հարիւր քառասուն և ի չորս թուականին (695), ի յիներորդումն ընդիտքտոնին, յառաջնում ամի թագաւորութեանն եր[կր]որդ* Ղեւոնի *ինքնակալի աւգուստոսի՝ թարգմանեաց* Փիլոն Տիրակացի *առաջին ձեռնարկութեամբ զգիրս ղայս մասնաւոր ծայրաքաղ ի* Սոկրատայ *Եկեղեցական Պատմութենէն, թողեալ զինքն[ախաւութիւնս] և զթուղթս այլոց եւ զ[ճառս՝ յաղագս նուաղու]թեան քարտի և մագաղաթի [եղելոյ յաւտարութեան]*[1]։

բ

*Ով տէր* Ներսէհ Կամսարական *ապիհպատ պատրիկ, որ եկեղեցեաց ես շինօղ, միշտ ղխաղաղութիւն կալցիս ի Քրիստոսէ, որ տուողն*

---

*համարում է «Քննիկոն» դասագիրքը, որից հատկապես կարելի է իմաստություն և գիտություն սովորել և ոչ նրա կենսագրությունից։*

*Անանիա Շիրակացու «Քննիկոնի» մասին առաջին տեղեկությունը Ստեփանոս Ասողիկի «Պատմութեան» մեջ է։ Հեղինակը ձեռքի տակ է ունեցել Շիրակացու ինքնագիրը և օգտագործել է այն որպես սկզբնաղբյուր։ Այսպես. «Իսկ* Անաստաս *խորհեալ Հայաստանեայցս կարգել տոմար անշարժ այլոց ազգաց՝ եւ հրամայէ* Անանիայի Շիրակացւոյ *կարգել զՔննիկոնն հրաշազան, յորում ղտոմարս մեր կարգեաց անշարժ...» (Ստեփանոս Տարոնացի, Պատմութիւն Տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 99։ «Քննիկոնի» օգտագործման օրինակներ տես նույն տեղում, էջ 8 և 12)։*

*Երկրորդ մատենագիրը իշխան Գրիգոր Մագիստրոսն է, որը ոչ միայն կարդացել է «Քննիկոնի» Շիրակացու ինքնագիրը, այլև նրանից արտագրված օրինակ է ունեցել ձեռքի տակ։ Նա 1037 թ. Պետրոս Գետադարձին ուղարկած նամակում բերում է «Քննիկոնի» բովանդակությունը, ըստ որի «Քննիկոնը» պարունակում է իր մեջ «ոչ միայն քառիցն արհեստք, այլ բոլոր էակացն խոկմունս...», ապա՝ «...յորում մթերեալ են տոգորք աստուածային և ենթակայացեալ ամենայն արհեստի մակացութեան և նախադասեալ է թուականութեանն և երաժշտականութեանն...., երկրաչափութեանն և աստեղաբաշխութեանն... արհեստք և մակացութիւնք, մատենագրութիւնք և գրէ եթէ ամենայն բոլոր վարժումն հռետորական...» (Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 8)։ Այդ մասին տե՛ս մեր Անանիա Շիրակացու «Քննիկոնը», «Լրաբեր» (Հաս. գիտ.), Երևան, 1974, №№ 7—8)։*

[1] *«Փակագծերում գրված բառերը վերցրել ենք Արշ[ալոյս] Արա[րատեան] թերթից (1868 թ., № 845)։ Երևում է ձեռագիրը Հնդկաստանից բերելու ժամանակ անվնաս է եղել, իսկ հետո Երուսաղեմի վանքում անխնամ պահվելով վնասվել է. շատ ցավալի երևույթ»,— գրում է հրատարակիչ Մ. Տեր-Մովսիսյանը (Սոկրատայ Սքոլաստիքոսի Եկեղեցական պատմութիւն, Վաղարշապատ, 1897, էջ ժէ):*

է խաղաղութեան, հանապազ զնախանձ կալցիս զբարեպաշտ թագաւորացն հաստատել ի քում անձինդ զբարեպաշտութեան շանս։ Մի եւ մի իփք տալ պատճառս եւ կորընչիցիս ի ճանապարհացն արդարութեան։ Եւ մի ընդդիմակցացն, որ ի վայր բերիցի՝ քարշեալ եւ խոտորեալ լիցիս, այլ զվերինն խորհելով փախիցիս ի սբաղմանց, եւ երթիցես զհետ արդարութեան, ղհաւատոյ, ղսիրոյ, բուռն հարկանելով կենացն յաւիտենականացն, որպէս բարեպաշտագոյն թագաւորն Թէոդոս: Եւ զամենայն զոր ինչ եւ արասցես յաջողեսցի քեզ, եւ պատերազմն վանի աղօթիւք, զոր լուար ի Պատմութենէս, զոր եւ տեսաք. զի եւ խաղաղութիւնն Քրիստոսի ընակեսցի ի քեզ առատապես, եւ յեկեղեցիս քո եւ յաշխարհի։ Զի որոց ցանկացար Պատմութեանս թարգմանել, ընդ նոյն ճանապարհ թագաւորաց գնասցես, շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր ամենակալի եւ Հոգւոյն Սրբոյն փառք իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն[1]։

29

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ ՍՐԲՈՅՆ ՍԵՂԲԵՍՏՐՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ ՀՌՈՎՄԱՅ

Երևան 1581 (1289 թ.)

Յառաջ քան զութուտասն ամ ի թարգմանելոյ Փիլովնի զգիրսդ զայդ Սոկրատայ զԵկեղեցական պատմութիւն, թարգմանեալ էր Աբասուն Գրիգորի Ջորափորեցւոյ թարգմանի՝ ընդ փառաւորս յիշելոյ Ներսեհի Վրաց իշխանի՝ փեսային Կամսարականաց, ղԳիրս պատմութեան վարուց Սրբոյն Սեղբեստրոսի եպիսկոպոսին Հռովմայ եւ կայր ի քարտիսի։

Այժմ պատշաճ համարեցաք առ նմին գրոց գրել[2]։

---

[1] Ցիշատակարանքում (էջ 49—50) բ հիշատակարանը չի բերված, այլ առաջինից հետո Աբաս Գրիգորի Ջորափորեցու Սեղբեստրոսի վարքի թարգմանության հիշատակարանն է, որը վերաբերում է սրանից տասնութ տարի առաջ կատարված թարգմանությանը (տե՛ս հաջորդը)։ Պատմութեան վերջում պահպանված սույն հիշատակարանը (Պողարյան, Ցուցակ Գ, էջ 518—519) ցույց է տալիս, որ թարգմանության պատվիրատուն եղել է Ներսեհ Կամսարականը։

[2] Այս հիշատակարանը ձեռագրում տեղավորված է Եկեղեցական պատմության վերջում և նախորդում է Սեղբեստրոսի վարքին։ Փիլոն Տիրակացին Պատմութիւնը թարգմանել է 695 թվականին (տե՛ս նախորդը), որից տասնութ տարի առաջ, այսինքն 677 թվականին կատարվել է սույն թարգմանությունը։ Քանի որ հիշատակարանը գրվել է ոչ թե Վարքի թարգմանության տարում, այլ տասնութ տարի հետո, ուստի դնում ենք այդ թվականի տակ։

## 30

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 10680*

Գրիչ

ա

70բ *Կատարեցաւ Աւետարանս Մաթէոսի շնորհիւն Աստուծոյ եւ ողորմութեամբ Սու[րբ] Հոգւոյն, պահպանութեամբ սուրբ խաչիւն, եւ աղաւթիւք ամենայն սրբոց, ընդ հով[անեաւ* Սուրբ Երրորդութեանն]:

*Տէր տուր ղաւրութիւն ծառաիս քո։*

բ

119ա *Տէր Աստուած տուր զաւրութիւն։ Կատարեցաւ գլուխ Մարկոսի շնորհիւն Աստուծոյ*[1]*։*

---

*[1] Գրված է «աոյ» ձևով։*

*Ձեռագիրը Ամենայն Հայոց Կաթողիկոս Վազգեն Առաջինն է նվիրել Մատենադարանին, և ի հիշատակ Վեհափառի մոր կոչվում է «Վեհամոր Աւետարան»։ Այս ավելի հին է, քան Լազարյան (887 թ.) և Մլքե թագուհու (862-ից առաջ) Ավետարանները։ Ձեռագրում բազմաթիվ են գրերի հնագույն նմուշները, որը հնության նշան է։ Այն գրված է երկու գրիչների ձեռքով (Ա—1—121, Բ—122—256), երկուսն էլ վարժ գրիչներ են, որոնց կողմից օգտագործված է Հ և Կ գրերի հնագույն ձևը, որը համապատասխանում է տառաստեղծման Մաշտոցյան սկզբունքներին, և որոնց հանդիպում ենք հնագույն պատառիկներում։ Այստեղ նրանք ներկայացված են տարբեր գրատեսակներով, բայց նույն ձևով։ Խիստ հնաբույր են Վ, Ճ, Ջ, Ծ, Փ և այլ տառերը։ Փ-ն առաջին գրչի մոտ դեռևս երկու տողագծերի միջև է տեղավորված։ Գլխագրերը գրադաշտից դուրս են։ Կան տերունական բառերի պատվագրության հազվադեպ օրինակներ. «աոյ»—«Աստուծոյ» (119ա), «տրն»—«տէրն» (39ա) և այլն։*

*Հին է նաև հիշատակագրությունների ձևը, ինչպես նաև կետադրությունը։*

*Ձեռագրի վերոհիշյալ առանձնահատկությունները թույլ են տալիս այն համարելու Ը, թերևս է դարում գրված։*



Ը VIII

**31**

ՃԿԱ 712

### ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ԴԻՈՆԵՍԻՈՍԻ ԱՐԻՍՊԱԳԱՑԻՈՅ

*Երևան 166 (ԺԴ գ.)*

*Թարգմանիչք*՝ Դաւիթ Եիւպատոս
Ստեփանոս Սիւնեցի

*Վայր*՝ Կոստանդինուպօլիս

333բ *Ի վեցհազարերորդի երկերիւրորդի քսաներորդի ամի արարածոց աշխարհիս (712) ըստ յոմարէն թուո, ի չորեքտասաներորդի դիքտիկոնին, յերկրորդ ամի թագաւորութեանն* Փիլիպպոսի, *թարգմանեցան*[1] *գիրքս այս սրբոյն* Դիոնիսիոսի Արիսպագացւոյ *ի ստոյգ աւրինակաց, ի* Կոստանդինուպօլսի, *ի ձեռն* Դաւթի *հիւպատոսի և թագաւորական սեղանոյն կինառի, եւ ի ձեռն* Ստեփաննոսի *քահանայի և քերթողի, աշակերտի տեառն* Մովսիսի Սիւնեաց *եպիսկոպոսի։*

*Արդ, մաղթեմ գքրիստոսասէր պաշտամեայսդ սրբոյ սեղանոյ, ոյք առնոյք յաւրինակէս յայսմանէ, գրեսջիք և զբանս զայս առ ի յիշատակ բարէխաւսութեան առ Քրիստոս, զի դրեալ եղիջիք և դուք ի դպրութեանն կենաց։*

**32**

ՃԿԵ 716

### ԳԻՐՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԿԻՒՐՂԻ ԱԼԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՅ

*Երուսաղեմ 1072, Պողարյան, Ցուցակ, Դ, էջ 105*

*Թարգմանիչք*՝ Դաւիթ Եիւպատոս
Ստեփանոս Սիւնեցի
*Վայր*՝ Կոստանդինուպօլիս

*Ի վեցհազարերորդի երկերիւրերորդի քսաներորդի չորրորդի ամի արարածոց աշխարհիս (716) ըստ յոմարէն թվոյ, ի չորեքտասաներորդի ենդիքտիոնի, յերկրորդ ամի թագաւորութեանն* [Ան]աստասի, *թարգմանեցան գիրքս Պարապմանց եւ Թղթոց սրբոյն* Կիւրղի *եպիսկոպոսապետին* Աղէքսանդրի *ի ստոյգ աւրինակաց, ի* Կոստանդինուպօլսի, *ի ձեռն* Դաւթի *հիւպատոսի եւ թագաւորական սեղանոյ կինառի, եւ ի*

---

[1] *Լուսանցքում հետագայում ուղղված է «թարգմանեցաւ»։ Թողնում ենք «թարգմանեցան», որ ավելի ճիշտ է, որովհետև թարգմանված է մի քանի գիրք։ Այսպես է նաև Մատենադարանի № 167 ձեռագրում (էջ 330ա)։*

ձեռն Ստեփանոսի քերդողի, աշակերտիս Մովսէսի Սիւնեաց եպիսկոպոսի։

Արդ մաղթեմ աստուածասէր պաշտօնէսդ սրբոյ սեղանոյ, որք առնոյք աւրինակ յայսմանէ, գրեսջիք եւ զբանս զայսոսիկ առ (ի) յիշատակ բարեխօսութեան առ Քրիստոս, զի դրեալ եղիցիք եւ դուք ի դպրութեանն կենաց։

## 33

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂԵՒՏԻԿՈՆԻ[1]

*Վենետիկ 873 (1299 թ.), էջ 507։ Երևան, լուսանկար № 308, էջ 37*

*Թարգմանիչք՝* Դաւիթ հիւպատոս,
Ստեփանոս Սիւնեցի

*Վայր՝* Կոստանդինուպալիս

Ցամի վեցհազարերորդի երկերիւրերորդի քասներորդի չորրորդի (716) արարածոց աշխարհիս, ի չորեքտասան դիկտիոնիս, թարգմանեցան գիրքս Ղևտական թարգմանութեան, յաստուածապահ և ամենաերջանիկ քաղաքս Կոստանդինուպալիս, շնորհիւ Աստուծոյ, ի ձեռն Դաւթի հիւպատոսի եւ կինարի[2] թագաւորական սեղանոյ, որդւոյ Եղիայի քահանայի, դրեալ ձեռամբ Ստեփանոսի քահանայի եւ քերթողի ի Սիւնեաց աշխարհէն, ի փառս եւ ի պատիւ անմահին Աստուծոյ, ամէն[3]։

---

[1] Մեկնութիւնը, որի վերջում գտնվում է սույն հիշատակարանը, 1299 թ. ընդօրինակություն է և գտնվում է Վենետիկի Մխիթարյան Մատենադարանում։ Նույն Մեկնութիւնը պահպանվել է հայերեն թղթյա հնագույն ձեռագրում (Մատենադարան, ձեռ. № 2679), որը վերջից թերի է, բերում ենք հիշատակարանը Վենետիկի օրինակից և Մեկնիչի Առաջաբանը մեր օրինակից, ուր կա Որոդենի հիշատակարանը. «Վստահանալով յանպատմելի զաւրութիւն բարերարի եւ մարդասիրին Աստուծոյ, որ եւ զմեր տկարութիւնս զաւրացուցանէ, վասն զի ի գործ առաք զոր առաջիս եդաք փոյթ։ Եւ զերկրորդ գիրսն յաստուածայնւոյն ի Մովսէսէ շարադրեալն զնյսն անուանեալ, ի ձեռն առընթեր եղելոյդ մեկնութեանց հաւաստեալ սկիզբն արասցուք՝ ի նորա զաւրութիւնն յուսուցեալք։ Եւ երրորդ գրոցս՝ զՂեւտիկոնէս ասեմ, եւ պիտոյ է, որպէս եւ յառաջագոյն ի գիրսն ասացաք ընթերցողի զգիրսս զայս գիտել, թե ի բազում աշխատութեանց սրբոց եւ ուղղափառիցն հարց։ Եւ ոչ այսու միայն, այդ եւ յանփորձիցն պատմողաց, եւ ի հերձուածողաց մասին հանցիպելոց կան մեկնութիւնք որք պատշաճք են ուղիղ աւանդութեան եկեղեցւոյ ի հերձուածողացն ասացեալքն։

Եւ զայս ոչ յանձնէ աւրինադրեցաք, այղ հետեւեալք սրբոյ հաւրն մերոյ Կիւրղի՝ Աղեքսանդրացոյ մեծի քաղաքին եպիսկոպոսապետի, ասացեաք ի թղթին որ առ Նեստորիոն, թէ ոչ յամենայնէ, զոր ասեն հերձուածողքն՝ փաղչել եւ հրաժարել պարտ է, քանիզի բազում ինչ խոստովանին, յորոց եւ մեք խոստովանիմք» (Մատենադարան, ձեռ. № 2679, էջ 320ա)։

[2] Գրված «Կիսարի»։

[3] Ստեփանոս Սյունեցուն է վերագրվում նաև Բարսեղի «Յաղագս ձայնից...» երկի թարգմանությունը։ Այսպես. «Յաղագս ձայնից թե ո՛ւստի. Երանելոյն Բարսիլի, Յաղագս ձայնից թե ո՞ւստից են և կամ յո՛րմէ գտան, զոր թարգմանեաց Ստեփաննոս փիլիսոփա, զի նա եղև երաժիշտ և հմուտ ձայնից ամենայն կենդանեաց, և բաժանեաց զձայնս ի մասունս ԻԴ» (Մատենադարան, ձեռ. № 1267, էջ 341ա)։

## 34

### ԺՈՂՈՎԱԾՈՅ ԳՈՐԾՈՅ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՅ

*Երևան 1013 (1227 թ.)*

*ՃԿԶ* 717

*Թարգմանիչք՝* Դաւիթ հիւպատոս
Ստեփանոս Սիւնեցի

*Վայր՝* Կոստանդինուպօլիս

*Փառք միասնական Երրորդութեանն յաւիտենից, ամէն։*

*Ի վեցհազարերորդի երկերիւրերորդի քսանեւթներորդի ամի արարածոց աշխարհիս (719) ըստ յոմարէ[ն] թուոյ, ի չորեքտասաներորդի էնտիկտիոնին, յառաջին ամի թագաւորութեանն* Լևոնի *թագաւորի, (717) թարգմանեցան գիրքսն սրբոյն* Գրիգորի *եպիսկոպոսի* Նիւսեայ, *ի ստոյգ աւրինակաց, ի* Կոստան[դ]ինաւպոլիս, *ի ձեռն* Դաւթի *հիւպատոսի և թա[ղ]աւորական սեղանւոյն կինառի, և ի ձեռն* Սանփաւնոսի *քահանայի քերթողի, աշակերտի տեառն* Մովսէսի Սիւնեաց *եպիսկոպոսի։ Աղաչեմ զքրիստոսասէր պաշտօնեայք[դ] սրբոյ եկեղեցւոյս, յիշեք զիս յաղաւթս ձեր հանապազ[1]։*

## 35

*ՃԿԹ* 720

### ԿԱՆՈՆԱԳԻՐՔ

*Հակոբյան, «Կանոնագիրք Հայոց», Երևան, 1964 թ., էջ 535—537*

*Հեղինակ՝* Յովհաննէս Աւձնեցի

*Վայր՝* Դվին

*Լուսաշաւիղ ճանապարհ առ Աստուած՝ հնազանդութիւն ընդհանուր հաւատացելոց Քրիստոսի։ Կազմեցին սուրբ հարքն զկանոնական բա-*

---

[1] *Այս երկի օրինակներից Մատենադարանի № 469 ձեռագրի հիշատակարանի լուսանցքում (էջ 117ա), գրիչ Ստեփանոսը 1260 թվականին ավելացրել է Հայկական թվականը՝ այսպես. «իսկ ըստ Հայում թ. ՄԻԱ»։ Այնուհետև այն մուծվել է հիշատակարանի մեջ և այդպես անցել հաջորդ ընդօրինակություններին (տե՛ս Մատենադարան, ձեռ. № 620, էջ 150ա, № 1500, էջ 602ա և այլն)։ Հայկական թվական ավելացնելիս գրիչը շփոթել է Լևոն Դ և Լևոն Գ թագավորների թագավորության տարիները։ Լևոն Գ Իսավրացին թագավորել է 717—740 թթ.։ Արարչության 6227 թվականը համապատասխանում է Փրկչական 719 թվին և համընկնում է Ստեփանոս Սյունեցու ժամանակներին։ Մինչդեռ Լևոն Դ-ի առաջին տարին 774 թվականն է։ Մյուս օրինակներում տարբեր է նաև հիշատակարանի վերջավորությունը։ «Յիշեցէք զնոսա, ընդաւրինակողք, և փոխեցէք զբանս յիշատակի ի յոյս փրկութեան աշխատողացն և յիշողացդ առ Քրիստոս» (ձեռ. № 469, էջ 117ա)։ Ստեփանոս գրիչը լուսանցքներում շատ նշումներ և սրբագրություններ ունի, որոնց մի մասը անհարկի է։ Այս նկատի ունենալով է, հավանաբար, որ հետագայում գրել են. «Որք պատահիք այսմ տառի զինչ և է տարազու, ի տեղիս տեղիս տեսանէք բոլոր նշան ու խազեր՝ զամէն քերեցէք, ես շատ քերեցի։ Անմիտ մարդոյ է դրած ու անխնամ աւրինակելոյ նշան» (117ա)։*

նից դիտաւորութիւն, զի որք յերկնային հրաւիրեալ են ի բնակութիւն մարդկան տարակարծ խոհականութեամբ, նովաւ ընթացեալք ի նպատակն հասցեն բարեգործութեան. եւ յանդիմանեալ խոշտանկեսցեն ինքնակամութեամբ գնացեալն կամեցողքն։ Եւ վասն զի ոմանք առ ոմանս եւ ոչ ամենեքին առ ամենեսեան սոքա սերմանեալք, կամեցայ զրովանդակ զառ ի նոցանէն կանոնական սահմանեալ բան ի միում տեղւոջ գեղեցկագործ մատենիւ ի հայրապետանոցի աստ արմատացուցանել։ Ուրանաւոր եւ զիս աստուածային հոգին վերակարգեաց յաթոռ Սրբոյն Գրիգորի ի կաթողիկոսութիւն աշխարհիս Հայոց, Յովհաննէս նուաստագոյն յիմաստասիրականաց խմբից, եւ ի բոլորից մեկին մնացեալ ըստ մարմնոյ յազգականաց։

Եւ ընկալեալ զայս ջան՝ նախկին, վասն հոգեկանաց իմոց զարմին, ըստ հրամայողական անուանն առընթեր կացցեն եւ հրամանացն գումարութիւնք. եւ թէ պարտ է սպասաւորաց բանին աստուածախաւսմակ հարցն բանիւք կնքեալ բանիս։ Երկրորդ զի զուսումնասիրաց անձանց իմով աշխատութեամբ սիրով կամեցայ հանգուցանել զբազմախոյզ խնդիրս։ Քանզի գրեցաք ի սմա ոչ միայն զկանոնական սահմանեալն նոցա շարակարգութիւնս, այլ եւ զժամանակին եւ զպատճառն ի սոյն այս ի ներքս ածեալ յաւելաք, ընդ նմին եւ զգլուխս անցնիւրոց համառաւտեալ բանիւք ի սկզբան անդ նախակարգեցաք, զի անաշխատաբար անդուստ զբանն յիւրում տեղւոջն գտցէ խնդրողն։ Յաղագս որոյ անմոռացաբար հայցեմ ընդունել ի ձէնջ զյիշողութեանն փոխարէնս. քանզի է այս գանձ եւ ոչ զոր ցեց եւ ուտիճ ապականէ, այլ որ ընդ ինքեան յերկնայինն ի վեր տանի գանձ տնանկ ստացողին զսիրտ, յորմէ ապա ոչ է պարտ թափուր թողուլ որում եւ հաւատաց զսա զսրբարանս, զի մի զրկեալք ի սմանէ՝ զրկեսցին յԱստուծոյ կամ յանարգ լինել ի Քրիստոսէ՝ յանարգաց ուրուք ձեռս արկանել զսա։

Եւ այն որ պարգեւեաց ինձ ի վերայ երկրի տէրութիւն ընդ ամենազաւր իւրոյ տէրութեամբն, որոյ բարեգթութեամբն եւ ի հանդերձեալսն ի նոյն վստահանամ վայելել ի փառս, նա տացէ ձեզ միշտ ծարաւաբար մերձենալով ճաշակել ի հոգեկանս այս աղբիւրէ, զյարաբացումն ունելով զբերան մտաց առ ի լնուլ սովաւ զյորովայն ներքին մարդոյն սրբոյ աճել զաճումն Աստուծոյ եւ հաւասարել չափոյ հասակի կատարմանն Քրիստոսի, որում փառք յաւիտեանս, ամէն։

36

ՃՀՁ 727

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 8100 (1784 թ.)

265բ Պատմութիւնն սուրբ Քեղարդեանն և այլ տնօրինականացն Քրիստոսի Աստուծոյ մերոյ:

267բ Օրինակեցաւ տնօրինական սրբութիւն, ի Հռոմ գրէ ի Հայ թարգ-

մանեցաւ և բերաւ ի Հայս, յորում էր թուականն ՃՀԶ (727), և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն[1]։

## 37

ՃՁԴ 735

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՋՈՐԻՑ ԱՒԵՏԱՐԱՆՉԱՑ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՍԻՒՆԵՑԻՈՅ

Երևան 5551 (1155 թ.)

Ստեփաննոսի շարագրողի գրոցս վասն անձին[2]

Հրաման առեալ ի քրիստոսասէր հայրութենէդ ձերմէ, ով պատուական քահանայապետ, շարադրեցի ըստ կարողութեան որ ինչ ի չորս աւետարանիչսդ, ընտրեալ ի յառաջայ//գոյն մեկնչացդ, և որ ինչ
322ա մեզ թուեցաւ դժուարապատում ի մեկնութիւն. ի Մաթէոսեան Աւետարանն՝ գրեցաւ ըստ կարգի, իսկ ի յայլ աւետարանիչսդ՝ որ ինչ մեկուսանայր ի Մաթէոսեան Աւետարանէն։ Եւ զայս ընձեռեցի ձերոց հրամանի հնազանդեալ, և աղաչեմ մաղթելով, զի ի քրիստոսընկալ յաղաւթս ձեր յիշեսջիք զիս անարժանութիւնս, զի թերևս արժանաւորիցիմ սակաւիկ մասն ունել ի ձեր հանդիսէդ[3]։

## 38

ՃՇԴ 744

## ԱՐՏԱՒԱԶԴ ԱԲՐԱՀԱՄԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՀԱՆԱՅ ԳՈՂԹՆԱՑԻՈՅ

Մաքլեր, Ցուցակ Փարիզի 178, (ԺԲ դ.), Երևան, պատճեն № 281

Հեղինակ՝ Արտաւազդ Աբրահամ

Վայր՝ Արծկէի Երաշխաւոր վանք

563ա Գործեցաւ այս յաւուրս Շամայ յամիր ումն[4], յայնկոյս Եփրատայ գետոյ, ի Ռուծափ քաղաքի։

---

[1] Համարյա նույնպիսի շարադրանքի ենք հանդիպում հայերեն մի այլ ձեռագրում, միայն միավորը ջնջված է՝ «ՃՀԶ» թե՞ «ՃՀԵ» (736) (Լենինգրադ, Սալտիկով—Շչեդրինի անվան գրադարան, Дорн 640, էջ 38բ—42բ)։ Այսպիսի տեսք ունի այն Մատենադարանի № 599 ձեռագրում (94ա, 96ա). «Ցաղագս տնօրինական սրբութեանցն Քրիստոսի Աստուծոյ մերո, որ էր ի պատմագրի թագաւորութեան քաղաքին Կոստանդինուպօլսի և այս պատմեցաւ. Կամաւն ամենակալին Աստուծոյ այսպէս յաւրինեցաւ տնաւրինական սրբութիւնսն, ի Հոռոմ գրոյ ի Հայ գիր թարգմանեցաւ եւ աւրինակն բերաւ ի Հայս, ի թվիս Հայոց ի ԺԱ (562), և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն»։ Սկզբում պակասում է հարյուրավոր Ճ-ն, իսկ տասնավորը շփոթվա՞ծ է։ Վավերական չէ։

[2] Գրված է ձեռագրի գրչի կողմից։

[3] Գ. Հովսեփյանը հրապարակելով այն, ծանոթագրել է. «Հեղինակն է Ստեփանոս Սյունեցի՝ Ը դարու առաջին կեսի մատենագիր... որ գրել է յուր Չորից Աւետարանչաց մեկնութեան առթիվ... Կաթողիկոսը հաստատապես Դավիթ Արամոնեցին է, 728—741 թթ.» (Յիշատակարանք, էջ 56, ծթ. 1)։ Սյունեցին սպանվել է 735 թ. (Մ. Օրմանյան, «Ազգապատում», էջ 866), ուստի սույն հիշատակարանը դնում ենք այդ թվականի տակ որպես վերջին հնարավոր ժամկետ։

[4] Կարդա՝ «Մումնէ»։

Իսկ յետ ութն ամի, կրաւնաւորահայրն Աբրահամ որ եւ Արաավուզդ, առնոյր ընդ իւր ոմանս յեղբարցս, եւ իջեալ յԱսորեստանս, հասանէր ի քաղաքն Կաղինիկոս։ Անդ ի քաղաքին էջ եւ ութեւանս արարեալ ի կրաւնաւորանոցին, որ կոչէր Դերման Զակֆէ, որ բազում սիրով ընկալաւ զմեզ։ Եւ խրատ տայր որպէսզի մեծ զգուշութեամբ երթիցուք ի ուղին զի մի բուռն անկեալ ի թշնամեացն պատիժս կրեսցուք եւ մահ։ Ապա զեղբարսն եւ զգրաստսն անդ թողեալ առեալ ընդ իւր զմի ոմն, եւ զոտին եւ զգիշերն անցեալ մեծաւ աշխատութեամբ։ Ապա ընդ արշալուշսն առաւաւտուն հասանէր ի տեղի կատարմանն։ Եւ մտեալ ի վկայարանս սրբոյ նահատակին, երկրպագութիւն եւ գոհութիւն մատուցան Քրիստոսի։

Եւ Աբրահամն[1] այն, որ եւ Աբու Սաեփանէ, բազում գթով եւ սիրով ընդառաջեալ մեզ եւ հանգոյց զմեզ։ Ի ձեռն նորա արար մեզ Աստուած մտանել ի սուրբսն։ Եւ երկրպագեալ Տեառն ի վկայարանս Սրբոյն Սարգսի։ Եւ տեսեալ զեպիսկոպոսն՝ այր ճշմարիտ եւ երկիւղած յԱստուծոյ, եւ բազում սիրով եւ հիացմամբ ընկալաւ զմեզ։

Եւ ապա կոչեցեալ զամենայն գիտուն մարդիկն, որք երեւելիք էին ի դրան արքունի որք քաջ տեղեակք էին վկայութեան սրբոյն, յորոց ուսեալ հաւաստապէս հոռոմ գրով ետուն մեզ զվկայութիւն քաջ նահատակին։

Եւ սիրով մեծարեալք հրաժարեցաք յեպիսկոպոսէն եւ յայլոցն, եւ աղաւթեալք ի վկայարանի սրբոյ Վաճանայ, գոհացաք զողորմութենէն Քրիստոսի։

Եւ անտի զարձեալ ընդ դետն Եփրատ, եւ առեալ զեղբարսն եկաք ի քաղաքն Ուռհայ, եւ աղաչեալ զեպիսկոպոսն, թարգմանեցաք զգիրսն ի հայ լեզու։

Եւ անտի գնացեալք եկաք ի Հայս, մերձ ի տաւն Յայտնութեան եւ գտեալ զեղբարս մեր ողջ եւ խաղաղութեամբ գոհացաք զԱստուծոյ, որ զանարժանութիւնս մեր արժանի արար հանդիպիլ այսմ շնորհի։

Եւ ապա սկսաք պատմագրել սկիզբն առնելով ուստի արժան իսկ էր։ Ի նոյն յարելով զվկայութիւն սրբոյն Վաճանայ վկային, ի յորդորումն ամենայն հաւատացելոց ի փառս եւ ի գովեստ Աստուծոյ, որում պատիւ եւ զաւրութիւն յաւիտեանս, յաւիտենից, ամէն։

Արդ յետ ըմպելոյ զբաժակ պատուհասի աշխարհիս Հայոց ի հարիւր յիսուն եւ երկուք (703) թուականին Հայոց՝ այս գործեցաւ։ Եւ զերեսուն եւ զչորք ամս կացին ի գերութեանն, մինչեւ ի հարիւր եւ ութսուն եւ վեց (737) ամ թուականին յորում հանդիպեալ վկայութիւն սրբոյ Վաճանայ, խոստովանելով զտէր Յիսուս Քրիստոս զորդին Աստուծոյ։

Արդ ի ձեռն այսց վկայութեանց, ձեզ հարց եւ եղբարց, ես տառապեալ անձնս, եւ հանապազահիւանդ եւ խորհրդապահ սրբոյ վկային, եւ վերստին պատճառաւք յորդորմամբ գրոցս վկայութեան աղաւթս առնել ի վերայ իմ աղաչեմ, որ զիմ անարժանութիւնս արժանի արար

[1] Պետք է լինի «Թէոփիլէն» (Տես Բ հիշատակարանը և «Սոփերք», ԺԳ, 1854, էջ 56)։

գրել եւ տալ զայս Պատմութիւնս վերջնոց, զի թերևս ձեր աղաւթիւք զտայց զերծեալ ի վատթարաց դասուէ, եւ որոց ասեն, եթե «Եկայք
563բ աւրՀնեալք Հաւր իմոյ», նոցա արժանի եղեւոցն Հանդիպիլ արասցէ Քրիստոս Յիսուս, եւ զմեզ զամենայն Հաւատացեալքս անուանն իւրոյ, որում փառք եւ երկրպագութիւն ընդ Հաւր եւ սուրբ Հոգւոյն, յաւիտեանս յաւիտենից, ամէն[1]։

**Բ**

Երևան 4803 (ԺԴ գ.)

Գործեցաւ այս յաւուրս ամիր Մումնէին Շամա, յայնկոյս Եփրատ գետոյ, յՌուծափ քաղաքի։

Իսկ եա է (7) ամի Հայր վանացն Երաշխաւորի, որոյ անուն Աբրահամ կոչի, առ ընդ իւր եղբարց և զառաջասացեալ պատանին, որ էր սպասաւոր սրբոյն, և իջեալ յԱսորեստան, և գնացեալ Հասեալ ի քաղաքն Ռուծափ, և ի ձեռն Թէոփիլոսին այն, որ և Աբու-Ստեփան կոչէին, երկրպագեալ Աստուծոյ ի վկայարան սուրբ նահատակին։ Եւ առեալ գրով զՊատմութիւն սուրբ վկային, և եկաք յՈւռհա, և աղաչեցաք զեպիսկոպոսն թարգմանել զճառս ի Հոռոմ գրոց ի Հայ գիր։

Եւ անտի յարուցեալ եկաք ի վանս Երաշխաւոր յաւուր տաւնի Յայտնութեանն, և ապա սկսեցաք պատմագրել զվկայաբանութիւն սրբոյս Վահանա յորդորումն ամենայն Հաւատացելոց, ի փառս և ի գովութիւն Աստուծոյ, որում պատիւ և զաւրութիւն յաւիտեանս, ամէն։

Արդ յորժամ բաժակն պատուՀասի ընդգալաւ աշխարՀս Հայոց, էր թիւն ի ՃԾԲ (703) և ի ՃՁԶ (737) Հանդիպեցաւ վկայութիւն սրբոյն Վահանա, խոստովանելով յՅիսուս Քրիստոս որդի Աստուծոյ։

Արդ, ի ձեռն այսց վկայութեանց, ձեզ Հարց և եղբարց, տառապեալ անձս Աբրահամ երեսս անգեալ աղաչեմ առնել վասն իմ աղաւթս առ Տէր, որ զիմ անարժանութիւնս արժանի արար Աստուած, գրել և տալ զայս Պատմութիւն[2] յիշատակ վերջնոց, զի թերևս ձերով աղաւթիւքդ

[1] ՎաՀան Գողթնեցու վկայությունը կատարվել է ՃԾԲ (703) թվականից ԼԴ (34) տարի անց, 737 թվականին (տես նաև Մատենադարան, ձեռ. № 3779, էջ 22բ). «Եւ վկայեաց սուրբն Վահան ի յՌուծուփ քաղաքի ՃՁԶ (737) թուականութեանս Հայոց բարի խոստովանութեամբ ...»։ Վկայաբանությունը գրվել է վկայությունից յոթ տարի անց, այսինքն՝ 744 թվականին, ուստի Հիշատակարանը դնում ենք 744 թվաշարքում։

[2] Հենվելով բնագրական Հստակ վկայությունների, ինչպես և վերջին Հիշատակարանի վրա, կարելի է աներկբայելի ընդունել, որ «կրաւնաւորաՀայրն ԱբրաՀամ որ և Արտաւազդ» պատմության Հեղինակն է, որով Հաստատվում է Ղ. Ալիշանի (Յուշիկք Հայրենյաց Հայոց. Վենետիկ, 1881, էջ 172), Բ. Սարգսյանի (Ցուցակ, Բ, էջ 498) և այլոց ենթադրությունը։ Վերը բերված Հիշատակարանում առաջին անգամ Հանդիպում ենք Հեղինակի՝ ԱբրաՀամի խոստովանությանը, որ ինքն է շարադրել ՎաՀանի Պատմությունը։ ԱբրաՀամը նույն ինքը՝ Արծկեի Երաշխավորի վանաՀայր Արտավազդն է, որը ԱբրաՀամ է մականվանվել օտարասիրության և բարեգթության Համար։ ԱբրաՀամի անվան առկայությամբ Հիշատակարանը, Հավանաբար 737 թ. գրված վկայաբանության առաջին տարբերակին է պատկանում, որ բերվել է այստեղ՝ 744 թ. գրված երկրորդ տարբերակի վերջում։

Մատենադարանի 3658 ձեռագրում (էջ 257բ) գրված է «Թարգմանեցաւ ի Յունաց ի մերս ի թուին Հայոց ի ՃՁ (731)։ Նույն թվականն է նշված նաև Երուսաղեմի № 120 Տոնապատճառում, միայն թարգմանված է «յԱսորւոյ ի մերս» (Ցուցակ, Ա, էջ 334)։ Երկուսի

արժանի եղէց հասնել մասին ժառանգութեան սրբոցն ի լոյս, ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս[1]։

39

ՃՂՁ 747

## ՄՇՈ ՏՕՆԱԿԱՆ—ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 7729 (1200—1202 թթ.)

Վայր՝ Մաքենոցաց ուխտ

3ա Աւգնեա Սուրբ Երրորդութիւնն։

Սկիզբն պատմութեանց աստուածարեալ եւ սրբազնագունդ վարդապետութեանց հոգիացելոց արանց, սրբոց հարց, եպիսկոպոսաց և վարդապետաց հաստիչք զառ ի միմեանց ասացելոց, եւ տապալիչք ղամպարշտութիւնս ամենազանգ հերձուածողացն զայնոսիկ զաստուածաբան հայրապետաց, զիւրաքանչիւրսն ասացեալ ճառս հոգիախաւս վար[դապ]ետութիւնս, զորում ի կանոն կարգարդութիւն ժողովեալ առն Աստուծոյ Սողոմովն՝ Մաքենոցաց ուխտին առաջնորդ, ի գաւառին Գեղարքունի, որ յորչորչեցաւ յանուն նախարարին Գեղամա, ի թուականին ՃՂՁ (747)։ Եւ պատշաճեալ յաղագս ըստ դրման ընթերցուածին, զոր ի Սրբոյն Յակովբայ եւ ի Կիւրղէ հաստատեցաւ, ըստ նմին կարգի եդին զոր ի սմայս են կարգք եկեղեցականք, անուանելով Տաւնականք, յաղագս սկզբան տարոյն մինչեւ ի կատարումն նորա, որ ունի զընթերցումն գիշերային պաշտաման, զտէրունական տաւնից, եւ զյիշատակ սրբոց մարգարեից եւ զառաքելոց, եւ մարտիրոսաց, հայրապետաց, եւ թագաւորաց, յորում արարիչն աւրհնի յաւիտեանս[2]։

40

ՄԼԵ 786

## ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑ ԻՇԽԱՆԱՑՆ ՀԱՄԱԶԱՍՊԱՅ, ՍԱՀԱԿԱ ՆԱԽԱՐԱՐՑ Ի ՏԱՆԷՆ ԱՐԾՐՈՒՆԵԱՑ

Երևան 1522 (ԺԲ դ.)

Ստացող՝ Մուշեղ Արծրունի

Զազդական սրբոյ վկաիս [Համազասպայ]՝ զՄուշեղ զստացող տաուիս յիշեսջիք ի Քրիստոս աղաչեմ զամենեսեան[3]։

---

մոտ, ինչպես նաև մեր № 4803 ձեռագրում բացակայում է «Զ» միավորը։

Մ. Տեր-Մովսիսյանը թարգմանության այս թվականը թյուրիմացաբար համարում է Տոնապատճառ ժողովածուի թարգմանության թվականը (Անտիպ ձեռագրացուցակներ, № 133, Յայսմաւուրք)։

[1] Տես նաև՝ Ս. Մարարյան, Գրիգոր Խլաթեցու «Տօնականը», Էջմիածին, 1985, № Է, էջ 43—47։

[2] Հիշատակարանը գրված է Մշո ճառընտիրի (ձեռ. № 7729) սկզբում, ամբողջ էջը զբաղեցնող խորանի առաջին և երկրորդ սյունակներում. երրորդում սկսվում է բնագիրը։ Ձեռագրի մասին տե՛ս Ա. Մաթևոսյան, Ե՞րբ և որտե՞ղ է գրվել Մշո Տոնական-ճառընտիրը, «Բանբեր Մատենադարանի», № 9, 1969, էջ 137—162։

[3] Համազասպը, Սահակը և նրանց հետ մյուսները նահատակվել են 786 թվականին (Ն. Ադոնց, Պատմական ուսումնասիրություններ, Փարիզ, 1948, էջ 69, 99)։

## 41
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 3004 (1642 թ.)*

Գրիչ՝

261ա *Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդոյ և Հոգոյն Սրբոյ
այժմ և միշտ և յաւիտեանս։ Որ մարդասիրեալ ի մեզ բաժանեցաւ մինն
ի երրակեն լոյսն անբաժանելի Որդին միածին, որ խոնարհեցաւ ի
հայրական ծոցոյ և բնակեցաւ ի յարկանտ սուրբ կուսին Մարիամու,
անարատ պահելով զկուսութիւն աքանչապէս ծնաւ, ի հրեշտակաց պա-
տուեցաւ, ի հովուաց և ի մոգոց երկրպաքեցաւ, քառասունօր[ն]այ ի
տաճարն եկաւ, ի ծերոյն Սիմէոնի ընկծեցաւ (ընծաեցա՞ւ) և դրդուե-
ցաւ, ի յԵգիպտոսէ զձեռագործ պատկերն շարժեցոյց և կործանեցաւ,
և այլ բազում աքանչելիս արար։*

*Երեսնամ[ե]այ եկն ի* Յորդանան, *և զջուրն ի յետ դարձուց, զգլուխ
չար վիշապին կոխելով սատակեցոյց, երկինք պատառեցաւ և լոյսն ի
261բ վերա կամար կապ//եցաւ, աղաւնակեւպ Սուրբ Հոգին ի վերա իջաւ,
և Հայր ի վերուստ վկայեցաւ, եթէ Դայ է որդի իմ սիրելի, դմայ լուա-
րուք, և մկրտեցաւ ձեռամբ Մկրտչին և արար երկոտասան աշակերտս
իւր։*

*Սկիզբն նշանաց արար ի* Կանա *գալիլէացոց, զջուրն ի գինի փո-
խեաց, զհիւանդսն բժշկեաց, զջերմոտին առողջութիւն շնորհ[ե]աց,
զկաղն կանգնացուց, զդի[ւ]ահարն բժշկեաց, խլից լսել շնորհեաց, և
համրաց լեզու ետ, զանդամալոյծն առողջացոյց, զբորոտսն սրբեաց,
զգոսացեալն բժշկե[ա]ց, զմաքսաւորն արտ[աքսեաց], զպոռնկին
մեղքն էթող, զսատեր ոսկին ի ձկան փորեն հանե[ա]ց, զկարկամեալ
կինն առողջացուց, ի վերա ծովու գնաց, զհողմն և զալիքն դադարե-
262ա ցոյց, զհացն բազմացուց, զիշխանի դուստրն կենդանացոյց, զայրի
կնոշ որդին ի դաքաղ//ին կենդանացոյց, զՂազար չորեքօրէայ մեռեալն
կենդանացոյց և այլ բաղում աքանչելիս արարեալ՝ խաչեցաւ և թաղե-
ցաւ և կենդանի ել ի գերեզմանէն իջաւ ի դժոխս, և ազատեաց զհոգիսն
և աւերեաց զդժոխն[1], և կապեաց զսատանա, և բազում անգամ երեե-
ցաւ առաքելոցն, և իւղաբեր կանանցն, և համբարձաւ փառօք ի յեր-
կինս։ Եւ Սուրբ Հոգովն մխիթարեաց զառաքեալսն, լեզու և իմաստու-
թիւն շնորհ[ե]աց սրբոց առաքելոցն, շնորհք, բժշկութիւն և իշխանու-
թիւն ետ նոցա, և առաքեաց զնոսա քարոզել ընդ ամենայն աշխարհս,
և լուսաւ[որ]ել։*

*Եւ դարձեալ շնորհեաց զԱւետարանս ի ձեռն սրբոց աւետարան-
չաց, որով քարոզեցան և լուսաւորեցան աշխարհս ամենայն, զոր մեր
լուեալ ի սուրբ Աւետարանիս, որ ասէ, Որ արասցէ և ուսուսցէ, նա
262բ մեծ կոչեսցի, թէպետ ոչ եմ կարող առնել, բայց պարտիմք ուսուցա-*

[1] *«և ազատեաց զհոգիսն և աւերեաց զդժոխսն»—մոռացել է և գրել է լուսանցքում։*

նել ըստ//կարաց մերոց, շնորհօքն Քրիստոսի՝ փառք յաւիտեանս, ամէն[1]։

---

[1] Ձեռագրի մեջ Ղուկասի և Հովհաննեսի Ավետարանների բոլոր ընթերցվածների («Աւետարանք գլխաւորք») սկզբում, կարմիր թանաքով, համապատասխանաբար գրված է «Աւետարան ըստ Ղուկասու» 41 անգամ և «Աւետարան ըստ Յոհաննու»՝ 56 անգամ։ Այս նշումների փոխարէն հետագայում, հավանաբար Ը դարից սկսած, այսինքն Ստեփանոս Սյունեցու ժամանակներից, բաժանարարներ են գրվում, իսկ ԺԱ դարից՝ լուսանցազարդեր։ Ուրեմն սույն ձեռագրի ղաղափար կամ նախագաղափար օրինակը եղել է Ը դարից, և նրան է պատկանել նաև հիշատակարանի սույն շարադրանքը։



Թ IX

**42**

ՅԺԱ 862

*ՄԼՔԷ ԹԱԳՈՒՀԻՈՅ ԱՒԵՏԱՐԱՆ*

*Վենետիկ, Սարգիսյան, Ցուցակ, Ա, էջ 388 (862 թ.)*
*«Հայկական մանրանկարչութիւն», Ա, Վենետիկ, 1965 թ., էջ 21—22*

Կազմող՝

*ՆԿԶ (466) թերթ։*
*ՅԺԱ (862) թ[ուական]։*
*Արաց ԻԸ (28) Բ(երկուշաբթի)։*
*Արեգ Զ (6) Ե (հինգշաբթի)*[1]*։*

**43**

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՆԱՆԱՅ*
*ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՍՈՐԻՈՅ*

*Երևան 2520 (1306 թ.)*

Թարգմանիչ՝

*Եւ վասն զի ձրիւք Հոգւոյն Սրբոյ աւարտեալ գլխավորեցաք զաստուածախօս ճառիցս բացատրութիւնս, ժամ է այսուհետեւ լուսաւորագոյնս շուրջ վաեյեցուցանել զաւետարանութեան բան առ սուրբ կաթողիկէ եկեղեցի, ըստ մարգարէին ձայնի. Լուսաւորեա, լուսաւորեա Երուսաղէմ, զի հասեալ է լոյս քո, և դարձեալ. Լոյս պատուիրանն մակագրի ըստ տեսողին։ Պատուիրանք Տեառն լոյս են և լոյս տան աչաց։ Հաճոյ թուեցաւ մեզ լուսաւորական բանիւ զաւետաւոր բանիս ընծայաբերութիւն հնչեցուցանել առ սուրբ կաթողիկէ եկեղեցի, զի եթէ որ ի ձեռն իւրոյ ծառայից ձրեաց երբեմն աշխարհի զպատգամս լոյս զնա մակ[ան]ուանէ, որքան վճիտ և զուտ և անստուեր լոյս պարտիմք անուանել զլուսոյն այնորիկ պատուիրանն, զոր Յովհան[ն]էս գոչէր. էր լոյսն ճշմարիտ, որ լուսավորեր զամենայն մարդ, որ գալոց էր յաշխարհ, զորմէ ինքն Փրկիչն ի վերայ իւր առ ի մեր վարդապետութիւն պիտառէ ասելով. Ես եմ լոյս և ճշմարտութիւն և կեանք, և քանզի ըստ արփիափայլ աստուածական բանիցս, անհետազօտելի ճառիցս, յաճա-*

[1] *Գրված է վերջին թերթի բ էջում, քառակուսու մեջ. «Առաջին տողը ցույց կուտա թուղթերու համրանքը՝ ՆԿԶ = 466, երկրորդ տողը՝ տարեթիվը՝ ՅԺԱ = 862, երրորդ և չորրորդ տողերը՝ ամսաթվերը, որով նշանակված է ժամանակամիջոցը օրերու, Արացի 28 երկուշաբթիէն մինչև Արեգի 6 հինգշաբթի։ Այս ծանոթությունը հին է, ելած ձեռագրի առաջին կազմողի ձեռքեն, որ կավանդե այսպես սերունդին՝ թուղթերու թիվը, կազմի տարին և կազմարարական աշխատանքի տևողությունը» (էջ 20)։ Ուրեմն ձեռագիրը գրված, ավարտված է այդ կամ նախորդ տարիներին։*

խաղոյնս լոյս տուաք բանին, զոր այժմ բացատրութեամբ վերին շնոր-
հացն օժանդակելով տրամաբանութեամբ տարորոշեալ յստակագոյնս
141բ զաստուածական խորոցն անհետազօտելի զիմաստս բացայայտեցաք//,
հաճոյ թուեցաւ մեզ դոյզն ինչ դրուատել զշնորհս կաթողիկէ եկե-
ղեցւոյ, թեպէտ և այնքիկ ոչ հանդիսաւորք և պերճք ըստ արժանա-
ւորութեան, այլ ըստ այրւոյն այնորիկ աղքատութեան ընկալեալ զեր-
կուս լումայսն ի Քրիստոսի գանձանակն, և զիմս հանգոյն նմին ըն-
կալցիս ղուղնաքեա բանիցս դրուատանս ի չքաւորական մտացս։
Ո՜վ հարսն Քրիստոսի և մայր հաւատացելոց սուրբ կաթողիկէ
եկեղեցի, թերեւս այնպ[էս] համարձակեալ մերոյ աղքատութեանս ըն-
ծայաբերութիւն զբանս աւարտեցեմք։ Ո՜վ յոքնապարգեւ և բազմեր-
ջանիկ, ամենահրաշափառ և երանութեամբ ծաղկեալ, մայր և դաստիա-
րակ դաւանողաց, եռանձնեա և եզակա աստուածութեանն, վասն զի և
քեզ գլխավորի պարծանք լրութեան ուղիղ հաւատոցն, ի քեզ դաստիա-
րակի մանկունք ընդհանուր ուղղափառութեան և սերտին ի հաւատս՝
ի քեզ ցանկ ղենանի որդին Աստուծոյ, որ միանգամ ղենաւ ի փրկու-
թիւն աշխարհի, ի քեզ ցանկ բաշխի մարմին և արիւն Տեառն, ի քա-
ւութիւն և ի թողութիւն սեռի մարդկան, ի քեզ վեցթեւեան սերովբէքն
միշտ զեռահիւսակ սրբաբացութիւնսն անյայտաբար ձայնիւ գեղգեղեն
որդւոյն Աստուծոյ, ի քեզ միաւորեալ երկնայնոցն ընդ երկրայինս ցանկ
փառաւորեն զէակն Աստուծոյ, որ գունակ ի ծննդեանն։ Քև երախայք
վերըստին թննդեամբ որդի Աստուծոյ յորջորջին շնորհիւ, քև մկրտեալ-
քըն ի ստոր բնակութենէս վերսթեւեալք գերամբառնան ի տեղի ան-
142ա գելոց հրեշտակաց, քև կղերիկոսացն պճնեալ[ք] միշտ ճոխա//նան
հոյլք, քև եպիսկոպոսունք զուարճացեալք բերկրին, քև քահանայք
պարծեալք պարկեշտանան ի պատուին, քև սարկաւագունք զգօնանսն
արժանապէս սպասաւորելով, քև ճգնաւորք ժուժկալեալք ճգնին առա-
քինաբար, քև վարժապետք ճոխացեալք հրատարակեն զաստուածաբա-
նութիւն, քև հերձուածողք ընկճեալ[ք] խորտակին, քև անպատուեալ
յամօթ լինի Բելիար, քև բազմամեղքն ապաշխարութեամբ աղատին ի
ծառայութենէ մեղաց, քև հրաժարելոցն յաշխարհի կատարեն ղյիշա-
տակս և զազատութիւն ստանան ոգիքն։
Արդ որ այսքանս և բիւր բարութեանց առիթ, ո՞վ ոք ըստ արժա-
նաւորութեանցն բաւականասցի հատուցանել քեզ հանդիսաւոր բան, ըն-
կալ և այժմ գթածաբար և ղիմս աղքատութեան ընծայաբերութիւն, ո՜վ
եկեղեցի Հայաստանեաց, ոչ յերկրէ և ի ծովէ կոհական նիւթոյ՝ ոսկի
կամ ականս պատուականս, որ գունակ մովսիսական խորանին, և ոչ ի
Լիբանանէ փայտս նոճո, կամ հանդերձս ականախիտս, փափուկս և ե-
րեւելիս ապականացուս, որ գունակ սողոմոնեան տաճարին, այլ ընծայ
անապական և անկապտելի զանազան երկնային շահավետութեամբ
գերապայծառ շահիւք առլցեալք, այլ և սպառազինութիւն անյաղթելի
հաւատացելոց. ոչ պարիսպ պըղընձի ըստ մարգարէին ձայնի շուրջա-
նակի ձեռակերտելով, այլ հրեղէն անմատչելի պարսպաւ պարփակեալ,
124բ և ոչ սիւն երկաթի ըստ տեսանողին, այլ բոց//եղէն սաւր սերովբէի ի

*քեղ կացուցանելով պաՀպանակ, և ոչ դիննուորականս զանգիտողս մաՀ-
կանացուս, այլ քերովբեական անքթթելի և անմաՀական գումարտակս,
լինել միջնապարիսպ ի մէջ քո գառանցն, և գայլոց, և ո՞ր արդիօք
իցէ կրող(ի) զայսքան զօրութիւն, դոր մեր յոյժ չքաւորութիւնս եկն րե-
րել քեղ սուրբ եկեղեցի Հայաստան աշխարՀի, եթե ոչ փեսային քո և
Հասարակաց տեառնաւանդ, զոր ոչ խորեալ թաքուցի գունակ չար և
վատ ծառային, այլ արկանելով առ սեղանաւորս Հոգեկան շաՀավա-
ճառութեանցն գործեցի ըստ իմում կարի, դարՀուրեալ ի սպառնալեացն
սաստկութենէ, որ առ չար և վատ ծառայն, դի զառակաւորսն և զխո-
րինսն, և զՀիացմամբ առլցեալսն, բացայայտս և տարորոշս զաստուա-
ծական ճառիցս վարդապետութիւն եկի բերել քում լրութեան ընծայ
Հրաշափառ և գերապայծառ, դոր արձանացուցեալ յաշտարակս քո՝ ցանկ
դաստիարակին մանգունք, որով սնրտեալց(ն) յուղղափառութեան Հա-
ւատս դՀերձուածողացն վանեն դչարափառութեանցն մոլորութիւնսն,
դդիւացն փախուցանեն զդասս, զապականացուն, որ ի դրախտին զգե-
ցան՝ մերկանան զմաշկն, զանապական և զլուսաւորն, յորմէ մերկա-
ցան, վերստին զգենուն պատմուճան, զպասքումն ադենական աղբերն
Տեառն արեամբն ադենականին զովացուցանեն, դքաղցն որ ի դրախ-
տին, Տեառն դրախտին մարմնով վայելեալք զմայլին։ Նաև պսակ եռա-
143ա Հիւսական անթառամ ի գլուխ քո բերելով փարթամացուցանե // և պա-
րագրեալ ընդ վերին արքունեան մտիցն բարձր խմբիցն բաղդատէ։
Սակս որոյ անգանելով առաջի քո՝ ով սուրբ եկեղեցի, իբրև ընդ միոյ
ընդ քեզ խօսեցայց, վարձատրեա և զիմոյ չքաւորութեանս տաժան-
մունս, առ փոխարէրութիւն աստուածային ճառիցս, ի խորթ բառիցն ի
քոց որդւոց շնորՀաց փոխաբերելով լեզու։*

*Վասն որոյ աճապարեալ անՀանգիստ վեՀ երագութեամբ ընթացիւք
ի մտաց ասպարիսի աւարտե(ա)լ գլխաւորեցի զաստուածազարդ բա-
նից Հանգամանս յաւուրն երկաւորութեան փեսային քո և Հասարակաց
կեցուցչին, ի Բեթանիա(յ) եկաւորեալ առ ի կենագործել զՂազար, ուս-
տի և զպաղատանս առաջի քո արկանելով Հայցել առ ի նոյն կեցուց-
չէն Քրիստոսէ, զի և զիմ զՀնացեալ զմեռելութիւն մեղացն ընդ Ղա-
ղարու նորոգեսցէ, և որ զնորայն Հրամայեաց լուծանել զկապանս, և
զիմս պարաւանդս տոռանց մեղացն չխթայիցն խզեսցէ, առաքելով յա-
զատութիւն մեղաց, զի առ վաղիւ և ես ընդ մանզանցն Եբրայեցւոց ե-
լից ընդ առաջ նորա, ոչ ոստօք ձիթենեաց և արմաւեն[ե]օք, այլ և յոք-
նապայծառ տառիցս երկնային տնկոց ոստս յաւետս անմաՀական
պտղովք առբերելով մատուցից ի փառս ամենասուրբ Երր[որդութեանն]։*

*Զի ես յետին յուսումնասիրաց, մանաւանդ թարքմանաց, ի ձեռն
աստուածային սիրոյն, աղաչեմ զՀայրապետս և զքաՀանայս, զճգնաւորս
և զվարդապետս, միանգամայն և զբոլոր ուխտ սուրբ եկեղեցւոյ, ի վեր-
143բ ծանել զգեղեցկազան աստուածաբանական ճառիցս բացատրութիւն, //
յիշեսջիք զիս ի դպրութիւն կենաց, այլ և որ յօրինակ գծագրութեան առ-
նուցուք զաստուածախօս ճառիցս մեկնութիւն, մաղթեսջիք յողորմածէն
Աստուծոյ ապրեցուցանել դիս ի ՀրաՀոսան գետոցն [ւ]աՀեռ աւուրն ար-*

դար հատուցմանն, յորում սպասեա հուրն անշէջ գոմակ ինձ մեղաւորաց։ Այլ աղընթեր գրեսցեն յիշատակ բանիցս այսոցիկ առ ի յիշատակ իմոյ յոքնամեղ անձին, իսկ եթէ ոք արհամարհելով անփոյթ արասցէ, ընդ ամենեցուն նա տացէ համար ի դատաստանին, յորոց շահաւոր յիշատակաց ղրկեաց զտարամերժեալ անձն իմ ի հանդերձեալ կենացն։ Այլ և Սմբատ Բագրատունի և Մարեմ Սիւնեաց տիկին, որ զգիրս սուրբ թարգմանել հրամայեցին, զնոյն հայցեն յիշել, և Տէր Յիսուս յիշողացդ ողորմեսցի[1]։

## 44

ՅԺԸ 869

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 4166*

### [Թուղթ Փոտա]

219բ Գտաւ Թուխթ ի հնագրեանս Տիգրանա Պահլաւունոյ, թէ ՅԺԸ (869)[2] առաքեաց Փոտ պատրիա[ր]քն Կոստանդնուպոլիս...

220բ Սուղ ինչ գրեցաւ ի Փոտա Թղթոցն հաւատալիքս բանք[3]։

## 45

ՅԻԲ 873

### ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ԱԲԴԼՄՍԵՀԻ, ՈՐ ԹԱՐԳՄԱՆԻ ԾԱՌԱՅ ՔՐԻՍՏՈՍԻ[4]

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 71—73*

Աւգնականութեամբ Յիսուսի Քրիստոսի, թարգմանեցաւ Վկայաբանութիւնն ծառային Քրիստոսի յասորի գրոց ի հայս, հրամանաւ աստուածապահ տեառն Գուրգենայ Արծրունոյ Անձաւացեաց տեառն, (յ)ՅԻԲ (873) թուականութեանն Հայոց՝ ի բարեխոսութիւն և յաւգնականութիւն անձին իւրոյ և ամուսնոյ իւրոյ Հեղինէի աստուածասիրի, և որդւոց իւրոց Տաճատայ և Ատովմայ: Եւ աւանդեաց նոյն ինքն տէր Գուրգէն տանամխմբել զաւր յիշատակի սրբոյս, որ աւր երեսուն էր արեգ ամսոյ՝ ի փառս ամենասուրբ Երրորդութեան այժմ և միշտ և յաւիտեանս...

---

[1] Հիշատակարանում և Մեկնութեան Առաջաբանում հիշատակված անձնավորությունները («Բագրատ Բագրատունի, Թ դարի երեսնական թվականներին, Սմբատ Բագրատունի, որ և Խոստովանող կոչվեցաւ, վախճանվել է 857 թվին, Աշոտ Բագրատունի՝ իշխանաց իշխան և ապա թագավոր, Մարեմ Բագրատունի՝ Աշոտ թագավորի դուստրը՝ Սյունյաց տիկին, Վասակ Գաբուռն իշխանի կինը։ ժամանակագրական մանրամասնությունները (տե՛ս Ն. Ադոնց. Պատմական ուսումնասիրություններ, 1948, Եր. 86 և շար.։ Յիշատակարանք, էջ 72) ցույց են տալիս, որ այն թարգմանվել է իններորդ դարի կեսերին։

[2] Գ. Հովսեփյանը թվականի «Ժ»-ն կարդացել է «Ղ» և հիշատակարանը դրել 909 թվաշարքում։

[3] Կ. Կոստանյանի և Գ. Հովսեփյանի կարծիքով Տիգրան Պահլավունին Գրիգոր Մագիստրոսի հորեղբայրն էր, և նույնն է Ապլղարիպ Պահլավունու հետ, որը Հովհաննես Սմբատի որով Հայոց մարզպան էր։ (Յիշատակարանք, էջ 107—108)։

[4] Վերնագիրը վերցրել ենք Մատենադարանի № 4803 ձեռագրից (էջ 29ա)։

## 46

ՅԻԹ 880

### ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ ԴԻՈՆԵՍԻՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ԱՇԱԿԵՐՏԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ ՊԱՒՂՈՍԻ, ՈՐԴԻ ՍՈԿՐԱՏ ԴԱՏԱՒՈՐԻ ԱԹԵՆԱՑՒՈՑ ՔԱՂԱՔԻ ԻՄԱՍՏՆՈՑ

*Երևան, 7574 (1239 Թ.), Վենետիկ 200, Սարգիսյան, Ցուցակ, Բ, էջ 11*

309բ *Այս պատմութիւն Սրբոյն Դիոնեսիոսի, ի սուրբ քաղաքն* Երուսաղէմ *էր թարգմանեալ ի յունականէն ի վիրականն, իսկ ի մերս թարգմանեաց* Յովճաննէս *բժիշկ, ՅԻԹ (880) թուականիս Հայոց, ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ*[1]։

## 47

### ԱՒԵՏԱՐԱՆ

ՅԼԳ 884

*Երևան 3711 (ԺԴ դ.)*

*Հեղինակ՝* Գրիգոր Մաշկեոր

*Վայր՝* Լիմի և Սֆանչելագործի (Արծկէի) անապատներ

**ա**

92ա *Մեղապարտ գրիչ* Գրիգոր *վարդապետ* Քաջբերունոյ, *թվին ԳՃԼԳ (884) տրէ ամսոյ Ի (20)*։

**բ**

10բ *Գրի ձեռամբ* Գրիգորի *վարդապետին* Քաջբերունոյ, *ի թվին ԳՃԼԳ (884) Տրէ ամսոյ Լ (30) ի սուրբ անապատին* Լմայ, *ի սկիզբն Աւետարանիս, ի յանուն Սքանչելագործին*։

**գ**

103ա *Տրէի Լ (30) ըսկիզբն քաղոցի ///*։

---

[1] *Երուսաղեմի № 1 ճառընտիրում* (Ն. Պողարյան, *Ցուցակ, Ա, էջ 30. Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 81—82) հանդիպում ենք այսպիսի խմբագրությամբ. «Այս պատմութիւն Սրբոյն Դիոնէսիոսի ի սուրբ քաղաքն* Երուսաղէմի *թարգմանեալ էր յունականին։ Իսկ ի մերս թարգմանեաց* Յոհանէս *բժիշկ, յերեք հարիւր քսան եւ ութ (879) թուականութեանն. Հայոց»։* Ն. Ակինյանը *քննում է սույն Վարքը (Նիւթեր հայ վկայաբանութեան ուսումնասիրման համար, Վիեննա, 1914) և ծանրանալով «վիրականն» բառի վրա եզրակացնում է, որ «Թ դարում վերջին քառորդին ոմն Յովհաննէս բժիշկ Երուսաղէմ պատահելով յունարէնէ արաբերէն թարգմանված Դիոնիսիոսի ինքնակենսագրութեան, Թարգմանում է զայն հայերենի» (էջ Լ)։*

Դ

169բ Դրեցաւ ի սկիզբն Թագաւորութեան Բագ[ր]ատունեաց Աշոտոյ, ձեռամբ անարժան Գրիգոր Մաշկեռի, ի ժամանակս հայրապետութեան Գէորգա կաթողիկոսին, որ օծեաց զԱշոտ[1] թագաւոր Հայոց, ի թվ[ին] մերում ԳՃԼԳ (884) և քաղոց ամսոյ Ժ (10), ի անուն սրբոյն ՍՖանչելագործին վանիցն։

48

ՅԼԴ 885

ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՑՒՈՅ ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ

Երևան 10100

Գրիչ

7ա [Դրեցաւ գ]իրքս այս [Կիւրղի վար]դապետին [Երուսաղէմ]ացւոյ [ի Թուակ]անիս Հայոց /// առեալ /// գրչի գրեալ ի մատենիս յայսմ զսուրբ եւ զտենչալի եւ զհոգետուիչ բանքս։

Արդ աղաչեմ զ[ը]նթերցաւղսդ եւ գլսաւղսդ, յորժամ ընթեռնուք, զստացաւղս սորա զտէր Գուրգէն Արծրունի եւ զորդի իւր Ատոմ յիշ[եցէք]...[2]

---

[1] Այս հիշատակագրությունները գրված են հետագայում, հավանաբար 18-րդ կամ 19-րդ դարում և կապ չունեն 14-րդ դարում ընդօրինակված բուն ձեռագրի հետ։ Ոչ գաղափար օրինակի, ոչ էլ ձեռագրի գրիչն է գրել այն, ինչպես կարծում է Մառը (Անտիպ ձեռագրացուցակները 133, էջ 5)։ Ձեռագրի առաջին թերթի վրա նոտրգրված է. «Սուրբ Աւետարանս է երեելի հրաշագործ, որ կոչեալն է Գրիգոր Աւետարան»։ Մյուս հիշատակագրությունները գրված են անկանոն գրով. բ հիշատակագրությունը՝ համաբարբառներից և ցանկերից հետո, ա-ն՝ էջի լուսանցքում, դ-ն Մաթեոսի վերջում և դ-ն Մարկոսի վերջում։ Ինչպես տեսնում ենք Լչերի և ամիս-ամսաթվերի հաջորդականության համապատասխանություն չկա։ Հիմնվելով այս հիշատակագրությունների վրա Գ. Հովսեփյանը առաջարկում է վերանայել Աշոտի թագավորության սկիզբը (Յիշատակարանք, Ա, էջ 82—84)։ Անվարժ գրիչը կարող էր հին ձեռագրի Գ և Դ տառերը շփոթել և 884-ի փոխարեն կունենանք 885 թվական։ Ձեռագիրը Մատենադարան է բերվել Հառիճա վանքից, հավանաբար այնտեղ էլ կատարվել են այս մուծումները։

[2] Ձեռագիրը բաղկացած է 17 մագաղաթյա թերթից, որոնք նախկինում պատառիկներ և պահպանակներ էին. 7-ը Մատենադարանի №№ 367 (4), 1271 (2) և 1229 (1) պատառիկներն էին, իսկ մնացած 10-ը №№ 4819 (4), 9465 (4) և 9841 (2) ձեռագրերի պահպանակները։ (Գ. Հովսեփյան, Իններորդ դարու ձեռագրական մի հատակտոր և Ատոմ Անձեացյաց իշխան, «Էջմիածին», 1946, № 8—10, էջ 42—54։ Ս. Քոլանջյան, Նորահայտ պատառիկներ Կյուրեղ Երուսաղեմացու Թ դարի մի գրչագրից, «Բանբեր Մատենադարանի» № 5, Երևան, 1960, էջ 201—238)։

Գ. Հովսեփյանի կարծիքով, ձեռագիրը կարող է գրված լինել 873—892 թվականների միջև։ Առաջինը Գուրգեն Արծրունու համար Ասդլմսեհի վկայաբանության թարգմանության տարին է, երկրորդը՝ նրա մահվան թվականը։ Հնարավոր համարելով, որ Վկայաբանությունը կարող էր թարգմանված լինել 873 թ. մոտակայքում, Գ. Հովսեփյանը հիշատակարանը դնում է Լազարյան Ավետարանի հիշատակարանից առաջ (Յիշատակարանք, էջ 79)։ Պահպանում ենք նույն կարգը։

ՅԼԶ 887

## 49
## ԼԱԶԱՐԵԱՆ ԱՒԵՏԱՐԱՆ
Երևան 6200

Գրիչ՝ Սահակ Վանանդացի

ա

320ա *Փառք պատիւ եւ գովութիւն Սուրբ Երրորդութեանն այժմ եւ հանապազ յաւիտեանս, ամէն։*

*Զգրաւղս սորա եւ ղաշխատաւորսս, որ ոք ընթեռնու եւ կամ գրեցէ[1] յաւրինակէս, յարժանաւոր աղաւթս ձեր յիշեսջիք։*

*Գրեցաւ սուրբ եւ կենսաբեր Աւետարանս այս ՅԼԶ (887) թուականութեան Հայոց, ի հայրապետութեանն* Գեորգայ *Հայոց կաթողիկոսի եւ յիշխանութեանն* Աշոտի *իշխանաց իշխանի եւ ի տերութեանն* Սբատայ Բագրատունեայ: *Ես* Սահակ Վանանդացի *որդի* Վարդա Վանան-
320բ դացւոյ *որում կ[ր]կին* Մլեհ *կոչեին /// ի[2] մաքրութիւն հոգւոյ իմոյ եւ կողակցի իմոյ գտանել ողորմութիւն յաւուրն այցելութեան։*

*Աղաչեմ զձեզ սիրողք Քրիստոսի, որք ընթեռնու զսուրբ Աւետարանդ, անմոռաց յիշմամբ հայցել յամենեցունց յարարչէն զթողութիւն իմ[ոց յա]ն[ցա]նաց։*

*Տէր Յիսուս Քրիստոս ողորմեա ինձ։*

բ

179բ *Փառք քեզ Յիսուս Քրիստոս որ[դի] Աստուծոյ, ողորմած եւ բազմագութ, ողորմեա ինձ ի քում գալստեան։*

ՅԽԲ 893

## 50
## ՄԱՇՏՈՑ
Երևան 970 (ժե դ.)

Գրիչ՝ Ստեփանոս

Վայր՝ Սևանա կղզի

*Յամի վեցհազարերորդի հարիւերորդի ամի լինելութիւն աշխարհի ըստ եւթանասնից աւանդութեանց, յորում ամի Հոռոմ թուականութեան*
358բ *|| Ո Ւ Խ Ե Ջ (893) էր, և Հայոց Նոր տոմարիս ՅԽԲ (893), կատարեցի*

---

[1] Ձեռագրում գրված է «եւ կարեսցէ»։ Մսեր Մսերյանցը ենթադրել է, որ պետք է լինի «եւ կաղապարեսցէ», իսկ Գ. Խալաթյանցը՝ «եւ նկարեսցէ» (Աւետարան ըստ թարգմանութեան նախնեաց մերոց գրեալ ՅԼԶ թ. Հայոց և յամի տեառն 887, Մոսկվա, 1899, էջ Գ)։ Երկուսն էլ սխալվել են, որովհետև չեն նկատել «կամ» բառի ա-ի վրա սղման նշանը, և ա-ր տառերից ներքև գրված «գ» տառը, որ ուղղել է գրիչը, «կամ դրեսցէ» բառերը վերականգնելու համար (Տե՛ս Ա.Մաթևոսյան, Լազարյան ճեմարանի հնագույն ձեռագիրը, «Պատմա-բանասիրական հանդես», 1973, № 1, էջ 123—132)։

[2] Զորս տող անընթեռնելի է

զնուաստ գրկումս զայս, յառաջ քան զհինգ կաղանդին ապրիլի, որ
աւր ԺԶ (16) էր հրոտի ամսոյ, ի մեծի հինգշաբթին, ի վեցերորդ ժա-
մու, ի թագաւորութիւն Հայոց Սմբատայ, որդոյ Աշոտոյ Բագրատունոյ,
ի տոհմէ կաթողիկոսութեան տեառն Գէորգեայ Գառնեցոյ, յորում ամի
կործանեցաւ Դվին քաղաք ի շարժմանէ, և բազումք մեռան և եկեղե-
ցիք տապալեցան։ Այս իր գործեցաւ վասն ծուլացեալ մեղաց իմոց։
Եւ կատարեցաւ գրկումս ի Սևան կղզոջ Գեղա մեծ ծովակիս, ի ձեռն
իմ Ստեփանոսի անարժան կրամաւորի, աշակերտ երիցս երանելոյ
սուրբ ճգնաւորին Քրիստոսի տեառն հաւր Մաշթոցի, զորոյ զազնուա-
կանութիւն լաւութեան վարուց նորա ի տղական հասակին մինչև յաւրս,
յորում զգիրս կատարեցի ոչ կարեմ բովանդակ զգրով արկանել, այլ
համառատ բանիւ ղեկուցից ձեզ, զի ունելք սակաւուցն նախանձա-
ւորք լինիցիք շաւղաց հետոց նորա։
Սա է ի տոհմէ քահանայական, ի դեզչէն Եղէվարդայ, ի ժառան-
359ա դաց մենաստանաց, որ անուամբ || Սրբոյն Թէոդորոսի էր։ Եւ ի զաւ-
րանալ բռնակալութեանն Տաճկաց ի վերայ գաւառին, ելեալ հայրն նո-
րա ի տիս մանկութեան, և գնաց պանդխտութեամբ ի գաւառին Սոթից,
և անդ կացեալ և ամուսնացեալ, ծնաւ զգեղեցիկ աղաւնին Քրիստոսի,
զոր պատմել սկիզբն արարեալ եմ, հանդերձ եւ այլ եղբարբք և քերբք։
Ապա ուսուցանելով զորդիսն իւր՝ յարելով յուսումն աստուածային, քան-
զի և ինքն քահանայ էր։ Յետոյ ի վախճանելն նորա յարեցաւ մանուկն
Մաշթոց ի կրամաւորս և աշողեալ նա ի ձեռն կրամաւորազգեցի, որոյ
անուն կոչի Թէոդորոս: Վարժեցաւ և հմուտ եղև գրոց սրբոց և նոցին
աստուածազգեցող զաւրութեանցն ի կրամաստանին, որ կոչի Մաքե-
նոցf, ի գաւառին Գեղարքունիf, և ընկալաւ զաստիճան քահանայութեան։
Մանուկ ուշիմ էր և սիրելի մեծամեծաց, ուստի ի շնորհացն Աստուծոյ
և յազդմանէ Սուրբ Հոգւոյն, կամաւք իւրովք ել ինքն ընդ կրունկն առ ի
յերկրէ ի յերկինս, այսինքն յաւելորդ պիտոյից մերոց, եւ ստացաւ
վարս անսըւաղականս, պարկեշտս, ընդակերս, անըստգիտս և ճըշ-
մարտասէրս։
359բ Ի մանկական հասակէն վարժեցաւ ի պահս || և յաղաւթս, և ր
տքնութիւնս ընդ (յ)ոլովս անցանելով տեսողութեամբ և զբազումս
շահելով ի Քրիստոս, եկն բնակեցաւ ի կղզւոջն սովին վարուքն, և
թողլով զառ ի բնակութենէ մարդկան, սիրողն ի պատուի և յանար-
գանս բազմացն շողացուցանէր զինքեան և տեսակ առաքինութեան,
զոր թէ ումիցին հոսել վարատ[ակ]ան հողմով ի ձորս և ի փապարս
կորստեան։ Այլ սա ոչ այսպէս, այլ գնաց բնակեցաւ յապա լերին
յայս կըղզոջ, ուստի հարկաւորեալ բազում թախանձանաւք, իմաս-
տուն և հանճարեղն, լռութեան սիրողն ի Մարիամայ Սիւնեաց տիկ-
նոջ, կանգնեալ զսա ուխտ։ Եւ ժողովեալ եղբարս միանձնականաց
դասս, վասն հոգ[ե]աց տեառն իւրոյ յարևապէս վախճանելոյ Վա-
սակայ Սիւնեաց իշխանին, յորում ումկնդիր եղեալ։ Յետոյ հաւատա-
ցաւ, ասէ եթե յԱստուծոյ է հրամանս, ես ոչ ընդդիմացայց։ Եւ շի-
նեաց վանս և ժողովեաց եղբարս կալով կրամաւորական կարգաւ

և զարդարեալ բազմախումն պատուիրանաւք՝ վայելչական սպասիւք
և անձինն իւրում յաւելոյր աւրըստաւրէ զգործ մշակութեան առաքի-
նութեան շնորհաւքն Քրիստոսի։

360ա Եւ այսչափ առաւելեալ ի մարմնոյ իւրոյ տանջանս, մինչ զի
մեկն ևս ի մրգոյ և ի ջրոյ անգամ։ Եւ ւլարմանալի այս էր, թէ ւլիա՛րդ
ոչինչ ուրուք իրաց նուազ գտանէր, քան ւլի զազաւթսն ՚անապազորդ
կարդալ անխափան ունէր՝ զցայգ և զցերեկ, և ղընթերցասիրութիւն
գրոց սրբոց ոչ հասեցուցանէր, այլ և առնէր իսկ, և խրատէր զամե-
նեսեան ի նոյն կարգ։ Եւ բազում ի սուտ եղբարց յոլով աշխատու-
թիւն գտեալ նենգաւ[որ] կեղծաւորութեամբ և պէս պէս խարդախու-
թեան համբերութեամբ տանէր քրիստոսական չափովքն խորհելւ Եւ
ոչ միայն ի սուտ եղբարց, այլ և յարտաքնոցն և ի նշանաւորաց և
յաննշանից, քանզի զամենեսեան սատանայ վառէր ընդդէմ նորա,
այլ նա առաքինաբար տանէր ամենայնի, վասն յուսոյն իւրոյ, զոր
ունէր առ Քրիստոս։ Եւ յայնչափ ճգնութենէն հեղ էր և լաւական, և տե-
սակաւքն՝ զըվարթ և առատամիտ և ընգրող յոյժ, և վայելուչ հասակաւ
մարմնոյն, մխիթարական բանիւ առ տրտմեալսն, ի խորհրդոցն զաւրա-
360բ ւոր և ահարկելի առ հղորսն, աղաւթայ|սէր, ղի ընդ երեկն և ի տիւ
ինն կանովն կատարէր։ Եւ զայն ևս ասացից, շնորհ եղև նմա, քան
ղի փափաքեալ պարգևեաց մեծի լուսոյ նշանին Քրիստոսի, և յոլով
աւուրս ձգեցան փափագանք նորա, և աղաւթիւք հայցէր յԱստուծոյ
առնուլ։

Եւ եկեալ ընդ աւուրսն ընդ յանոսիկ իշխանն Հայոց Աշոտ ի կող-
մանս Վրաց, վասն ապստամբելոց ոմանց եկուզակաց, առ եզերբ դե-
տոյն հզաւրի, որ կոչի Կուր: Դարձեալ խաղաղութեամբ ընդ այն ճա-
նապարհորդէր առ եզերբն ծովակին, և եկեալ գումարեցաւ ի տեղւոջ
միոջ հանդէպ կըղզոյն որ կոչի Բանակատեղ. հայցէր տեսանել զերա-
նելին Մաշթոց: Որ իբրև տեսին դիր[ե]արս, բազում ուրախութիւն լի-
նէր երկոցունցն։ Ապա յոյժ սիրեալ մեծարեաց և մեծապէս ընկալեալ
ըզնա բարեպաշտ իշխանն Հայոց Աշոտ, որ և թագաւոր իսկ եղև յե-
տոյ։ Ապա շնորհէր երանելի հաւր[ն] Մաշդոցի զլոյսն մըշտընջենաւ
զոր արձակեալ էր նմա արքային Յոնաց Վասլի: Յոտն կացեալ և
արտասուաւք հանդերձ առեալ յինքն զսուրբ խաչն, զոր պնդեալ էր
ոսկով և զարդարեալ գեղեցկազան գործով ըն[դ]ելուզեալ մարգարտով,
և առեալ եդ ի վերայ աչաց իւրոց և համբուրեաց զնա։ Եւ երկիր պա-
գեալ զիշխանն ղաջն նորա, համբուրէր և զերեսն փառաւորս, և ևս
բազումս խաւսեցեալ առ միմեանս զհաւատոց և ղայլոց բազում իրաց,
ապա հրաժարեցին ի միմեանց, իշխանն գնաց զճանապարհ իւր և նա
դարձաւ ի մենաստան իւր։ Եւ առ զշնորհս զայս մեծ, որ բնակեալ էր
ի վանսս յայսմիկ ամս մետասանս, որ է անուամբ Սուրբ Առաքելոցն
եկեղեցիք Գ (3) և իբրև այժմ մեծի շնորհաց արժանաւորեցաւ, առա-
ւելեաց առաքինութիւն իւր, ղի ի մէջ երկուց [աւուրց] հազիւ ճաշա-
կէր զհոգէպահ ընդիկն, այլ հաց և գինի այն էր նորա, որչափ ի մարմ-
նոյ և յարենէ Տեառն ճաշակէր։

Եւ յայսմ ամի, յորում կարգեցի զսակաւաւոր դրումնս, էր ամք կենաց նորա սակաւ ինչ քան զվաթսուն ամ, իսկ որ մեկնեալն էր ի կեբակրոց և ի բոլոր իսկ հեշտութեանց մարմնոյ՝ ԼԳ (33) ամք, և ի շինութեան տեղոյս ԻԲ (22) ամք։

[Քրիստոս] յոյս պատերազմելոց իւրոց զաւրութեամբ նորա ի վե-
361ա րայ ճշմարիտ // հաւատացելոց իւրոց առաւել ևս տացէ յոյժ հաստատութեան սովին բարի առաջարկութեամբ կատարեալ և զորոշեալ ամս կենաց իւրոց՝ մինչև ըմբռնեաց զպատրաստեալս յարքայութիւն։

Այս բանք վարուց նորա, զոր կարճառաւտ և հարևանցի ասացի ճշմարիտ, երիցս յոլով թողեալ, զի մի կարի անհաւատալի թուեսցի ձեզ, և զոր ցուցիդ, ճշմարիտ է, զի իմովք աչաւք իսկ տեսի և ի միտ առի զիրն, ոչ եթէ համբաւաւք իմացեալ տեղեկացեալ, այլ դուք սոյնգունակի իմացարուք և զայլ ևս բազմազան առաքինութիւն նորա, և նախանձաւոր սմին եղերուք։ Աղաւթք սրբոյս այսորիկ մակամնասցէ ի մեզ և ի ձեզ, և սուրբ Առաքելոցն դասք իւրեանց յամենաբարի և յարասէր ընդանական խնամովքն հաստատուն պահեսցէն զուխտըս զայս, որ յանուն իւրեանց կանգնեալ են ի ձեռն սուրբ հաւրն Մաշդոցի, եւ ձեռընկալու լիցին՝ ամենայն վտանգաւոր աղետիցն և բազմահնար մեքենայից բանսարկուին, զի կատարեալք ի կամս Աստուծոյ միաբան
362ա հասցուք ի նպատակ վերին կոչմանն // յարքայութիւնն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, զի նորա են փառք, իշխանութիւն և պատիւ այժմ, միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն[1]։

## 51

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10110

Գրիչ

122բ Զսաացող սուրբ Աւետարանիս զՊետրոս քահանայ յիշեսջիք ի Քրիստոս, զի զսա բեմականն խնչեցուցանէ[2] ճեմարանն, որոց ամենից առեալ իմ լցի փառաբանութիւն Քրիստոսի, ամէն։

## 52

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10283, պահպանակ

Ստացո՞ղ՝ Գորգ

Աղաչեմ ես Գորգ ոսկերիչս զսուրբ քահանայսդ, յիշատակի արժանի համարեսջիք զիս՝ զմեղաւոր ծառայս, եւ որդեկին իմոյ ար[եւ]-

[1] Գ. Հովսեփյանը Յիշատակարանքում (էջ 88—92) սույն հիշատակարանին կից դնում է նաև Մատենադարանի № 2680 ձեռագրում եղած նույնի ավելի համառոտ շարադրանքը, պատճառաբանելով, որ երբեմն մեկը կամ մյուսը ավելի մասեր կամ հապավումներ ունի, երբեմն բառերի կամ փոքրիկ հատվածների խոտաւոաշ դասավորություն։

[2] Սկզբի «խ» տառը ջնջել են, «հ» կարդալու համար, բայց հետո կրկին, այլ թանաքով և բոլորգրով վերականգնել են «խ»։

շատութիւն հայցեցէք ի Քրիստոսէ, եւ Աստուած ամեն[եց]ուն ողորմեսցի, ամէն։

### 53
### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4508

Գրիչ

46բ Ընթերցաւղք, որ զվերնագիրդ է արարեալ, մի նզովէք զգրաւղն, ձեր կամք է, որ ղրոմտ է գրեալ[1]։

### 54
### ԱՒԵՏԱՐԱՆ

Կոնիբիր, Ցուցակ Լոնդոնի, Լչ 1—2

Գրիչ

Զտէր Եղիսէ զհրամանող սուրբ Աւետարանիս, որք ընթեռնոյք յաղաւթս յիշեսջիք[2]։

### 55
### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5547

Գրիչ՝ Գրիգոր

ա

324ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամեն։

բ

49բ Գրիգոր[3] գրիչ եւ յետին կրաւնաւոր յիշեսցի ի Տէր։

---

[1] Գրված է Մաթեոսի Ավետարանի վերջում, ղրչի ձեռքով և վերաբերում է սրբագրողին, որը այդ էջում բաց թողած բառերը ոչ թե լուսանցքում է գրել, այլ մուգ թանաքով՝ տողի վերևում («վերնագիր») և ղեղնավուն մագաղաթի վրա չագանակագույնով գրված ձեռագիրը սրբագրելով սև թանաքով, աղարտել է ձեռագրի գեղեցկությունը։

[2] Մ. Տեր-Մովսիսյանը սույն հիշատակարանը Համահավաք Ցուցակում գրել է ԻԳ և ԼԵ համարների տակ, թվագրելով մի դեպքում Ժ, մյուս դեպքում ԺԱ դար (Անտիպ ձեռագրացուցակներ, Ավետարանք, № 133)։ Ոմանք թվագրում են Ը, նաև Թ դար։ Պայմանականորեն դնում ենք Թ դարի տակ։

[3] Մատենադարանի հնագույն ձեռագրերից մեկն է։ Մի քանի գրիչների գրած։ Գրիգորը նրանցից մեկն է, Գեորգը, հավանաբար նկարիչը, որի հիշատակարանը գրված է նկարած խաչերից մեկի շուրջը։ Ձեռագիրը իններորդ դարից ավելի հին է թվում։

Գ

Կազմիչ՝ Գէորգ

7ա Աղաչեմ յիշել զմեղսամակարդ եւ զյետին կրաւնաւորս զԳէորգ կազմիչ դրոցս եւ Քրիստոս վայելել տացէ, ամեն։

56

ՄԱՇՏՈՑ

Վենետիկ, 320, Սարգիսյան, Ցուցակ, Գ, էջ 48

Գրիչ՝ Գիորգ

Աղաչեմ ես մեղուցեալ քահանայս Գիորգ զսրբասեր դասս քահանայից յայդմ վայրի[1] ինձ մեղաց թողութիւն հայցեք յարդար դատաւորեն Քրիստոսէ, զի թերեւս ողորմեսցի բազմագութն Աստուած ինձ եւ ծնողաց իմոց, եւ զաւակաց իմոց, եւ զիւզակցի[2] իմոյ։ Եւ որք յիշեք, յիշեալ լիջիք ի Տէր, ամէն։

57

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՈՐԴԻՈՑՆ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀՌՈՄԱՑ, ՈՐՈՅ ԱՆՈՒՆ ԷՐ ՆԵՐՍԵՀ

Երևան 785 (1615 թ.)

Թարգմանիչ Գագիկ

260ր Ես՝ հայր Գագիկ, որ թարգմանեցի զՊատմութիւնս զայս զորդւոյ թագաւորացն երկոցունց յասուրոց ի մերս, եւ աւանդեցի ուխտի իմոյ եւ ժողովրդեան, որով լուեալ զվարս սրբոցն, նախանձաւորք լինիցիք նոցա նահատակութեանցն, որք վասն Քրիստոսի յանձն առին զկամաւոր աղքատութիւն, որպէսզի բարեխոսութեամբ նոցին արժանի լիցուք պսակաց նոցին ի Քրիստոսէ Յիսուսէ Տեառնէ մերմէ, յորում փառք յաւիտեանս յաւիտենից[3]։

58

ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ, 103, Սարգիսյան, Ցուցակ, էջ 459

Գրիչ՝ Յովհաննէս

Ջչուառական և զտրուպ գրիչ Յովհաննէս յիշեա ի Տէր, աղաչեմ։

---

[1] Գրված է Քահանայաթաղի կանոնի տակ։

[2] Տպված է «գիւղակցի»։

[3] Գ. Հովսեփյանը գրում է. «Թարգմանիչ հայր Գագիկը Սմբատ Ա թագավորի (890—914 թթ.) ժամանակակիցն էր։ Երուսաղեմի № 1455 ձեռագրում (էջ 75ա) նրա մասին կա հետևյալը. «Ի սորա (Սմբատայ) աւուրս էր Գագիկ վարդապետ, որ գլխշատակս մարտիրոսացն հաւաքեաց գիրք մի» (Յիշատակարանք, էջ 105)։

## 59

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ՂԵՒՈՆԴԵԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Երևան 1902 (ԺԳ գ.)*

130բ *Կատարեցաւ վարդապետութիւն* Ղեւոնդի *վասն ժամանակագրաց տանս Թորգոմայ, ի հրամանէ Տեառն* Շապհոյ Բագրատունոյ:

## 60

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՇԱՊՀՈ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՈՅ

*Երուսաղեմ, 999, Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 101*

*Այս ի Պատմութենէ* Շապհոյ Բագրատունւոյ *է, որդո* Աշ[ո]տի *Ապահիպատ պատրկի, յանուն* Դաւթի Բագրատունոյ, *որդո* Աշոտո *իշխանաց իշխանի, զոր ի ձեռն առեալ և ընկալեալ յոժարութեամբ հօր* Դաւդի՝ *առաջնորդի վանաց սրբոյն Ստէփանոսի ի* Բագրեւանդ *գաւառի և յոյժ բերկրեալ յաղագս հեռի[1] դոլո(յ) ի ստութենէ[2] և լի[3] ճշմարտութեամբ յաւել յինքենէ զճառս բանից աստուածայնոց։*

---

1 *Ձեռագրում՝ «հետ»։*

2 *Ձեռագրում՝ «ի ստութեան»։*

3 *Ձեռագրում՝ «գի»։*



Ժ X

61

ՅԾԵ 906

## ԹՈՎՄԱ ԱՐԾՐՈՒՆԻ, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՆՆ ԱՐԾՐՈՒՆԵԱՑ

*Երևան 10451 (1303 թ.)*

*Հեղինակ՝* **Թովմա Արծրունի**

**[Յառաջաբանութիւն հեղինակին]**

ա

3բ *...Եւ արդ ես՝ սակս որոյ մերս է շարագրութեան յեղանակի խնդիր ի*
*քէն,* Գրիգոր Արծրունեաց *աէր և* Վասպուրական *իշխան, ընկալեալ ի մեզ*
*հրաման պատուիրանի քո, զոր ախորժակք փափաքելիք զքեզ ստի-*
*պեցին // ներքադրեալ ի յիշատակարանս մատենից, զնախնեացն քոց*
*զազգաբանութիւն և զորպիսութիւն, կարգաւ ածել զթիւսն ըստ ծննդոց*
*ըստ կարի իմում անցից համառաւտիւք ընդ կարևորագոյնսն, և որ-*
*վասն անցիցն Հայոց ի Տաճկաց պետութենէն ներգործեցաւ՝ անյա-*
*պաղ հնազանդութեամբ ըստ հրամանի քո ձեռն ի գործ արկից, և*
*ըստ կարի իմում անցից համառաւտիւք ընդ կարևորագոյնսն, և որ-*
*քան ինչ վայելուչքն են՝ եզից ի Պատմութեան աստ, առ փոքր ինչ և*
*դուղնաքեայ զմնացորդս յիշատակարանացն ի յառաջագոյն և հին*
*պատմագրացն զմեր զընիկ տերանց տոհմին* Արծրունեաց *զիրն և զտեղին*
*բացայայտեսցուք ի Պատմութեան աստ, զի յայտ յանդիման երևես-*
*ցին արիութիւնք առաքինութեանց ըստ անուանց, և տեղեաց, և ժամա-*
*նակաց։*

*Եւ խուզեցից զկարևորագոյնսն խորհրդոց ի խաղացմունս բանիցս*
*կարգագրութեանց, թէ ո՛վ ոք էին, և ե՞րբ, և յորմէ՞, և ո՞ւր, և զիա՞րդ,*
*և որքա՞ն, և որպիսի՞ք, և որո՞վք, յեղանակաւք քաղաքավարեցին, և յո՞ր*
*պէտս հանդիսացան։ Եւ վասն պատերազմաց և յաղթութեանց՝ և թէ*
4ա *յաղթեցին, կամ յաղթեցան, // և զկէսս որ վասն այլոց ինչ իրաց հան-*
*դիսանալ հաճոյացան յաւգուտ և ի շահ մատակարարեալ անձանց և*
*ընկերաց։ Եւ որ ինչ ընդ այսոքիւք պատկանին ստորոգութիւնք զրու-*
*ցատրութեանց՝ համառաւտեսցուք ի մատեանս յայսոսիկ, ըստ կարի*
*մերում աւժանդակեալ ի գրոց հնագէտ պատմութեանց մարգարէակա-*
*նաց և նորոց վարդապետաց եկեղեցւոյ Քրիստոսի, և արտաքին վի-*
*պապատմացն աշխատասէր և մտահարուստ արանց, որք դայեակաբար*
*յանձանձեցին մեզ յետոյ հետևելոցս, զառողջ և զառանց խարդախու-*
*թեան ճաշակս համեղագոյն և կարևորագոյն կերակրոցն՝ յարբումս կա-*
*տարեալ գիտութեանն տանել հասուցանել զուսումնասէրն և զերկիւղա-*
*ծագոյնսն Աստուծոյ, զհանճարեղսն և զիմաստունսն, զնախանձաւորս*
*լաւագոյն և մնացական ընչաւետութեանն, և որ անդ է աշխարհն*

*զորս և ասա ի յայսմ Պատմութեան աբտայայտեցից քեզ, քաջդ
բանասիրաց, զնոցայն որ վասն Քրիստոսի պատերազմեալ զքարիոք
պատերազմն, և յաղթանակ կանգնեցին ի վերայ երկրի մինչև յերկինս։
Որոց աղօթիւք տացէ ինձ Տէր ղուղղորդ և զճշմարտութեամբ զբանն
4բ գրել ի մատեանս յայս, առաջնորդութեամբ || Հոգւոյն Սրբոյ, խոր-
հրրդովն Քրիստոսի, ի հաճոյս քեզ և նմանեաց քոց։
Ողջ լերուք ի Տէր Քրիստոս, ամէն։*

Բ

57ա *...Իսկ առ մեզ հասին զրոյցքս այս ըստ մնացորդաց պատմագրացն
առաջնոց, ի* Մամբրեէ Վերծանողէ *և ի նորուն եղբօրէ* Մովսէս *կոչե-
ցելոյ, և միւսումն* Թէոդորոս Քեռթող, *որք լեալ էին յաշակերտութենէ*
Ղևոնդ *քահանայի, որ ի* Պարսան *մարտիրոսացաւ ընդ այլ սուրբ եպիս-
կոպոսն և քահանայսն։ Սոքա հրամանաւ* Վահանայ Արծրունւոյ *փոյթ
յանձին կալեալ՝ խուզել քննել կարգել ի համառատ բանս զաճմունս
57բ ազգացն անցելոց ոչ կարի ինչ ընդ երկայնագոյնս աշխատասիրաբար
անցանել պատմութիւնս։*

*Զոր և մեր ըստ հրամանի քում,* Գագիկ *զաւրավար Հայոց և* Վաս-
պուրական *իշխան, ջան յանձին տարեալ ընդ համառատութիւն զրու-
ցատրութեանցն անցեալ, յառաջ խաղացուցից զբանսն, արագաքայլ
արշաւանաւք անցեալ գնացից ընդ շարագրածս անցնիւր պատմագրաց,
զազգաբանութիւնն միայն ոճով դրոշմեցից ի շարի աստ, մինչև եկից
հասից ի լայնանիստ ընդարձակ ասպարէզս մատենից պատմութեանցս՝
ոճով մի ըստ միոջէ շարեցից, կարգեցից, գրեցից զախորժելին քեզ։*
89ա ...Սահակս *այս այն* Սահակ *է, որոյ հրամանաւ գրեաց մեծ վարդա-
պետն* Մովսէս *տիեզերահռչակեալ քերդողն զգիրս Պատմութեան* Հա-
յոց Մեծաց, *հրաշազան յաւրինուածով, սկսեալ յԱդամայ մինչ ի կայսր*
Զենոն, *որոյ ժամանակ կենացն տևեալ ձգեալ ամս ՃԻ (120) լի և
պարարտ ծերութեամբ, որպէս դրեալ աւանդեցաւ մեզ այս ի չորրորդ
դրուագի խոստաբանեալ Պատմութեանն* Մովսէսի Խորենացւոյ, *վերա-
դարձութեան ի վերայ երեցունց դրուագեալ հատուածին, զոր և երա-
նելին* Կորիւն, *ուս(ու)մնակից* Մովսէսի *և աշակերտ սրբոյն* Մեսրով-
պայ[1] *յիւրումն ստուգաբանեալ պատմութեան զայսոսիկ մեզ հաւա-
տարմացուցանէ։ Ուստի և մեք ըստ կարի մերում անցեալ գտաք զհա-
89բ մառաւտութիւն զրուցատրութեանս, զոր շարագրեալ յայտ||արարու-
թեամբ յանդիման կացուցաք քեզ, քաջդ բանասիրաց,* Գագիկ Վաս-
պուրական *և մեծ զաւրավար Հայոց, իսկ որպէս դրեալ հաստատեալ
կայ հաւատարմապէս վարդապետացս, քաջաբան և լի իմաստութեամբ
շարագրածք հրաշափառագոյնք։*

*Ապա փոյթ ինձ* Թովմայի, *որ ոչ վերջոտնեալ կալայ ամաւթով
զյետին տեղին, այլ փոխանակ սոցա մատեայ ի տեղիս յայս, ձեռն
արկեալ անիմաստաբար լի անհմտութեամբ և անհանճարութեամբ բուռն*

---

[1] *Բնագրում գրիչը գրել է «Մաշտոցի» և ինքն էլ լուսանցքում ուղղել «Մեսրովպայ»։*

*հարկանելով զմեծ զայս քերթածութենէ։ Բայց հրաման քո ճոխութեանդ ձգեաց զիս յայս մեծ ձեռնարկութիւնս, սակս որոյ բացաձգեցայց արտաքոյ շաղակրատոյ լեզուաց փառամոլ ոգոց*[1]։

**62**

*ՅԾԷ* *908*

*ՄԼՔԷ ԹԱԳՈՒՀԻՈՅ ԱՒԵՏԱՐԱՆ*

*Վենետիկ 1, Սարգիսյան, Ցուցակ Ա. էջ 388 (862 թ.)*

*«Հայկական մանրանկարչութիւն», Ա, Վենետիկ, 1965 թ. էջ 21—22*

*Նվիրող*՝ Գագիկ Արծրունի
*Վայր*՝ Վարագ

ա

222բ *Ոս[կւով]… եւ զար[դարեաց] … եւ մարգ[արտով] … այ[գիս] … եւ ես* Գագիկ … *[*Վարագա *Սուրբ] Նշանս, իւր … ջրովն … զգաշտ … [յիշա]տակ ի սմա … գանձ [Սուրբ Նշանի], եթէ ոք վ…։*

*Զոր շին[եաց] … արեւշատութեան* Գագկայ *և փրկութեան հոգւոյ իւրոյ եւ մեղաց եւ յան[ցան]աց թողութեան, իսկ որ հակառակ ելանէ եւ հանէ զգիրս ի* Վարագայ, *ինքն [հե]ռասցի յԱստուծոյ և ի Սուրբ Նշանէս, եւ որ պահէ յեկեղեցիս թէ թա[գաւոր] … [աւր]հնեալ լիցի յԱստուծոյ։*

*Ստացող*՝ Մլքէ թագուհի

*Վայր*՝ Վարագ

բ

*Ես*՝ Մլքէ *աղախին Քրիստոսի եւ Հայոց թագո[ւ]հի ՅԾԷ (908) թվականիս, ետու զԱւետարանս ի* Վարագ, *ի Սուրբ Աստուածածինս, զոր իմ ձեռամբս եւ ծաճաւք եմ շինեալ, յուզնականութիւն ինձ եւ արքային իմոյ* Գագկայ, *եւ զաւակաց իւրոց։ Ով ոք կարդա, յաղաւթս յիշէք առաջի Աստուածամաւրն եւ Աստուած հասարակաց ողորմե(ս)ցի։*

գ

462բ *Աստուած ողորմե(ս)ցի* Մլքէ *թագո[ւ]հոյ[ն]՝ ստացողի սուրբ Աւետարանիս։*

դ

6բ Վարագա *է Աւետարանս*[2]։
*Աստուած ողորմի ստացողի նորին* Մլքէ *թագո[ւ]հոյն։*

---

*[1] Դրուվյան թվականի մասին տե՛ս Թովմա Արծրունի և Անանուն, Պատմություն Արծրունյաց տան, Երևան, 1978, էջ 6։*

*[2] Գրված է 7×9 քառակուսիների բաժանված աղյուսակի մեջ, որոնց կենտրոնում գրված է «Վ» տառը։ Սրանից սկսվում են մյուս 62 քառակուսիների մեջ հորիզոնական և ուղղահայաց «արագայէ» տառերը և կարդացվում՝ «Վարագայ էս», իսկ ներքևում «Աւետարանս» ստացվում է «Վարագա է Աւետարանս»։*

## 63

ՑԾԸ 909

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6202

Գրիչ՝ Թուքայել

Վայր՝ Կոստանտինուպոլիս

430բ Զբաղձանս ներանձնացեալ ունախոհի եւ մտահարուստ ընթերցասիրական ուշմագունի, եւ մեծասքանչ անուան Հայոց սպայապետի աղնիլով ամենափառ եւ հրաշազարդեալ աստուածավայելուչ եւ քրիստոսասէր տեառն Աշոտոյ, իբրեւ վբրաբիովն ներըմծայեաց ղշորից աւետարանչացն ղարտաճառութիւնն ի մի հաւաքելով, առ ի յիշատակ ստացաւլին եւ փնծայեցելումն։ ՑԾԸ (909) թուականութեանն Հայոց, հրամանաւ տեառն Աշոտոյ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի Կոստանտինուպոլիս, ի ձեռն Թուքայելի՝ ծառայի ծառային Քրիստոսի տեառն Աշոտոյ։

Քրիստոսի Աստուծոյն մերոյ փառք յաւիտեանս, ամէն[1]։

## 64

ՅԿ 911

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 123, Սարգիսյան, Ցուցակ, Ա, էջ 544

4ա Այս երկաթագիրս չէ աղէկ, մի մեղարդէք։
Ի Թ[ուականին] ՅԿ (911)[2]։

## 65

ՅԿԱ 912

### ՃԱՌԸՆՏԻՐ

Երուսաղեմ, 1—Գ (1418 թ.) Պողարյան, Ցուցակ Ա, էջ 28, Հովսեփյան Յիշատակարանք, Ա, էջ 16

370բ Պատմութիւն Սրբոյ Նշանին Նունէի Վրաց տուն առաջնորդի Հաւր Անարոնի Վանանդեցո, թոռն Ղեւոնդի Երիցի, Իջաւանից գեղջէ, բազում

---

[1] Մատենադարանի հնագույն ձեռագրերից մեկն է։ Յուրաքանչյուր ավետարանին նախորդում է գլխավոր ավետարանների կամ ընթերցվածների գլուխների ցանկը, որոնցից յուրաքանչյուրը գրված է համապատասխան լցի վերին լուսանցքում և նշանով ցույց է տրված տեղը՝ բնագրում։ Ձեռագրի ստացող «սպայապետ» Աշոտը, Գ. Հովսեփյանի կարծիքով, Սմբատ Ա Թագավորի եղբոր՝ Շապուհի որդին է (Յիշատակարանք, էջ 108)։ Ձեռագիրը կոչվում է «Մեծ Շենի Կարմիր Ավետարան» Լեռնային Ղարաբաղի համանուն գյուղում գտնվելու պատճառով, որտեղից էջմիածին է բերել Գ. Հովսեփյանը 1915 թ.։

[2] Այս տողի մասին հրատարակիչ Բ. Սարգիսյանն ունի այսպիսի ծանոթագրություն. «Տողամիջի լուսանցազարդի բազուկին ներքև, բնագրի բարձրագիր երկաթագրով գրված, բայց գունաթափ եղած 4—5 մենագրեր (միջակետերով) ... Ես այսպես կկարդամ «Ի Թ. Յ. Կ»։ Բայց թե ինչ կնշանակեն այդ մենատառերն, որոշ բան մը չեմ կրնար ըսել։ Եթե «Թ» մենագրին ընթերցումը ճիշտ է, կարելի է «ի թուականին» կարդալ զայն»։

աշխատութեամբ եւ խուզիւ ՐՆՆեալ բազում մատենից Հայոց և Վրաց, յաղագս Սրբոյ խաչին Մծխիթայի, որ այժմ բնակեալ է յերկիրս մեռում, ի տեսչութենէ խաչելոյն Քրիստոսի:

274ա Ապա երեք հարիւր վաթսուն և մէկ (912) || թուականին Հայոց, ի կատարման Սմբատայ, մեծ կործանումն եղև աշխարհիս Հայոց և առհասարակ երկիրս աւերեալ կործանեցաւ։

Իսկ Հայր Անարոն, զարմն Ղեւոնդ Երիցու Իշաւանից գեղջէ, սպասաւոր Սրբոյ խաչին, թէ ուստի՞ կամ զիա՞րդ առ մեզ լեալ է և ստուգեալ հասեալ գտի յԱգաթանգեղա պատմագրէ և ի վկայութենէ Շուշանկանն և ի վարուց սրբոյն Սահակա և ի ճգնաւորէն Անդէասու: Գտի և զՍրբոյն Հմաեկի զվկայաբանութիւն քառասուն արամբք ի տանն Տայոց, որ այժմ Քառասնի վանք կոչի։ Գտի և այլ բազում յիշատակ սրբոց մոռացմունք եղեալ ի տագնապ լինելոյ աշխարհիս։ Իսկ մեծ նշան Սուրբ խաչին ի ժամանակս Սմբատա Բագրատունոյ՝ կրաւնաւորացն ձանձրացեալ վասն բաղում ուխտականացն, հրամանաւ Գրիգորի[1]՝ Հայոց կաթողիկոսի, փոխեն ի մի յիւրոց գեղիցն, զոր և Սուրբ խաչն կոչեն, յարեւմուտս ամրոցին Կարենենեաց և կարգեն պաշտաւնեայս և սպասաւորս խաչին, որ զտիւ և զգիշեր անխափան կատարի առաջի Սրբոյ Նշանին և վանականացն հաստատեալ յառաջին տեղոջն, կան հանապազ և փառաբանութիւն Սրբոյ Երրորդութեանն մատուցանեն, և պետք նոցա վճարին յընծայից Սրբոյ խաչին։ Այս է ստոյգ պատմութիւն Սրբոյ խաչին Նունէի, որ այժմ բնակել է յերկիրս Վանանդա, բարեխաւս վասն մեր և ամենայն ի Քրիստոս հաւատացելոց, այժմ և միշտ և յաւիտեա[նս, ամէն][2]։

## 66

ՅԿԲ 913

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4810 (1288 թ.)

353բ Թ[ուականին] ՅԿԲ (913)[3]։

---

[1] «Պիտի լինի Գէորգայ. ինչպես ուղղել է Ն. Ակինյանը» (Յիշատակարանք, էջ 16)։

[2] Հինգերորդ դարի հեղինակ Ահարոն Վանանդեցու «Պատմութիւնն» ավարտվում է ձեռագրի 273ա էջում. մինչև «Ձայս բարեպաշտ ումն ի տոհմիցն Բագրատունեաց...» տողը, որով սկսվում է 10-րդ դարի հավելումը և ավարտվում վերը բերված Հիշատակարանով։

[3] Գրված է ձեռագրի վերջում «Աւետարան ըստ Յոհաննու» բառերից հետո։ ՅԿԲ-ն տոնված է երկուական կետի մեջ, որ թվական է նշանակում։ Ուրեմն այն զաղափար օրինակի թվականն է, ինչպես նախորդ 911 թ. հիշատակարանում։

«Եղբարք իմ, զայս Յաճախապատումիս օրինակն Սաայ գրքատունէն առաք, ի մեր թուական ԳՃՀԸ (929) էր»։ Գաղափար օրինակի թվականն է, որից 1673 թ. արտագրվել է ձեռագիրը և սույն տեղեկությունը (Զարբհանալյան, Թարգմանութիւնք նախնեաց, էջ 685)։

## 67

ՅՀԳ 924

### ՅՈՎՀԱՆՆՈՒ ԴՐԱՍԽԱՆԱԿԵՐՏՑԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

Թիֆլիս, 1912, էջ 362—267

Հեղինակ՝ Յովհաննէս կաթողիկոս

Բան ինքնուրոյն սակս յիշատակի անուան իւրոյ[1]

Թագաւորք աստուածասէրք և բարեպաշտօնք, իշխանք և պետք և հրամանատարք Հայոց, եղբարք մեր և առաքեալք եկեղեցւոյ ի փառք Քրիստոսի՝ աղերս առաջի մատուցանեմ ձեզ զպիտառութիւն ղայս բանի։ Զի իբրև ցուցող հայելի ի միտս անբասիրս սովաւ զձեզ հրաւիրեալ, և զյանդուգն և զանկարգ ճամարտակելն արտալած արարեալ՝ անպատուհաս ես մնացից յահեղ մրրկէ աստի և յահագին ալեացս փլըրկելոց և դիղացելոց և կուտակելոց և դիմացելոց ի վերայ Ասքանազեանս գրոհի։ Սարսափեալ զոփացեալ դողացաւ սիրտ իմ, զի տիգօք յաշաց խաղաց Տէր ի վերայ սակս անօրէնութեանց մերոց. և վասնղի ցարդ ես յարակայեալ անդնդապտոյտ ալեացն յորդութիւնք խորութեանցն և ոչ հանդարտեաց, վասն այսորիկ ես բռնադատեցայ գալ յայս և առնել տալ տագնապեալ զՊատմութիւնս։ Նախ ի կրից աստի զիս փութացուցեալ, որ շուրջ պատեալ պաշարեաց զմեղ. և ապա ի հրամանէ թագաւորաց ի վերայ հասելոյ՝ որ զիմս ճմլեալ բաղխեաց զիմաստիցս գործարան և հաւանեցոյց ոչ ինչ գոլ ինձ յայսմիկ դանդաղելի։

Սակայն ոչ գրաւորական անձայն տառիւք միայն որ ի վեր քան զիս է ձգտումն իրի զմտաւ ինչ սծեալ, այլ բոլորաձայն հնչմամբ հագագափիւռ ձայնիւ դարուց ի դարս ղայս ձեղ աւանդեալ ուղղախոհ իմացուածիւ։ Զի մի անհասութիւն ծերունեան զրուցաց այլոց ոմանց վէպս ինչ խարեալ խղճի մտաց կարօտ զձեզ կացուսցէ՞, այլ զի զաչս արձակեալ յարտադրութիւն բանիս մաքրական մտօք անբաղայապէս՝ ի մասնաւոր ասացելոց աստի տեսցի ղկնի եկելոց իւրաքանչիւրոց անցնիւրն զրուցաց ստուգութիւն ըստ ընթերցանութեան հանդիսի բանիս։ Եւ այս ցայս վայր հերիքասցի։

Այլ ես այսուհետև մաղթանս առաջի ձեզ ընթերցողացդ մատուցից, մի բերիլ ձեզ ևս վերստին յայս տեղի տանջանաց, յորս այժմ առ հասարակ թմբրեցաք ի ծուխ մեղաւորաց։ Այլ ախորժաբար լսող լինել աղերսալի իմոյս բանից և բաղաձայնութեան խրատու՝ լինել ձեզ զաւակ լաւագունի պատարագելոյն Սեթայ և գրել յորդիս Աստուծոյ, այլ ոչ խառն ընդ անիծեալ եղբայրազրաւն Կայենի զարմից կապիլ ի կնատ և ի մեղմեխ և ի վայրաքարշ դստերս մարդկան։

---

[1] Թվականի մասին տես «Յովհաննէս Դրասխանակերտցի, «Պատմություն Հայոց», Երևան, 1986, էջ 11, ծթ. 4 (ռուսերեն)։

Մի՛ ի չար ուղխից սանդարամետին զրահեղեղ սատակմամբ ողողեսջիք՝ որպէս յայնժամ երկնասահան և երկրահոսան ջրահեղձոյց մարդիկ Նոյեան դարոյն, այլ աւետարանական ուռկանաւ արկելոյ ի ծով ղուսպ և ամփոփ վարուք ժողովել կարթիւք յարքունական կայանս։

Մի՛ անկանոն կրօնիւք ամբարձջիք ի տանիս նանրութեան, և հրացայտ ցոլութեան ծծմբոյ դիւաշունչ հողմոյ զձեզ պտուտկեալ տոչորիցէ կորստեան կեզմամբն, այլ նլեալք ի Սոդոմայ՝ այլ և ի Սեդովբայ, յես իմանալի բարձրութիւնն սքանչելապէս լերանցն յաւիտենից թեակոխեսջիք, ուր պայծառապէսն իսկ բորբոքի ջահ սրբութեան ղգուշացելոցն յարթնութեան։

Մի՛ խոտորեսջիք յարքունական ի կուռ պողոտայէն յաջ կամ յահեակ թողացուցեալ զկամս ձեր ըկնի պատրանաց պատրողին. վասն զի յերկոցունց կողմանց դարանակալէ ավաղակաց բազմութիւն և մահ է բաժին անկելոցն ի ձեռս նոցա։

Մի՛ մեղիցէ ձեզ կարծեցեալ արեգակն տունջենային և կամ լուսին գիշերոյ դիւամոլար խռովութեամբ, որ մերոյն բնութեանս կրիւք խաբեացն զմեզ և խաբէ, այլ զանց արարեալ զփաղաքշական խորհըրդովք ախորժից յողղողելոցն, զի ճշմարիտ արեգակնն արդարութեան ծագեսցի ի սիրտս ձեր սիրովն աստուածայնով։

Մի՛ քրէիքուր վարուց չարութեամբ նաւաբեկեալք՝ ապաշաւեսջիք ղուղիղ և զճշմարիտ զձեր վարս, և կոխածս գռեհաց եղիջիք իբրև զաղն անհամեալ, այլ ողջ ամբողջ և անխախուտ մնասջիք ի պարսաւադիտէն դրժողէ՝ խնդութեամբ ժամանել ի նաւահանգիստ կենաց։

Մի՛ զպարծանս հարցն առաքինութեանց ձեղ բաւական վարկեալ և ի նոյն ապաստանեալ՝ պղերգութեանմբ անձանց ի վիհս խորափիտս ընկղմեսջիք, ղի թէ հօր հմտաբար տեղեկութեամբ ղեկավարեալ իցէ, զի՞նչ օգուտ յայնմանէ որդւոց բերցի՝ եթէ ի նաւաբեկութեան կորնչին. վասնզի ոչ ինչ շահ զհօրն հմտութիւնն կարծեմ լինել որդւոց նաւաբեկութեան։

Մի՛ օտարացեալք եղիջիք ի մօրէ, որ վերստին զձեզ ծնաւ նորոզատուր բանիւն կենդանականաւ ի յոյսն կենդանի։

Մի՛ խաբիցիք յարդանդէ վրիպեալք կամ թէ մերկացեալք յայնմանէ լուսաւոր և փրկական զգեստուն, որով վայելչապէս զգեստաւորեցայք յարգանդէ աւազանին։

Մի՛ խօսիցիք ստութիւն՝ զառեալն իբրև զչարեալ նանրապէս համարել և ժխտող լինել Որդւոյն սիրելւոյ աստուածական պատգամացն լեռնացելոց, այլ եռանդնասէր սրտի ջերմութեամբ հեռանալ յայնմանէ, որ ինչ վնասակար և հակառակ է հոգւոյ, ի բաց ղտխրութիւն տաբերցս սնոտւոց մերկանալ մաքուր մտօք։

Այսպէս թերևս և սրովբէականացն ես յերրեակ դասու խորին խոբուրդս թեակոխեսջիք և դուք, և վեցթեեան երագաշարժ գործեօք իմն ղօրհնաբականսն ըստ պիտոյս բաժանեսջիք՝ ոմամբք խուճապելով զըսպիլ, ոչ ևս արժանի ըստ որումն վարկեալ և ոչ զաչս ի յերկինս ամբառնալ, իսկ այլովք ոմամբք վերշարժիլ ի մշտնջենական փառատրու-

*թիւնս ըստ վստահելոցն պարագահութեանց ի պաշտօն աստուածայնոյ փառացն. ապա հանդիսապէս արժանի դտցիք յետ այսմ սուղ ժամադրութեան կենացս մտանել և յամր իմանալի* Սինէական *լերինն։ Ոչ ի փորձ հրոյ ի վայր բերեալ ըստ պայմանի խռուոյ յաւուրն ընտրութեան, այլ ամպաշու թեւօք սլացեալք ի վերին Սիովն ի հայցե զտեսութիւն Տեառն։ Ոչ վիմով ծերպի զեղչել և զյետոյսն միայն տեսանել, այլ ղրովանդակ նկարագիր փառացն հօր դէմ յանդիման նկատել։ Եւ զայժմու փոքր ի շատէ խելամտութեամբս զանց արարեալ՝ ծանօթք եղիջիք պատրաստական վայելչութեանն և յայնժամ գիտասջիք զնա որպէս և նայն ծանեաւ զձեզ։*

*Արդ՝ այսքան բան ձեզ խրատու յինէն բաւականասցի։*

*Բայց անարժանս ես և հեզգապաշաւս* Յովհաննէս՝ *նուաստ կաթողիկոս Հայոց, աղաչանս առաջի մատուցանեմ ընթերողացդ ձեր և լսողաց բանի Պատմութեանս՝ արժանի յիշատակի դիմս վարկանել անուն ի մաքրամատոյց նուիրական աղօթս ձեր. զի երկաքանչիւրոցս՝ ինձ և ձեզ, թերևս ի Տեառնէ տացի վարձս հատուցման յետնումն աւուր այցելութեան նորա. որ է օրհնեալ միշտ և փառաւորեալ յամենայն արարածոց յաւիտենից յաւիտեանս, ամէն։*

**68**

*ՅՂԴ* *945*

## *ԱԻԾՏԱՐԱՆ*

***Տեր-Մովսիսյան, Համահավաք ցուցակ, Աւետարանք, էջ 11***

Գրիչ՝ Թէոդորոս

ա

ԶԹէոդորոս *անարժան գրագիր, զպիղծ ի սրբոց յիշեսջիք ի Տէր Քրիստոս.* յ. թ. կ. լ. ծ.ծ. կծ. ծծ. յ. կթ.: *Ով տեարք եւ եղբարք իմ և Աստուած անմոռաց ղձեզ յիշեսցէ, ամէն։*

բ

*Այս դիրքս* Աշոտայ Վարաժնունեան *է։*

*Կամամեղ արա յաւժար գտեալ ամենայնի 'ւ աւտար գոլով ի բաբիս արդարութեան ուղագեղ, զարժանն Աստուծոյ առ բարի շաւիղն, զոր աշխատէիր ջանիւ, հրամանաւ* Աշոտոյ *քրիստոսասիրի, որդւոյ* Վահանա *սիրաւղի Աստուծոյ* Վարաժնունւոյ, *առ ի մաքրութիւն ոգւոյ, շնորհապատիւ առնուլ սովաւ զփառս անտրտում, յաւերժ բարեփառութեանս աստուածասիրիցն յաւթեւանսն միանալ վարժմամբ առաքինութեանն ջանիւ։*

*Եւ ստացա զրաբունեան քառավտակ աղբիւրս առ ի լուացումն ժանտ գործոց չարասիրտն որոմնացան մեղացն, որպէսզի սրբեալ ազնիւ ծառայ հաւատարիմ տէրն իւրոյ դտցի։ Եւ այսու անմոռաց յիշեսջիք ի նուիրաեան աղաւթսղ յաւէտ հայցմամբ սուրբ քահանայք, յորժամ ըն-*

թեռնուք զաստուածախաւս գիրս, և Աստուած անմոռաց զձեզ յիշեսցէ յաւիտեանս, ամէն։

Գ

Այս Աւետարան Աշոտոյ Վարաժնունւոյ [է, յիշ]ատակ ոգւոյ իւրոյ [և] Թէոդորոս գծագրի, եղբաւրորդւոյ Յովհաննիսի եւ Ստեփանոսի Անձե(՞)[1] Սանակայ քահանայի։

Եւ գրեցաւ ՅՂԴ (945) թուականի, յամին յորում ղարգուի[2] ելաք յաղագէն աղգէն ///[3]։

Դ

Սուրբ աւետարանիչք բարէխաւսեցէք առ Քրիստոս վասն Աշոտոյ ծառայիս Քրիստոսի՝ կեալ ընդ երկայն աւուրս[4]։

69

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10434 (1069 թ.)

Ա

1բ Անանիայի է սուրբ Աւետարանս Աստուած վայելել տացէ ի կամս իւր, ամէն։

Բ

87բ Անանիայի Նարեկացւոյ աստուածաղան հռետորի եւ հզաւր վարդապետի է սուրբ Աւետարանս այս։ Եւ որք ընթեռնուք յիշեսջիք ի Տէր զստացաւղ սորին աղաչեմք[5]։

---

[1] Անձեւացւոյ և՞։

[2] «Թէ՝ պարտուխ»—կասկածում է հրատարակիչը։

[3] 6 տող եղծված է։

[4] Գրված է չորս ավետարանիչների նկարի տակ։ Այս էջից բացի, երկու էջերում դարձյալ նկարված են եղել չորս ավետարանիչները՝ զույգ-զույգ։ Հիշատակարանի սկզբում գրված է. «Վանք անուն ուխտատեղի ի գլուխ բլրոցն, և անդ փայտաշեն շտեմարան անփակ, և ի նմա Ս. Յովհաննես անուն Աւետարան, երկաթագիր, մաղաղաթյա, մեծագիր։ Ուխտ զորավոր։ Աւետարանն ինքն ինքնին պաշտպան թողյալ անպաշտպան։ Թերթք պակաս ի տեղիս տեղիս»։ Այսքան է Օրմանյանի տված տեղեկությունը և հիշատակարանը,— ավելացնում է Մ. Տեր-Մովսիսյանը։

[5] Գրված է խորաններից առաջ, հանդիպակաց էջի վրա նկարված խաչի մուգ կապույտ խորքի վրա բաց կապույտ ներկով, շղագիր է։ Երկրորդ հիշատակագրությունը Մատթէոսի վերջում է գրված գրչի գրով։ Այս երկու հիշատակարանները պատկանում են գաղափար օրինակին, որը Անանիա Նարեկացու սեփականությունն է եղել, և ամենայն հավանականությամբ պահվել է Նարեկա վանքում։

## 70

ՅՂԹ 950

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԵԱՆ ԽՈՍՐՈՎԱՅ ԱՆՁԵՒԱՑԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

*Երևան 1328 (1278 թ.)*

Հեղինակ՝ Խոսրով Անձևացի

### ա

172բ *Շնորհին Աստուծոյ յայտարանութիւն արարեալ եկեղեցական կար-*
*գաց ըստ իւրաքանչիւր ժամադրութեանց, ի կատարումն հասուցաք ոչ*
*որչափ ունէր խորհրդածութիւն քարոզացն և աղօթիցն բանք, այլ որ-*
*չափ և հասողութիւն մեր բաւեաց համառաւտեցաք։ Եւ թէպէտ և բա-*
*զում են եկեղեցական կարգացն զանազանութիւնք քարոզաց և աղօ-*
*թից և պատարագամատուցաց, եւ են որ ըստ մարտիրոսաց յիշատակի,*
*և են որ ըստ տէրունական տաւնից, ծննդեանն և յարութեանն, և են*
*որ ի շնորհատրութիւն կարգեալք, այսինքն ի մկրտութիւն, ի ձեռնա-*
*դրութիւն, և յաւրհնութիւն պսակի, և ի թաղումն մեռելոց, այլ և ի*
*սեղան հաստատեալ, և զսպաս եկեղեցոյ աւրհնեալ, և զջուր սրբել ի*
*յայտնութեան Տեառն, և ի խաչ աւրհնեալ, և ի սերմ աւրհնեալ, և*
*զկալ, և զգուարակ, և զաղ, և զհատ, և որ այլես են շնորհաբաշխու-*
173ա *թիւնք, եւ որ վասն ճանապարհորդաց և հիւանդաց, և || վասն այլ ինչ*
*սոյնպիսեաց, զորս բովանդակ բան առ բան քննութեամբ արկանել ոչ*
*մեք դրեալքն լինեաք հանդուրժող և ոչ ընթերցողքն լսելութեանն։ Բայց*
*եթէ հաստատութեամբ ոք միտ դնէ այսոցիկ, որ ասացանս, բաւակա-*
*նապէս առ այլսն ամենեսին միտս ստանա։ Եւ զի՞նչ ասեմք եթէ ամե-*
*նեքումբք գրեցելովքս առ բովանդակ թողեալսն կարողանայ իմանալ,*
*այլ թեև մասին ինչ սոցանէ հասանէ մտաց, բաւականանա առ ամե-*
*նայն լրումն եկեղեցական կարգագրութեանցն։*

### բ

*Վասն որոյ աղաչեմ մի վարկպարազի գործ համարել զմտառու-*
*թիւն աստուածեղէն բանից, մանաւանդ զքարոզութեանց և զաղաւթից,*
*զորմէ մեր փրկութիւն կախեալ կա։ Եւ ոչ միայն մերն, այլ որոց մեքն*
*պարտապանիցեմք, եթէ կենդանեաց և եթէ մեռելոց, զի ոչ եթէ լե-*
*զուին ընդ աւդն բախելն առանց մտացն զհետ երթալոյ աւգուտ ինչ*
173բ *գործէ, զի || սրտագէտն Աստուած ի սիրտն և ոչ բերանն հայի։ Վասն*
*որոյ արթուն մտաւք և անզբաղ խորհրդով և կատարեալիմաստ հո-*
*գով զաղաւթսն հատուսցուք Աստուծոյ, զի զմեզ և զայլս աւգտեցուս-*
*ցուք, և մեք այլոցն աղաւթից շահեալ լիցուք։ Քան զի թէ սրտի մտաւք*
*վասն ամենայն հաւատացելոց աղաւթս արասցուք, ի բոլոր աղաւ-*
*թից հաւատացելոցն աւգուտ մեզ արասցուք, քան զի որով չափով չա-*
*փեմք, չափեալ մեզ լինի։ Յաղագս որոյ, նախ անձինս, ապա այլոց*

ամենեցունց տամ զգուշութիւն, հոգ յանձին ունել և յԱստուծոյ աւգնութիւն հայցել, զի կարասցուք ըստ հաճոյիցն Աստուծոյ մատուցանել նմա զաղաւթս մեր։

Եւս առաւել զգուշանալի է առաջնորդաց եկեղեցոյ, որ փոխանակ բովանդակ եկեղեցոյն զձեռսն առ Աստուած ամբառնան և զամենեցունց հայցուածս Աստուծոյ պատղամաւորեն, որոց հարկ է զի այնպիսի վարս ստանայցեն, որ համարձակութիւն տայցեն նոցա առ աստուած
174ա |յ|խաւսութիւն, և որպէս Մովսէսն յԱստուծոյ տեսութիւնն ոգովք ։
ժանասցին, և որպէս երևմամբ աւգնական իւրեանց աղաւթիցն զնախաղնաց զսողրսն առնիցեն, և նաքաւք զժողովրդոցն զպատգամս Աստուծոյ մատուսցեն...[1]։
175բ Համարձակեցա առ այս յանդգնաբար ի հարկէ, ոչ զի անձին փառս ստացայց, այլ զեպիսկոպոսութիւնն վիճակեցա, և ի վիճակևալսն տգիտութիւն ի յոլովսն վարկա, և բանիւ ամենայն ումեք զբովանդակ զայս ծանուցանել անհնար գիտացի։ Պատշաճ համարեցաւ ի գրի արկանել, զի թերևս այսպէս դիւրին առ ուսանել արարից կամողաց։ Յաղագս որոյ և որք հանդիպին այսոցիկ լսելութեան, աղաւթս վասն մեր փրկութեան արասցեն, սուղ աշխատութեանցս փոխհատոյց լինելով առ ի Քրիստոսէ զնորա ողորմութեանցն պարգևս, որում լիցի ամենեցուն մեզ հանդիպել յերկրի և յերկինս, և փառս վեր առաքեալ Հաւր և Որդոյ և Հոգոյն Սրբոյ, որում եղիցին փառք այժմ, և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամեն։

Գ

Գրիչ՝ Սահակ որդի Խոսրովա

Մեկնութիւն գրոցս այսորիկ եղև ի ձեռն Խոսրովա Անձաւացեաց եպիսկոպոսի, յայժ հետևողի պատուիրանացն Աստուծոյ, ի թուականութեանն Հայոց ՅՂԹ (950)։ Եւ առաջին գծագրութիւն գրոցս եղև ձեռամբ Սահակայ որդոյ նորին տեառն Խոսրովու, զորս յիշեսցէ Տէրն գթութեամբ և ողորմութեամբ, աղաւթիւք նոցա այց արասցէ մեզ ի բարութիւն, ամէն։

71

ՆԺԴ 965

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՅԱՂԱԳՍ ՄԱՏԻՆ ՍՐԲՈ ԱՌԱՔԵԼՈՅՆ ՊԵՏՐՈՍԻ ԵՒ ԲԵՐՄԱՆՆ Ի ՀՌՈՄԷ Ի ՀԱՅՍ

Երևան 1315 (ԺԴ գ.)

Գրիչ՝ Պանտալէոն

Վայր՝ Կոստանդնուպոլիս

ա

2ա Յամս Նիկիֆատայ կայսեր Յունաց քաջի և առաքինւոյ, յաղթող ի

[1] Այնուհետև ավելի մեկնություն է, քան գրության շարժառիթների բացահայտում։

պատերազմունս հեթանոսաց, որ շարդեաց զլուծ իսմաելական, որ ի վերա պարանոցի քրիստոնէից, և խորտակեաց զկզակս նոցա, և առ զանառիկ ամուրս նոցա, մանաւանդ զմեծ և վյականաւորն և զհռչակելին զՏարսոն Կիլիկեցւոց և զԿրետիս, ուր բնակեալ էին հանապազասուտք շարաճըճիք. դատարկապորտքն այնոքիկ, և արար ծառայս զամենեսեան զայնոսիկ մեծ պետութեանն Հռովմայեցւոց թագաւորն այն, երկրորդ զկնի թագաւորութեան վերնոյն։ Այլ և ևրևր զզարդ պեղծ մզկթաց նոցա ի պատիւ Սրբոյն Սոփեա։

Եհաս ինձ տառապեալ Պանտալեւոնի և ոչ ըստ արժանեաց քահանայի, իբր թէ ի տեսչութենէ Աստուծոյ, ի հրամանէ երկրորդ տիեզերակալէ տեառն իմոյ աւագ Ապուսակի Համազասպ արքայից արքաի մեծ պետութեանս տանս Հայոց, գնալ դճանապարհո ուղղեւորութեան, ուր թագաւորեալ քաղաքն Բիւզանդ[ի]ոն ի Նոր Հռոմ, յԵրկրորդն Բաբելոն և ի ճշմարիտն Երուսաղէմ յամ[ենատ]ենչն, յամենահրաշն ի դրո[հս] տիեզերաց, յանմատչելին և յանկոխելին ի թշնամեաց, ի Կոստանդինուպոլիս, ի չորս հարիւր[եր]որդի տասներորդի չորրորդի թուականութեան Հայոց (965), ի տանի աստուածայայտնութեան, ի վեցն յունուարի, ի ժամու հինգերորդի, յորում և կոխեցի անարժան գարշապարաւք զ(յ)ատակս տանն Տեառն և զյարկս բնակութեան Աստուծոյ մերոյ...

Բ

ծբ Որք ընթեռնոյք, յիշեցէք զտառապեալ Պանտալէոն, զի բազում աշխատութեամբ հանի զգայ յարկեղաց Սրբոյն Սոփիա և թարգմանեցի ի յունականէն ի հայ լեզու, ձեռամբ աւրհնելոյն Յովսեփայ, ի փառս Աստուծոյ[1]։

72

ՆԺԵ 966

ԱՒԵՏԱՐԱՆ

Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 265

Գրիչ՝ Սարգիս

Չբ Գրեցաւ սուրբ Աւետարանս ՆԺԵ (966) թուականութեան Տեառն[2] մերոյ, հրամանով և ծախիւք Թորոս քահանաի, միաբանութեամբ ամենայն ընտանեացն, ի զարդ եւ պայծառութեամբ սուրբ եկեղեցւոյ, եւ ի բերկրումն ըղ[աստուածա]սէր ժողովրդոց։

---

[1] Այս առաջաբանից, որ կարող էր գրվել նաև որպես հիշատակարան, բերում ենք սկզբի մասը, ուր գրության թվականն է հիշվում և վերջը՝ ուր թարգմանչի անունն է։

[2] Հիշատակարանը լուսանկարից ենք արտագրել, ավելի հարազատ մնալու միտումով։ Այս բառը ջնջված և նորից գրված է։ Գրիչը նշանակել է Հայոց թվականը (ՆԺԵ), բայց անվանել է Փրկչական թվականը («թուականութեան Տեառն»). որի համար հետագայում «Տեառն» բառը քերել են և գրել «Հայոց», ապա նորից վերականգնել՝ «Տեառն»։

Արդ, որք ընթեռնուք եւ որք լսէք, զԹորոս քահան[այ] եւ զամենայն գիւր եղբարսն, եւ զծնողս նորա յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր։

Ես[1] Սարգիս անարժան քահանայ, գրեցի զսուրբ Աւետարանս ՆԺԵ (966) Թուականիս Թագաւորելոյ ի վերայ մեր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Նմա վայել է փառք յաւիտեանս, յաւիտեանս, ամէն։

## 73

ՆԺԶ 967

## ՄԵՍՐՈՊԱՅ ՎԱՅՈՑՁՈՐԵՑԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

Երևան 5980 (1297 Թ.), Սոփերք, Զ, էջ 138—139

Հեղինակ՝ Մեսրոպ Վայոցձորեցի

ՆԺԶ (967) Թուականիս Հայոց և ի վերադիտողութիւն տեառն Վա-
հանայ Հայոց կաթողիկոսի, և յամս Աշոտոյ Բագրատունւոյ Հայոց Թա-
գաւորի, ի տանէն Շիրակայ, ես՝ Մեսրովպ նուաստ քահանայ ի Վայոց-
121ա ձորոյ, ի դեղջէ Հողոցմանց, ուստի Յովսէփ էր երանելի նա//հատակն.
յաւուրս սրբոյն Վարդանայ, որ յետոյ չարչարեցաւ ի Հազկերտէ ար-
քայից արքայի, ես Մեսրովպ մեծ ցանկութեամբ ծաղկաքաղ արարի
զգիրքս զայս ի Հայոց Մնացորդաց յԱրևելից դրոց, զյաղթութիւն և
զվատթարութիւն Թագաւորացն Հայոց և Վրաց, և զառաքինութիւն և
զանչելիս հայրապետաց տոհմից Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, և
զտեսիլ և զկտակ սրբոյն Ներսիսի, և զքաջութիւն և զյաղթութիւն արիա-
կան ազգին Մամիկոնէից: Իսկ ի սպառել Թագաւորութեանն Արշակու-
նեաց, ըստ բանից առնն Աստուծոյ սրբոյն Ներսէսի, Վարդան Մամի-
կոնեան բռնացեալ ունէր զտեղի Թագաւորացն Հայոց և Վրաց ամս Ի
(20), և արիաբար ընդդիմադրեալ քաջութեամբ ԽԲ (42) պատե-
121բ րա//զմացն պարսկական զաւրացն, որ դիմեին ի վերայ նորա, և յաղ-
թեալ նոցա քաջն Վարդան դարձուցանէ զնոսա և յաղթահարէր զնո[սա]
վերին աւգնականութեամբն և զաւրութեամբ սուրբ խաչին։ Եւ յետ բա-
զում յաղթութեան, նահատակեալ առնոյ զմարտիրոսական պսակն յա-
ւուրս Հազկերտի Պարսից արքայից արքայէ։

Արդ, այս համառաւտ ասացաւ. զայլսն ամենայն ի սուրբ Վար-
դանանց գրոցն գտցես զբաւանդակն։

Արդ, ի Սրբոյն Գրիգորէ Հայոց Լուսաւորչէն մինչև ցայս ամս շա-
րագրին ՈԿԲ (662)։

Ես՝ Մեսրոպ ազգակից սրբոյն Յովսէփայ երիցու, իմացուցանեմ
122ա վասն նորա, զոր ոմանք ասեն եթէ եպիսկոպոս գոլով // նորա, չէ
ճշմարիտ, վասն զի Ղևոնդ երէց Վանանդացի, որ է նահատակակից
սրբոյն Յովսէփայ յաւուրսն սրբոյն Վարդանա, ի ժամ մարտիրոսու-

---

[1] Այստեղից հիշատակարանը դրված է շրջանակի մեջ։ Նորից «Տեառն» բառը նորոգված է։

թեանն ասէր ցՅուսէփ՝ եթէ Յառաջ մատիր, զի դու աստիճանաւ ի վեր
ես։ Աստիճան ասաց և ոչ աթոռ, զի Երիցու կարդ և սարկաւագի, և
դպրի՝ աստիճան է և ոչ աթոռ։ Յորժամ ձեռնագրի եպիսկոպոս կամ
կաթողիկոս, յայնժամ լինի աթոռոյն տուն քահանայութեանն։
Եւ արդ, յառաջ, քան զվախճ[ան]ելն Սահակա եպիսկոպոսի, տայր
զտեղապահութիւն աթոռոյն Սրբոյն Գրիգորի՝ Մաշտոցա վարդապե-
տին, և Մեսրոպ տայր Յուսէփ երիցու։ Եւ ի շփոթմանէ ժամանակին ոչ
122բ || ժամանեաց Յուսէփ ձեռնադրիլ եպիսկոպոս կամ կաթողիկոս, այլ
մնաց Երէց և ի նմին վախճանեալ։
Եւ տր[դ], զայս հաննալ յԱրևելից գրոց ի Հայոց մնացորդացն
պատմութեանց, և ետու որդեցելոյ իմոյ սուրբ աւազանին ծննդեամբն
Վահանայ Մամեկոնենոյ, ի դեւղն որ կոչի Վարժի[1]։

74

ՆԻԱ 972

ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑԻՈՅ ՅԱՂԱԳՍ ՃԳՆԱՒՈՐԱՑ

Երևան 3031 (ժե դ.)

Գրիչ՝ Սիմէաւն

Վայր՝ Սանահին

Ես անարժանս ի կրանաւորաց փցուն գրիչս Սիմէաւն, ի թուա-
կանութեանս Հայոց ՆԻԱ (972), ի նորաշէն վանքս, կոչեցեալ Սանա-
20ա հին, հրամանաւ հաւր իմոյ Յովաննիսի, որ էր վա||նիցս շինութիւնն
ամք Զ (6), զոր շինեաց բարեպաշտ թագուհին Խոսրովանոյշ, ամու-
սինն Աշոտոյ Հայոց շահնշահի, որդի Սմբատա Բագրատունւոյ Հայոց
թագաւորի, և յառաջին ամի հայրապետութեանն հոգևոր հաւրն հա-
նուրց տեառն Խաչկայ արժանաւոր վերադիտողի, և եպիսկոպոսութեան
մերումս նահանգի գաւառիս Տաշիր՝ Գրիգորի արժանաւոր հաւատպետի,
որ և նորա յառաջնորդութեան են ամք Բ (2), ի թագաւորութիւն Աշո-
տոյ եւ նորին որդւոյ Սմբատայ քաջ և յաղթող թագաւորի Հայոց։
20բ Արդ, որք ընթեռնոյք և լուսաւորիք ի բանից գրոցս յայսմանէ, յի-
շեսջիք ի մաքրամատոյց յաղաւթս ձեր զԱշոտ շահնշահն և զշինաւղն
սուրբ ուխտիս զբարեպաշտ և զաստուածասէր թագուհին և զիւրեանց
որդեակսն, զարի և քաջ շինաւղն՝ Հայոց թագաւորն Սմբատ, և զեղ-
բարս նորին Գագիկն և զԳուրգէն և առաւել յիշելոյ արժանի համարես-
ջիք զհանգուցանեալ սուրբ հայրն մեր առ Քրիստոս Պաւղիկարպոս, որ
ըսկիզբն արար վանիցս շինութեան և փոխեցաւ ի դասս անմարմնոցն,
որոյ հանգստեան են ամք Բ (2)։
21ա Եւս առաւել յիշեսջիք զնոր||ին փոխանորդ զուխտի առաջնորդս
զհայրն Գրիգոր, մաքուր յոյժ և ամենայն առաքինի գործաւք լցեալ։
Յիշեսջիք եւ զմիաբան ուխ[տ]ս մեր եղբայրութեանս, զի աղաւթիւք

[1] Յիշատակարանքում (էջ 121—124), բերված է «Հայկական հին դպրութեան պատմու-
թիւնն»-ից, ուր, ինչպես նաև Սոփերքում (Զ, էջ 138—139), պակասավոր է հիշատակարանը։

ամենայն սրբոց խաղաղացուսցէ Աստուած ըզկեանս մեր յամենայն վրրդովմանց շարժման չարին չերևելեաց և յաներևութից, փառք Աստուծոյ յամենայն ժամ, ամէն։

Աղաւթս արարէք և իմ անպիտանութեանս, որ ողորմի ինձ Աստուած, յորժամ բանքն սպառին և գործք թագաւորեն, և որք յիշէք, յիշեալ լիջիք ի Տեառնէ Աստուծոյ աստ և ի վերջնումն՝ ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում փառք անդրաւ [յաւ]իտեննին, ամէն[1]։

75

ՆԻԲ 973

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՍԱՑՒՈՅ

Երևան 2684

Գրիչ՝ Պետրոս

Վայր՝ Տարանի գաւառ

240ա Ի ՆԻԲ (973) թուականութեանն Հայոց եւ ՋԻԵ (972) Հոռոմի թուականութեանն գրեցաւ Մեկնութիւն Երգոյ երգոցս ի գաւառին Տարանոյ, ձեռամբ Պետրոսի անարժան գրչի, հրամանաւ հաւր Կիւրակոսի եւ համակամութեամբ եղբարցս, վասն յիշատակի հոգւոց իւրեանց, ի ժամանակի փոխման յաշխարհէ Գրիգորի Մամիկոնենից եպիսկոպոսի։ Եւ յետ մահուան նորա բազում շփոթումն եւ հակառակութիւն եղեւ վասն ձեռնադրելոյ եպիսկոպոսի։

241բ Արդ աղաչեմ զամենեսեան զընթերցողսդ, // յորժամ ընթեռնուք զլուսաւոր եւ բազմափայլ գիրսս սրբոյն Գրիգորի Նիւսացւոյ՝ զեղբաւր Բարսղի, եւ լուսաւորիք եւ աւգտիք ի սմանէ ընթերցմամբ եւ կամ գրչութեամբ, ղստացաւղս սորա՝ հանդերձ եղբարքս, յաղաւթս յիշեսջիք ի Տէր, եւ Աստուած ձեզ ողորմեսցի իւրում գալստեանն, յորժամ զսուրբս իւր պսակէ փառաւք։

Աղաչեմ եւ ես, որ գրեցի, անարժանս երկնից եւ երկրի, եւ յետինս քան զամենեսեան, եւ վերջացեալս յամենայն բարեաց գործոց, եւ որ ընդ իս եղբարքս յիշատակի արժանի արասջիք զմեզ ի Քրիստոս, քանզի սովորութիւն է մարդասիրին Աստուծոյ այղովք այղոց ողորմել, եւ Աստուած զձեզ յիշեսցէ ի հանդերձեալն գալստեանն իւրում, եւ արասցէ արժանի լսել զերանաւէտ զձայնն, որ ասէ. Եկայք աւրհնեալք Հաւր

---

[1] Յիշատակարանքում (էջ 125—126) համառոտաբար բերված է «Արարատ»-ից (1901, էջ 272), իսկ այնտեղ՝ Ս. Ջալալյանի «Ճանապարհորդութիւն...»-ից։ Հիշատակարանը քաղում ենք «Սանահնի քռօթուկ» կոչված ձեռագրից։ Քյոթուկի կազմողը այն բերում է հաստատելու Սանահնի հիմնարկության թվականը և սկսում է այսպես. «... և այլ ես բերից մեծապատիւ վկայ զՍիմէան քաջ քարտուղարն Սանահնու, որ զՍրբուհոյ Աստուածածնիս հիմնարկութեանն և աւարտմանն ականատես էր եղեալ, որի յայնմիկ գրել զգիրս Բարսղի Կեսարացւոյ՝ Յաղագս Ճգնաւորաց, և նորուն յիշատակարանի գրեալ այսպէս...» (էջ 20ա)։

իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ զարքայութիւն ի սկզբանէ աշխարհի, եւ յաւիտենից բարութեանցն արժանի լիջիք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս, ամէն։

Բ

124բ Ով եղբայր քունս կու նեղէ խիստ, և ժամս գիշերո է[1]։

76

ՆԻԳ 974

ԾՈՒՐՂՈՒԹԻ ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան, Մատենադարան 420

Գրիչ՝ Յովհաննէս

ա

Յիշեա, Տէր, զծառայն քո զՅովհաննէս եւ ողորմեայ։

Երկրորդ գրիչ

Բ

ՆԻԳ (974) թուականութեանս Հայոց գրեցի զսուրբ Աւետարանս ես՝ Յովհաննէս ծառայս Քրիստոսի, եւ փոխեցա յաշխարհես ԻԴ (24) ամեա ժամանակիս առ արարիչն իմ Քրիստոս Աստուած՝ առաջնորդ կենացն յաւիտենից։

գ

Ստացող՝ Եղիայ

Շնորհաւքն Քրիստոսի ես՝ Եղիայ ծառայս Քրիստոսի ստացա զսուրբ /// իմոյ և ծնողաց իմոց, առաջնորդ կենացն յաւիտենից։

Որք կարդայք զսուրբ զԱւետարանս, զԵղիա քահանա եւ զկրաւնաւորս յիշեցէք, զի իմ յիշատակ սուրբ Աւետարանս է առ Քրիստոս։

77

ՆԻԶ 977

ՆԵՄԵՍԻՈՍԻ ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ ՄԱՐԴՈՅ

Երուսաղեմ, 1862, Պողարյան, Ցուցակ, Զ, էջ 256—257

Գրիչ և կազմող՝ Գեորգ

Զստացող սուրբ կտակիս զտէր Խաչիկ, որ մեծաւ փափաքանաւք ետ գրել ի ստոյգ աւրինակաց[2] առ ի յուսումն աստուածասիրաց կրաւ-

---

[1] Գրված է վարժ բոլորգրով։

[2] Լուսանցքում այդ բառերի դիմաց գրված է, հավանաբար այլ ընդօրինակողի ձեռքով. «Ի ստուգութենէ հեռի էր, թէ ոչ եաք աշխատեալ մեծապէս»։

նաւորաց, յիշեսջիք ի սուրբ եւ ի կենդանի աղաւթս ձեր, եւ Աստուած զձեզ յիշեսցէ յիւրում դալստեանն եւ յարքայութեանն։

Դրեցաւ եւ կազմեցաւ ձեռամբ իմով Գէորգա նուաստ գրչի, ի թուականիս ՆԻԶ (977)[1]։

## 78

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԺԱՄԱԿԱՐԳՈՒԹԵԱՆ ԵԻ ՊԱՏԱՐԱԳԻ ԽՈՍՐՈՎԱ ԱՆՁԵՒԱՑԵԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Երուսաղեմ, 1141, Պողարյան, Ցուցակ. Դ, էջ 226 (1317 թ.)

Գրիչ՝ Գրիգոր Նարեկացի

652 Շնորհիւ Աստուծոյ եղեւ Մեկնութիւն այսմ դրոց ի ձեռն Խոսրովայ Անձեւացեաց եպիսկոպոսի, յոյժ հետեւողի պատուիրանացն Աստուծոյ, զոր մեղ և գովել անճահ է, զի մի դայթագղեսջիք ի նոյն, վասն դոլոյ նորուն հայր իմ ըստ մարմնոյ, որ չեմ արժանի կոչել որդի, եւ ոչ վարձկան ըստ գրեցելումն, այլ ի գրելոցդ լիցին հասու խնդրաւղքն վասն նորա, որք սրտի մտաւք ունկն դնիցին, որք եւ աղաւթիւք փոխադարձել պարտին ընդ տուիցելոյս, եւ հասարակացն տուաւղն Աստուած եւ ձեզ հայցողացդ ձիրեսցէ զիւրականն պարգեւ։ Այլ յոյժ ամաչեցեալ եւ տարակոյս դտանիմ ես՝ Գրիգոր պարտաւոր պատուիրանաց սուրբ գրոց։

Արդ առաջին սուրբ գրոցս այսորիկ գծագրութիւն եղեւ ձեռամբ Սահակայ որդւոյ Խոսրովու, սոյն սուրբ գրոցս մեկնողի ՅՂԹ (950) թուականութեանս Հայոց։

Ողորմի Աստուած աշխատողաց գրոցս։

## 79

ՆԻԶ 977

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՅՍ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 1109 (1640 թ.) «Գրիգորի Նարեկացւոյ մատենագրութիւնք», Վենետիկ, 1840 թ., էջ 366—367

Հեղինակ՝ Գրիգոր Նարեկացի

Վայր՝ [Նարեկայ վանք]

Աւարտեցաք զբանս Մեկնութեանց Երգոյ Երգոցս և ասասցուք զոր Աստուածաբան ասաց յիշելն, որոց և մեք հաղորդեսցուք, որ մեկնեցաքս զայսոսիկ, և որք յուսանիքդ ի նոյն ինքն ի Քրիստոս Յիսուս

---

[1] Ձեռագրի նկարագրության սկզբում (էջ 255) և հիշատակարանի սկզբում Ն. Պողարյանը գրել է «ՆՂԶ — 1047», որը և համարվել է ձեռագրի գրության թվականը։ Սակայն հիշատակարանի վերջում գրված է ՆԻԶ, այսինքն՝ 977 թվականը։ Ընդունում ենք վերջին թվականը, իսկ Խաչիկին համարում ենք այդ ժամանակի կաթողիկոսը (972—992 թթ.), որը ձեռագրեր էր ընդօրինակել տալիս և մատենադարան կազմում Արգինայում։

151բ ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս, ամէն։ || Դարձեալ, և յաւէտ փառք
շնորհատուողին Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի հանդերձ Հարբն և
Սուրբ Հոգւովն յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։
Ի ՆԻՁ (977) թուականութեանս Հայոց հարկեցայ ես՝ Գրիգոր քա-
հանայ ի Նարեկայ, որդի տեառն Խոսրովայ Անձաւացեաց եպիսկոպոսի,
ի Գուրգենայ աստուածասէր, քրիստոսապսակեալ արքայէ՝ յորդոյ
Աբուսահլի Համազասպ թագաւորի, առ ի Մեկնութիւնս աճաւոր բա-
նիցն Սողոմոնի, և բացայայտեալ զխորին ծածուկսն որ ի նոսա,
152ա որ են քաղցր առ լսել։ Վասն զի || զփեսայէ և զհարսնէ ասէ, որ և
զստեանց և զկարմրացեալ շրթանց և զայտից գեղեցկութենէ, և զա-
չաց ցանկալեաց, և զքեռ և զեղբաւրորդւոյ, և զաւրիորդաց, և զայլն ա-
մենայն այսպիսեաց բանից տոփանականաց և սրտից խտղտանաց, սեռն
սիրոյ շաղկապ միաւորութեան զոր լուեալ մարդկան անիմանալեաւք
մտաւք յայլ և յայլ իրս իմանային։
Ապա ի հոգս եղեալ թագաւորին այսպիսի իրի, յղէ առ իս մի ան-
152բ գամ և երկիցս որում ոչ իշխեցի ընդդիմանալ, զի || ծանեայ, եթէ աս-
տուածահաճոյ է հրամանն, և մեկնեցի զԾրգս Ծրգոցն նորին հրամա-
նաւ։ Զի թէպէտ և աւելի գործ քան զիս առի զանձամբ առ երկիւղի
անհնազանդութեան, զի մի թագաւորական հրամանն անկատար մնաս-
ցէ, սակայն յոյժ յանդգնութիւն էր ինձ այս, և բաղում բամբասանաց
արժանի յամենեցունց, նաև յաստուածային կողմանէն պատժոց ակնկա-
լիք։ Բայց երկոցունց կողմանէն՝ յաստուածայնոց և ի մարդկայնոցն՝
153ա զթագաւորական հրամանն առաջի կալեալ՝ կարծեմ ար||դարանալ. զի իւր
իսկ Քրիստոսի հրաման է՝ հնազանդ լինել թագաւորաց իբրև Աստու-
ծոյ, և որ հնազանդի՝ իւր համարի Աստուած, և որ անհնազանդ գտանի՝
և զայն ևս իւր համարի։
Զոր աղաչեմ զընթերձաւղսդ մի մեղադրանս յաւելուլ ինձ՝ յաղագս
ձեռնարկութեան ի գործ, առ առաւել էր քան զարժանն իմ։ Զի ըստ
հարկապահանջ խնդրողին ոչ կարացի վերջացեալ գտանիլ, այլ յու-
սալով իմ Հոգին Սուրբ, զմտաւ ածի, թէ ոչ անտես առնէ զաղաչանսն
առ նա, սկիզբն արարի աղւթիւք և արտասուաք խնդրել, որ || և նա-
յեցեալ յանարժանութիւն իմ և ի սրտեռանդն կամսն հայցւածին, եբաց
զբերան իմ յասել և ի համառոտել զսա ի փառս Քրիստոսի։

## 80

## ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԱՄԵՆԱՁԱՒՐ ՆՇԱՆԻ ԱՍՏՈՒԱԾԵԱՆ ԽԱՉԻՆ

Երևան 5365 (ԺԳ դ.), «Գրիգորի Նարեկացւոյ մատենագրութիւնք»,
Վենետիկ, 1840 թ., էջ 422—423

Հեղինակ՝ Գրիգոր Նարեկացի

Վայր՝ Նարեկա վանք

254ա Յիշատակագիր պատասխանւոյ սուրբ ընծայական գրոյ երջանիկ
և շնորհընկալ տեառն Ստեփանոսի, յերեսաց նորին նոգիաբուղխն
վարդապետի:

Շնորհակիր էին և Հոգւոյ նորա ընդունակ ընտրեալդ և ներանձնացեալդ այցելու, ըստ հայցման հաճութեան բարեսէր կամաց երջանկիդ, և վրութեան նամակի ձևրում պատճենին, յաւրինեալ շարադրեցի ի վեհիդ գովեստ հիւսուածս բանից, և նկարեցի, մատուցի[1] ի գեղ պատկերի դիմաց սոփեստիդ, և սպիտակափայլ լուսափառ դաշտի քարտինիդ, և արձանացուցի ի շուրթն գրչիս[2], անշունչ խաւսողիս, անքայլ ընթացողիս, անձայն հնչողիս, անդուլ պատմողիս և անսայթաքելի քարոզչիս՝ զանուն տենչալի ձեռումդ կոչման տէրՍտեփանոս լերինդ Մոկաց հղաւր դիտապետ, մնալ յարակայ ի սոյն համառաւտագիծ մատենի յաւուրս անթիւս և յամս հազարաւորս, իմով սակաւամասնեա իմաստիւ։

Ես Գրիգոր ետին վարդապետ և կրսեր բանասիրաց, որդի դստեր եղբաւր հաւրն Անանիայ հոգեզարդ և հմտավարժ փիլիսոփայի, և ըստ վարուց մաքրութեան կրամից յոյժ հռչակելո, և ընծայեցի քումդ եկեղեցեաց ղայս նուէր բարեաց բանից ցանկալեաց[3]։

255ա Արդ, վայելեա յայսմ բերկրութեան յամեալ և յարակայեալ ի հոգեւոր հրճուանս աղաւթից, ե ընկալեալ խառնեսցես ի յոքնահամբար զարդս ամենագեղս երկնաին ղանձուցդ զտարազ տեսակի տառիդ, և յիշատակեսցես զանուն իմ ղտրուպ ի գաւիթ սենեկի անձկութեան սրրտիդ, և նորոգեա զմերս ի ձեռումդ[4] սուրբ խորանի աստուածաբնակի, հանդէպ սեղանոյդ արարչընկալի, զերկոսին զմեղ ի միում կարգի, զիս և զեղբայր իմ զանդրանիկ զՅովնԱնէս ցանկալի անոմ, հանճարեղ գիտնական և իմաստասէր առաւել, քան զիս, որպէս ընդ [Եւ]սեբի եր[ա]զագրի անուն Պանփիլեա[5]։ Եւ յամենայնի կեցցեն մեր անձինք ընդ քեզ, որպէս և քոյդ հոգի միացեալ ընդ մեզ միջնորդաւ բանին էութեան, ի մի հալոց ընտրութեան քրայի, անբաժին տեսմամբ և անորիշ շնչով, և անայլայլակ խորհրդով, և անանջրպետ կամաւք, և խառրրսխեալ, հաստատեալ և հիմնաւորեալ խորհրդովդք ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որում փառք, յաւիտեանս, ամէն։

Այլ քանզի անընդել գոլով տեսութեամբ բաղձալի վայրիցդ և սրբոց խորանացդ զթերին լիութեան և զպակասն անճեշութեան յարմարման կրութեանդ աղերսեմ շնորհել։

Ով որք հանդիպիք այսմ գեղայպաճոյճ, հոգեզարդ և շնորհալի իմաստութեան գրոցս, զեղկելի գրողս և ծնողսն իմ և զեղբարսն աղաչեմ յիշել ի Տէր վասն սիրոյն Քրիստոսի որ յոյսն է ամենեցուն[6]։

[1] Տպագրում՝ «յօրինեալ շարադրեցի ղպատմութեանն գովեստ, և զճառքս ներբողենի։ Նկարեալ հաստատեալ...» և այլն։

[2] Անդ. «մտրակեալ յընթացս սորա ասպարիսի զշրթունս գրչիս» և այլն։

[3] «յորոյ պտուղ վայելեսցես ախորժ բերկրանաց ճաշակմամբ յամեալ...» և այլն։

[4] «Միշտ նորոգ մտածեալ զմեզ ի ձեռումդ...»։

[5] Այս նախադասությունը բացակայում է տպագրում։

[6] Ցիշատակարանքում չկա։ Տպագրված է Գրիգոր Նարեկացու «Մատենագրութիւնք»-ում (Վենետիկ, 1840, էջ 422—423), Ապարանից Սուրբ խաչի պատմությունից և Աստվածածնի ներբողից հետո։ Ձեռագրի համեմատությամբ ունի որոշ տարբերություններ։ Տպագիրն ավարտվում է այսպես. «Եւ ինձ տառապելոյս օգնեա աղօթիւք, որ յարաժամ դեգերիմ յընթեռ-

## 81

ՆԼ 981

## ԴԱՒԹԻ ՔԱՀԱՆԱՅԻ ՄԱՏԵԱՆ ԳԻՏՈՒԹԵԱՆ ԵՒ ՀԱՒԱՏՈՑ (ՀԱՅԵՐԷՆ ԹՂԹԵԱ. ՀՆԱԳՈՅՆ ՁԵՌԱԳԻՐ)

*Երևան 2679*

*Ստացող՝* Դաւիթ

*Գրիչ՝* Ղուկաս

ա

154ա *Փառք ամենասուրբ Երրորդութեանն զաւրացուցչին իմոյ, եւ ընդունաւղին տկարաց, որ զաւրացուցանէ պհաւատացեալ անուան իւրոյ առ ի ճանաչել ղհաւատոյ լրումն։*

*Ես* Դաւիթ *քահանայ ցանկաց[այ] լուսաւոր եւ աստուածաղան վարդապետութեան սրբոյն* Աթանասի, *որ ընդդէմ Արիանոսաց եւ Հրէից՝ յաղագս տնաւրէնութեան Աստուածն բանի՝ ծանոյց երիս անձնաւորութիւն եւ մի աստուածութիւն։ [Արդ][1] ես ըստ իմոյ նուաստութեանս եւ աղքատ մտաց[ս ի մի] վայր բովանդակեցի, առեալ եւ սուղ ինչ ի սրբոյն* Անդրէասի *վարդապետութենէն եւ յայլոց նորին նմանեաց զշարագրութիւն տոմարաց, հաւաքեցի ի գիրսս յայս, ի յիշատակ ինձ, եւ իմոց կենդանեաց եւ ննջեցելոց, եւ ի ժառանգութիւն որդւոյ իմոյ* Ղուկասու, *որ գծագրեաց իսկ զսա։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք, եւ ուսանիք, եւ կամ յայլս մատենագրէք ի սմին աւրինակէ, յիշման արժանի արասջիք, զի թերևս արասցէ Աստուած ողորմութիւն յաւուրն համառաւտի, ուր բանք սպառին եւ գործք թագաւորեն, լսել ղերանաւէտ ձայնն՝ Եկայք աւրհնեալք Հաւր իմոյ, զոր Աստուած մեզ եւ ձեզ հասարակաց շնորհեսցէ, ամէն։*

*Եւ է նորոգումն սորայ ի ՆԼ (981) թուականութեանս Հայոց։*

բ

40բ Զ*Դաւիթ քահանայ յիշեսջիք ի Քրիստոս։*

գ

36բ Զ*Դաւիթ քահանայ յիշեսջիք ի Քրիստոս։*

դ

39բ Զ*Դաւիթ քահանայ յիշեսջիք ի Քրիստոս՝ զստացող սուրբ գրոցս։*

---

*Նույն իսկ գործ՝ և ոչ փոքր ինչ ժամանակ սահմանեալ որոշեմ»։ Ձեռագրում սրան հետևում է Մատեան ողբերգութեան հիշատակարանը, և ապա միայն «Պատմութիւն Ասպարանից»-ը («Յիշատակագրութիւն պատմաբանութեան ամենազաւր խաչի նշանի...» և այլն, էջ 257բ—276բ), որը պակասավոր է։*

[1] *Ձեռագրում այս բառը թանաքակեր է։ Նրանից ընդօրինակված № 6228 ձեռագրի համապատասխան տեղում գրված է «զոր»։ Սակայն վերջին տառի եզրից (թանաքակեր հետքից) երևում է, որ այն «ր» չէ, այլ «դ»-ստի և՝ «այդ»։*

Ե

80բ *Յիշեսջիք ի Քրիստոս զիս զԴաւիթ քահանայ, որոյ գիրսս գրեցաւ, եւ զորդի իմ զՂուկաս, որ գծագրեացս իսկ զսա։*

Գ

165բ *Յանուն եւ ի կամս ամենակալին Աստուծոյ, որոյ ակնարկութեամբն հետեւին ամենայն ընթացք բարեպատիւք հոգէսիրաց ի պետութենէ եւ ի սիրոյն Քրիստոսի. կամ եղեւ եւ իմ՝ ծառայիս Աստուծոյ Դաւթի, նորոգել զբազմազան բիւրաւոր ծաղկաւք զարդարեալ զհոգիանորոգ և զաստուածատուր շնորհս, զոր տուաւ ի Հոգւոյն Սրբոյ սրբոց վարդապետաց, ուղղափառ ախոյենաց, սրբասուն կրաւնաւորաց, արիացեալ նահատակաց, հեղ և հանդարտ հայրապետաց, որոյ եւ կցորդ բանի յիւրեանց կաշկանդեալ կարկեցուցին ղաւձտողն հաւատոց, անհետ առնելով զխոհերս պղծահամբաւս որոմնարկուս երեւութիցն նոցին կոըստական սուտապատիր երգոցն, այնքանիցն հնարիցն բաւական լինէին որպէս հուր զկապար, եւ որպէս արեւ զեղեմն, եւ աղաւթիւք իւրեանց զարհ[ուր]եցուցանէին զայս պիւծսն, որ աւրինակ զարհուրի կաքաւ ի շառաչմանէ արիացեալ արծուոյ։*

*Իսկ ես կամամեղ եւ նուաստ ծառայս Դաւիթ զմտաւ ածեալ զաւրն ահեղ զդատաստանն անաչառ, զբեմբն ահաւոր, զդատաւորն անողորմ զհուրն անշէջ և խաւարչուտ ղորդն անքուն, զլալ աչաց, եւ զկրճտել ատամաց, յորժամ սարսեն տարրեղէն արարածք, եւ յակնարկել դատաւորին սարսել սարսափեմ եւ դողամ, եւ քակտի ոգիս առ սակաւ սակաւ։ Այլ գիտեմ, որ թէպէտ եւ ես բազմամեղ եմ, սակայն Նա բազմագութ է, զի Նա, որ միածինն իւր ոչ խնաեաց ի գութ մարդասիրութեան իւրոյ, ոչ խնաէցէ, այլ հեղցէ յարաբացս իւր։*

*Արդ աղաչեմ զամէնեսեն, որք կարդա[յք] զծաղիկս զայս հաւատոյ, զիս զԴաւիթ [անմոռ]աց յիշեցէք*[1]*։*

Է

211բ *Ստացող սուրբ դրոցս Դաւիթ քահանայ յիշեսջիք ի Քրիստոս։*

Ը

*ԶԴաւիթ յիշեսջիք ի Քրիստոս։*

Թ

286ա *Ջստացող սուրբ գրոցս զԴաւիթ քահանայ յիշեսջիք ի Քրիստոս Աստուած։*

---

[1] Այս հիշատակարանը վերարտադրված է Գորգի կողմից, ձեռագրի 159—194 թերթերի հետ միասին, բուն գրությունից բավական անց և վերաբերում է ձեռագրի երկրորդ մասին (էջ 195ա—359բ), որ ստեղծվել է որպես առանձին ձեռագիր և դարձյալ գրվել Ղուկասի ձեռքով, առաջին ձեռագրից հետո։ Որովհետև այժմ միասին են և երկրորդի գրության թվականը հայտնի չէ, դնում ենք առաջինին տարեթվ։

Ժ

317բ Զգրիչս աղաչեմ յիշել, որ եմ Ղուկաս մեղաւոր, եւ Աստուած զձեզ յիշեսցէ, ամէն։

## 82

ՆԼԵ 986

## ՍԱՆԱՀՆԵԱՆ ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7735

Գրիչ

Ստացող՝ Եղիա

ա

Փառք ամենասուրբ Երրորդութեանն յամենայն ժամ, ամէն։

210ա Ի ՆԼԵ (986) տումարիս Հայոց, ես Եղիա[1] քահանայ ստացայ զսուրբ Աւետարանս ի վայելումն որդւոց իմոց Խաչկա եւ Գրիգորոյ, եւ յաղագս փրկութեան հոգւոյ իմոյ, եւ ամուսնի իմոյ Մարեմայ:

Արդ, աղաչեմ զձեզ սուրբ քահանայք Աստուծոյ, որք ընթեռնուք զսուրբ Աւետարանս, յիշեսջիք զմեզ ի սուրբ եւ յ[ը]նդունակ աղօթս ձեր, զի ողորմեսցի մեզ Քրիստոս յաւուր գալստեան իւրում, եւ Քրիստոս զձեզ յիշեսցէ ընդ սուրբս իւր, ամէն։

բ

71ա Զստացող սուրբ Աւետարանիս զԱղեակ քահանայ յիշեսջիք ի Քրիստոս, եւ Քրիստոս զձեզ յիշեսցէ։

## 83

ՆԼԶ 987

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Կյուլեսերյան, Ցուցակ Անկյուրիո 45, (1255 թ.), էջ 285

267բ «Գրեցաւ ի յաւրինակէ, որ դրեալ էր ի ՆԼԶ (987) թուականին»։

---

[1] Քերված և գրված է «Եղիա»։ Գրչի գործն է։ Հիշատակարանը գրված է ստացողի անունից, բայց գրչի ձեռքով։ Ինչպես Մաթեոսի վերջում, այնպես էլ այստեղ ստացողի անունը գրվել է «Աղեակ» ձևով։ Ստացողի պահանջով գրիչը քերել և գրել է «Եղիա»։

214բ էջի ստորոտում գրված է. «Տառայ Մակար» հավանաբար վերջին էջերի տողամիջում բնագիրը բոլորգրով նորից արտագրող գրիչն է։

84

ՆԼԷ 988

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8906

Գրիչ՝ Յովսէփ

Վայր՝ Անձաւաձ գեղաքաղաք, որ կոչի Տըախաեր

ա

222բ [Փառք ամ]ենասուրբ Եր[ր]որդութեանն, որ շնորհեաց մեզ ի հասանել ի նաւահանգիստ։

Ի Հայոց թուականութեանն, ի ՆԼԷ (988) -անն գրեցաւ սուրբ Աւետարանս այս, ի ձեռն Յովսէփու նուաստ մեղաւոր և անարժան քահանայի՝ խակ մտաւք և փանաքի գրչով։

Արդ որք ընթեռնուք եւ լուսաւորիք, ինձ մեղաց թողութիւն հայցեցէք յԱստուծոյ եւ Աստուած ձեզ ողորմե[ս]ց[ի]։

բ

Գրիչ՝ Յովաննէս

5ա ԶՅովաննէս մեղաւոր գրիչ և անարժան քահանա յիշեսջիք ի Քրիստոս յոյսն մեր։

Հռփսիմեի եւ որդեկաց նորա աղաւթս արարէք։

ԶՄաթեոս պատուական քահանայ մի մոռանայք։ ԶՄարթա աղախին Տեառն մի անտես առնէք, եւ յաւուրն այցելութեան ընդ նոսին եւ ձեզ տացէ Քրիստոս պարգևս բարեաց բարերարութեամբն իւրով։

գ

Ստացող՝ Կիրակոս վանառական

222բ Ամենայն իւ[իք, ամենայն ուր]եք ժամանակի աճէ գայ [հասան]է յասդիս, եւ դարձեալ միւս անգամ անդէն դադարէ, բայց յաղթուն կարեաց միայն ամենայնի յաղթէ։

Մի լինիր ամբարտաւան, յորժամ ի ցանգալի փառաւորութեան իցես, եւ մի գձուձ՝ յորժամ ի թշուառութիւն հասանես, զի եթէ այսպէս կշիռ ունիցիս՝ արդար և կշռիչ կենաց աշխարհիս լինիցիս, քան զի ոչ եթէ ի պարզ եւ ի յոդւածոյ ի վնասակարութիւն անգաք, այլ ի բաղում եւ յանհնարիս եւ ի պէսպէս դառնութիւնս, եւ չիք ոք, որ առ այսր մխիթար լինի մեզ յամենայն կարծեաց բարութեանց, միանգամայն վրիպեցաք յանանց բարութեանցն եւ ի փառացն եւ ի մեծութեան
223ա եւ // [միանգամայ]ն ուգնական [չարեաց] ղանմտութիւն գտի։

Եւ արդ, քան զի բաղում վշտաւք պարտեցար, ով անձն իմ, մինչ ի յաշխատութիւն, այլ համբե՛ր, ով սիրելի, իբրև զլաւ ինչ ածեալ

զմտաւ, թե ոչ զոր կամի ոք եւ խորհի զնոյնն առնէ, այլ զոր ոչն խորհի ոք եւ փախչի, զնոյնն կրէ։ Այդ աստուածային սահմանն ամենայնի յաղթեալ խոկայ։ Ասաց ոմն մեղ. ասաց այսպէս պնեւմատիկոս զլխաւոր ոմն, եթէ Յոյսք առ կենդանեաւք, անյոյսք՝ մեռանին։ Թե այնպէս իցե, ապա պարտ է համբերեալ վշտաց, եւ տանեալ առաքինութեան կարեաց զի ոչ ոք է ինչ ի կեանս երկրաւորացս, եւ ոչ ինչ ի նմին հաստատութեան իրաց մարդկան կայ։

/// ընթանայ՝ ///։ Արդ/////ն/թէ մտաւք հայիմ ընդ այս/// զրեմ անձամբ անձին /// առ սնունդ հաւր իմոյ դբաղ[ում պայծ]առութիւն իմ, վայ ինձ/// որ ածեմ զմտաւ զփոփոխ[ութիւն ամ]ենայն ինչ մարդկան իբրեւ զմարդ տեսանեմ։ Յետ այսր հաւատարիմ յոյս թողի ինձ յԱստուծոյ, եւէթ զմարդասիրութիւն, որում փառք եւ պատիւ, համագոյ, անեղ, անժամանակ Սուրբ Երրորդութեանն, որ է աւրհնեալ յաւիտեանս։

Ես Կիրակոս վաճառական յաղնամեղ եւ անարժան ծառայ, հանդերձ հարազատ ընտանեաւք իմովք, ցանդացող եղէ սրբոյ Աւետարանիս, զի յոյժ յաւգնամեղ էի անձամբ իմով, եւ ետու գրեալ զսուրբ
223բ Աւ//ետարանս/// իմում ի գեաւղաքաղաքս Անեաանե[1] որ կոչի Տրայիա-ւեր, ի հայրապետութեանն [Խա]չկայ Հայոց կաթողիկոսի, ի թագաւորութեանն Վասիլ ու Կոստանդնա, որ եւ ի թագաւորեալն սոցա բաժանեցաւ յերկուս թագաւորութիւնն Յունաց եւ բազում հարուածք մեծամեծք, հալածումն եւ արհաւիրք եւ խռովութիւնք բազում էղեալ յաշխարհն Հոռոմոց, որպէս երբեմն ի հնումն առ Իսրաեղացիսն։

Արդ աղաչեմ զհոգէկիր հայրապետսդ, զճգնաւէր կրաւնաւորսդ, զսրբասէր քահանայսդ, յոր բազկատարած կալով առաջի սրբոյ սեղանւոյն եւ ընթեռ[նոյք զսուրբ Աւետ]արանս դայս եւ լուսաւ[որի]ք ի շնորհաց Սուրբ Հոգոյն եւ բամխէք տխմարաց ղուսումն վարդապետութեանն, յիշեսջիք ղաղքատացեալս հոգով, որ հանապազ դըդուեն զիս ալի[ք] մեղաց ի վերայ նաւաբեկ անձ[ինս], քան զի կամակատար եղա բանսարկուին, զշաւեղ բարեաց ապականեցի եւ զցանդ հոգոյս ի[մո]յ քակտեցի։ Խաւար մեղաց զիս կուրացոյց, յարդար յաւրին[ացն] ունայնացայ, միգապատ[եաց] զիս խաւար, ընգղմեցայ ի ծով մեղաց, գեհեանն ինձ սպառնայ, տանջանարարքն ինձ ///, եւ զինչ տայցեմ պատասխանի յորժամ խնդիրք լինին, //// յորժամ քննին խորհուրդք [յան]ձինս ի յահեղ հրապարակին///[2]։

---

[1] Յիշատակարանքում չի վերծանված, խիստ քերված լինելու պատճառով։

[2] Մագաղաթյա երկաթագիր Ավետարանը կոչվում է «Սուրբ Յովհաննէս Աւետարան», Վերին մասից այրված է ձեռագիրը, ուստի առաջին տողերը վերցրել ենք Յիշատակարանքից։ Տեղանունը դժվարընթեռնելի է։ Վերծանել ենք թանաքի հետքերով։ Ձեռագիրը ցրից հանվել և կազմվել է 1546 թ. Դեմղեմտշենում (այժմ՝ Դղմաշեն), ժողովրդի և քահանաների ջանքերով։

Հիշատակարանում ակնարկված «պատմական իրողությունները ու խռովությունները վերաբերում են 987—988 թթ. ներքին ապստամբություններին՝ Վարդան Փոկասի կողմից կայսրության արևելյան նահանգներում, ընդդեմ Բարսեղ Բ-ի» (Յիշատակարանք, էջ 154)։

## 85

ՆԼԸ 989

### ԷՋՄԻԱԾՆԻ ԱՒԵՏԱՐԱՆ՝ ՓՂՈՍԿՐԵԱ ԿԱԶՄՈՎ

*Երեւան 2374*

*Ստացող՝* Սանփանոս

*Գրիչ՝* Յովճաննէս

*Վայր՝* Նորավանք

ա

Յիշատակարան

230ա *Իմանալով լուսով արտափայլեալ աստուածընկալ սրբոցն միտք*
*գնրախոհ մակերեւութեամբ, արփիահրաշ եւ ծայրագոյն լուսոյն ան-*
*ճառ ճառագայթիւք գերափայլեալ ի ստորինս եւ ի գերագոյնսն, յի-*
*մանալիսն եւ ի զգալիս, զոր եւ իմն պսակաւոր եւ հարազատ մաք-*
*րութեամբ մարմնոյ եւ խաչակիր նահատակութեամբ թողեալ զհայրե-*
*նական զշքեղութիմն՝ քանոն կրաւնից միանձնաց եղեալ, յերկրի զան-*
*մարմնոցն բերեալ աւրինակ՝ նոցին եղեւ հաղորդ, թողլով յերկրի իւ-*
*րայոցս աշակերտելոց, աւրինակ զնացից կենաց պողոտային, եւ սան-*
*զուղս ի Վերինն Սիովն, զանուանեալ* Նռւս վանս՝ *հիմնարկեալ ի սմա*
*զվկայարան նոյնանուն իւր Սրբոյ Նախավկային Ստեփաննոսի։*
*Իսկ ես յետին եւ ամենանուաստ* Ստեփաննոս՝ *մոլորական կրաւ-*
*նաւոր եւ անարժան քահանայ, նորին աշակերտ եւ եղբաւրորդի, ոչ*
230բ *ըստ նորին // աւրինակի, այլ յոյժ մեղուցեալ, որ թեպէտ եւ ըստ սին*
*եւ սնոտի խաբկանաց կենցաղույս հայկազնեա զոլ ասէին յիս, այլ եմ*
*ըստ ճշմարտութեանն, ուրում եսն վկայեմ ինձ աննշան եւ վաքթար եւ*
*ետին, քան զամենայն մարդիկ ըստ չար գործոց եւ անուղայ գնացից*
*իմոց, սակայն քրիստոնեա զոլ, եւ գինք արեան մեծին Աստուծոյ Յիսուսի*
*Քրիստոսի, ոչ ուրանամ զիս։*
*Եւ արդ, մեծաւ տարփմամբ ցանկացայ գրել ղվսամափայլ չորեք-*
*ծաղեան հոգեբուղխ տառս սրբոց աւետարանչացս, ի զարդ գերարփի*
*վայելչութեան եկեղեցւոյ, ի սմա պարելոց մանկանց Նոր Սիովնի աղերս*
*թախանձանաց, առ ամենեսեան հառաչագին հայցմամբ պաղատանաւք*
*առաջի արկանելով ղգութ սիրոյն Քրիստոսի, որք ընթեռնուք զսա, եւ*
*ձեռնատարած համբարձմամբ առաջի ղենլոյն Քրիստոսի վայելիք ի սե-*
*ղան անմահ արքային, ողորմագութ գորովմամբ յիշման արժանի ա-*
231ա *րասջիք զտար//ժանեալ մեղաւք զհոգի իմ։*
*Եւ արդ, մի ոք իշխեսցէ ի բանէն Աստուծոյ հեռա[ցու]ցանել զսա*
*իւիք պատճառաւք ի* Նորավանից *սուրբ եկեղեցւոյս, եւ թէ ոք յանդգնի*
*որոշել զայս Աւետարանս ի սուրբ խորանէս, յափշտակողն ի փառաց*
*որդւոյն Աստուծոյ որոշեալ լիցի իբր սատանայ, նզովեալ յոգի եւ ի*
*մարմին ընդ անհաւատ սեղանակողոպտոն, եղիցի դատապարտեալ*
*յորդւոյն Աստուծոյ։*

Եւ զսա լիցին հանապազ ընթերցեալ ի սուրբ եկեղեցւոջս, զի յառոյգ և ի հին յաւրինակաց գրեցաւ։ Նոյն անեծքդ կացցէ ի վերայ այնոցիկ, ոյք անփոյթ առնեն զհրամայեալս առ յինէն։

Եւ գրեցաւ յամի թուոյ Հայազանց, ՆԼԸ (989) եւ ըստ թուոյ Հոռոմի ՋԽԲ (989) յիսմայէլական բռնակալութեանն՝ ՅՀԹ (989)[1]։

Բ

Տեառն Սաեփաննոսի է սուրբ Աւետարանս։
Յովհաննէս գրեցի, յիշեցէք։

Գ

227ա Փառք Սուրբ Երրորդութեանն յաւիտեան, ամէն։
Յովաննէս գրեցի, աղաչեմ յիշել զիս։

Դ

232բ Տեառն Ստեփաննոսի է սուրբ Աւետարանս։ Տացէ զսա Տէր ի վայելումն մանկանց Նոր Սիովնի։

86

ՆԽ 991

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Վիեննա, 1048, Ոսկյան, Ցուցակ, էջ 693 (1302 թ.)

Թարգմանիչ՝ Յովսէփ

Վայր՝ Կոստանդնուպոլիս

Իցեն եւ այլ Հոռոմ Տօնացոյցք, յորում չեն այս սուրբքս գրեալ, այլ այլ սրբոց պատմութիւնք են, եւ եթէ որչափ սուրբք իցեն ընդ ամենայն երկիր, առաւել քան զհազարս հազարաց եւ բիւրս բիւրոց, եւ

[1] Դրության երեք թվականների մասին Ղ. Ալիշանը գրում է. Հոռոմին ոչ է Հունական թվական, «այլ Հոռվմա երկրորդ հազարեկին, սկսելո յամի 247 Փրկչին (գրել է 248), որին հաւելյալ 742 (ՉԽԲ) լինի 989—թիվ Փրկչին, որ է ՆԼԸ Հայոց, իսկ իսմայելական թուականն գրիչն Աւետարանիս ոչ ի Հէճիրայէ սկսանի—622, այլ առաջնո ամէ քարոզութեան Մահմէտի որ է 610 ամ Փրկչին, որը յաւելյալ 379—ՅՀԹ-ին ահա լինի 989—ՆԼԸ։ Այսպես միաբանին թվականք Երեցուն ևս ազգաց» («Սիսական», էջ 204, ծթ. 1)։

Ձեռագիրը դեռ 1173 թ. գտնվում էր Դարաշամբի Ս. Նախավկայի վանքում, որտեղից էջմիածին է տեղափոխվում 1844 թ. Ներսես Ե կաթողիկոսի հրամանով։ Ձեռագիրը հոչակված է Զ—Է դարերի երկու նկարազարդ թերթերի, ձեռագիր գրության ժամանակակից խորանների, տերունական նկարների և ԺԹ դարում լուսանցքներում արված մանրանկարչությամբ, բնագրի հնությամբ և փղոսկրյա կազմով, որոնցից յուրաքանչյուրը՝ 5 կտորից է, և ժամանակակից են երկու նկարազարդ թերթերին։

Ձեռագրի մասին հատուկ ուսումնասիրություն ունի Հ. Ստրժիգովսկին «էջմիածնի Աւետարանը» գերմաներեն, թարգմանված հայերեն (1892 թ., Վիեննա), իսկ Ֆ. Մակլերը կատարել է լուսատիպ հրատարակություն (Փարիզ, 1912 թ.)։

*ոչ ոք գիտէ զթիւսն եւ զհրամարնն, բայց միայն ընդ[ր]ող հոգոց նոցա Քրիստոս, որ հրաւիրեաց եւ ընդրեաց յորովայնէ, եւ գրեաց զանուանս նոցա յերկինս ի գիրս կենաց, եւ կարգեաց ի դասս հրեշտակաց՝ ի տեղի ստորանկելոցն։*

*Եւ ես անարժանս եւ տգէտս եւ մեղաւոր թարգմագրիչս* Յովսէփ, *ծնեալ եւ սնեալ եւ ծերացեալ յաստուծապահ քաղաքիս* Կոստանդնուպոլիս, *եւ զհայրենի լեզու եւ զգիր ի տեղիս ուսեալ, ի միոյ* Հռոմ *Տանացոյցէ թարգմանեցի զճառ առաւատի, ի թորգոմական բարբառ ի Ն*[1] *եւ Խ (991) թուականիս Հայ, եւ էր յԱգամա ՋՈՇ (6500) անցեալ ամաց եւ յուղարկեցի ի Հայոց եկեղեցիս, որ ընթեռնուն եւ գրեն զիւրաքանչիւր սրբոցն զճգնութիւնս եւ յիշեն յանուանէ զմեղաւոր հոգիս, եւ վարձս ի վարձատուողէն առցեն. ամէն։*

*Եւ վասն զի ծանր եւ անծանաւթ իցեն անուանք սրբոցն, այսպէս գրեցի. յորում գրեալ է թէ Վկայաբանութիւն սրբնոյն, գիտասջիր որ մարտիւրոս այր էր, եւ յորում գրեալ է Վկայութիւն սրբոհուն, գիտասջիր որ մարտիրոս կին է, եւ յորում գրեալ է Վարք երանելւոյն, ոչ է մարտիւրոս, այլ առաքինի եւ աստուածահաճոյ վարիւք ճգնեալ վասն անուանն, որ ի Քրիստոս։*

## 87

*ՆԽԸ* *999*

### *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑՆ ՊՕՂՈՍԻ ԵՓՐԵՄԻ ԵՒ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ԱՌԱՔԵԼՈՅ*

*Ալիշան, «Հայապատում», էջ 309—312*
*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 163—168*

*Գրիչ՝* Սիմէոն

*Վայր՝* [Հաղբատ]

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն, որ հասոյց յետին գիրս գրողիս, ամէն։ Յանուն Աստուծոյ դրեցաւ գիրքս ի ՆԽ և Ը (999) թուականին Հայոց, ի հայրապետութեան տեառն* Սարգսի *Հայոց կաթողիկոսի, և ի թագաւորութեան* Սենեքերիմայ *որդւոյ* Աբուսահլի, *ձեռամբ* Սիմէոնի *վարդապետի և նուաստ կրօնաւորի, զորս զկարդացողսդ աղաչեմ յաստուածամատոյց աղաւթսդ անմոռաց յիշմամբ յիշատակել պաղատիմ։ Եւ* զՏիրանուն *զկազմիչ և զյաւրինիչ գրոցս անմոռաց ունել, և Աստուած փոխարէն հատուցէ յետին աւուրն։*

*Թուիցիմք թէ աւելորդս ինչ բանս յասացեալս յաւելցուք, վասն զի այլայլի ի գալ արփոյն և բազմածիրք աստեղացն, և ի մանկութենէ փախստեայ ընթանայ ծերութիւն, տեղի տայ և ձմեռն գարնանային եղանակաց, միանգամայն և հիւանդութիւն՝ քաջողջութեան և պայծառ և*

---

[1] *Յուցակում տպագրված է «բարբառին եւ խ»։ Ն. Ակինյանը թարգմանչի մասին տպագրված հոդվածում («Հանդէս ամսօրեայ», 1957, էջ 1—12) ճշտում է թվականը. այսպես «բառբառ, ի Ն և Խ», որին հետևելով ուղղում ենք նաև մենք։*

չքնաղ տեսակաց, զոր և աստուստ սակաւիկ ինչ բանքս՝ զոր ասելս կամիմ՝ արգելու զիս Հոգիս՝ և լռել՝ անպիտան վարկանիմ, զոր է իբր ի մէջ երկուց հրեղէն վիմաց պաշարեալ դողամ, զտեառն Սիրեմէ ասեմ և զտիեզերական և զաստուածապատիւ տեառն Յովհաննու Կոստանդնուպալսի եպիսկոպոսապետի, զի սա զբոլորս զոլորտս լուսաւորեաց զազգսն Յունաց, և տէր Եփրեմ՝ Ասորեստանեաց ազգին աննուաղ ծագեաց արեգակն, և զբազմադուռն զբանսն ե զմթին՝ Պաւղոսի երանելի առաքելոյն՝ բացերեւաբար և յայտնի մեզ ցուցին։ Սոքա են լերինք մշտնջենաւորք սեպք և ուղղորկք, անտեղիտալիք չար և նենգաւոր գաղանաց։

Արդ, եթէ ոք ինձ իցէ՝ մի մերձեսցի, դուցէ քարկոծեսցի, դի մի խայտաբղէտ իցէ անմաքուր վարուք, և մի ոք անասնական կերպիւ՝ գայլենի ի ներքուստ և արտաքուստ գառնենի՝ երկդիմի բնութեամբ՝ մի մերձեսցի ի լեառնս, և դարձեալ մի ոք արաբացի և ընդդիմադրող և հակառակող, քարկոծեսցին ի վիմէն՝ զոր առանց ձեռին ի լեռնէն հատաւ՝ չափ յաշխարհի, ե մի ոք ե այլ ինչ աղանդաւոր, զոր ե ի ժամանակիս տեսանեմ։ Վասն զի լուծանել հրամայէ զերկրաքարշ և զմեղսաթաւալ կաւշիկ, և զաւրէն մեծին Մովսիսի յիմանալի լեառն ելանել և ընդ ամպովն լինել և ընդ Աստուծոյն խաւսել։ Այս լերինք մշտնջենաւորք են դիտանոց դրախտին Աստուծոյ, որ գեղեցկապէս բուրեն ի մեզ զբուրումն բուրաստանացն Աստուծոյ, զերանելոյն ասեմ զսրբոյն Պաւղոսի, որ հոտ անոյշ էր ի Քրիստոս, ի մէջ երկուց բնութեանց՝ բարւոյն և չարի։ Սոքա հնչեցուցանեն ի մեզ, ոչ փողոյ բարբառ և բանք տագնապողք այլ զՔրիստոս ի Պաւղոսէ քարոզեալ և յայտնեալ և կենսագործեալ զաշխարհս։ Սոքա մածեալ և անառիկ բարձր դիտանոցք, որք ցուցանեն ոչ տախտակք քարկոծողք՝ այլ կեանք աւետարանականք ե առաքելականք միանգամայն և մարգարէականքն։ Սոքա եւթնապատիկ ծագեալ քան զարեգակն՝ փախստական արարին զխաւար տգիտութեան զազդէո մարդկան, վասն որոյ եւ առաւել եւս յազգէս Հայոց։

Ուստի եւ ես եմ Սիմեովն նուաստ եւ անպիտան կրաւնաւոր, որ ընթերցասէր եւ ցանկացող եղեալ ի մանկութենէ իմմէ՝ յուզէի խնդրէի զգիրս տեառն Եփրեմի՝ դՀին կտակարանաց Թարգմանութիւն եւ զՆոր։ Զոր ե գնացի յաշխարհն ուստի եւ ուրը առաքեալն Բարթողեմէոսն կատարեցաւ, ի տեղւոջն՝ որ աթոռակալութին Արծրունեաց տանն կոչի Ելենի անուն ինչ տեղոյն, եւ գտի զՄեկնութիւն երանելի առաքելոյն, տեառն Եփրեմի Խորին Ասուրւոյ, եւ գրեցի ի ստոյգ եւ ի հին աւրինակէ, զոր եւ բերի, եւ այսու միայնոյ ոչ հաւանեալ՝ այլ եւ յայլ տեղ գտի զերանելոյն տեառն Յովհաննու Ոսկեբերանի կարճառաւտ Մեկնութիւն ԺԴ թղթոցն Պաւղոսի եւ ի մին գիրս գրեցի. նախ առաջին՝ զտեառն Եփրեմի, եւ ապա տեառն Յովհաննու, զոր և անբաւ եւ մեծ գիտութիւն յինքեան բովանդակեալ ունի։

Եւ գրեցաւ գիրքս տեառն Եփրեմի՝ որպէս յառաջն ասացի՝ յԱղբագ գաւառի ի տանն Արծրունեաց, եւ զերկրորդ գիրքս՝ ի Կոգովիտ գաւառն՝ ի տանն Բագրատունեաց եպիսկոպոսարանի, ի տեառն Դաղէոսի

ժամանակի տեառն Մուշէի եղբաւրորդոյ, որ զառաքելոյն Թադէոսի ունէր զվարս եւ զսրբութիւն, զոր համարձակիմ եւ ասեմ, թէ զսուրբ եւ զմաքուր կուսութիւնն աւետարանչին Յովհաննու, այր խստակրաւն եւ պարկեշտ եւ վկայեալ յամենայն բերանոյ եւ յԱստուծոյ փառաւորեալ։ Ի սորա յաւուրս եւ Աստուած հաշտ էր ընդ աշխարհի, զի կենդանի մարդ էր եւ Աստուծոյ՝ հանապազ մեռեալ, եւ ամենայն հոգեւոր գանձու գիտութեան է շտեմարան, զոր ոչ է բաւական ժամանակս բարեբանել զերանելի հոգին՝ որքան արժան է։

Այլ յայնմ ժամու եւ ի ձեռն նորա գրեցաւ գիրքս ի ՆԽ եւ ութ (999) թուականութեանս Հայոց, ի թագաւորութեանն Գագկա որդւոյ Աշոտոյ, եւ ի հրամանն Պարսից, ի ձեռաց Թաւթի Կորապազատի, աւգնականութեամ[ր]ն Աստուծոյ։ Յայնմ ժամանակի այս գիրք գրեցան աղքատ նիւթով եւ խոշոր, զորս աղաչեմ անմեղադիր լինել անհեդեդ գրոյս եւ աղքատ քարտիսիս, այլ զաշխատութիւնս, զոր ընկալայ ի սմա, զայս առ եւ ընկալ, եւ ուրախ լեր ի սէր սորոցս։ Վասն զի թէ տայցես յանօթ այլում ումեք՝ սորա փոխան ուժգին առցես, զի չէ բաւական դանձք, որք արժէն զսոսա, վասն զի նոր կտակ կարգեցի այնոցիկ, որք զկնի իմ վայելեն զսա և լուսաւորին։

Բայց, աւաղ, թէ եւ յանգիտաց անկեալ ի ձեռս անարգարար և ընդ վայր հարկանի, զի հրաժարեցուցանէ և Աւետարանն՝ արկանել խոզից մարգարիտ և տալ սրբութիւն՝ շանց, և որ այլ եւս։ Այլ դու, ով այր դու Աստուծոյ, գիտեա զինչ է սա և ուսիր, և ծանիր զաշխատութիւնս իմ և մի ապախտ առնէր զվաստակդ իմ, զոր ձրի վայելես զկնի իմ, այլ անշորթելի ունել ի մտի և յանապական և յանմեռանելի կենդանի՝ որ վասն աշխարհի մեռաւ Քրիստոս՝ ի պատարագին՝ յիշել, և ի բոլոր սրտէ աղաւթս առնել ի լուսաւոր և ի սուրբ պատարագին և ի մեղսաքաւիչ փրկական խորհրդին, զի թերեւս Աստուած ողորմեսցի իմ մեղուցեալ հոգւոյս յաւուրն յայտնում ի գալստեան մեծի արքայի Քրիստոսի, և Աստուած զձեզ յիշեսցէ յանզրաւական և ի տիեզերագումար հրապարկին, ի Քրիստոս Յիսուս՝ ի Տէր մեր, ընդ որում Հաւր և միանգամայն և Հոգւոյն Սրբոյ՝ փառք և պատիւ այժմ, և յափտեանս, ամէն։

Փառք Աստուծոյ անսկզբան եւ անժամանակի, արարչին ժամանակաց, փառք Յիսուսի Քրիստոսի զիւդակցի Հաւր եւ փառակցի սուրբ Հոգոյն եւ արարչակ[ց]ին երկոցունց, փառք Հոգւոյն սրբոյ ելողին ի Հաւրէ եւ յՈրդւոյ, ոչ բաժանողին եւ իսկակցին Հաւր եւ Որդոյ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն[1]։

---

[1] Մատենադարանի հայերեն թղթյա հնագույն ձեռագրից հետո (№ 2679) այս երկրորդ հնագույն հայերեն թղթյա ձեռագիրն է, որի հիշատակարանում ձեռագրի գրության թվականի, գրչության վայրի և գրիչների, ինչպես նաև գրանյութի և գրի մասին տեղեկություններ են պահպանվել։

Ձեռագիրը գրվել է երկու տարբեր վայրերում, տարբեր գրիչների կողմից, հիշատակարանը Սիմեոնը շարադրել է, ամենայն հավանականությամբ, Հաղպատում, և բոլորը միասին այնտեղ էլ կազմվել են Տիրանունի ջանքերով։ (Տե՛ս մեր «Սանահնի և Հաղբատի գրչության կենտրոնները» հոդվածը, «Էջմիածին», 1968, Զ, էջ 31—41, 1971, Ե, էջ 43—49)։

## 88
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2877*

*Ծաղկող՝* Գրիգոր

ՉԾԲ *Սուրբ խաչ, յորժամ ծագիս յարեւելից, լուսաւորեա զԳրիգորի հոգին՝ զգրագրին, ամէն։*

## 89
## ԳԱՆՁԱՐԱՆ

*Երևան 5521, պահպանակ*

*Զստացող սուրբ գրոցս զԽաչիկ բարէմիտ կրամաւոր եւ գծաւղսն իւր յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, ամէն*[1]*։*

---

[1] *Մագաղաթյա թերթեր, քերված և դրված։ Հիշատակարանը պահպանված է Աղրիանոսի և նրա ամուսին Անարզիայի վկայությունից հետո։ Հրատարակված է Լ. Խաչիկյանի կողմից («ԺԵ դարի հայերեն ձեռագրի հիշատակարաններ», մասն Ա, էջ 584) և ծանոթագրված։ Պատառիկի մյուս էջում մի վանքի ունեցվածք է հիշվում, որոնց մեջ նաև «Ե (5) Աւետարան, Ը (8) Աւետարան այլ, Բ (2), Նարեկացի ..., Մաշթոց, Բ (2), Սաղմոսարան, Թ (9), մեծ գիրք յուրիշ, Գ (3) գիրք այլ ի ժամատուն՝ մեծ ու փոքր...»։*



## 90

*ԺԱ* XԼ
*ՆԾ* *1001*

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 7739*

*Վայր՝* Բասենոյ գաւառ
Աւր[դրու] քաղաք

232 *[Շն]որհաւք եւ [ան]սպառ ողորմութեամբն Քրիստոսի կատարեցի չորեք[վ]տակեան բազմայբերել /// աշխարհայ /// մբ զԱւետա[րանս ձեռամբ անարժա]ն քահանայի /// [ի] ՆԾ (1001) թուականու[թեա]նս Հայոց, ի հա[յրապե]տու[թեանն] տեառն* [Սարգ]սի *Հայոց կաթող[իկոսի, ի] թագաւորու[թեան]ն* Դաւթի Վրաց *[Կիւռո]պաղտի ուրէ[պաշտ թա]գաւորի ի [գաւառիս* Բա]սենոյ *[ի քաղաքս որ կ]ոչի* Աւր[դրու]:

*Արդ, ով քրիստոսապսակեալ քահանայք, որք ընթ[եռ]նոյք եւ լու[սա]ւորիք [ի սու]րբ պատուիրանէս, աղաչեմ զամենեսեն յիշեսջիք զի[ս] զբազմամեղս եւ զանարժանս, որ թեպէտ եւ մանուկ եմ, բայց ծերա[ց]եալ եմ ի մեղաց, ի մաքուր եւ յարժանաւոր աղաւթս ձեր, թ[եր]եւս ողորմեսցի Քրիստոս յիր գալստեանն, եւ մերոյ անմարութեանս եւ անմարթութեանս անմեղադիր լեր /// Տէրս մեր Յիսուս Քրիստոս, [ն]մա փառք եւ պատիւ յաւիտեա[ն]ս ամեն, ա[մէ]ն*[1]:

## 91

### *ԱԴԱՄԳԻՐՔ*

*Զարբհանալյան, Հայկական դպրութիւն, էջ 790*

ա

*Հայր* Սիմէոն *արար զԱդամգիրքս, հարիւր հիսուն և մի ճառ, ի խնդրոյ* Սենեքարիմայ *թագաւորին* Վասպուրականի:

---

[1] *Յիշատակարանքում (էջ 159—160) բերված է Սանասարյան վարժարանի ծուցակից և դրված 992—999 (*) թվականի տակ։ Ձեռագրի մասին «Մի ձեռագիր Աւետարանի հիշատակարանի նոր վերծանությունը» («Էջմիածին», 1966, ԺԱ—ԺԲ, էջ 205—209) մեր հոդվածում տեղը նշանակված էր «Կեչիաւր = Կեչրաւր», որ ճիշտ չէ։*

*Մատենադարանի № 6384 Ավետարանը գրված է Բասենի «Որդրու» քաղաքում, որ կարող էր գրվել նաև «Աւրդրու» ձևով։ Մեր կարծիքով թերթի պատռված մասում եղել է տեղանվան դրու կեսը և պահպանված մասի հետ կազմել է «Աւրգրու» բառը։*

Բ

Երանելւոյն Սիմէովնի սուրբ և ընտրեալ վարդապետի ասացեալ պատճառս Լուսաւորչին մերոյ Գրիգորի։ Եւ թէ որպէս կարգեաց ղյիշատակ Սուրբ Մկրտչին և կարապետին Յովհաննու, ընդ նմին և ղԱթանադինէ[ի][1]։

92

ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 126, Սարգիսյան, Ցուցակ, Ա, էջ 562

Գրիչ՝ Զատարանուն

ա

Զկազմող սուրբ Աւետարանիս զՈվհաննէս, զսնուցիչ և զվարդապետ իմ, զփոխեցեալն ի Քրիստոս, յիշեշջիք առաջի Աստուծոյ Ընդ նմին և զորբացեալս և ղատարացեալս ի նորա ճշմարիտ հոգեւոր սիրոյն, Զատարանուն յիշեշջիք առաջի ահեղ ատենին, զի թերեւս ողաւթիւք ձեր արժանի լինիցիմ ընդ հովանեաւ թեւով վարդապետին շողացղ, զմեղ, ողորմեսցի յիւրում գալստեան, ամէն։

Բ

Թւական սուրբ Աւետարանիս ՆԾ (1001)-ին, մարտի քսան և Դ (24)-ին եղեւ[2]։

93

ՆԾԱ 1002

ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 1568 (1173 թ.)

Հեղինակ՝ Գրիգոր Նարեկացի

Վայր՝ Նարեկա վանք

340ա Յիշատակարան մատենիս դրուքեան

Ըստ հոլովման ընթացից ամանակաց յառաշշարժութեան, որ ըստ լրապատարն, նշուղագեղն, արփիաճաճանչ լուսակիրն, աւրակչիռն,

---

[1] Ըստ Զարբհանալյանի Սիմեոն վարդապետի համար «կավանգի ի գիրս յիշատակաց ի թուին ՆԾ (1001)»։ Ըստ նրա «աղդային յիշատակագիր մ'ալ կըսէ ի ՆԾ (1001) թուականի», Տիմոթ վարդապետ արար զՄեկնութիւն Արարածոցն» (Անգ, էջ 793)։

Այստեղ հիշատակված Սիմեոն վարդապետը արդյոք Սիմեվոն Սանահնեցին կամ Հաղբատեցին չէ, որ 999 թ. Վասպուրականի Աղրադ գավառի Եղենի անապատում ձեռագիր էր ընդօրինակում Նորակառույց Հաղբատի համար։ (Տե՛ս մեր «Սանահնի և Հաղբատի գրչության կենտրոնները». «Էջմիածին», 1968, Զ, էջ 31—41, 1971, Ե, էջ 43—49)։

[2] Բ. Սարգիսյանը ձեռագիրը «հաւանօրէն ԺԲ դարու գրուած» է համարում, հենվելով կետադրության վրա, որը «Ժ դարուն համար բացարձակ անծանօթ և անսովոր բան մ'է» (էջ 562)։

*մշտափարատն ակնապարար, ականն արեւու, ստեղծականն արուսեկի, որ համբարէ, կուտէ ամաց յոլովութիւն ի չափս գարուց, շնչասպառ եւ կենդանանորոգ առ ուղեկան յաւիտենիս, ի յաւարտումն կատարման իններեակ յոբելինին, ի սկիզբն պսակելոյ մտի տասնեկին Յարեթական առհմիս տումարի, (9×50+1+551=1002), յետ երից ամաց անցելոց, որ ըկնի գալստեան ի կայս եւ ի կոյս կողմանց հւսւսոյ դիմաց արեւելից յաղթող եւ մեծ կայսերն Հոռովմոց, Բասլի, յորժամ*
340բ *ընդարձակ եւ մա//կագաւիթ կանոնաւ սփիռ տարածէր, լիասահման և անխտրոց, ի ստուարակարկատ կոթողս կարծր արձանաց, ի ձգումն ձեռին եւ յանխզելի լարս պարանաց երկարագոյնից, անթարթափ ի նոյն վերասլացեալ ի յաջ եւ յահեակ սեփհականել յաւելուլ բաժինս մասանց վիճակաց խմբից աշխարհաց ի ծոց իւր։*

*Արդ, ի յայնմ անդորրութեան միջոցի, յորում եզերեալ ընդոտնեցաւ թշնամիք եկեղեցւոյ, ստացեալ հիմնեցի, կառուցի, կարգեցի, կուտեցի, արձանացուցի, դիզի, բարդեցի, կացուցի, ցուցի, հաստատելով ի հրաշակերտութիւն միագոյ իրի զբազմաստեղնեան դրուագս դրութեան այսմ սոփորի արգասաւորի, եւ* Գրիգոր *կրաւնաւոր քահա-*
341ա *նայ յետին բանահիւսաց եւ կրտսեր վարժապետաց, գծր//ծակցութեամբ եղբաւր իմոյ ընտրելոյ,* Յօվանէս *կոչեցելոյ,* Նարեկայ *մեծափառ եւ բարձրապատիւ ուխտի վանականի, որք իբրեւ ըմի մարմին բանական ի յերկուց առ մի կերպարն շինելոյ դիմաց կենցաղակցելով, ոչ միայն հարազատք, այղ եւ միաշունչք, միակրամք, համապատիւք, զուգահաւանք, ի քառից աշաց առ մի եւ նոյն շափղ խորհըրդոյ տեսեալք։*

*Արդ հայցեմք ի ճաշակողացդ յայսմ սեղանոյ յոքնաւրէն եւ ախորժահամ հանդերձեցելոյ՝ յիշատակել զմեզ ի մաղթանս ուղիղս եւ ի պատկանաւոր խնդրուածս, սեռն սիրով ի միտս բարիս, որով եւ դուք եղիջիք գրեալ ի մատեանս կենաց վերին դպրութեանն։*

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից։*

**94**

*ՆԾԳ* **1004**

## ՍՏԵՓԱՆՈՍԻ ՏԱՐԱՒՆԵՑՒՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

*Երեւան 2865 (ԺԳ դ.)*

*Հեղինակ՝* Ստեփանոս Տարոնացի

Բան վախճանի փառատրական ի սպառոած Յիշատակարանիս

241ա *Անբաւ են խորք հրաշից սքանչելագործ հրաշագործութեանցն Աստուծոյ առ ազգս բանականս բիւրոց բոցեղինացն. ինքն էն էիցս աբարչագործէ լոյս ծայրագոյն, մշտածաւալ ծագողութեամբ, անհաս և անիմաց յամենայն իմացականացս մնացեալ։*

*Այսպէս և ի ստորինս զգալի արեգակամբ զզգալիսս պայծառացոյց
քառաՀոլով եղանակաւք, աւրաբեր ժամուք, մանրամասնեայ բարե-
241բ զարդ խառնուա‖ծովք ի սուղական և ի ժամադիտակն միշտ Հոլովեալ
անուաշրջիկ յարաՀոլով գնացիւք. զորս իմաստունքն յիմաստիցն Աս-
տուծոյ առլցեալք՝ թուեալք յաւուրս և յամիսս ամաՀամար չափեալ
զկենցաղոյս չափ։*

*Զոր քննեալ գտաք ի Հանդիպման ամին յԱդամայ մինչև առ մեզ
լինել ամք ՑՄՁԲ (6282), և ի խաչելութենէ կենարար չարչարանաց Տեա-
ռըն՝ ամք ՋՀԲ (972)։ Իսկ ըստ Յունաց թուականին ի Փիլիպպոս կայ-
սերէ՝ ամք ՉԾէ (757), և ըստ Հայերէն չափոյ թուականիս մերոյ՝ ամք
ՆԾԴ (1004), որ է ամ երեսներորդ թագաւորութեանն Վասլի կայսեր
Յունաց, և Հնգեստան ամ թագաւորութեան Հայոց Մեծաց Գագկայ
արքայի։ Այս ամ երեքտասան է Հայրապետութեան տեառն Սարգսի,
տիեզերափայլ և մեծաշնորհ Հովուապետի, զորոյ զՀրամանն ընկա-
լեալ՝ ի վեր քան զկար իմ՝ զՀնազանդութեան աւրէնսն կատարելով՝
աղքատիմաց բանիւք զբանս յիշատակիս գրեցի։*

*Այլ որ յամենայնի զխոնարՀութեանն երթաս զՀետ, և զխոնարՀեալ
բանն ի Հոգւոց բարձեալ կրես՝ և յայսմ ևս խոնարՀեալ ընկալցիս
զսակաւ սատարութիւնս, զոր քեզ և ամենայն մանկանց եկեղեցւոյ
մաղթեմ, սիրով անտեսել զսխալանս և զյանդգնութիւնս իմ. մանա-
ւանդ զի յարածուփ շրջանք և Հանապազորդեան Հոգք եկեղեցւոյ, որ
ըստ Հրամանի ձեր՝ ոչ թողացուցանէին մտաց իմոց զետեղել ի պատ-
շաճ յօրինուած բանիս. զոր կրեմ զփառս և զանարգանս, զգովութիւն
և զպարսաւանս ի ծանրասիրտ և ի խստապարանոց ազգէս մերմէ, ի
բարեխոՀ և ի րղջախոՀ մարդկանէ, որոց իւրաքանչիւրոցն է Հատու-
242ա ցումն յարդար դա‖տաստանին Աստուծոյ։*

*Այլ ըստ Հայրենի խնամոցն ձերոց Հայցեմ և ըստ եղբայրական
սիրոյ յընթերցողացդ զի յիշեսջիք զիս ի ժամ աղօթից արդարաՀայեց
մաղթանօք ձեր. զի որպէս դուք ընդ անմարմինսն խմբեալ դասս բա-
նակաց՝ և ես ընդ ձեզ գտեալ զողորմութիւն՝ արժանացայց երգել
զերգս օրՀնութեան եռանձնեան և միասնական Սուրբ Երրորդութեանն,
որ է օրՀնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն[1]։*

---

[1] *Ստեփանոս Ասողիկը Գրիգոր Մագիստրոսի վկայությամբ կատարել է նաև Երեմիա Մարգարեի մեկնությունը. «Զմեկնութիւն Երեմիայի մարգարէի, զոր գրեալն է Ասողնկայ երջանիկ ծայրագոյնն ծերոյ» (Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Ալեքսանդրապոլ, 1901, էջ 128)։ Մանչեստրում պաՀվում է մի Աւետարան «գրված Հայոց ՆԾԴ (1004) թվականին» (Տիրայր վրդ., Ցուցակ Մանչեստրի, էջ 7)։*

## 95

**ՆԾԶ** **1007**

### ՅՈՀԱՆՆԻՍԻ ՄԱՆԴԱԿՈՒՆԻՈՅ Ի ՓԱԽՈՒՄՆ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ

*Վենետիկ 237, (1846 Թ.). Սարգիսյան, Ցուցակ, Բ, էջ 434*

*Գրեալ էր ի ՆԶԲ[1] (1033) ամի Հայոց տումարի[2]։*

## 96

**ՆԾԶ** **1007**

### ԱԴՐԻԱՆՈՒՊՈԼՍԻ ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետիկ 116, Սարգիսյան, Ցուցակ, Ա, էջ 517*

*Գրիչ՝* Կիրակոս

*Վայր՝* Ադրիանուպոլիս

279ա *Շնորհաւքն Աստուծոյ եւ ողորմութեամբ նորին սկսա՝ ես* Կիրակոս *երէց մեղաւոր և անարժան գրիչ, համարձակեցա եւ գրեցի զսուրբ Աւետարանս զայս ի թուականութեանն Հայոց ՆԾԶ (1007), ի գաւառին* Մակեդոնոյ *ի քաղաքին որ կոչի* Անդռնապոլիս, *ի թագաւորութեան* Վասլին, *որ ունի զաթոռն* Կոստանդապոլսի:

*Արդ որք ընթեռնուք սուրբ զԱւետարանս, զգրիչս յիշեցէք եւ խնդրեցէք մեղաց թողութիւն։*

---

[1] *Հիշատակարանի վերջում ցուցակագրողը ավելացնում է (— փրկ. թ. 1006)։ 1006 թ. կստացվի ոչ թե Հայոց ՆԶԲ, այլ ՆԾԵ թվականին 551 գումարելով։ Հավանաբար այստեղ տպագրական սխալ կա, որը ավելի շուտ հայերեն տառերի, այսինքն Զ-ն Ծ-ի և Բ-ն Ե-ի (շուռտված) հետ շփոթելուց կարող էր պատահել, քան արաբական թվերի, այսինքն 6-ը 33-ի հետ շփոթելուց։ Ուստի դնում ենք 1006-ի թվաշարքում։*

[2] *Ձեռագրի գրիչ Պաղտասար Բաղիշեցին ճառը ընդօրինակել է հին ճառընտիրից և բերել է ճառի վերջում գրված հետևյալ տեղեկությունը. «Զայս ցանկալի պատմութիւնս բազում ըղձիւ ե ցանկական յուղմամբ գտեալ մեծ հռետորն* Մովսէս, *որ կոչի* Խորենացի, *և էր ընդ աղաւտ աստցեալ ի մերոյ յարկաց, և ուր [ոչ] ուրէք գտանէին, մինչև ի ձեռն կրաւնաւորի միոջ գտեալ՝ որ էր յերկրէն* Խոր Հայոց, *ի գաւառէն որ կոչի* Ձորոյ գետ, *ի համբաւեալ ուխտին* Սանասին *անուանեալ, պատահումն բարի եղեւ։ Եւ հրամայեաց մեծն և լաւն ի բնաւս* Ատոմ *որդի* Սենեքերիմայ *Հայոց նահանգի* Ասպուրական *կոչեցեալ, որոց մասն փրկութեան հաւատացեալ էր* Ատոմայ *պատկեր մաւր Տեառն ի բաժին* Անձաւացեաց, *հրամայեաց գրել մեծաւ յուսով խնդութեամբ բազմաւ, որոյ անուամբ պարսպեալ եղիցի մեծաշուք իշխանութիւն նոցա, շորից հարազատ եղբարց* Դաւթի *և* Ատոմոյ, Կոստանդեայ *և* Համազասպայ. *գեղեցիկ և շքեղազարդ* Բագրատունեաց» *են։ (Անդ, 430)։*

*Այս վերջին հիշատակարանը կարող էր գրված լինել 1006 և ոչ 1033 թվականին, երբ արդեն ավելի քան մի տասնամյակ առաջ (1021 թ.) Սենեքերիմը թողել էր Վասպուրականը և արտագաղթել Սեբաստիա։ Այս ևս հաստատում է հիշատակարանը 1006 թվաշարքում դնելու իրավացիությունը։*

Եւ ես Յովհաննէս[1] պատուապատար թագաւորի եւ պոռքսիմոսս գուկիս Թորոսկնիս ճորտս, որ գրել ետու զսուրբ Աւետարանս իմ հաւգեացս յիշատակ, եւ իմ ծնողաց, եւ ամէն ազգի։

Արդ որք ընթեռնուք սուրբ զԱւետարանս պոռքսիմոսին մեղաց թող<ին>[ութիւն] խնդրեցէք, որ Աստուած զնա երկնից արքայութեանն արժանի արասցէ եւ տացէ նմա լսել զերանաւետ զձայն որ ա[ս]է. Եկայք աւրհնեալք Հաւր իմոյ։ Արդ [ուր և] քարոզեցի Աւետարանս զպոռքսիմոսն յաղաւթս յիշեցէք, որ Աստուած պահեցէ խաղաղութ[ա]մբ ընդ երկայն աւուրս, եւ ետ ատի փոխելոյ երկնի[ց] արքայութեան արժանի արասցէ։

Եւ տիկնոջն պոռքսիմոսին կնոջն մեղաց թողութիւն եւ իր ծնողացն եւ իւր որդեացն, որ ընթեռնուք մեղաց թողութիւն խնդ[ր]եցեք, Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

97

ՆԿԷ 1018

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 4804

Գրիչ՝ Յոհաննէս

Վայր՝ Տալաշա վանք

ա

267բ Փառք ամենաս[ու]րբ Եր[որդու]թեանն անբաւից, որ միշտ լնու դեղեցկաղիր յար[մար]մամբ զկենդան[ի]ս եւ զանկենդանս լայնատարած խն[ամ]աւք արարչութեան իւրոյ խաչելոյն Քրիստոսի փրկչին մերոյ։ Փառք Հաւր նախախնամողի, որ ունի զնշան թագաւորութեան, որ եւ դատաղական զաւրութիւն, եւ Հոգւոյն Սրբոյ, որ նորածնունդ, նորափետուր զգեցուցանէ զամենիսեան լուսաւոր պատմուճանաւք երից անձնաւորութեան եւ միոյ տէրութեանն, փառք այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն, որ ետ մեզ զաւրութիւն նաւել եւ անցանել ընդ խորութիւն անդընդական հոգէշահ իմաստից, որով լուսաւորին միշտ աւրհնմամբ մանկունք սուրբ կաթողիկէ ե[կ]եղեցւոյ եւ ի ցամաքակեաղն ծիծաղել։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի գաւառի Կղաւայ, ի վանս Տալաշա, ընդ հովանե[ա]ւ Սուրբ Աստուած[ած]նիս եւ Սուրբ Գէորգեա, վերակացութեամբ հաւր Պաւղոսի, ձեռամբ փցուն եւ ապակար գրչի Յոհաննիսի տգիտի եւ մեղաւորի, ի թուականութեանն Հայոց ՆԿԷ (1018), զոր ստացաւ տիկին Մովուկ աստուածասէր եւ բարեպաշտ, յիշատակ իւր, իւրոց աշխատութեանց եւ ծնողաց իւրոց, ամէն։

---

[1] Գրիչն է շարունակում գրել, բայց ստացողի անունից։

Բ

*Աստուած ողորմեսցի իւր եւ իւրոցն ամենայնի եւ տացէ ի գիրկս մաւր Սիովն[ի], այսինքն Վերինն Երուսաղէմի եւ երամակից եւ դասակից լինել ընդ սրբոց մարտիրոսացն, ամէն։*

98

*ՆՀԲ* **1023**

## ԵՐԱՆԵԼՈՅՆ ԱԲԲԱՅ ԵՓՐԵՄԻ ԽՈՐԻՆ ԱՍՈՐՈՑ ԱՍԱՑԵԱԼ ՅԱՅԼԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՑ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

*Երևան 995 (1278 թ.)*

504բ *Թարգմանեցաւ ճառս ի Հոռոմաց ի մերս, ի թուականութեանս Հայոց ի չորս հարիւր եւթանասուն և երկու (1023), ի խնդրոյ ումեմն ուսումնասիրի* Դաւթի Խաղախորդոյ, *և* Ե[1] *ընդդեմ Արիոսի, որ արարած ասաց զՈրդի և ոչ ի բնութենէ Հաւր, այսու բանիւ կործանի և յերկիր անկանի, և* Նստիէնի, *որ առաչաւք ասաց զմարմնաւորութիւն, և նա կարկեսցի բերանով, և գատապարտեսցի ի Սուրբ Երրորդութենէն։ Սոյնպէս և որք այժմ յամառեալ կան այսպիսի մոլեգնեալք*[2]*։*

99

*ՆՋԲ* **1033**

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 283*

Գրիչ՝ Քրիստափոր

373ա *Խորին բանքս և յոյժ լցեալ ծածուկ իմաստիւ ղխորհրդոցն աստուածայնոյ երկնէ ղկանխասացութիւն և մեծի աստուածական գիտութեան բանական իմաստիցս առնէ ներհուն, ծանուցթ առնէ երեսաց Սրբոյ Երրորդութեան, եւ հասու իսկիւ իսկապէս բարւոյն առնէ զմակացուսն։ Արդ, որք վերծանէք, մանդունք մակածուք, զսուրբ եւ զպատուական քահանայ* Սիմեոնն՝ *զստացող սուրբ Աւետարանիս, իւր հա-*

---

[1] *Գրիչը Ն-ի փոխարեն ամենուր գրում է* Ե:

[2] *Սույն հիշատակարանը պահպանվել է Մատենադարանի № 2756 (էջ 74ա) ձեռագրում և ունի որոշ տարբերություններ.*

*«Ի չորեք[հ]արիւր յեւթանասուն և յերկու (1023) թուականութեանս Հայոց թարգմանեցաւ ճառս ի յունականէն ի հայս, ի խնդրոյ ուսումնասիրի* Դաւթի Խաղախորդի, *եւ է ընդդէմ Արիոսի, որ արարած ասէ զՈրդի և ոչ ի բնութենէ Հաւր, այսու բանիւք նա կործանի և ի յերկիր իսկանի։ Նոյն եւ* Նստիէէ, *որ առաչաւք ասաց զմարմնաւորութիւն որդւոյն Աստուծոյ, և նա կործանեալ կարկի և ափիբերան խայտառակի, և որք գնոցին մոլեգնին և յամառին մոլեգնաբար և լրբութեամբք»։*

*րազատ եղբարբքն եւ պատուեալ ծնաւղի իւրոյ, որոյ զանունն Տէր ճանաչէ։ Աստուած վայելեալ տացէ ի կամս ողորմու[թեան] իւրոյ։*

*Ի թուականութեանն Հայոց ՆՁԲ (1033) գրեցաւ ի ստոյգ աւրինակէ։ Եվ զտառապեալ գրիչ Քրիստափոր յիշեսջիք առաջի զենլոյն Քրիստոսի, եւ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, ամէն։*

*Յիշատակ գրիչս եւ փառք Փրկչին*[1]*։*

100

**ՆՁԳ** **1034**

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղեմ 256, պահպանակ*

*«Հանդէս ամսօրեայ», 1898 թ., էջ 166—167*

*Շնորհիւ Աստուծոյ սկսայ եւ ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ եւ զցանկալի Աւետարանս՝ ի հայրապետութեանն Պետրոսի ամենաշնորհ եւ սրբասնեալ տեառն, որ վաթսներորդ էր ի սրբոյն Գրիգորոյ, ի թուականութեանն Հայոց ՆՁԳ (1034), եւ ի Սրբոյն Գրիգորէ ամք ՉԼԴ (734+300=1034) են ի խաչելութենէն Քրիստոսի ՌԳ (1003+ +31 = 1034) ամ եւ յԱդամայն ՑՅԾԴ (6354)*[2]*։*

101

**ՆՁԴ** **1035**

## ՄԱՇՏՈՑ

*Երևան 6966, պահպանակ*

*Գրիչ՝* Գէորգ

*Վայր՝* Մանանձկերտ քաղաք

1ա *Փառք ամենասուրբ Երրորդութեանն, որ արժանի արար հասանել*
*յաւարտ գրոցս ի ՆՁԴ (1035) թուականիս գրեցաւ սուրբ եւ հոգեպա-*
*տումն Մաշդոցս այս ձե[ռ]ամբ* Սարգսի *նուաստ քահանայի անպիտան*
1բ *գ[ր]չի, ի քաղաքիս* Մանանձկերտի, *ընդ հովանեաւ Աւ /// փոխեցաւ*
*առ թագաւորն երկնաւոր եւ եթող բաղում լալիմ, եւ մեծ աղետ տղա-*

---

[1] *Այս տողը գրված է երկաթագրով, իսկ հիշատակարանը՝ բոլորգիր էւ Եվսեբիոսի նամակը և համաբարբառը գրված են նույն բոլորգրով և գրչագրով, նույնն են նաև նկարների վրայի գրությունները, որը հուշում է գրչի նաև ծաղկող լինելու հանգամանքը։ Ձեռագիրը միասյուն է, փոքրադիր, երկաթագիր։*

[2] *Հիշատակարանը չի բերված Երուսաղեմի ցուցակում* (Պողարյան, *Ցուցակ, Բ, էջ 37), միայն Ոսկեփորիկի նկարագրության մեջ նշված է. «էջ 1—4 պահպանակ»։ Հ.Տաշյանը, որը կատարել է նաև թվականների հաշիվները, ենթադրել է, որ հիշատակարանը կարող է էջմիածնի 283 համարի (Նախորդ ձեռագիրը, 1033 թ.) ձեռագրից անջատված և Երուսաղեմ տարված լինել։ Մ. Տեր-Մովսիսյանը մերժում է այդ տեսակետը (Մատենադարան, Համահավաք ցուցակ. Աւետարանք, էջ 47), որովհետև նրանք իսկապես, իրար նման չեն։*

յաց իւրոց։ Աղաւթս արարէք և մեղաց թողութիւն հայցեցէք յԱստուծոյ, եւ Գէորգա աստուածապատիւ աւագիրիցոյս մեղաց թողութիւն հայցեցէք յԱստուծոյ։
Ես Գէորգ քահանա եւ գ ///[1]։

102

ՆՁԵ 1036

ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 19, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 30

Գրիչ՝ Թորոս

ա

Ի թուականութեանս Հայոց ՆՁԵ (1036) գրեցաւ սուրբ Աւետարանս մատամբ Թորոսի նուաստ և տրուպ կրաւնաւորի։ Արդ աղաչեմ յընթերցողսդ և ւլսողսդ ղբաղմամեղս և զծնողսն իմ յի[շ]եսջի[ք] ի Տէր Աստուած և Աստուած ձեզ ողորմեսցի։

բ

ԶԹորոս զ[յ]աւգնամեղս յիշեսջիք ի Տէր Աստուած։

գ

ԶԹորոս զգրողս յիշեսջիք ի Տէր Յիսուս։

103

ՆՁԷ 1038

ԱՒԵՏԱՐԱՆ
Երևան 6201

Գրիչ՝ Եւարգրիս

243բ Փառք ամենայստւրբ Երրորդութեանն ի բարձունս, Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ այժմ, միշտ և յաւիտեանս, ամէն։

---

[1] Պահպանակը դրված է Կանոնգրքի սկզբում և կարված համարեցված է ձեռագրին։ Մյուս էջում Մաշտոց կաթողիկոսի վարքի մասն է։ Ունի մեր բերած վարքի հետ տարընթերցվածներ (տե՛ս էջ 88, 89)։
յա [... զպատ]րաստել արքայու[թիւն]։
Այս են բանք վարուց նորա ճշմարիտ, զոր կարի կարճառաւտի եւ [հ]արեւանցի ասացի, զառաւել եւս զարմանալին թողեալ, զի մի կարի անհաւատ թուեսցի ձեզ, այլ զոր ցուցիտ ճշմարիտ է, զոր իմ աչաւքս իսկ տեսի եւ ի միտ առի, զի ոչ է թէ հա[մբաւաւք տեղեկացեալ]։
[2] բ [... առաքել]ոցն դասն իւրեանց ամէնարարի եւ յարասեր ընդանեկան խնամովն հաստատուն պահնսցեն զուխտս զայս, որ յանուն իւրեանց կանգնեալ են ի ձեռն Սրբոյն Մաշդոցի եւ ձեռնատու լիցի յամենայն վտանգաւոր աղետս [ր]ազմահնար մեքենաից [բ]անսարկուին, զի կատարի ... (կտրված է թերթը)։

Գրեցաւ սուրբ Աւետարանս այս ձեռամբ իմով Սարգիս մեղուցեալ եւ անարժան կրամաւորի, ի թուականութեան Հայոց ՆԶԷ (1038), ի հայրապետութեան տեառն Պետրոսի: Եւ զկնի նորա կենդանութեան նստաւ այղ հայրապետ, որ կոչի անուն նորա Դեոսկորոս, եւ ի թագաւորութեանն Յունաց Միխայելի բարեպաշտի։

Արդ աղերս արկանեմ առաջի ձեր, որք ընթեռնուք, յիշել զիս առաջի զենելոյն Քրիստոսի եւ խնդրել ողորմութիւն ծնաւղաց իմոց եւ ամենայն ազգա[տոհ]մի իմոյ եւ Աստուած զձեզ յիշեսցէ յիւրում գալըստեանն, ամէն[1]։

## 104

ՆՁԹ 1040

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան, պատառիկ 1252

Գրիչ՝ Մխիթար

1բ Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՆՁԹ (1040), ի փառս ամենասուրբ Երրորդութեան։ Արդ որք ընթեռնուք, զՌստակէս զսրբասնեալ քահանա եւ զծնողս իւր, եւ զՄխիթար՝ զմեղաւոր գրիչս յիշեսջիք ի սուրբ եւ ի մաքուր յաղաւթս ձեր, եւ Տէր Քրիստոս եղիցի ընդ ձեզ, ամէն[2]։

## 105

ՆՂ 1041

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 3624, Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 223—224

Գրիչ՝ Սամուէղ

337ա Փառք Սուրբ Երրորդութեանն ի բարձունս յաւիտեանս ամէն, որ ետ զաւրութիւն տկարութեան իմոյ հասանել մինչև յետին զիծ գրոյս այ-

---

[1] Ձեռագրի տարբեր էջերում Մխիթար Մշեցին 1646 թ. թողել է այսպիսի երկու հիշատակագրություններ. «Ի Կարնոյ քաղաք, ի Կան, որ է յԱրղրումա քով, որ եկի յԱղբուր գեղս ու կարդացի զԱւետարանիս յիշատակ ու օրինակեցի, որ էր թվ. Հայոց ՌՂԵ (1646)։

Մեծ Աւետարան ՅՂՁ (947) թվին է գրած. (գրիչ) Դաւիթ քահանայ ճղնօոր, կաթողիկոս՝ տէր Անանիայ, թագաւոր Հայոց՝ Աբասայ, ի յերկիր Արշարունեաց, որ կոչի Վաճառայշաա:

Օրինակեցի Բ (2) Աւետարանի յիշատակ. Էզեծօրու Աւետարան ի թիվն ՅՂՁ (947), ու էտ Աւետարան, ի թիվ՝ ՆԶԷ (1038)» (էջ 191բ)։

«Զէզեծօրու Աւետարանի թվական ու զայս Աւետարանին դրեր եմ. Էզեծօրուն երեք հարիւր ու ընրսուն ու վեց է (947) թիվ, ու այսոր՝ չորս հարիւր ու ութսուն ու եաւթն է (1038) թիվ» (էջ 242բ)։

Ավետարանը կոչվում է «Շըխնոց Աւետարան», որովհետև արծաթյա կազմի վրա դրված է, որ պատկանել է Շխնոց գյուղին։

[2] Պատառիկը եղել է պահպանակ Դիզակի Ցոր գյուղի Ճաշոցի։ Ունի հնագրական մեծ արժեք յ և ց տառերի նախնական վիճակը պարզաբանելու համար։ Յիշատակարանքում, սխալմամբ, երկու անգամ է բերված՝ 1030 և 1040 թվաշարքերում (էջ 215—6, № 93 և էջ 221—22 № 99)։

*սորիկ, քան ղի շնորհիւն Աստուծոյ սկսա եւ ողորմութեամբ նորին կատարեցի զչորեքվտակեան սուրբ Աւետարանս այս ձեռամբ...* Սամուէղի *նուաստ քահանայի եւ յետին գրչի, ի թագաւորութեան Հոռոմոց, որ կոչի* Միխայլիս, *եւ ի թուականութեանն Հայոց ի ՆՂ (1041), եւ ի կաթողիկոսութեանն տեառն* Պետրոսի *Հայոց կաթողիկոսի եւ վերադիտողի, յորժամ* Յաւանէս *Հայոց <կա> թագաւորն վախճանեցաւ ի Քրիստոս եւ ետ զթագաւորութի[ւ]ն իւր՝ որդւոյ եղբաւր իւրոյ, որ կոչի* Գագիկ:

*Արդ, որք ընթեռնուք եւ լուսաւորիք կամ ընդաւրինակէք զսուրբ Աւետարանս, թողութիւն մեղաց հայցեցէք ի Քրիստոսէ ինձ եւ ծնողաց իմոց, եւ ազգականաց իմոց եւ եղբարց իմոց, թերեւս գտցուք ողորմութիւն յԱստուծոյ սոսկալի աւուրն, եւ Աստուած ողորմեսցի հաստրակաց, ամէն: Տէր Աստուած ողորմեա* Մարկոսի *եւ իւր ծնողացն*[1]:

## 106

## ԵՓՐԵՄ ԱՍՈՐԻՈՅ ԵՒ ՅՈՎՀԱՆԷՍ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՅ ՊԱՒՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

*Ալիշան, «Հայապատում», Բ, էջ 311, (999 թ.)*

*Գրիչ՝* Սարգիս վարդապետ

*Յամի յորում էր Հայ թուականս ՆՂ (1041), եւ վճարեցաւ ի մարդկանէ արքայն Հայոց մեծիմաստն* Յովհաննէս, *գտի ես՝* Սարգիս *վարդապետ, զգիրքս զայս յարքունական տան գանձուն, անգեալ ի յանկեան միում անայցելու թափառեալ թաւալէր յաճիւն յատակին, եւ դրեա թե լայր լռելեանւ Իսկ իմ հայցեալ խնամով ի գրանոցին, եւ ըստ սովորական մեր ախորժակացս՝ զյոքումս բացեալ ի բանսն բերկրէի, եւ սա զատուցեալ յ(ը)նկերացն՝ կայր կարաւտ ձեռին առ ինքն կառկառելոյ, զոր ապա առեալ իմ՝ ընդ իս տարա, հանեալ ի բանդէն: Արդ մաղթեմ, մեւ ապագայիցդ, աղաւթիւք զիս յիշեսջիք, որք ի գիրքս յայս հայիք եւ վերծանէք:*

## 107

*ՆՂԱ* *1042*

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երեւան 6384*

*Գրիչ՝* Սարգիս

*Վայր՝* Որդրու խաղաց

ա

256ա *Յամի ՆՂԱ երորդի*[2] *(1042) Հայոց առմար[իս],*

---

[1] *Հայ մանրանկարչության համար այս կարեւոր ձեռագիրը նկարագրել և հիշատակարանն ընդօրինակել է Գ. Հովսեփյանը 1914 թ., երբ այն Սեբաստիայի Խանդալ գյուղում էր: (Տե՛ս Գ. Հովսեփյան, Հաւուց թառի Ամենափրկիչը, էջ 53):*

[2] *Մատենադարանի Ձեռագրերի ցուցակում թվականը կարդացել են «ՆԱ» (902), որը թյուրիմացություն է. («Ցուցակ ձեռագրաց Մատենադարանի», հ. Բ, էջ 307):*

Ցամսեանն նաւասարդի ութներոր[դ]ում, եւ ի Ցորդրու քաղաքիս,
Ցարմարեալ ձեռամբ Սարգսի նուաս[տ] գրչի զգիծս,
Ցանուն Սարկաւագի սրբասէր քահանայի որդւոյ տեառն Մեսրոպա հը-
պեալ ի Քրիստոս,
Ցերջանիկն հասեալ որ մնացաւ ի կ[ե]անս։
Ցոքնապատիւ սուրբ քահանայք եւ [ս]պասաւորք սոսկալի [եւ] մեծ
խորհրդոյ,
Ցայն ժամ ծանիցեմ զձեզ մտերի[մ] աշակերտ Աստուծոյ,
Ցորժամ ի բուռն առեալ զվահան հաւատոյ և սիրոյ,
Ցընդդիմակաց ումեք իմոյ թշուառական գործոյ.
Ցետ ստանալոյ զանարհեստ ի զանգիտութեան իմոյ,
Ցառաջ բերեալ զսովորական հեզութիւնն գուսեալն յԱստուծոյ,
256բ [Ցու]արտումն սիրոյ ձգել [զան]արժանութեան իմոյ։
[Ց]այնժամ ծանիցի ճշմարիտ[ութիւն] եթէ փոյթ է միոյ,
[Ց]որժամ ի բոց թողեալ ըստ իմե հպե[ա]լարարի յԱստուծոյ
Ցագարակի գ[նե]ալ զծածուկ նկատ[ումն] զիր մարմնոյ,
Ցառաջ եկեալ ղի, գնեսցէ զագարակն առ ի թ[ո]պրոյ,
Ցանգ[ղ]եա[ն]ն հրճուիլ ի զանազան հրա[շից]ն գ[ործ]ոյ,
Ցա[յ]նմիկ կարծեմ զմարգարիտն ընդ ձեռամբ սրբոյ։
Ցայնմանէ մի ղրկէք զողորմելի և զհէք ձեր ծառայ[ի],
Զի ողորմ[եսցի] ինձ ահեղ աւուր գալստեանն,
Որ շանթա[խ]առն, որոտընդոստ, տագնապաբորբոք,
Կայծակնատարափ, եռանգնակուտակ յարձակմամբ
Ժամանեալ [ուսուց]անէ զընթանուր մարտկու[թեան] ///։

Բ

61ա Տէր Աստուած արարիչ եւ իշխան մահու եւ կենաց, ողորմեա տէր Մեսրոպա ի քում գալստեանդ, ընդ նմին եւ սրբասանեալ որդւոյ իւրում Սարկաւագի, պահելով զծաղկատեսիլ տղայսն իւր։
Եւ քեզ փառք յամենայն եղելոյս,
Եւ յիմմէ անարժան բերանւոյն, ամէն։

Գ

107ա Զստացող սուրբ Աւետարանիս զՍարկաւագ սրբասնեալ եւ ընթերցասէր զորդի տեառն Մեսրոպա ըստ մարմնոյ, որ ստացեալ մանկունս ծաղկերանգն, սնուցեալ խրատու եւ ուսմամբ Տեառն՝ յիշեսջիք ի սրբամատոյց յաղաւթս ձեր։ Ընդ նմին եւ զտէր Մեսրոպ, հանդերձ ճգնզգեաց եղբարբն իւրով Պետրոսիւ։ Եւ ընկալեալ Տեառն Աստուծոյ զխնդրուածս
107բ ձեր, հասցուք անսպառ բարեացն, զոր ակն ոչ ետես եւ ունկն // ոչ լուաւ, եւ ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զար պատրաստեաց այնոցիկ, որք ետուն զպտուղ այգոյն եւ ծառայակցացն զկերակուր ի ժամու։ Ընդ նոսին ողորմելոյ եւ ամենամեղ գրչիս, եւ քեզ փառք այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Դ

191ա Տէր Աստուած ղաւրութեանց, եւ արարիչ ամենայնի, յիշեա զտէր Մեսրոբա Հոգին ընդ սրբոց քոց յարքայութեանդ երկնից, եւ զամենայն ազգականս իւր փրկէ ի հրոյն յաւիտենից, մանաւանդ եւ սիրեցելոյն որդւոյն Սարկաւագին, եւ զաւակաց նորա, եւ կրամաւորին Պետրոսի ողորմեա Տէր, որ ես աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 108

ՆԼԴ 1045

## ՏԱՂԱՍԱՑՈՒԹԻՒՆ ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ

*Վենետիկ, 1868, էջ 7—10*

(Պատճառ ոտանաւոր բանիցս)

*Հեղինակ՝* Գրիգոր Մագիստրոս

*Վայր՝* Կոստանդինիպոլիս

1ա *Ի չորս հարիւր և իննսուն և չորս թուականութեանս Հայոց (1045), լինելոյ իմ* Գրիգոր Մագիստրոսի, *որդի* Վասակայ *աստուածապահ կիտոնի և դուկի և* Պալճաւունոյ, *եղեալ իմ յաստուածապահ քաղաքին ի* Կոստանդնուպոլիս, *ի ժամանակս բարեպաշտ և քրիստոսասէր արքային* Կոստանտեայ Մոնաւմախին, *գտեալ այր ոմն հագարացի անուն կոչեցեալ* Մանուչի, *յոյժ հմուտ իմաստասիրական դպրութեան և ամենայն իմաստութեամբ պերճացեալ և վարժեալ ի տաղասացութիւնս և հռետորութիւնս և ի բանաստեղծութիւնս հզօր գոլով, որ և պերճ և պաճոյճ շարամանութեամբ զգովասանականս և զոտիցն չափս և զկշիռ բանից հոմերական և պղատոնական՝ գրեթէ ասել հարազատ պարտ վարկանիմք նոցա. որ և այժմ յԵգիպտացւոց և ի Բաբելացւոց թագաւորաց՝ յաղագս տաղասացութեանս ամի ամի ձիրս և պարգևս ընդունէր, և զայն առատապէս և ի Հռոմայեցւոց արքայից պատուեալ աշտիճանաւ ի խոնարհագունէն հասանէ մինչև ցանթիհիպատ պատրիկութեան պատիւ։*

*Արդ սորա բազում աւուրս սկսեալ հռետորական հարցուածովք փորձել զմեզ վասն բոլոր բաղկացութեան և որ ինչ իմաստից գիտք, և դարձեալ մտածին և նորաստեղծ տարակուսանս առաջի արկանել մեզ ոչ պարապէր, և իբրու յայնմանէ ոչ կարէր ծածկել ինչ և կամ զանլուծանելիսն առաջի արկանել, այլ մանաւանդ իբրև զմանուկ այսր անդր յածեալ իբրու խաղալեօք զհետ վրդովեալ վաղիւք, իբրու խնծորսն առնչանսն, անդամաբեկ վաղիւքն տատանէին գնա։ Ապա ի բարձրադոյնսն իմն խորհուրդ ձեռնարկեալ՝ զաւետարանիչսն մեր պարսաւէր, իբր թէ նոքա ոչ գեղայարմար և չափաւոր բանիւք ոտից զաւետարանսն յարմարեալ յանգաւորեցին մի տառ և ի գիծ, որպէս*

Մահմէտն մեր, որ յԱդամայ սկսեալ մինչև ցինքն միով յօդիւ և ոտանաւոր տառիւ սահմանեաց զղուրանն մեր։ Եւ ասէ թէ այսչափ տունս այս գրով, և այսչափ այս անուն գրով. և զնոյն ասէր կարի յաճախ յաւարտն բերելով. զոր այժմ ոչ ոք կարէ հնարել զյառաջադոյն ասացելոց բանիցն, ստեղծանել կամ ոլորել և կացուցանել տուն մի ոտանաւոր չափով որպէս Մահմէտն մեր։ Քանզի ոչ է դժուարին բանաստեղծաց զնորագոյնսն և զինքնաստեղծսն բնաբանականութեամբ և ուսումնականութեամբ աստուածաբանել և կամ ներբողականս տաղասացութիւնս չափել, սակայն զայլոցն առասանութիւնս նախուստ դժուարաւ փոփոխի, սակայն Մահմեաի ի տուչութենէ հոգւոյն տուաւ, զի նա զայսորիկ ոգեաց տաղս միայօղ չափաւորութեամբ գծիւ Եւ այսպիսի բանիւք հրաշացուցանէր զմահմետականն իւր կուրանւ

Յայնժամ յուսալով իմ ի Հոգին սուրբ, ի Տէր և արարիչ և խնամիչ և սկսայ ասել, եթէ ոչ մարգարէութեան տեսիլ և ոչ նշանք և աչ արհեստք, այլ տաղասացութիւնք արաբացւոցն սովորաբար վարժաբանութեամբ մրցեալք միայօղ աւարտեալ գծի, զոր զուո կափայ անուանէք։ Սակայն թէ համարիս զայս մարգարէական տեսութիւնս՝ զոր Մահմէտ քոյ զքառասուն ամ զրեաց, բառօրեայ գծագրեցից քեզ. յԱդամայ սկսեալ մինչև ցգալուստն կրկին այնմ որ ստեղծ զնա. և մատենագրեցից քեզ առաւել եւ հրաշալի միով գծիւ յոդաւորեալ նուիւն զոր գովէիր զնա։ Իսկ նա բաղում դրաւս ի մէջ եդեալ, թէ կարասցես առնել դու զայդ, յայնժամ լինիմ և ես քրիստոնեայ։

Եւ իբրև գրեցի չորս աւուրս պարապեալ յամենայնէ՝ շնորհիւն Աստուծոյ, սկսայ ընթեռնուլ առաջի նորա. և այնուհետև ոչ սակաւ զարմանս պատեաց զնա, և հեղձեալ կականմամբ հարցանէր, թէ որպիսի արհեստիւ զայս փոյթ և կանուխ մատենագրեցեր։ Իսկ իմ զճշմարտութիւնն ասացեալ եթէ մեք քրիստոնեայքս յորժամ յաղօթս կամք, Հոգին սուրբ հասանէ ի թիկունս մեր և զամենայն ճշմարտութիւնն ուսուցանէ մեզ։ Եւ նորա զարհուրեալ խոստովան եղև եթէ մեծ է Աստուածն քրիստոնէից։ Այլ և յաղագս հակառակութեանն համարձակեցայ գրել զայսքան. զի նոքա մեծագոյն գովէին զկուրանն՝ վարկանելով վասն կաֆայինւ

Արդ հոետորաց մանկունք, զյիշատակ իմ Գրիգորի աստուածապահի կիտօնի և դուկի Պալճաւունտյ, ընդ նմին գրեցէք և յաղօթս յիշեցէք. և Տէր տացէ ձեզ զշնորհս ողորմութեան իւրոյ. ամէն։

109

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 3723

Գրիչ՝ Յուսիկ

ա

62բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն ի բարձունս յաւիտեանս, ամէն։ Գրեցաւ չորեքվտակեան տառս այս ձեռամբ Յուսկան մեղաւոր եւ

անարժան քահանայի եւ յետնի գրչի, ի կաթողիկոսութեանն տեառն
Պետրոս[ի] Հայոց վերադիտողի, ի թուականութեանն Հայոց ՆՂԴ
(1045)։
Ստացող սրբոյ Աւետարանիս յաղաւթս յիշեսջիք։

Բ

230բ . Փառք ամենասուրբ Երրորդութեանն ամէն[1]:

110

ՆՂԵ 1046

### ՃԱՌՔ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

Երեւան 988

Գրիչ՝ Գէորգ

Վայր՝ (Անի քաղաք)[2]

283բ Զի որպէս նաւավարին յափն ծովուն հասանելն խնդութիւն է,
նոյնպէս եւ գրչի՝ յետին դիծս։
Աներեւակապէս հոլովմամբ զանճառութիւն խորհրդն Աստուծոյ
իմաստիւք իջմամբ, անըմբռնելւոյ գրաւորական մատենից բնախաւ-
սութեան տեառ. Յուլիանու, վերերական արտայայտաբար զանուրջս
եւ զգծուար իմաստս անհասից թեւոց մտաց մտաւորաց, բացափայլ երե-
ւեցուցեալ մեծս այս, ղխորոց մտին յոյժ զստորասութիւն, աղջախոհակ
այլոց ոմանք յոքունց բացատրեաց երեւակապէս, պարզատէս, զըղձալի
իմաստս հոգւոյն, որ յլի]նքեան պարունակեալ ունի յարատոցումն
շաղկապմամբ, մարդկայնւոյ հոգւոյս ընդ աստուածայնոյն բաղադա-
նել։
Սակս անխառն լինելոյ արտաքին սգայութեանցս, իմանալի աչաւք
հոգւոյն տեսութեամբ տրոհել երկակի տարորոշմամբ, սգայութիւն ի
սղալեաց, եւ սղայութեամբ էին տրամակայիլ, թարց փաղառութեամբ
ստորնականացունիցս շարունակելով պատկանաւորիլ յաստուածայնւոյ
առանց անջատման եւ յարակիրթ ներգործութեամբ, ներավարժ կար-
կառմամբ յասպագայսն անսայթաք հայելով ի նպատակ վերին կոչարա-
նին, երկնայւոյն մտիքն ի միջակամարն երկնի ճախր առեալ թեւա-
284ա ծութեամբ, արագութեամբ, աւղավարութեամբ || աղաւնոյն ականա-
կիտ տեսութեամբ ժամանել ի ստուղապէս էիցն իմա(ս)տս[3] տեսական
եւ գործական, որպէսզի իմաստասիրել կարիցեմք սակս զգալեացս եւ
իմանալեացն, ներհմտութեամբ որոշել ի միմեանց, ըստ այսմ գա-
ղափարի ուսուցանէ զմեզ մեծախորհուրդս այս[4] եւ մնտոփեան բերանս

---

[1] Հաջորդ թերթը բացակայում է. ընդգծված բառերը գրիչը շարունակել է տողից ներքև, շղագրով։ Նշանակում է այստեղ ավարտվել է հիշատակարանը։
[2] Կ. Մաթեւոսյան. Հայոց կաթողիկոսարանի մատենադարանն ու գրչատունը Անիում (X—XI դդ.), «Էջմիածին», 1981, № Ժ, էջ 44։
[3] «Ստուգապ (I)եցին իմաստս(?)» ձևը թյուրընթերցում է։ (Յիշատակարանք, էջ 226)։
[4] Սխալմամբ «այս»-ը կարդացվել է «Աստուծոյ»։ (Անդ)։

ոսկի, առաւել քան թէ աման Հոգւոյն, այլ եթէ ի մտածութեան սորա երբեք, թեպէտ եւ որքան դէպ իցէ եղեւ. զի՞նչ են ցոյցքն։ Ո՞ այնքան ի վերջին իմաստա[սիր]ութիւնն[1] եհաս։ Ո՞ այնպիսի շնորհի արժանաւոր եղեւ երբեք։ Ո՞ այնպէս զբերան մտացն եբաց եւ ձգեաց զհոգին, զի որ զամենայնն գիտէ եւ քննէ զխորս Աստուծոյ Հոգւով՝ Աստուծոյ հաւսու լինիցի։

Ջայսոսիկ մեծ քարոզն ճշմարտութեան վարդապետն տիեզերաց, որ դրադում շրշւմակս Հին և Նոր կտակարանաց մանրամասնաբար ծասկեալ, ջամբեցոյց իբրև զկաթն տղայացելոց ի Քրիստոս, որ ոչ այլ ինչ կեայր, քան թէ Քրիստոսի, որ մինչև երրորդ երկինս ժամանեաց ընդ Պաւղոսի, եւ զբանս անճառս լուաւ[2] տեսող դրախտին անմահութեան, յաղագս որո զստորին գիտութիւնս ոչ ինչ առաւել, քան զհայելի եւ զառակս դնէ, որպէս թէ ի փոքունս զճշմարտութեանն է հաստատել յուրուականս, վասն ղի յաւետ եւ յիրաւի, զի ի հայրաշարժ յաղբեւրէն ընկալեալ զհոսանս Հոգւոյն իբրև զլուսածին ամպ քաղցրացուղեաց ի պասքեալ մերային անդա[ս]տանս, համանման մարգարեացուղ պատգամացն, առատամեա ծաւալմամբ ղվտյրս մեր դարաստանիս, ոռոգելով փրկադործեաց, յորդահոսան շնորհս բղխելով, գետահետեալ ըզբանական տունգս հոգեւոր դրախտին, որո ծառոյ պտուղ կեանք եւ գիտութիւն, եւ իմաստութիւն, եւ հանճար, վասն այսորիկ ձրի եւ առատագոյն եղեւ, կամեցողացն վայելումնն, ղի յորմէ հոսէցաւն՝ անծախելի էր։ Եւ անծախ արար իւր շնորհացն հոսումնն, յաղագս այսորիկ աղաղակաւ կոչէր, ոչ այլ ինչ խնդրէր, բայց միայն ըզծարաւումն փափաքանացն, եւ այնու արբուցանէր եւ առնէր աղբիւր շրոյ արբեցելոց ի կեանսն յաւիտեանից։

Եւ արդ ի՞ւիք ոչ ագնեաց մեղ Աստուած եւ ամրացոյց զանձինս մեր յամենայն վնասակար չարութենէ, այսինքն ճշմարիտ վարդապետութեամբն, առաքելովք եւ մարգարէիւք, եւ վարդապետաւքն, զորս եդ յեկեղեցւոջ իւրում, հանդերձ բաղում աւրինակաւք, արդ ամենայն հնարիւք եւ պեսպես պատճառանաւք հնարեցաւ վերացուցանել, հանել զմիտս մեր ի բարձունս, զի մի տապաստ անկեալ կոխան գտանիցիմք չարեացն, այլ այնպես կամի, զի շաղեալ պատեսցուք ընդ պատուիրանացն նորա գործովք բարութեանց, որպէս մանեալ պատին զնդակք յայգւոյն ըզորթովն, նոյնպես եւ մեք, ըստ նմին աւրինակի՝ մերձեսցուք սիրով առ Աստուած եւ յարեսցուք հպեսցուք առ մերձաւորս մեր, որպէս ուռք բարոմակ//ացն, որ պատին մանին զծառովքն,
484բ
եւ համբառնան ելանեն ի բարձրաբերձ ծայրս ծառոցն։

Այսպէս եւ մեք գիրկ ընդ գիրկս խառն լիցուք սիրոյն Աստուծոյ եւ ի նմանէ առ սէր միմեանց հաղորդեսցուք բարեաւք գործովք, զի կեանք մեր բարի գործովք կատարեսցին, ղի տնգեալ լիցուք ի տան Տեառն եւ ի սրահս սուրբս Աստուծոյ մերոյ ամենայն արդարութե...։

[1] Փակագծում եղած տառերը բերված են։ Մոռացել են բերել նաև նախորդ «ա» տառը, որպեսզի կարդացվի «իմաստութիւնն»։

[2] Գ. Հովսեփյանը ծանոթագրել է «Ձ-ում «լուսի», բայց ձեռագրում «լուաւ» է։

եւ սրբութեամբ, եւ ի նմին ծագեսցուք եւ զուարճասցուք յամենայն հաճութիմս եւ փառս եւ պատիւ հանցուք Հաւր, եւ Որդւոյ, եւ Սուրբ Հոգւոյն, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ստացող՝ Պետրոս կաթողիկոս

Ես՝ տէր Պետրոս[1], շնորհիւն Աստուծոյ Հայոց կաթաղիկոս, ցանկացող եղեալ այսմ աստուածաճառ ճառիցս սրբոյն Յոհաննու Ոսկեբերանի, մեծ փափականաւք եւ յորդորամիտ կամաւք ստացա ղսպասուածս ի նշանաւոր եւ ի ճշգրիտ գաղափարէ յիմաստոյ Իսիդորէ, առն ճարտարի գրչի, ստացուած ոչ առժամանակեա, որ աւտար է բնութեանս մերոյ. այս զստացուածն, որ կա մշտնջենաւոր զանիբացբառնալին եւ առ Աստուած ճանապարհին առաջնորդ, զայս երկուվտակիս հոսեալ անծայրս ծովէ, ժողովեալ ի մի պարունակեալ բովանդակեսցի գետ, որ ուրախ առնէ ղքաղաք Աստուծոյ, այսինքն զբանաւոր կենդանատունգս տնգեալ ի տան Տեառն, զի անհասիցն պատմութիւնքն ի փափաքումն ածէ գերական տեսութեան էիցն բարեաց, եւ ողորմութիւն ամբարեաց յոգիս մեր, աւրինակ իմն հրաժարումն առնելով անհասութեան իմաստիցն, քան ղի ո՞րպէս արդեաւք առանց տրտմութեան լինիցի, գիտելով զայնքան վերին ճանապարհին բարձրութիւնն, այլ սակայն համարձակելի է յԱստուած վերագրելով զլոյսն, որ տա բան աւետարանչացն զաւրութեան, իսկ միւս պատմութիւնն փոքրագոյն կենդանին ծիծառն ղաւրինակ իմն ի մեզ նկարագրէ զդառնանայոյն[2] շնորհն ստեղծիչ դառնան<այ>այոյն, առ որս ասէ Դաւիթ՝ Ջգարուն եւ զամառն դու ստեղծեր։

Այս թռչուն լուծանէ զտխրութիւն ձմերանւոյ եւ ախորժելի առնէ ըղժամանակն ամենայն բանս հաւուցն երգովք, որք ի բոյնս եւ յանտառս հնչեն հեշտալի ծիծառանցն եւ տատրակացն ի լսելիսն աղդեցեալ ձայն, որպէս եւ ծաղկաւն զուարճացեալ տեսութեամբ եւ հոտովն ուրախացեալ. զայսոսիկ պարտ վարկանիմ ոչ զէրեւելի գարունս զայս նկատել, այլ հոգւոյ ակամբ տեսանել զգարունն հոգւոյ, յորժամ սառնասառուցց բնութիւնն այս սկսանի ընձիւղիլ ի ծագմանէ արեգականն արդարութեանն, զորս միանգամայն ծագմամ[բ] ճառագայթիւքն ջեռուցանելով ընդ նմին, ղի ներքոյս կացեալ, որպէս գի ջեռեալ ոգւով եւ զուարճացեալ ճառագայթիւք բանին, դարձեալ լինիցիմք ջուր խաղացեալ ի կեանսն յաւիտենից եւ արժանաւորապէս զպտուղն ի ժամու տուեալ, սաղարթալից բնակեսցուք ի տան Տեառն եւ ի խորանս սրբութեան նորա յաւիտեանս։

---

[1] Ստացողի անունից է, բայց գրված է գրչի ձեռքով։

[2] Ցիշատակարանքում այս բառը գրված է «ղդառնայ...ն», իսկ երկու բառ հետո կրկընվածը՝ «գարնանն աստուածայնոյն» ձևերով։ Առաջին դեպքում ձեռագրում ջնջված և գրվածը կարդացվում է այնպես, ինչպես մենք վերծանել ենք։ Դրա ապացույցն է այդ ձևի կրկնությունը, միայն այստեղ «նայ»-ի առաջին երկու տառը կցագիր է (երկրորդը բոլորագիր), բայց ոչ պատվով գրված։ Գրիչը այն գրել և մոռացել է, որովհետև տողավերջում էր և հաջորդ տողում գրել է «այոյն»։

38ա Զայսոսիկ ընծայեմ Աստուծոյ գոհութիւն || պատարագ ընդունելի գոյն, ընծա քան զոսկի մաքուր, եւ քան զքարինս պատուով պայծառագոյն, քան զզոհս արեանցն սրբագոյն, քան զանդրանկացն պտուղս ընդունելի հաճո Աստուծոյ, քան զ(հ)որթ մատաղ եղջերաւք եւ կճղակաւք, քան զխունկս, քան զողջակէզս, քան զբեւրաւոր գառանց պարարտից։ Զայս երկու աստուածաբուղխ վտակս ընծայեմ Աստուծոյ, զայս նուիրեմ, զոր մնայ ինձընքեան, թողի որով միայն ճոխանամ, քան զի զայլովք զամենեքումք զանց արարի պատուիրանով եւ հոգւով, եւ զբազմապատիւ զմարգարիտն փոխանակ ամենեցուն, որոց ունէին երբեմն փոխանակեցի. եւ եղէ մեծաշահ վաճառական, եւ զուարճանամ այսուքիւք առաւել, քան որովք բազմաց բերկրին, եւ անեմ զսա ամենայն կենաց իմոց հաղորդ, եւ խորհրդակից բարի, եւ խոսակից, եւ առաջնորդվերին ճանապարհին, զի զամենայն զվաւալշականս անպատուեմ ի ստորինս կալ մնալ. յայս ինձ ամենայն թափեցաւ սիրելութիւն զկնի Աստուծոյ։

Արձան անմահ կանգնեսցի յիշատակ հոգւոյ իմոյ։

Արդ, ով ընթերցասէրք եւ աստուածասէրք, յորժամ ընթեռնյոք եւ կամ ընդաւրինակէք զլուսաւոր վարդաւյետութիւնս Երանելոյն Յոհաննու, ընդ նմին եւ զմեղ յիշեսջիք աղաւթիւք առ Աստուած, եւ Քրիստոս հասարակաց ողորմեսցի ի փառաւոր գալստեանն իւրում, ի տիեզերահաւաք եւ յաշխարհագումար ատենին։

Գրեցաւ աստուածագիծ պատգամս այս ի թուականիս Հայոց յորում ՆՂԵ (1046) էր, ի դիքտիոնին Հոռոմոց՝ յերեքտասներրորդ ամին, ի թագաւորութեանն Մոնումախա կայսեր, իսկ մեր յուսաւորութեանս ՆթՆ հարիւր եւ քառասուն եւ Դ (1046), եւ ի կուսածին ծագմանէն՝ հազար եւ քառասուն եւ Ե (1045)։ Իսկ եթե կամիս ճշմարիտն խուզել զլինելութիւն արարածոցս յԱդամա մինչեւ ի ծնունդն Քրիստոսի լինին ամք ՐՆԻ (5420) յարագրելս թուական Հոռոմին այսինքն զՃՁ (180)[1] լինի ՐՈ (5600) որս են Ժ—եկաք եւ ամք ՄՁ (280)։ Այդ անվրէպ ժամանակագրութիւն ըստ հինգհարիւրեակ բոլորակին հոլովմամբ յեարադարձութեան, վասն զի ամենայն ժամանակագրութիւնքն անմիաբան հանդիպին միմեանց մինչեւ ցհինգհարիւրակ բոլորս, զոր յԱղեքսանդրիա կարգեցին ԼԶ (36) փիլիսոփայք։

Եթէ ոք իմաստաբար հոլովէ, զնա յետադարձութեամբ գտանէ զժամս եւ զժամանակս եւ դտանես ոսխալեալսն։

Գրեցաւ եւ կազմեցաւ գիրքս այս ձեռամբ իմով Գէորգայ նուաստ գրչի, որք ընթեռնոյք ինձ աղաւթս արարէք, եւ Աստուած զձեզ ողորմեսցի յիւրում գալըստեանն եւ յարքայութեանն, ամէն։

Բ

76ա Զտէր Պետրոս Հայոց կաթողիկոս զստացող գրոցս անհասիցս յաղաւթս յիշեսջիք եւ դուք յիշեալ լիջիք ի Տէր Քրիստոս, ամէն։

---

[1] Յիշատակարանքում գրված է ՋՃՁ, որ ճիշտ չէ, «Ջ»-ն նախդիր է. պետք է կարդալ «զՃՁ» և ՐՆԻ (5420)+ՃՁ (180) = ՐՈ (5600)։

Կ

40ա Զտէր Պետրոս Հայոց կաթողիկոս զստացող լուսաւոր վարդապետութեանս յաղաւթս յիշեսջիք, եւ Քրիստոս ղձեզ յիշեսցէ իւրում գալըստեանն եւ յարքայութեանն։

Գ

63բ Զտէր Պետրոս Հայոց կաթողիկոս զստացաւղ սուրբ գրոցս լուսաւոր վարդապետութեանս Յովհաննու յիշեսջիք ի Քրիստոս, որ մեծաւ փափագանաւք ետ գրել, որպէսզի եւ կատարեալ վարձուց ընդ նմին արժանասցի ի Քրիստոսէ։

Ե

170ա Զտէր Պետրոս Հայոց կաթողիկոս զստացիչ գրոցս յաղաւթս յիշեսջիք[1]։

111

ՆՂԷ 1048

ԱՒԵՏԱՐԱՆ

Տաշյան, «Տաւր, գրացիք...»
«Հանդէս ամսօրեայ», 1973 թ., էջ 178

Գրիչ՝ Գրիգոր

Վայր՝ Արծին աւան

Ի թուականութեանս ... աւարտեցաւ սուրբ եւ տիեզերափայլ Աւետ[արանս] ձեռամբ իմ մեղապարտ եւ յետին գծագրի։ Շնորհի Աստուծոյ սկսա եւ ողորմութեամբն նորին կատարեցի զլուսափայլ փրկունս աշխարհի։ Արդ աղաչեմ զամենայն սուրբ քահանայսդ, եւ զընթերցողսդ, եւ զլսողսդ յիշեսջիք զիս զանարժանս, եւ զիմ ծնողսն աղաչեմ վասն աՀեղ ատենին։

Գրեցաւ յԱրծինս մեծ աւանի, ի Կարին գաւառի, ի հայրապետութեան տեառն տեառն Պետրոսի վերադիտողի, և յեպիսկոպոսութեանն Յովհաննեսի սուրբ վերադիտողի, եւ ուղղափառ ա[ռա]ջնորդի, եւ ի [թագաւորութեան] ի Հոռոմոց Միխայլի։ Այլ եւ Դաւիթ հաւատարիմ ծառայ Աստուծոյ եղեւ արդիւնատու ըստ կարի մակազարդ, լուսաշարդ, աստուածախաւս տիեզերից /// յորդորեալ զանձինս աստուածասիրաց առ/// յոյսն յաւիտեանից։

Արդ տացէ Աստուած տեղի եւ բնակութիւն Դաւթի եւ ծնողաց իւրոց, որդւոց և կենակցի ի կեանսդ յաւիտենից, զոր խոստացեալ է Աստուած սիրելեաց իւրոց։

Բայց ստացաւ զաստուածախաւս մատեանս Գրիգոր սրբասէր եւ աստուածարեալ քահանյ, յիշատակ հոգւոյ իւրոյ, աւդնութեամբ սուրբ խաչին, առ որ ապաւինեալ կան որդւովք իւրովք, ամրացեալ ընդ հո-

[1] Գրիչը Ե և Է-ի ուղղագրությունը խառնում է։

վանեաւ աստուծընկալ Սուրբ Նշանիս, ղոր ունի սեփհական յերկրէն իւրոյ։ Այլ ի ձեռն սուրբ խաչիս եւ տիեզերաքարոզ Աւետարանի պայծառանան եկեղեցիք, զարդարին քահանայք, լուսաւորին մանկունք եկեղեցւոյ, պահպանին համատարած ամենայն հաւատացեալք Սրբոյ Երրորդութեանն։

Որք ընթեռնոյք[1] եւ լուսաւորիք եւ ղիս Գրիգոր քահանայ եւ ղիմ ծնողսն յիշեսջիք ի Քրիստոս, և ղիմ ղեղբարսն, եւ Տէր Քրիստոս Յիսուսիւ ողորմեսցի, ամէն։

Այլ տացէ Տէր Աստուած ողորմութիւն Դաւթի եւ ծնողաց իւրոց յիւրաքէմ դատաստանին եւ հարիւրապատիկ հատուսցէ նմա զարդիւնս սրբոյ Աւետարանիս, ամէն[2]։

**112**

ՆՂԸ 1049

ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ԿԻՐԱԿԻ ԵՐՈՒՍԱՂԵՄԱՅԻՈՑ

Երևան 1718 (1625 թ.)

195ա Կատարեցաւ գիրք սրբոյն Կիւրղի, որ կոչի Կոչումն ընծայութեան ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Երկրորդ նորոգումն թվին ՆՂԸ (1049) եղեր է[3]։

---

[1] Տպագրված է «ընթանայք»։

[2] Հ. Տաշյանը պատմաբանասիրական քննությամբ ապացուցում է, որ «Աւետարանս գրված է մինչև 1048 թվականը և հասակակից է 1038 թ. Աւետարանին»։

[3] Ձեռագիրը գրված է ավելի վաղ, նշված թվականը երկրորդ նորոգման թվականն է, երրորդ անգամ նորոգվել է ՊԸ (1359) թվականին։ 1625 թ. ընդօրինակող Մաղաքիան արժեքավոր տեղեկություններ է հաղորդում ձեռագրի վիճակի մասին. բերում ենք այդ հատվածը «...գրեցի և կատարեցի ղծաղկայհաւաք մատենաս սրբոյն Կիւրղի, որ էր դրած ի սուրբ արանց ի հին ժամանակէն և անարգ ընկեցեալ կայր ի մեջ աղրիսաց եկեղեցոյ։ Եւ իմ առեալ թափ տվի ի յաղբէն և տեսի փտեալ և ցեցկերեալ, և գիրն անյսպայ երկաթագիրն անյարմարն, մնամ թե վասն գրին անյընդելութեանն ընկեցիկն եղեալ է։ Եւ ես դայս ամփոփեցի ԻԲ (22) տարի և ոչ ոք հաւաս չկալաւ դսա ընթերցման։ Ի բաց եղի և վերստին գաղափարեցի յետոյ եկեալ բանասիրացդ։ Բայց կու խնդրեմ ի սրբութեանց ձերոյ ընթերցողաց և փոխարկողացդ որ անմեղադիր լինիք անյարմար գրիս, զի նիւթն անյարմար էր, և ժամանակն ձմեռն էր, յուսահատ էի ի կենացս, որ մեկ մի չեղև ընթերցող այսչափ գրեանուցս, որ հաւաքեցի և գրեցի, ոչ միայն այս՝ այլ բաղում, և դրել տեղս անպատշաճ, դի Գ տեղ փոխեցայ վասն գրելոյ և վերջին ի Քրիստոսի լուսարուխ սուրբ գերեզմանն ի սուրբ Յարութիւն եղեւ Բայց այս գրոցս երկրորդ նորոգման թվին ՆՂԸ (1049) եղեր է երրորդ նորոգումն ՊԸ (1359) եղեր է, և ես վերջի(Ն) ծրագրողս նուաստ և յետնեալս ի բանասիրաց Մաղաքիա ծառայ Յիսուսի Քրիստոսի, ի յոմվար ամ(ս)ոյ սկսայ, որ թիւն էր ՌՀԸ (1625) և ապրիլ ի Ը (7) ավարտեցի ողորմութեամբ բարերարին, ի հայրապետութեանն Կիլիկեցւոց տեր Մինասին և ի յառաջնորդութեան սուրբ Յակոբայ առաքելոյս տէր Գրիգոր արքեպիսկոպոսին...

Յիշեսջիք ի սրբամատոյց յաղօթս ձեր զվերջին աշխատողս ի ամայ զՄաղաքիա սպասաւոր բանի...» (195 բ.)։

113

ՇԲ 1053

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7736

Գրիչ՝ Յովաննէս
Վայր՝ [Սանդղկա վանք]

ա

124բ Յովաննէսի մեղաւորի գրողի գրոցս ողորմեա Աստուած ի քո գալստեանդ, ամէն։

բ

189ա Յովաննէսի մեղաւորի գրողի գրոցս ողորմեա Աստուած, ամէն։
Տէր տուր Դաւթի յարութիւն կենաց, ամէն։
Նիղորգաեմրողոծարտ Յովաննէսի, ամէն[1]։

գ

300ա Տէր Յիսուս ողորմեա գրողի գրոցս, ամէն[2]։

114

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3793

Գրիչ՝ Յովաննէս

Վայր՝ Սանդղկա վանք

ա

309բ Փառք Աստուծոյ, Հաւր Աստուծոյ, Որդւոյ Աստուծոյ, Հոգւոյն Սրբոյն յաւիտեանս ամէն։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեան Հայոց ՇԲ (1053) ամի [ի դուռն] Սուրբ Աստուածածնին, ի վանս Սանդղկայ, մերձ գոլով խաչակրաւն հաւր Ստեփաննոսի, ձեռամբ Յովաննէսի նուաստ եւ անարժան էրեցու և յետին գրչի։

Արդ աղաչեմ վասն սիրոյն Քրիստոսի յիշել յաղաւթս զբազմամեղ գրիչս եւ ծնաւղսն իմ եւ զեղբարս եւ Տէր Յիսուս յիշողացդ եւ յիշեցելոցդ առհասարակ ողորմեսցի աղաւթիւք ամենայն սրբոց, ամէն։

---

[1] Պետք է աջից ձախ կարդալ և կստացվի «Տէր Աստուած ողորմեա գրողին», իսկ վերջին երկու բառերը փակագրված են։

[2] Ձեռագիրը հայտնի է «Մողնու Աւետարան» անունով. գրիչ Հովհաննեսը նույնն է հաջորդ ձեռագրի գրչի հետ, որը նաև ծաղկողն է։

Սույն Աւետարանը գրվել է մինչև 1053 թվականը, ուստի դնում ենք այդ թվականից առաջ (Տես մեր հոդվածը՝ «Գրիչ Հովհաննես Սանդղկավանեցի» («Մողնու Աւետարան»), «Բանբեր Մատենադարանի», 1970, № 10, էջ 379—400)։

Աստուած ողորմեա Մովսէսի, որ զմագազաթն գործեաց։ Աստուած ողորմեա Դաւթի, որ սպասաւորեաց, ամէն։

[Աստուած] ողորմեա Թորոսի խաղբկայ, որ զոսկէեղեղն զուգեաց ամէն։

Բ

89բ Աստուած ողորմեա Յովաննէսի մեղաւորի գրողի գրոցս եւ ծնաւ- ղաց նորա, ամէն։

Գ

239ա Աստուած ողորմեա Յովաննէսի մեղաւորի գրողի գրոցս եւ ծնաւ- ղաց նորա. ՏՈՒՔՄ եւ ԽՈՆՐԻՌ, Ա. Ճ։Ա։։։ Ճ։։[1]

Աստուած ողորմեա Յովաննէսի Սողկին, որ ղոսկեգեղն կազմեաց, ամէն։

## 115

ՇԳ 1054

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10099

Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 237—38

Գրիչ՝ Ստեփաննոս

185բ Ի քո միւսանգամ գալստեանդ Քրիստոս Աստուած՝ յորժամ գայցես փառաւք Հաւր եւ Հրեշտակաւք սրբովք, եւ բռնութիւնք եւ իմաստք երկ- րի սարսափեսցին դողան, Հուր զաւրանա եւ աշխարհս տոչորի, լերինք եւ բլուրք տափարակի եւ ծով ցամաքի, եւ ցանկողք եւ ժողովողք աշ- խարհիս ղմայղեալք եւ արբեցեալք, ամէն զոր սիրեհին, եւ երթայ մարդ ի տուն իւր յաւիտեանից։

Յայնմ համառատ գումարմանն՝ բարեխաւսութեամբ սուրբ ա- ռաքելոցն, որք աւետարանեցին զքո սուրբ ծնունդ եւ զչարչարանսդ եւ զերեքաւրեա զթաղումնդ եւ զփառաւոր յարութիւնդ եւ առ Հայր ղհամբարձումնդ։

Ողորմեա՛ եղկելի հոգւոյ իմում Ստեփաննոսի, անարժան քահա- նայի եւ փանաքի արուեստաւորի եւ յետի քահագծագրի, քան զի դու ես Աստուած՝ որդի Աստուծոյ՝ որ առաքմամ[բ] Հաւր եւ Սուրբ Հոգ- ւոյն վասն գլորեցելոյն երկիր յաշխարհ։

---

[1] Հիշատակարանը շատ մաշված է և տեղ-տեղ հետագայում տողերի վրայից նորից անցել են սև թանաքով։ Յիշատակարանքում չի կարդացված վանքի «Սուրբ Աստուածածնին» անունը և չի բացված դրչի ծնողների գաղտնագրված անունը։ Գաղտնագրությունը կարդաց- վում է. «Դաւթի եւ Մարեմա, ամէն»։ Ուրեմն Հովհաննեսը Դավթի և Մարիամի որդին է։ Ձեռագիրը կազմող Աստվածատուր երեց Տանձուտցին թողել է այսպիսի մի հիշատակագրու- թյուն. «...ի թուիս ՌԼԶ (1587) կազմեցաւ Եւ այս սուրբ Աւետարանս ի դրելոց ժամա- նակէն ի վեր ՇԼԴ (534) ամաց էր մինչև յայս վայրս» (էջ 144ա)։ Իսկապես 1587— 534 = 1053։

Եւ քեզ փառք յաւիտեանս, ամէն, որք ընթեռնուք, թողութիւն շնորհնցէք կաթողնեալ ոգւոյն իմոյ...[1]։

## 116

ՇԴ 1055

### ԱՆԱՆԻԱ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՍԱՆԱՀՆԵՑԻՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՋՈՐԵՔՏԱՍԱՆ ԹՂԹՈՑՆ ՊՕՂՈՍԻ

Երուսաղեմ, 234 (1603), Պողարյան, Ցուցակ Ա, էջ 644

Երջանիկ և երանաշնորհ Անանիայ սուրբ վարդապետի և անյաղթ փիլիսոփայի, հաւաքեալ մեկնութենէ դրոցն Պօղոսի առաքելոյ, զբանսըն Եփրեմի եւ Յովհաննու Ոսկեբերանի եւ Կիւրղի, եւ այլ սրբոցն, արարեալ համառօտ, վասն դիւրահասութեան ընթերցողաց։ Հրամանաւ Պետրոսի կաթողիկոսի, ի Շ եւ Դ (1055) թուականին Հայոց[2]։

## 117

### ԱՒԵՏԱՐԱՆ

Լալայան, Ցուցակ Վասպուրականի, էջ 75—76

Գրիչ՝ Ստեփանոս

[Փառք ամենասուրբ Երրորդութեանն, ամէն։ Գրեցաւ ձեռամբ] Ստեփանոսի [ի թվին Հայոց] ՇԴ (1055)[3]։ ։

---

[1] Այս Աւետարանի առաջին նորոգությունը կատարվել է 1060 թվին, ուրեմն ձեռագիրը գրվել է այդ թվականից առաջ։ Որովհետև ձեռագիրը «Ի ստէպ հինից անկատար էր մնացել» նորոգվել է և լրացվել Արշարունյաց դպրոցում (տես. Աստ էջ 100), գրված պետք է լինի 1047—1054 թվականներին, սելջուկ թուրքերի առաջին արշավանքից մինչև Կարսի վրա հարձակումը, ուստի դնում ենք 1054 թվականի տակ։

Ձեռագիրը պատկանել է Լեռնային Ղարաբաղի Թալիշ գյուղի Բեգլունց ընտանիքին, որտեղ տեսել և նկարագրել են Մ. Բարխուդարյանը («Արցախ», Բագու, 1895, էջ 226—228) և Գ. Հովսեփյանը («Յիշատակարանք», էջ 237—238 և այլուր)։ Ձեռագրից պահպանվել է 18 թերթ, որոնք վերջերս բերվեցին Մաշտոցի անվան Մատենադարան։ Այժմ պահվում են 10099 համարի տակ։ Հիշատակարանները վերցրել ենք Յիշատակարանք-ից։

[2] Մեկնության հիշատակարանը չի պահպանվել, բայց վերնագրում հիշված տվյալները մասամբ այն լրացնում են։ Դրանից առաջ, Անանիա Սանահնեցին կատարել է Մեկնութիւն Մատթէի, որի հիշատակարանը նույնպես չկա, բայց վերնագիրը և առաջաբանը մասամբ լրացնում են այդ բացը, որից երկու քաղվածք ենք բերում։ Մեկնութիւնն ունի այսպիսի վերնագիր (բերում ենք № 2686 ձեռագրից, իսկ փակագծերի մեջ առնված բառերը դրանից 19-րդ դարում ընդօրինակված № 2359 ձեռագրից են). «[Սուրբ Աւետարանն Համառօտ Ա]նանիայի Հայոց վարդապետի, ի խնդրոյ Եաւր [Դեոսկոր]ոսի, իմ աղաչեալ յուսաւորիչ վար[դապետին] Սարկաւագ ըստ մակութեան, եւ երկ[ր]որդ յուսաւ[որչ]այ ազին եւ յաղագս սիրոյն, զոր էր առ իմ անպիտանութիւն [բա]զում ջանիս եւ աշխատութիւն կրեաց յաղագս այսր ատտիս։

Ընկալեա գհրաման տեառն իմոյ հօր Դէոսկորոսի և հոգելից վարդապետի՝ Սանանեի սուրբ ուխտի առաջնորդի, զոր յոյժ ըղձիւ և սիրական բաղձանաւք, հայցեալ պահանջեցեր ի մէնջ, վասն բացայայտութեան տէրունեան բանից կենսաբեր Աւետարանին՝ համառատաբար շարադրել զսրբոց վարդապետացն վերայձառութիւնս» (էջ 2ա—Զբ)։

[3] «Մեծ սրբություն է համարվում։ Հիշատակարանի վերջին մասը թափված է, սովորա-

118

ՇՁ 1057

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 3784

Գրիչ՝ Թովմաս

Վայր՝ Մելտենոյ քաղաք

ա

Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս ամէն, որ ետ զաւ-
287բ բութիւն տկարու//թեանս իմոյ հասանել մինչեւ ցյետին գիծ դրոյս այ-
սորիկ, քանզի շնորհիւն Աստուծոյ սկսա եւ ողորմութեամբ նորին կա-
տարեցի /// տակին տառս այս, ձեռամբ Թովմաս երիցու նուաստ քա-
հանաի եւ ետին գրչի [ի] քաղաքիս Մելաենոյ, ընդ հովանեաւ Սրբո[յ]ն
Գրիգորի, ի թուականութեանս Հայոց ի հինգ հարիւր ու վեցն (1057), ի
կաթողիկոսութեանն տեառն Խաչկա, յորժամ ի Թաւբլուրի վանսն էր։

Արդ, որք ընթեռնոյք կամ աւրինակէք, ղգրողս յիշեսջիք, եւ զՄով-
սէս քահանա՝ զհայրն իմ, եւ Աստուած ձեզ ողորմեսցի իւրում գա-
լըստեանն ամէն[1]։

բ

Ծաղկող՝ Աբրահամ

40բ Զտառապեալս յիշեա՛, եղբայր։

գ

107բ Զտառապեալս Աբրահամ յիշեցէք ի Տէր։

դ

207ա ԶՊաւղոս հայր յիշեցէք ի Քրիստոս եւ զիս[2]։

119

ՇԹ 1060

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 10099 (1054 թ.)

Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 243—244

Ծաղկող՝ Յովհաննէս

Վայր՝ Կանչնուաի ուխտ

ա

117ա Ի ՇԹ (1060) ամի թուականութեանս Հայոց եղեւ նորոգումն սուրբ

---

կան Փառքից հետո հիշված է գրչի անունը և թվականը։ Երբ գնացի ցուցակագրելու... ամ-
բողջ գյուղը թափվեց եկեղեցի... Ես զգուշացա հիշատակարանը արտագրելուց»,—գրում է
Ե. Լալայանը։

[1] Հետագայում բոլորգրով մյուս սենյակում ավելացված է «ի թիւականս Հայնոց ՆԾԶ (1057)-ին գրեցաւ Աւետարանս զայս»։

[2] բ, գ և դ հիշատակագրությունները գրված են նշված էջերի լուսանցազարդերի շրջանակ-
ների մեջ, ծաղկող Աբրահամի ձեռքով, մի փոքր ուշ։

Աւետարանիս՝ հրամանաւ եւ ծախիւք հաւր Դաւթի, որ բնակէր [ի] Զօրմայրտոյ՝[1] յանապատիս, Կ[ա]նչնուա կոչեցեալ։ Աւետարանս առաջարկեալ այղում էր, եւ ի ստէպ հինից անկատար էր մնացեալ։ Արդ, զի ըստ կամևլոյն Աստուծոյ տուեալ եղեւ սմա՝ սոր[ա] ջան եդեալ յաւարտ յեհան, զի ետ առնել ղցան[կ]սն եւ զաւետարանառաջսն, եւ զպակասն լնուլ եւ կազմել։

Արդ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնույք կամ գաղափար առնույք, անմոռաց յիշմամբ յիշել աղաւթս ղըհայր Դաւիթ եւ զծնաւղս նորին, զի աղաւթիւք ձերովք գրեսցին նոքա ի դպրութիւն կենաց, և նորադե[ս]ցին ի կեանս նորոգս։

Զ3ովաննէս մեղաւոր և անարժան երէց եւ անպիտան գրիչ, որ զղևղագործն արար և կազմեաց, յիշեսջիք յաղաւթս։

Բ

185ա Քրիստոս վայելել տացէ զսուրբ Աւետարանս ճգնազգեաց եւ առաքինասէր հաւր Տումի՝ առաջնորդի սուրբ ուխտի Կանչնուտի։

Գ

*Ոսկերիչ՝ Սարգիս*

376բ Որ ղգիրքըս բանայ, գՍարգիս ղոսկերիչն, որ զարծաթն գործեաց և ղԱւետարանս զարդարեաց, նորա մեղաց թողութիւն խնդրեցէք, որ զնա յիշէ, Աստուած զնա յիշե(ս)ցէ։

## 120

6ա ԱՆԱՆԻԱՅԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՀԱՅՈՑ ԲԱՆ ՀԱԿԱՃԱՌՈՒԹԵԱՆ ԸՆԴԴԷՄ ԵՐԿԱԲՆԱԿԱՑ, ԶՈՐ ԳՐԵԱՑ ՀՐԱՄԱՆԱՒ ՏԵԱՌՆ ՊԵՏՐՈՍԻ ՀԱՅՈՑ ՎԵՐԱԴԻՏՈՂԻ

Երևան 567 (ժէ դ.)

*Հեղինակ՝ Անանիա վարդապետ*

Բայց արդ, առեալ, զաղքատ իմոց մտաց ընկալցիս պտուղ, ով գերա-
112բ զարդ և ամենիմաստ հանճարով // առ լցեալ տէր Խաչիկ վերադիտող
Հայոց Մեծաց, փոխանորդ մեծի Լուսաւորչին պետ, թեև ոչ զյաւետ կատարեալն, սակայն ըստ կարի մերում զյօժարութիւն լիապէս ցուցեալ, յաղագս որոյ աղաչեմ ըստ աղքատատար տրոյ տառապելապետ այրոյն այնորիկ համարեսցին զվարձս շնորհին, ոչ ըստ տրոցն, այլ միայն հարուստ յօժարութեանն ընդ քաջահաւատսն գովեցաւ յամենեցունց Տեառնէն։ Ըստ այնմ և զմեր ընկալցիս, զսակաւ տուրս եր-

[1] Գ. Հովսեփյանը գրում է. «Զորմայրուոյ» նույնը պիտի լինի Մայրաձոր անվան հետ, որ գտնվում էր Կաղզվանի մոտերքը՝ Գարեղենից նախարարության մեջ, ոչ հեռու Վանգույս վանքից, ուր Զ և հետագա դարերում գրչության արվեստի դպրոց էր հաստատված» (Յիշատակարանք, էջ 244, ծթ. 1)։ Տե՛ս մեր (Գրիչ Հովհաննես Սանդղկավանեցի» հոդվածը («Բանբեր Մատենադարանի», №10, էջ 379—400)։

կուց լումայիցդ, և եթե աղաչանք ինչ իցեն ի բանիդ, ըստ տկար և հոսանուտ բնութեանս մերոյ՝ ուղղեսջիք սիրով հոգւոյն և կորովահանճար իմաստիւք լցցի պակասն, և սղալանքն ծածկեսցի ըստ գրոյն՝ եթէ տէր ծածկէ զբազմութիւն յանցանաց, և այնպէս բոլորեցունց արարչին հաճոյասցուք և կամ հանդիպեսցուք ի Քրիստոս Յիսուս որում փառք յաւիտեանս, ամէն[1]։

121

ՇԺԳ 1064

ԱՒԵՏԱՐԱՆ ԳԱԳԿԱՅ ՇԱՀԱՆՇԱՀԻ

Երուսաղեմ 2556, Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 241—44

ա

5բ Երրորդութիւն Սուրբ, ողորմե[ա] Գագկայ Շահանշահի։

բ

135բ Ջստացող սրբոյ Աւետարանիս զ'Գագիկ Շահանշահ՝ զորդին Աբասայ յիշեսջիք ի Տէր Յիսուս Քրիստոս[2]։

գ

222բ Ջստացող սուրբ Աւետարանիս զԳագիկ Շահանշահ՝ զորդին Աբասայ յիշեսջիք ի Տէր։

դ

317բ Ջստացող սրբոյ Աւետարանիս զԳագիկ Շահան...շահ՝ որդի Աբասայ, զԳորանդուխտ[3] թագո[ւ]հի և զՄարեմ յիշես...։

---

[1] Թուղթը գրվել է Պետրոս Գետադարձի (1019—1054) պատվերով, բայց նրա մահից հետո ստացել է հաջորդ Խաչիկ Բ կաթողիկոսը (1054—1060)։ Ուրեմն գրության թվականը կլինի մինչև 1060-ը։

[2] Աբասի որդի Գագիկը Կարսի Բագրատունի վերջին թագավորն էր (1023—1064)։ Ձեռագիրը դնում ենք վերջին թվականի տակ։

[3] Գ. Հովսեփյանը ծանոթագրում է. «Գորանդուխտ թագուհին վրաց Բագրատ Դ-ի քույրն էր։ Սրանք Վասպուրականի Սենեքերիմ թագավորի դուստր և Գագիկ Առաջին թագավորի թոռ Մարիամի և Գեորգ Ա-ի զավակներն ենւ։ Գեորգի հայրը՝ Բագրատ Բ-ն է. սրա կինը՝ Գորանդուխտը։ Այստեղից էլ մեր Գորանդուխտի անունը։ Գագիկ Կարսեցու և Գորանդուխտի աղջիկն էր Մարեմը՝ իր մեծ մայր Մարիամի անունից։

Աւետարանը հայ մանրանկարչության պատմության համար ունի արտաքո կարգի նշանակություն, որ նկարազարդված է եղել բազմաթիվ տերունական պատկերներով... Առանձին նշանակություն ունեն լուսանցքների զարդագրությունները, գորգեր, թռչուններ բազմատեսակ և ոճավորված, երբեմն կենդանիների և մարդկանց գլուխներ, ծաղիկներ, անոթներ։ Բայց ամենից կարևորը Գագիկ թագավորի ընտանեկան պատկերն է. մի կողմից ինքը, մյուս կողմից թագուհին և նրանց մեջ իրենց Մարեմ աղջիկը՝ նստած գորգապատ թախտի վրա»։ (Յիշատակարանք, էջ 241—244)։

ե

...Երրորդութեանն, յոր բնակէ Հոգին Սուրբ ի գեղեցիկ վարս սորա եւ լցեալ Հոգւով երկիւղիւ Տեառն անարատ վարուք վարժեալ քննէր զամենայն տառս Հոգեղէն/րդ/ /Գո/րանդխառյ սուրբ Թագուհոյն եւ վասն Մարեմայ նոցուն զարմին, զի շնորհեսցէ զնոսա Աստուած եկեղեցւոյ իւրոյ ընդ երկայն աւուրս խաղաղական ամեաւք առ///[1]։

## 122

## ԲԺՇԿԱՐԱՆ

Երուսաղեմ 370, Պահպանակ, Հովսեփյան, Ցիշատակարանք, էջ 672

Վասն /// մաց եւ պատմէ գիրք այս զպատճառ բնութեան իրաց, որ ոչ է յայտնի մարդոյ որ կոչէր էն տաճ/կ/երէն խասիաթ, զոր հրամայեաց Գագիկ Շահնշահն թարքիմանել ի Տաճիկ լեզուէն ի Հայ լեզու[2]։

## 123

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ, 1924, Պողարյան, Ցուցակ, Զ, էջ 400,
Հովսեփյան, Ցիշատակարանք, էջ 245

Գրիչ՝ Ստեփանոս

Վայր՝ Շուխր խանդառեա վանք

ա

Զարտափայլեալ ճառագայթ գերապայծառ եւ անհաս իմաստութեան անեղին հրաշատեսակ մասամբ, եղանակացս տարբերութեամբ իմացեալ տեսանեմք ի ձեռն սուրբ առաքելոցն։

Աղ եղեն անհամելոց ի ձեռն տէրունե[ա]ն բանին։

Դուք էք աղ պնդեալ ի նեխութենէ մեղաց զվերս իւրաքանչիւրոց։

Լոյսք եղեն աշխարհի, լուսաւորել զոգիս ամենեցուն։ Աշտանակ եղեն կանգնեալք, ունելով զանշիջանելի ճրագն։ Անուանեցան եւ սիւնք, եղեալք ի վերայ անդրդուելի խարս[խ]ի, կանգնել զանեղաշէն խորանըն յորում ինքն բնակէ աստուածութիւնն։ Վէմք եղեն անշարժելի ըստ բանին Տեառն, զի ասէ միում ի նոցանէ, թե Դու ես վեմ եւ որ ի կարգին։ Կոչնականք եղեն ի փրկչէն՝ հրաւիրելով զամենեսին յանմահ փեսային հարսնարանն, ուր ոչ դոյր արգել։

---

[1] Գագիկ Շահանշահի Ավետարանի հիշատակարանի թերթերից մեկն է, վերածված պահպանակի։ Կտրված թերթերի վրայից, որը համարեցված է եղել փոքրադիր ձեռագրի, այսքանն է պահպանվել (Ցիշատակարանք, էջ 1044 ... ոչրացնելիք»)։

[2] «Այս վկայությամբ պարզվում է, որ Գագիկ Կարսեցին է Բժշկարանի թարգմանել տվողը... Այս Բժշկարանի սկզբնական օրինակի հնությունը մինչև ԺԱ դար է հասնում» (Ցիշատակարանք, էջ 672)։

Իսկ դուք, ով սուրբ աւետարանիչք, գերագոյն գտայք ամենեցուն, քանզի քառաՀոս վտակ ծաւալմամբ, յոռոգումն պարարման բանաւոր բարունակաց զմա[յ]լեցուցէք ձեռնասուն եւ վիճակել նաՀանգինւ

Զանճառ բանին զլուրն, զոր լուայք, եթե Ի սկզբանէ էր բանն, եւ բանն էր առ Աստուած, եւ Աստուած էր բանն, նա էր ի սկզբանէ առ Աստուածւ

Եւ քաղցրուսոյց վարդապետութեամբն զամենեսեան ղարձուցին յաստուածագիտութիւն[1]ւ

Բ

Ի ՇԺԳ (1064) թուականութեանն Հայոց դրեցաւ ցանկալի եւ սուրբ Աւետարանս, Հայրապետութեանն տեառն Գրիգորիսի, եւ յինքնակալութեան Յուհա<ն>ց թագաւորին Տուկծի, ի վանքս կոչեցեալ Շուխր խանղառեա, ընդ Հովանեաւ Սուրբ Սիովնի, յառաջնորդութեան Հաւր Թումասու:

Արդ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք եւ լուսաւորիք ի սուրբ Աւետարանէս, ղյոյգնամեղ ղաշխատաւորս զՍաեփաննոս զգրողս և գծաւղս իմ յիշատակի արժանի արարէք, եւ Աստուած ձեզ ողորմեսցի յիւրում գալստեանն, ամէնւ

Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէնւ

Գ

Ստացողք՝ Յակոբ եւ եղբայրf

Յանուն Հաւր և Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն, մեք եղբարք միախորՀք եւ միակրաւնք, Հարազատք կրաւնաւորք, որոց անուանք՝ Յակովբ եւ Բանեռեգէս եւ Կիպրիանոս ճանաճի, որ եմք սպասաւորք եւ ծառայք Սուրբ Յակովբայ, որ եմք ընդ իշխանութեամբ Սանոսեղի որդւոյ Թոփիլծի մեծանուն պատրկի եւ աստուածասէր եւ բարեպաշտ տիկնոջն Սկիր [Մ]անոսելի, որ ստացաք զսուրբ ղԱւետարանս ի մեր յարդար վաստակոց յաստուածաձիր ընչից, ի բարեխաւսութիւն Հոգւոց մերոց եւ մեր ծնողացնւ

Դ

Ընթերցող՝

Կարծեմ գրագիրն որ գրեց ղԱւետարանս, ինքն ոչ է Հանել ղայս պատկերնիս. եւ այս ստոյգ յերեւի, որ չեն սոքա շատ աղուորք»[2]ւ

[1] Ն. Պողարյանը մինչև այստեղ չի բերելւ

[2] Գրված է չորս ավետարանիչների Համատեղ նկարի ստորին լուսանցքում, գրիչին ճանաչող մեկի կողմիցւ

Հետագա ստացողի Հիշատակարանը, թվական չունի և գրված է «յոյժ անՀարթ գրովւ»

«Եւ Կուղանին ղստերն յիշեցէք, որ Աստուած փրկէ զինք իւր գլխոքն, եւ իւր տղայոք, յաստնվորիս ի չարէն եւ ի յաւիտէնից գեՀեննէն, ղերդ փրկեց ղԱւետարանս ի մանիքեցեն եւ ի Թոբքերոյն. Աստուած կրկնակի զիրենք փրկէ ամէնաւ Ձեռագրի մասին Գ. Հովսեփյանը գրում է.

«Աւետարանը նկարազարդ է և կարևոր՝ մանրանկարչության Հայաստանից դեպի Կիլիկիա

## 124

ՇԺԵ 1066

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 311*

Գրիչ՝ Գրիգոր Ակռնեցի

Վայր՝ Սեբաստիա

282ա ՇԺԵ (1066) Թուոյս Հայոց շրջագայիւ։

Ես Գրիգոր քահանայ ի նուազել ազգիս Հայոց, ի ժամանակի հալածանաց մերոց յազգէն Իսմայելի, սահեալք ի կողմանց արևելից, ի լերանցն Այրարատ, ի գեղջէն որ կոչի Արկուռի, զկնի աստուածասէր թագաւորին մերոյ Սենեքերիմայ, եկեալ բնակեցաք ի քաղաքիս Սեբաստիա, ուր քառասուն վկայքն հեղին զարիւն իւրեանց, մարտ եդեալ ընդ աւդոյ դառնաշունչ եւ ընդ սառ[ն]ամանեաց ջրոյ։ Եւ անդէն զկնի ամաց հնգից վախճանէր բամզաշնորհ եւ մեծապատիւ հայրն իմ Անանիա քահանա, ի թագաւորական քաղաքին ի Բիւզանդիոն, զս///[1] եւ մնացեալ եղաք երկու եղբարքս Գէորգ եւ Գրիգոր: Ի մանգական տիս աշակերտեցաք առ ոտս երանելի տեառն Փիլիպպոսի եւ որդւոց իւրոց Ստեփաննոսի եւ Սահակա, եւ ըստ սովորական բարեմտութեան իւրեանց, եղեն սնուցիչք եւ ուսուցիչք մեր, յոյժ բարերար կամաւք։

83բ [Ար]դ ես Գ[րիգորս] սիրեցի եւ քննող եղե [ա]րուեստի գ[րչութե]անս, ցանգացա եւ ուսանել զգործ ոսկւոյ ի զարդ պատուիրանաց Տեառն, եւ ի կազմած նորին, եւ ի վերայ այսր ամենայնի եր[աղէի՞] զայնոսիկ, որք տեսին զՏէրն եւ վայելեցին յամենասուրբ բերանոյ վարդապետութեան նորա, եւ զերանութիւնսն զոր առ Պետրոս վասն խոստովանելոյ զնա Տէր եւ Աստուած հա[մա]ւրե[ն] ի վերայ իմ եւ ամենայն հաւատացելոց։ [Ի ս]էր բազում տենչմամբ համարէի զիս անկեալ առ ոտսն Տեառն, լսելով զերանական զձայնն ի բերանոյ նորա, եւ առ տենչ փափագանաց եւ [աղ]եստի սրտի թախանձեցի ղտերն իմ Սահակ բերել զտուփ կազմածոյս ի թագաւորական քաղաքէն եւ դրեցի զսուրբ Աւետարանս իմով ձեռօք ի վայելում մանկանց[2] յիշատակ ինձ, փոխանակ արդեանց եւ ժառանգութեան, եւ ետու զսա զկնի փոխելոյ իմոյ որդւոյ եղբաւր իմոյ Յոհաննիսի:

---

անցնելու լուսաբանության համար»։ Խանդալի (1041 թ.) Մատենադարանի № 3784 (1057 թ.) և № 974 (ԺԱ դար) ձեռագրերի նկարչությունը «շատ մեծ աղերս ունին իրար հետ, գրեթե նույնության աստիճանի»։

Գրչության վայրը նույնացնում է Քեսնո Շուխր անապատի հետ։ «Այդտեղ են հանգստացել Գրիգորիս (Վահրամ) վկայասերը, Բարսեղ կաթողիկոս, այդտեղ են ուսել Գ. Պահլավունին և եղբայրը՝ Ներսես Շնորհալին։ Այդտեղից էր նաև Թեոդորոս նկարիչ Քեսունցին, որ նկարազարդել է Եգիպտոսում կոպտական Շենուտի վանքը, ԺԱ դարի ութսունական թվականներին» (Յիշատակարանք, էջ 248)։

[1] Երկու բառ չի կարդացվում։

[2] Ընդգծված բառերը գրված են մաշված բառերի վրա՝ հետագայում։

Արդ աղաչեմ զքեզ Քրիստոս փրկիչ, բարերար, անճառաբար ի Հաւրէ ծնեալ, անժամանակ եւ անմարմնապէս, եւ անքննաբար ի կուսէն ժամանակաւ առ ///։

125

ՇԺԶ 1067

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10099

Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 249—251

Յանուն Աստուծոյ, մեք տանուտէրքս Մայրաձորոյս, որ եկաք ի վանքս սուրբ [Կանչնուտ] վասն Լազնուտիս դիմոսին և մեր վիճոյս, որ յամեն տարի լինի. բերել տուաք Դաւթի Հաւրն զխաչն և զԱւետարանն, դրաք ի մեր /// ես Հոգով և Աստուծով զԾղրղուտն ի Լանզնուտէն կըտրեցաք, որք ի չորս դիմոսին վերայ դրաք և պատուեցուցաք մեր Հոգով և Աստուծով և այս սուրբ Աւետարանաւս[1], Անկղվարտոց ճոթն, որ ի Լազնուտն է յԾղրղուտէն փոխրէն տուն. երբ սիտենայ իւր Ջաղրցուեղն իւր է, որ յայս չորք դիմոսէս զայտ իրքդ այդ յիշէ. Աստուած զինքնողի Հողոյ ոռճկէ ոչ յիւր բարոյն, թէ Լազնուտն այլ յիշէ, դաւել դիմոսին չարն ի դուրս տաւ։

Ես՝ Դաւիթ, իմ վանացս եղբարքս վկայ եմք այս գրոյսւ Ի թուականիս ՇԺԶ (1067)։

Հաստատուն է թէ Աստուած կամի[2]։

126

ՇԺԷ 1068

ԱՒԵՏԱՐԱՆ

Տեր-Մովսիսյան, Համահավաք ցուցակ, Աւետարանք, էջ 61

Փառք Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։

Ի թուականիս Հայոց ՇԺԷ (1068) գրեցաւ լուսազարդ... աւետեաց Աւետարանս...[3].

---

[1] «Աւետարանաւսս»-ի փոխարեն պետք է կարդալ «Աւետարանաւս», «ս»-ն միանալով հաջորդ՝ «Անկղվարտոց» բառին դառնում է «Սանկղվարտոց», որն աղավաղված Սանդղկավանքի անունն է, որտեղ նորոգվել և նկարազարդվել է սույն Աւետարանը, և ուր գտնվում էր հայոց Դավիթն այդ ժամանակ։ «Սանկղվարտոց ճոթն» գուցե՝ «Սանդղկա արտոց ճոթն» կարդալ։

[2] «Յիշատակարանս հետաքրքրական է իբրև ժողովրդական լեզվով գրված մի փաստաթուղթ այդքան վաղ ժամանակից» (Յիշատակարանք, էջ 251)։

[3] Աւետարանը մագաղաթյա է, երկաթագիր, ավետարանիչների պատկերներով։ Վերջին երեսում Հայոց ՇԽԹ (1100) թվականից այլ ձեռքով գրված հիշատակարան կա. գրված «Ի թագաւորութեան Յունաց Այնգաիճ, յորժամ Պարս(ս) թագաւորեալ էր ի վերայ Հայոց»։ Հիշվել են նաև «Աթանաս, Բարսեղ կրոնաւոր և Սեղեւկեա» անունները։

## 127

ՇԺԸ 1069

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10434

Ստացող՝ Անանիա Վարագացի

Գրիչ՝ Յովհանէս

Վայր՝ [Նարեկայ վանք]

ա

286բ Ի ՇԺԸ (1069) թուաբերութեանս Հայւոց, ես Անանիա Վարագացի
նուաստ ի կրաւնաւորս եւ տրուպ և կրտսեր ի գիտնաւորս, ցանկացաւղ
եղէ սրբոյ Աւետարանիս, եւ մեծաւ փափագանաւք եւ սրտաչան յաւ-
ժարութեամբ իմով, զոր ունէի յոգւոյ իմում ի բաղում ամաց զցան-
կութիւն սորին, եւ զմեծ անձուկ սէրն որ ի Հայր եւ յՈրդի եւ ի Հոգին
սուրբ, ըստ իմում կարի քրիստոսասէր գոլով ետու գրել զսուրբ Աւե-
տարանս Յովհանէսի գրչի, եւ ստացայ զսա իմոց արդար եւ [իր]աւա-
ցի արդեանց, զոր ի վեր համարիմ, քան զամենայն աշխարհս եւ զփառս,
եւ զմեծութիւն սորա, եւ հանապազ ուրախանամ և փարթ[ամ]անամ
անթափելի ճոխութեամբ ի սորին աստուածային եւ անհամեմատ
լիութենէս։ Մանաւանդ վասն ստ[ուգու]թեան սորին եւ ընտրութեան
բանի եւ հ[ր]ամանի, եւ տնահատի, եւ ամենայն արուեստի, որ էր
287ա վկայեալ աւրինակն յամենայն գիտնականաց Հայւոց, || զոր ասէին
յաւանդութենէ գրեալ է ձեռամբ սրբոյն Մասարովբայ վարդապետի եւ
թարգմանչի։

Եւ իմ այսմ ամենայնի հասու եղեալ, եւ տեղակացեալ վասն լա-
ւութեան սորա, զոր ոչ արժէ աշխարհ զփոքրիկս զայս, որ է մեծ եւ պատուական ի սրտի իմում եւ ամենայն գիտնականաց, որք ճանաչեն զզաւրութիւն սորա։ Եւ ես զամ մի ողջոյն աշխատասէր վաստակաւք իմով, անձամբ եւ ծախիւք շատ ջանացեալ մինչ ի կատարումն գրչութեան սորա, զոր ստացայ ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ եւ յուրախութիւն ընթերցաւղաց, յիշատակ ինձ եւ ծնաւղաց իմոց եւ եղբարց, կենդանեաց եւ ննջեցելոց։

Արդ աղաչեմք զամենեսեան որք ընթեռնուք եւ լուսաւորիք, զիս Անանիա յիշելոյ արժանի համարիք։

Ընդ նմին եւ ես աղաչեմ, անպիտան գրիչս, յիշել զիս և զծնաւղսն իմ եւ Աստուած ամենեցուն ողորմեսցի, ամէն[1]։

բ

1բ Անանիայի է սուրբ Աւետարանս. Աստուած վայելել տացէ ի կամս իւր, ամէն[2]։

---

[1] Ինչպես վկայում է հիշատակարանը, այս ձեռագիրը ընդօրինակվել է ավանդությամբ Մեսրոպ Մաշտոցի ձեռքով գրված համարված օրինակից։ Մաշտոցի մասին մեզ հայտնի այդ կարգի միակ վկայությունն է։ Ձեռագիրն ունի կարևոր նշանակություն բնագրական, հնագրագիտական և ձեռագրագիտական տեսակետից։

[2] Գրված է համաբարբառներից, խորաններից առաջ նկարված, գունավոր հավասարաթև

Կ

287բ *Ես՝ Անանէ, որ տամ առնել Ե (5) աւր ժամ Յոհանէսի Հայրն Յակովբայ*[1]:

## 128

*ՇԻԲ* *1073*

### ԱՒԵՏԱՐԱՆ

*«Բազմավէպ», 1962 թ., էջ 165—166*

*Փառք սկզբանն եւ անսկզբանն եւ որ ընդ անսկզբանն, եռակի եւ եղական Սրբոյ Երրորդութեան, որ շնորհեաց կարողութիւն Դաւթի նուաստագունի, կատարել դգլուխ աւետարանչի Յովհաննու, սիրեցեալ աշակերտի փարելոյ ղպարանոցաւն տէրունական, հրամանաւ պայծառ և պանծալի և բարեպաշտ պատրիկի Բախտիար անուն կոչեցելոյ, որ մեծաւ ըղձիւք, յայսակնեալ ի ղաւրութիւն աւետաւոր եւ բարձրաձայն բարբառոյ քարոզութեան աւետեացս ընդհանուր տիեզերաց։ Զոր քաջաջան յաւժարութեամբ մտաց մեծաշնորհ եւ մաքուր աղախնոյ Քրիստոսի, պատուական մաւր իւրոյ պատուէր տուեալ էր, ղի հանապազ պահեսցէ ի դրպան զգեստու լուսազարդ զաւակի իւրոյ, առ ի հանգստութիւն սրտի նորա եւ ի պահպանութիւն կարեւոր կենաց նորին, ղի անսայթաք մնասցէ ի խաբից բանսարկուին։*

*Գրեցաւ թուականութեանս Հայոց հնգից հարիւրից եւ ի տասանց երկուց երկու թուով աւելի (1073)*[2]։

## 129

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾՈՑ ԱՌԱՔԵԼՈՑ ՅՈՎՀԱՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ԵՒ ԵՓՐԵՄԻ ԱՍՈՐԻՈՑ

*Երևան 1315 (ԺԴ դ.)*

*Հեղինակ՝* Գրիգոր Վկայասէր

Աղերս նորոգ<ող> ստացողի եւ աշխատասիրաբար նորոգողի[3]

452ա *Յամի վեց հազարերորդի հինգհարիւրերորդի առաջներորդի արարա-*

*խաչի ստորին թևի շուրջը, կապույտ խորքի վրա, բաց կապույտ ներկով։ Խաչին հետևում են տաս խորաններ՝ նկարված հինդ հաջորդ թերթերի զույգ երեսներում։ Սկզբից բացակայում է Եվսեբիոսի նամակը պարունակող թերթը։ Ավետարանները սկսվում են գեղեցիկ գլխազարդերով և զարդագրերով։ Ամենայն հավանականությամբ ծաղկողը նույն Հովհաննես գրիչն է։*

[1] *Գրված է Հովհաննես գրչի ձեռքով, ստացողի անունից։ Ձեռագրի մասին տես մեր «Նվիրական ձեռագիրը» հոդվածը («Գրական թերթ», 1973, հունիսի 15)։*

[2] *Վենետիկի Մխիթարյան Մատենադարանի ամենափոքրիկ Աւետարանն է 4×5,2 սմ մեծությամբ, որ Միաբանությունն ստացել է 1962 թ., ուրիշ տասնմեկ ձեռագրերի հետ միասին։*

*Այս նույն թվականին* Մկրտիչ *քահանան «ի* Փայտակարանի, *ի մեծ քաղաքին որ* Տփխիս *ասի, ընդ հովանեաւ կամակատար սուրբ Աստուածածնի և սուրբ Սարգսի... ի խնդրոյ* Ամիրի, *ի վայելումն որդւոյ նորա սարկաւագ* Եզեկիէլի» *ընդօրինակում է մի Ճառընտիր (Մատենադարան, Արխիվ. 17, թղթ. 228, թերթ 6ա)։*

[3] *Մատենադարանի № 2690 ձեռագրում (1418 թ.) այսպիսին է խորագիրը.* «Աղերս նորոգ ստացողի և աշխատասիրաբար նորոգողի բան Մեկնութեանն, յորմէ այս նամառոտեցաւ»:

ռածոց աշխարհի և ի հազարերորդի եւթանասներորդի եւթներորդի (1077) կենարարին մերո գալստեանն, և ըստ Խոսրովային թուոյ Հայկազանցս հինգհարիւրերորդի քաններորդի հինգերորդի (1076), ի թագաւորութեանն Միխայէլի Դուկի, և ի պատրիարգութեան Կոզմայի երկաբնակի, եւ Գրիգորիս, որդի Գրիգորի Պալհաւունոյ, ողորմութեամբ մեծին Աստուծոյ արժանացեալ աթոռոց հաւոյն իմոյ սրբոյն Գրիգորի, եւ ըստ յառաջատես տեսլեան սրբոյն Սահակայ, ի սաստկացեալ սրոյ Սկիւթացւոցն հալածանաւք հասի ի պայծառաշէն կայանս սրբոյն Կոստանդիանոսի և մեծաւ ըղձմամբ հայցեալ գտի զտենչալիս յոքունց, զգերահրաշ Մեկնութիւն Գործոց առաքելոցն մեծին Յովհաննու Ոսկեբերանի լուսաւոր և ոգեշահ վարդապետութեամբ։ Եւ հանդիպեալ հմտագոյն հռետորին Կիւրակոսի յունական և հայկական ուսմամբն պերճացեալ և առատաձեռն արգասեաւք, ետու թարգմանել զտենչալիս ոգւոյ իմոյ։ Եւ ընկալեալ սրտալիր ուրախութեամբ իբրև զտախտակսն նախամարգարէին, և մեծաւ տաժանմամբ հատեալ զհամատարածն Լիբիա և
152բ Ասիական ծոցոյն, // խնամաւք Հոգւոյն հասի ի ռաժինս Սեմայ, ի ստորոտս Տորոսի, ի հրեշտակաբնակ կայարան սրբոցն, և գտի անդ զհոգեշընորհ գիտնականն Կիրակոս, որդի իմ ըստ հոգւոյ և աշակերտ մեծ գիտնականին Գէորգեայ՝ փոխանորդին մերոյ։ Եւ սորա յաւժարական մտաւք աշխատութիւն զանձամբ առեալ ըստ առատատուր հոգւոյն պարգևացն, վերստին արծարծեալ զխորթացեալ բանս հռետորին, յեղանակելով ի դիւրալուրս և յարմարականս մերոյին աղինս։
53ա Արդ մաղթեմ զամենե//սեան, որք հանդիպիք այսմ հոգիաբուղխ պատգամիս, յիշել զիմ աղկաղութիւնս ի Տէր սրտի մտաւք, ընդ նմին և ղաշխատողս ի սմա, և գրել զփոքր յիշատակս ընդ սմին գրոց՝ յորժամ գրեսջիք, և մի պակասեցուցանել, զի և զձեզ դրեսցէ Տէր ի գիրն կենաց՝ յաշխարհին կենդանեաց, որ է, և եղիցի ալրհնեալ յաւիտեանս. ամէն։

## 130

ՇԻՋ 1077

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 275

Գրիչ՝ Յովհաննես

ա

268ա Ի հինգհարիւրորդի քսան եւ վ[եց] եր[որ]դի (1077) ամի թուաբերութեանս Հայւոց, ի թագաւորութեանն Յունաց Միխայլին, որդւոյ Տուկծին կայսեր Հոռո[մոց], ի կուրապաղատութեանն Մարեմայ բարեպաշտի եւ հզա[ւ]րի, մեր պատրոնի եւ տեառն որդւոյ, յամս սա-

տուածապատիւ եւ հոգեւոր տերանց մերոց Հայոց կաթողիկոսաց տեառն Գրիգորիսի եւ տեառն Գեորգայ, ես Սմբատ պատրիկ, որդի Վահրամայ ցանկացաւղ եղե աստուածային տառիս սրբոյ Աւետարանիս մեծաւ փափագանաւք եւ սրտի սիրով, յաւժարութեամբ ետու գրել Յովաննիսի գրչի յընաիր եւ ի ստոյգ աւրինակաց։

Ստացայ զսա յուրախութիւն հոգւոյ իմոյ, ի լուսաւորութիւն եւ ի փրկութիւն կենաց իմոց՝ յիշատակ ինձ եւ ծնաւղաց իմոց եւ եղբարցն, կենդանեաց եւ մեռելոց եւ ամենայն ազգի, [ըն]թերցումն եւ ի բերկրումն ուխ[տ]ի մանկ[անց] եկեղեցւո[յ], դանձ յաւիտենական երկինս և անկապուտ // խոր[հուր]դ[1]։
368բ

Արդ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք եւ լուսաւորիք եւ փարթամանայք անթափելի ճոխութեամբ յաստուածային կտակարանացս, յիշեսջիք զմեղ առաջի զենլոյն Քրիստոսի, թերեւս ողորմեսցի մեզ յահեղ եւ ի միւս անգամ գալստեանն իւրոյ, յորժամ բանք սպառին, եւ գործք թագաւորեն։

Ի սմին ամի արժանաւորեաց զիս մարդասէրն Աստուած առնուլ զձեւ եւ զկարգ կրաւնաւորութեան, դիմելով առ դուռն ողորմութեանն Աստուծոյ, զի եւ ինձ բայց ի դուռն կենաց մտին, առեալ զանուն որդեգրութեան հաւրն երկնաւորի, անու[ա]նեցայ Յովհաննէս ըստ վերակոչման հրաժարելոց իմոց ի ծփանաց կենցաղոյ, հասի անելի և ցանկալի ճանապարհիս, որում ի վաղընջուցն սպասեի։

Արդ, հայցեմ ամենեցուն սրբերամից լուսաղգեստից կրաւնաւորացդ, լինել ինձ աւժանդակ աղաւթիւք, զի եւ ինձ ողորմեսցի Քրիստոս իւրում սուրբ գալստեանն։

Բ

270ը Զստացող սուրբ Աւետարանիս զՍմբատ որդի Վահրամայ՝ քրիստոսասէր եւ բարեյաղթող պատրիկ՝ յիշեսջիք ի Տէր, եւ զծնաւղս իւր, եւ զեղբարս՝ զննջեցեալսն ի Քրիստոս, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած ի փառաւորեալ գալստեան իւրում[2]։

---

[1] Վերջին պարբերությունը ճիշտ չի վերծանված Յիշատակարանքում (էջ 255)։

[2] Ձեռագիրը և ա հիշատակարանը գրչագիր է, իսկ բ՝ երկաթագիր։ Աւետարաններն ունեն սկզբում կիսախորաններ և զարդագրեր։ Գ. Հովսեփյանը լրիվ չի կարդացել գրության թվականը և ելնելով Միխայիլ կայսեր գահակալության թվականից, ժամանակը մոտավոր նշել է 1071—1078 թթ. և կատարել է հետևյալ ծանոթագրությունը. «Յիշատակարանիս մեջ հիշված Մարեմը, կարծում ենք Կարսի վերջին թագավոր Գագիկ և Գորանդուխտ թագուհու դուստրն է։ Գագիկ Կարսեցին իր թագավորության փոխարեն ստացել էր Ծամնդավ բերդը՝ Ամասիա և Լարիսա քաղաքներով։ Նա մեռավ 1069 թ.։ Նրան պիտի հաջորդեր դուստր Մարեմը։ Բյուզանդացիներին հատուկ էր երբեմն արևելյան թագավորներին միայն կյուրապաղատ կոչել։ Սրա մեծ մայրը՝ Մարիամը... Գագիկ Ա-ի թոռը, Անիի Գագիկ Բ-ի հրաժարումից հետո՝ Անիի տեր համարվեց, կյուրապաղատի կոչմամբ, մինչև բյուզանդացիների կատարելապես տիրապետությունը, թեև նա Արխազների թագուհի էր։ Սմբատ պատրիկը, որդի Վահրամայ, պետք է նույնը լինի Գագիկ Բ-ի և Անիի պաշտպան Վահրամ Պահլավունու որդի Սմբատ Մագիստրոսի հետ՝ Բագնայրի շինողը» (Յիշատակարանք, էջ 254)։

## 131

ՇԻԷ 1078

### ԳԻՐՔ ԹՂԹՈՑ

*Ակինյան և Ոսկյան, Ցուցակ Զմմառի էջ 26 ։1298 թ.*

*Գրիչ՝* Վահրամ որդի Գրիգորի Մագիստրոսի

390 *Աւրինակ գրոցս որ լեալ էր տէր* Գրիգորիսի Վկայասիրին *մինչեւ ցայս վայր էր [Այս է* Յովհաննու *Իմաստասիրի Հայոց կաթողիկոսի սակս ժողովոց, որ եղեն ի* Հայք] *եւ նա այսպէս էր գրեալ.* զՎահրամ որդի Գրիգորոյ Մագիստրոսի *յիշեսջիք յաղաւթս ձեր, ով երջանիկ դասք ուղ(ղ)ափառաց խմբից, Աղքանաղեան սեռի ՇԻԷ (1078) թուական։*

## 132

### ԳԻՐՔ ԿՏԱԿԻ ՈՒՂՂԱՓԱՌՈՒԹԵԱՆ ՀԱՒՐ ՄԵՐՈՅ ՍՐԲՈՅՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՀԱՅՈՑ ԵՎ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ ԱՒՁՆԵՑՒՈՅ

*Երևան 699 (ԺԶ դ.)*

*Հեղինակ՝* Գրիգոր Վկայասէր

65ր *Այս Գիրք կտակի ուղղափառութեան հաւր մերոյ սրբոյն* Յովհաննու *կաթողիկոսի Հայոց և իմաստասիրի* Աւձնեցւոյ, *և ես* Գրիգորիս *նուաստ նորին հաւատոց որդի և աշակերտ, ձայնակից եմ այսըմ խոստովանութեան և աւանդման, և որ այլապէս դաւանեն քան զայսոսիկ և նորաձեւս առնեն...*[1]

## 133

ՇԻԸ 1079

### ՏԱՒՆԱԿԱՆ

*Երևան 7729 (1201—1202)*

*Թարգմանիչ՝* Զարռուանէլ Մամիկոնեան

ա

603ա *Ես՝* Զարռուանել Մամիկոնեան *որդի* Տանուաա *մեծի իշխան* Տարոնոյ *և ամենայն աշխարհիս Հայոց, տեսի զայս Գիրս սահմանաց, գրել*

---

[1] *«Այս տէր* Գրիգորիսի *կաթողիկոսի* Վկայասէրի *ձեռացն գրած էր ի մագաղաթեայ* յԱւձնեցւոյն *գիրքն, ըստ վերոյգրելոցդ, և զոր այլ ի հետ կացեալ էր տաւղուկէս քերած էր յետոյ ի հակառակորդաց, զի յանդիմանութիւն էր ստութեան իւրեանց»,—շարունակվում է բնագրում։ Մինչ այդ, կարդում ենք. «Զոր գտաք* յԱւձնեցւոյն *գիրքն, տէր* Գրիգորիսի *կաթողիկոսի* Վկայասիրի *ձեռացգիրն գըրած, զոր ինքնին տէր* Գրիգորիսի *էր գրեալ ի մագաղաթեայ գիրք* Աւձնեցոյն, *որպէս սասացաք առ ի վկայութիւն ճշմարտութեան զայս»։ Այնուհետև ինչպես վերևում։*

*հեղեն և յոյն գրով ի* Լուսաւորչէն *մերմէ Սրբոյն* Գրիգորէ Պարթևէ *և թարգմանեցի ի հայ գիրս, և հաստատեցի, զի մնացական հայրենիս լիցի* Սուրբ Առաքելոցն: *Եւ յինէն յավելեալ իհայրենիս, [ն]որա [տ]վի ծննդեան գեղն* գՐե[ր]դակ *[զ]կայսրո[վ]ն և իր ամենայն սահմա-նովն այգեստանաւք և բուրաստանաւք։*

**Բ**

*Գրիչ՝* Թադեոս

*Ի թիւ Հայոց ՇԻԸ (1079)։ Եւ զեղկելի գրիչ յիշէ տէր* Թադէոս; *Աստուած ողորմի ինձ և նորա*[1]։

**134**

*ՇԻԹ* *1080*

*ԱՐԻՍՏԱԿԷՍԻ ԼԱՍՏԻՎԵՐՑԻՈՑ*
*ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՍՆ ԱՆՑԻՑՆ ԱՆՑԵԼՈՑ*
*Երևան 2865 (ԺԳ դ.)*

*Հեղինակ՝* Արիստակէս Լաստիվերցի

(Բան յիշատակարանի նոյն գրոց)

309ր *Կարևոր համարեցայ առ՚՚ սիրելի եղբարս մեր գրով յիշեցուցանել վասն գիտութեան ծանուցելոց իրաց, որպէս սկիզբն եղև բանիցս ճա-ռել զԱստուծոյ նախագիտութիւնն, զանքանութիւն՝ սակաւ բանիւք, թէ որպէս արագաքայլ և աշխարհահայեաց, գեղեցիկ և լուսաւոր տարրն՝ զի մինչդեռ էր կատարելապէս լուսով, և զմիջակն ունէր ճանապարհի ընթացս, արագընթաց շարժմամբն ընդ ճանապարհն ճեպէր ի կիսա-գունդն անստուեր, զերկիր ընդ ինքեանմբ ունելով, բազմաժամանա-կեայ մեղաց նիւթեալ լայնատարած պատմուճան, արկեալ զնա ինքեան։*

---

[1] *«Ճշմարիտն այս է, որ թարգմ/ան/եցաք առ///ինս սուտանուն Գրիգորս և առաջինս ի մեղաւորս և յետինս ի ծնունդս սուրբ աւազանին, տունկ Գոմորայ և այգիս Սոդոմայ՝* Աբրա-համ *գրիչս, որ աղաչեցաք. զմեր հոգև[որ] եղբարս մեր* զՌաւդուղէմէոս *փրկիսոյփայն ///ինս և մեք գրեցաք վասն անաշխատ լինելու մանդանց եկեղեցոյ։*

*Արդ աղաչեմք զամենեսեան ղդասք լուսերամից, որք հանդիպիք այս սուրբ Տա[ւ]նա-կանիս, յիշեցէք զմեղ միով Տէր ողորմայիւ...»։ Մշո Տոնականի վերջին թերթի վրա շղագրով գրված է սույն Սահմանաց գիրը, հավանաբար ԺԳ դարում։ ԺԴ դարում, այն կրկին արտա-գրել են նույն էջի երկրորդ (ստորին) կեսի վրա և ավելացրել նշված՝ 1079 թվականը։ Նույն գրությամբ և կարմիր թանաքով առաջին և երկրորդ գրությունների միջտեղում գրված է վերը բերված հիշատակագրությունը, որից մի քանի բառ անընթեռնելի է։ Սահմանագրի երկ-րորդ օրինակը՝ կրկնագրված է, որովհետև թանաքը շուտ է թափվել։*

*Նույն բնագիրը նոտրգրով ընդօրինակվել է մյուս էջում, «ի թուականիս Հայոց ՌՅԳ (1854)» Հովհաննես աբեղայի և Պոնտացի Պողոսի ջանքերով, որոնք «ՇԻԸ» թվականը դարձ-րել են «ՇԻԲ» (1073), այսինքն «հինգ հարիւր քսան և երկու յամի»։*

*1867 թ. դեկտեմբերի 12-ին, վերջին օրինակից, ամբողջ Սահմանագիրը ընդօրինակել և Կ. Պոլիս է տարել Մամբրէ վարդապետ Մամիկոնյանը։*

Եւ այնպէս թանձր պարուրեալ շուրջ զնովաւ, որ զանհնարին փայ-
լումն ճառագայթիցն արգել. և որ ոչ է ական համարձակ տեսանելի՝
նուաղտագոյն քան զաստեղս երևալ, միայն բոլորակն երևէր։ Որ ցուցանէր
ինքեամբ աւրինակաւ՝ զանստուեր և լուսաւոր կարգս եկեղեցւոյ խա-
ւարաւ փակեալ. և զպայծառութիւն ողւոց և զճառագայթս ճանապարհի
առաքինութեան, անտեսանելի և աղջամղջին եղեալ։ Զի այնմ հետէ՝ զոր
յառաջագոյն ասացի, յորում էր թուականն Հայոց ՆՁԲ (1033), մինչև
ցայժմ՝ ուխտ սրբութեան և կարգ եկեղեցւոյ քայքայեալ ապականե-
ցան։ Եւ ոչ համբաւ խաղաղութեան կամ աւետիս բարեաց լուաք, և
ոչ մի արձան յաղթութեան կանգնեցաւ՝ ոչ թագաւորաց և ոչ իշխա-
նաց։ Եւ ոչ այգ միայն, նաև ոչ մարթացին կրօնաւորք զգիմի հարկա-
նել պատերազմասէր գիւին. այլ տկարացեալ և անզաւր եղեալ, ան-
ժուժկալ և կամակոր՝ ընդ ձեռամբ թնամեացն անկեալ, խռովութեամբ
310ա և բարկութեամբ լի և պատարուն եղև երկ‖իրս Զի ոտն առ ոտին եղև
ճշմարիտ մարգարէութիւն խաւարման նորա. զի յայնմ հետէ յարձա-
կեցան թշնամիք ի վերայ մեր, և զգեցուցին մեզ հանդերձ սգոյ և
աբտմութեան, և բարձաւ ուրախութիւն յաշխարհէ։

Արդ, իբրև այնպիսի աղէտք տարակուսանաց և աշխարհահեծ եր-
կունք տարածեցաւ ի վերայ ամենայն երկրի, և ել հուր հարաւային
և եկէզ զամուրս բարձունս, և զաշտարակս անմատոյցս իբրև զմոմ
հալեալ սպառեաց, պակասեալ նուաղեցան թագաւորք և իշխանք, և
յոյս ակնկալութեան ապաստանի բարձաւ ի մէնջ։ Այլ տարածեցաւ
առհասարակ ի վերայ մեր բարկութիւն սրտմտութեան Տեառն. զի քա-
կեցան տունք աղաւթից, և աւծեալ իւղով սրբութեան քարինք՝ հիմն
ապարանից այլազգեաց արկան. և պաշտամն սրբութեան բարձաւ ի
միջոյ, և եղաք յայպն և ի նախատ հեթանոսաց. և մաշեցաք և կորա-
ցաք. և յերկիր կցեցան մեջք մեր. և եղաք իբրև զոսկերս ցամաքեալս,
յորում ոչ գոյր յոյս շնչոյ կամ կենդանութեան. և յանցանք հարցն
մերոց ի մեզ լցեալ կատարեցաւ, խնդրել ի մէնջ զպարտիս վրիժուց
նախնեացն մերոց։ Եօթնապատիկ հատուցումն ի ծոց մեր ընկալաք.
վասն ղի անուն քրիստոնէութեան ի նախատինք և յայպն կատակա-
նաց համարեալ լինէր։

Զի իրաւունք և դատաստան բարձաւ ի մէնջ, և արտասուաց և հա-
ռաչանաց մերոց տեղի ոչ գոյր. ղի բարեպաշտութիւն նոցայ յայն էր՝
զրկելն և կողոպտելն և սպանանելն զմեզ։ Զար նոցա թուէր հարկա-
ւոր դգեստն, որ վխայտառակութիւնս մեր ծածկէր, այլ յորժամ տե-
110բ սանէին զմ‖եզ մերկս և ծանակս՝ այնու առաւել ուրախանային. զի ի
բազում վշտացն՝ որ պատահէր մեզ, երիթացեալս և խռուացեալս իբրև
ստուեր շրջէաք ի վերայ երկրի դողալով և զարհուրելով. կերակուր
մեր անզաւր, և ըմպելի դառն յերկիւղէ և ի սպառնալեաց տերանց մե-
րոց. վասն զի ոչ համարէին թէ գոյ մեր Աստուած յերկինս, և կամ
աղաւթք մեր և պաղատանք առ նա հասցեն։ Զի կամեցաւ Տէր այն-
պիսի խոշտանկանաւք լլկել զմեզ, և հալածել և չարչարել, և զամենայն
հասակ արկանել ընդ տանջանաւք. արտաքսել և մերժել զմեզ յերեսաց

իւրոց, որպէս պատժապարտս և յանցաւորս. ցրուել և հեռացուցանել
զմեզ ընդ ազգս ատարս, զի Թնրևս կա․եսցէ զսաամբակ և զանհնա-
զանդ միտս մեր և զխստերախ, արկանել զմեզ ի ներքոյ խրատու գա-
ւազանին իւրոյ իբրև զԻսրայէղ յաւուրսն Եղիայի, և զՍամարիա յա-
ւուրսն Եղիսէի։ Վասն զի դոյր առ նոսա մասն յուսոյ, զԹագաւորացն և
և զիշխանացան վնրակացուիմն, և որ քան զամնայն վերագոյն՝
զշնորհալից և զուրախարար բան մարգարէիցն, որ այսու զաւրանային՝
և ընդդէմ կարէին կալ նեղութեան փորձութեանցն, զոր ընդունեէին ի
Տեառնէ։
Իսկ մերս ծանրագոյն և առաւելագոյն է քան զամենեսան, անԹա-
գաւոր և անիշխան. անտերունչ և անվնրակացու՝ ըստ հոգւոյ և ըստ
մարմնոյ, և ոչ գոյ մի տեղի ապաստանի գտանել մեզ. այլ նուաղեալ
և հնազանդեալ նմք ի ներքոյ Թագաւորութեան հեԹանոսաց կալ, և
զաստիկ հարուած գաւազանի նոցա աւրըստաւրէ ընդունել. զի որով
ոչ ծառայեցաք Տեառն՝ ծառայեսցուք այլազգեաց, և որով քամահե-
311ա ցաք զերկ‖եւղ Տեառն, երկիւղիւ սոցա տագնապեսցուք աւրըստաւրէ.
և վասն զի զպաշտաւն Տեառն պղերգութեամբ մատուցաք, պաշտես-
ցուք և սպասաւորեսցուք սոցա ի տուէ և ի գիշերի։ Զի ոչ եԹէ ըստ
յանցանաց մերոց խրատեաց զմեզ, այլ գԹութեամբ և ողորմութեամբ
արկ զմեզ ի բովս խրատու յաղագս զգաստացուցանելոյ և պիտանիս
առնելոյ զմեզ։
Զի եԹէ դիցես զմեղս մեր ի կշիռս, ծանրագոյն է քան զխրաա
մեր՝ զոր ընկալաք ի քէն, և ԹեԹևագոյն պատուհաս քո քան կպարտիս
մեր. զամենայն զբաւսանս տանջանաց արկ ի վերայ մեր, այլ յերև-
սաց քոց մի զմեզ մերժեր, Տէր. և զամենայն ալիս փորձութեան յարո
ի վերայ մեր, այլ ի սիրոյ քո մի մերժեսցես զմեզ, Տէր։ Լաւ է ան-
կանել ի ձեռս քո և ընդունել ի քէն խրատ և պատուհաս, քան Թէ ի
բաց կալ ի քէն անխրատաբար։ Լաւ է մերձենալ առ ի քեզ չարչարա-
նաւք և նեղութեամբ, քան Թէ հեռանալ ի քէն և կեալ անդորրութեամբ և
դիւրութեամբ։ Շատ է մեզ այս՝ զի անուն սուրբ քո կոչեցեալ է ի վե-
րայ մեր, համարելով զմեզ քեզ ի ժառանգութիւն, ստանալ զմեզ քեզ
ժողովուրդ նորոյ ուխտիս պատուական արեամբ։
Արդ մի Թողուր զմեզ ի ձեռանէ քումմէ վասն արարչական կամաց
քոց, զի մի ի սպառ չարչարիցիմք ի հեԹանոսաց յատելեաց քոց. զի
այս ամենայն և առաւելագոյն քան զգիր մատենիս եկն ի վերայ մեր
վասն մեղաց մերոց։
Եւ արդ, շատ համարեցաք զամենայն ծիանս ալեկոծութեան գրել,
որ եղև յաւուրս մեր. և մասնաւորս բաժանել, որ ինչ հանդիպիւր յանց-
նիւր տեղեաց, աշխարհաց և քաղաքաց, զոր ինչ կրեցաք ի հեԹանոսաց։
Զի ոչ մի աւր, կամ միոյ ժամանակի հանդիպեցաք անդորրութեան կամ
311բ դիւրութեան, այլ ամենայն‖ժամանակ աւուրց մերոց լի եղև խռովու-
Թեամբ և նեղութեամբ, և աւրըստաւրէ յաւելոյր եւ ի չարչարանսն և ի
տառապանսն։ Եւ ոչ ոք ի նոցանէ բարեմիտ եղև առ մեզ, Թէպէտ և
բազում ամաւք բնակեցան առ մեզ. ոչ արգելաւ սրտմտութիւն նոցա

որպէս իժի, և ոչ եղև յագումն սղահութեան նոցա իբրև հրոյ. զի ամենայն խորհուրդք նոցա որ վասն մեր, ի չարութեան են, և բանք նոցա լի ննենգութեամբ։ Վասն զի ամենայն առաւաւաու նորագոյն սկիզբն չարեաց առնէին. զի այն էր խորհուրդ նոցա ամենեցուն՝ մաշել և սպառել զմեզ իբրև զհնացեալ ձորձս, և բառնալ զյիշատակս մեր ի միջոյ իւրեանց, զի բնաւ մի հայեսցին և տեսցեն զմեզ կենդանիս. այլ եղիցին զնրեզմանք մեր անհետ ի ներքոյ ոտից նոցա։

Վասն այնորիկ կարաւտացաք հին ժամանակագրացն պատմութեան, զի ըստ պատշաճի և յարմարական բանիւք իւրեանց դրոշմեսցեն զայս գիր մատենի, զներկայից և զանցելոց զհանդիպումն անսխալապէս ի մի հաւաքելով որ ինչ եղեն, թողլով զկնի իւրեանց յիշատակս իրացն՝ որ եղեն, որպէս ցուցանէ առաջնոցն պատմագրութիւնն։ Իսկ որ աստ յայսմ մատենիս գրեցան՝ ոչ լիով, այլ միայն զսկիզբն իրացն որ եղև և անց ընդ մեզ, զի ոչ զկատարումն իրացն կարացաք բովանդակ զմտաւ ածել կամ գրել. բայց զայս ամենայն յաղագս այնորիկ եղաք, զի ընթերցջիք և զխտասջիք, եթէ մեղքն եղև այս ամենայնի պատճառ որ էանց ընդ մեզ։ Զի հայեցեաք ընդ մեզ՝ զարհուրեսջիք երկնչել յերեսաց Տեառն, և դողալ յահէ զաւրութեան նորա. կանխել յառաջագոյն խոստովանութեամբ և ապաշխարութեամբ՝ վաղ ժամանել քան զշարժել պատուհասին, և ընդդէմ կալ///[1]։

135

ՇԼԷ 1088

ՎԵՀԱՓԱՌԻ ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10780 (ԺԱ դ.)

Նորոգող՝ Սարգիս

79ա ՇԼԷ (1088) թվ[ականին]։

Ես յոգնամե[ղ ե]ւ [տա]ռապել քահանա Սարգիս նորոգեցի սուրբ զԱւետարանս ի բարեխաւսութիւն ինձ եւ որդւոյ իմոյ Վարդա, եւ մաւր նորին։ Որք լուսաւորիք ի սմանէ, յիշատակի արժանի համարեսջիք զմեզ[2]։

---

[1] Թերթ է պակաս։ Գրվել է մինչև 1080 թվականը։

[2] Ձեռագիրը Մատենադարանին է նվիրել Ամենայն Հայոց կաթողիկոս Վազգեն Ա, 1978 թ. մարտի 1-ին։ Առաջին ձեռագիրն է հնագույնների մեջ, որի տերունական նկարները տեղադրված են բնագրում, սյունակների մեջ, համապատասխան հատվածի տակ, և մեծ արժեք է ներկայացնում մանրանկարչական տեսակետից։

Գլխավոր հիշատակարանը չկա։ Մաթևոսի և Մարկոսի վերջում դրվից պահպանվել է միայն «Փառք ամենասուրբ Լրրորդութեանն յաւիտեանս, ամէն» (էջ 79ա, 128ա)։

Սարգսի ձեռքով մի հիշատակարան ևս կա Մարկոսի ավետարանի վերջում, որը դժբախտաբար 1401 թ. քերել են և պարսկերեն հիշատակարան գրել։

Տեր-Ավետիսյանի Ն. Ջուղայի ձեռագրաց ցուցակում (էջ 21) մի Աստուածաշնչի գաղափար օրինակի մասին ունենք հետևյալ տեղեկությունը. «Ի գրոյս թիվն, որ գրեալ էր ՇԼ (1081) ամին, զի եղծեալ եւ տրորեալ էր։ Տեսաք եւ գրեցաք աստ, եւ կազմեցի Ազարիայս, ի թվին ՌՃԻԴ (1675)»։

## 136

*ՇԽԱ* *1092*

### ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ԵԻԴՈՔՍԻԱՅ ՄԱՈՒՆՈՄՆ ԿՈՉԵՑԵԼՈՅ ԵՎ ՈՈՄԵԼԻ ԵՒ ՋԵՆՈՆԻ ԵՎ ՄԱԿԱՐԱՅ

*Երևան, 6196 (1227 թ.)*

*Վայր՝* Մելտենի

*239բ* *Թարգմանեցան պատմութիւնք սրբոց վկայիցն ի յոմարէն գրոց ի հայ բարբառ, ի մայրաքաղաքին Հայոց, որ կոչի* Մելտենի, *ի Թուականիս Հայոց հինգ հարիւր և քառասուն և մէկ (1092), ընդ որս և Քրիստոս բարեխաւսութեամբ տացէ վարձս բարեաց թարգմանչի և գրչի և ամենայն աշխատելոցս ի սմա բանիւ շարադրելոյ և գրչի գրելոյ, այն որ միշտ աւրհնեալ է յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

## 137

*ՇԽԴ* *1094*

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Տեր-Մովսիսյան, Համահավաք ցուցակ, Աւետարանք, էջ 64*

*Նվիրող՝* Թէոդորոս կաթողիկոս

*Շնորհիւ Աստուծոյ ես տէր* Թէոդորոս *Հայոց կաթողիկոս,ետու զսուրբ Աւետարանս հաւր* Դաւթի *եւ որդւոյ իւրոյ* Մարկոսի՝ *անմոռաց յիշատակել յաղաւթս իւրեանցն զիս և զծնողս իմ, որչափ եւ կենդանի իցեն։*

*Գրեցաք յիշատակարանս ի թուականիս ՇԽԴ (1094) յամսեանն ահեկի*[1]*։ Աստուած շնորհաւոր արասցէ հաւրն* Դաւթի *վայելել բազում ժամանակս խաղաղութեամբ։*

## 138

*ՇԽԴ* *1095*

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6332, Բաղրամյան, Ցուցակ № 205*

*Գրիչ՝* Մկրտիչ

*Վայր՝* Վայոծոր

ա

*Փառք ... գրեցաւ ... ի գաւառիս* Վայոծորոյ, *ի վանս Սուրբ* Մամասա, *ընդ հովանեաւ սուրբ վկայիս, ձեռամբ ...* Մկրտչի... *յիշեցէք... զհոգևոր սուրբ քահանայքս* զՆերսէս, *մականուն կոչեցեալ* Ըռաա, *եւ*

[1] *Ձեռագիրը գրված է եղել մինչև այդ թվականը։*

զՄեր՝ մականուն Սոս ... եւ վասն սոցա զՅովաննէս եւ զԳրիգոր ընդ նոսին ե զՏիարծէֆ քահանա և զամուսին իւր զՏիկին: Ընդ նոսին եւ զգնրառաջնորդս մեր զհոգեսէր Ամտիf, եւ զամուսինս զԱշախ... եւ զհոգեոր հայր մեր զՅակոբ եւ զամուսին իւր զԳոհար...

Բ

Ի թուականիս Հայոց ՇԽԴ (1095)։

139

ՆՇՄԽՍԻՈՍԻ ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ ՄԱՐԴՈՅ

Երուսաղեմ 1862 (1047 թ.) Պողարյան, Ցուցակ, Զ, էջ 257

Ստացող՝ Յովհաննէս

242ր Գրեսցէ Քրիստոս զանուն Քրիստափորի ի գիր կենացն դպրութեան, որ շնորհեաց ինձ՝ Յովհաննու քահանայի զգիրս զայս, յիշեցէք եւ դուք, որք ընթեռնուք՝ զպատուականն եւ զերանելին, վասնզի արժանի է յիշատակի բարւոյ եւ յԱստուծոյ, եւ ի սիրելեաց նորուն։

Ի ՇԽԴ (1095) թուականութեամբ համարոյ շրջանի ամաց կարգելոյ Հայ ազգի տոմարի ընդաւրինակեցան գիրքս։

140

ՇԽԷ 1098

ԿԱՆՈՆԱԳԻՐՔ

Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 259—264
Նոր-Ջուղա 542, Տեր Ավետիսյան, Ցուցակ, էջ 816—817

Գրիչ՝ Յովհաննէս

Վայր՝ Պաղյանու և Յովհանա անապատ

Ցորում ժամանակի հանդիպի թիւ թուականիս Հայկոց ՇԽԷ (1098), ի հայրապետութեան աստուածապատիւ տեառն Գրիգորիսի, ի զարմէ Սրբոյն Գրիգորի, ամենայնիւ հարցն նմանեալ բարեկարգութեամբ, եւ զի յոյժ խռովութեան եւ բազմավրդով էր ժամանակս ի բռնակալութենէ այլասեռից, զայլս ոմանս յիւրոց հարազատաց ձեռնադրէ փոխանակ իւր, եւ ինքն զանխլաբար պանդխտանայ աղաւթից եւ վերծանութեան պարապելով։

Էին սորա ուսումնակից եւ վարժակիցք վարդապետք սուրբք եւ առաքինազարդք Գէորգ Մեղրն կոչեցեալ, եւ Կիրակոս արք վարժք յաստուածայինս ուշ ունելով մարգարէական երանութեանցն յաւրէնս Տեառն խորհելովն ի տւո և ի գիշերի փոյթք յառնել եւ յուսուցանել եւ ճշմարտագէտ դեղովք ապաշխարութեան զբազումս արժանացուցին շնորհին։

Ի սոցա վարժարանէ այր ոմն հեզամիտ եւ բարեշնորհ ներհուն եղեալ մակացութեան արհեստի՝ Գրիգոր անուն, յոյժ ըղձափափագ

տենչանաց հրամայէ ինձ՝ Յովաննիսի գրել զաստուածայաւր կտակս ի յիշատակ բարեաց իւր եւ ծնաւղաց իւրոց, ի լուսաւորութիւն մտաց եւ ի մաքրութիւն հոգոց։ Եւ իմ նայեցեալ ի սէր սիրեցելոյն Աստուծոյ, անյապաղ փութով սկսայ ի մեծ եկեղեցւոյն Պաղլաճու եւ անդ ննջեալ յեղեռնաթոյն ոմանց առաջնորդաց, ոչ ժամանեցի ի կէտ կատարման, դիմեցի յապահով եւ ի քրիստոսակարգ եկեղեցւոջս Յովհաննայ անապատիս, ի գլուխ լերինս գոմակ այն երեւելի քաղաքին, զոր Տէրն յԱւետարանին ներբողելով ճառէ, ուր են բնակեալ բազմութիւն եղբարց խարազնազգեստից եւ երկաչան գործաւորաց եւ մշտահառաչ աղաւթականաց երկուս աչս ունելով սրատեսք՝ հոգւոյն ճառագայթիւքն աստուածակոչք յառաջնորդական պաշտաւնն, որոյ երիցագունին Մնդիտէ անուն ճանաչի եւ փոխանորդին Գրիգորիս, արք առաքինասէրք եւ բարեսէրք։ Դիտացեալ զթերութիւն գործոյս եւ դիտակ եղեալ, թէ որ կամակից լինին գործելեացն հաւասար են գործողացն, հրամայեն լնուլ զպակասութիւն գործոյս բարեաց եւ առնուլ ի Տեառնէ վարձս յանանց բարեացն։

Արդ, ի զրաւ կտակիս իբրք եղեալք եւ հանդիպեալք շարժումն Արեաց ազդին արեւմտից ի հերքումն եւ ի վանումն քրիստոսատեաց ազգին այլասեռ կրճատելոցն մարդախողխող եւ երկրաւոր բռնացելոցն, որ տիրեալ ունէին յանպատուութեան զսուրբս եւ զքահանայս Աստուծոյ, աման դարմանոց էին նոցա սուրբ եկեղեցիք եւ այրելիք խաչ եւ այլ կայք սրբութեան եւ ծանրաբեռն հարկաւք կեղէին զկեանս քրիստոնէից։

Ի սոյն ամի յայց ելանէ Տէր ժողովրդեան իւրոյ ըստ ասացելումն, թէ Ոչ թողից զձեզ եւ ոչ ընդ վայր հարից, լինի առաջնորդ ամենակալ աջն Աստուծոյ, կանգնեն առաջի զնշան խաչին Քրիստոսի եւ ի դուրս կացեալ ի ծովէ, հարին զբազմութիւն անաւրինացն եւ զմնացեալսն փախստական հանին յաշխարհէն, եւ առին զքաղաքն Նիկիա, յորում բնակեալ էին Ե—ամսեայ պաշարմամբ եւ ինքեանք եկին յաշխարհս մեր ի կողմանս Կիլիկեցւոց եւ Սիրացւոյ եւ պատեալ պաշարեն զմայրաքաղաքն Անտիոք Թ—ամսեայ ժամանակաւ, տագնապ մեծ հասուցին ինքեանց եւ մերձակայ գաւառացս։

Ապա իբրեւ անհնարին եղեւ մարդկան առումն մեծամուր աւանին, հնարաւորն Աստուած տնաւրինէ զփրկութիւն եւ բանայ դուռն ողորմութեան, առին զքաղաքն եւ մաշեցին ի սուրբ սուսերի զվիշապն զխսացեալ[1] հանդերձ իւրովքն ամենայն։ Եւ յետ աւուր միոյ կամ երկուց զաւր բազում գումարեալ հասանել ի թիկունս ինքեանց համասեռիցն, եւ առ անթիւ բազմութիւնն քամահեալ զսոցա սակաւութիւնն, գոռային գոմակ փարաւոնի եւ զնոյն բանասէին, թէ Ի սուր իմ արկից զնոսա, տիրիցէ նոցա ձեռն իմ։ Եւ արգելեալք հնգետասան աւուրբք ի մեծ տագնապի եւ ի տառապանս թախծեալ առ ի չգոյէ դարման կերակրոց առն եւ ձիոյ եւ յոյժ նուաղեալք եւ զարհուրեալք ի բազմութենէ

[1] Տեր-Ավետիսյանի մոտ՝ «զխսայեալ», Յիշատակարանում, ճիշտ է ընթերցված՝ «վխսացեալ» — հպարտացեալ։

անաւրինացն ժողովեցան ի մեծ վկայարանի Սրբոյն Պետրոսի առաքելոյ եւ բարձրաՀառաչ ձայնիւ եւ զետնաթաց արտասուաւք բազում ձայնիցն մի էր խնդիրն, այսպիսի էր մաղթանք. Տէր մեր եւ փրկիչ Յիսուս Քրիստոս, յոր մեքն յուսացաք եւ յորոյ անուն կոչեցաք քրիստոնեայք եւ քաղաքիս յայսմիկ, դու ածեր զմեզ ի տեղիս յայս, եթէ մեղաք քեզ, ունիս բազում ինչ իրաւք խրատել, զմեզ անաւրինաց մի մատներ, զի մի մեծաբանեալ թշնամիք ասասցեն, թէ Ուր է Աստուած նոցա։ Եւ յոժանս աղղեալ շնորհ աղաւթիցն զմիմեանս քաջալերէին ասելով. Տէր ղաւրութիւն ժողովրդեան իւրոյ տացէ, Տէր օրհնեսցէ զժողովուրդ իւր ի խաղաղութիւն։

Եւ ընթացեալ յիւրաքանչիւր երիվարս, ելին ընդդէմ բռնացեալ ընդդիմամարտիցն, Հարին Հալածեցին կոտորեցին մինչեւ ի մուտս արեւուն՝ եղեալ ուրախութիւն մեծ քրիստոնէից եւ լիութիւն ցորենոյ եւ դարւոյ, որպէս առ Եղիսէիւն ի դուռն Սամարիոյ, եւ ապա զմարգարէականն ի վար արկեալ ղերդ. Բարձր առնեմ զքեզ, Տէր, զի ընկալար զիս եւ ոչ ուրախ արարեր զթշնամին իմ յիս։

Յաւուրս զրաւի կտակիս այս ինչ Հանգիպեցաւ զոր գրեցիս, յառաջակայն խնամոց եւ գթութեանն Քրիստոսի եւ Հոգւոյն Սրբոյ բարերարի եւ մարդասիրի յանձն եղիցի։

Արդ, ով դասք մաքրագունից եւ ժառանգորդք գերաշխարհիս կայենիցն, որք վայելէք ի Հոգեկեցոյց բժշկարանէս, աւրհնութեամբ յիշատակաւ յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս զստացող գրոյս զԳրիգոր եւ զ(ը)նկեր նորին զՅովհաննէս, որ ի չքաւոր աղքատութենէ բաւական արար մեզ զնիւթ եւ զծախս եւ զհայր Մեղիտէ եւ զԳրիգորիս, որոց Հրամանաւ եւ խնամաւք աւարտումն եղեւ ոգեշահ եւ բարեբեղուն եւ Հոգիաւանդ կանոնացս, եւ ղտէր Խաչիկ, որ յերկար ժամանակ անաւրատ սիրով եւ յաւժար կամաւք զաւրինակս ընձեռեաց։

Եւ զիս զՅովաննէս, զվերջինս ի գրչաց եւ զառաջինս ի պարտաւորաց, որ նշդեհութեամբ աշխատեցայ եւ յարմարեցի խոշորագունիւքս սակս ի յիշման արժանացուցէք։ Եւ Քրիստոս Աստուած որ առատն է ողորմութեամբ եւ բազմապարգեւ եւ բացող բախողաց, յիշելոցս եւ յիշողացդ ողորմեսցի յայժմու յաւիտենիս եւ յոր գալոցն է յանսպառ յաւիտեանսն, եւ նմա փառք Հանդերձ Հարբն իւրով բարերարի եւ Հոգւոյն Նորոգաւղի յաւիտեանս, ամէն։

**141**

ՇԽԸ 1099

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 288

Գրիչ՝ Աճառովն

Վայր՝ Աղեքսանդրու մայրաքաղաք

ա

Փառք երից անբաւից, կարելեաց անկարից, եռաձնէ միութեան իսկունականաց, ի թուականութեանն Հայոց ՇԽԸ (1099) գրեցաւ սուրբ

*[Աւ]ետարանս ձեռամբ Անառվնի ախմար եւ փանաքի գրչի անպիտան կրամաւորի։*

279ա *Արդ աղաչեմ զամենեսին, որք լուսաւորիք եւ աւգտիք ի սուրբ Աւետարանիդ, զիս աղաւթից արժան արասջիք եւ Աստուած ձեզ ողորմեսցի ամէն։ Ընդ նմին եւ զեղբայրն իմ* զՅովճաննէս, *որ կատարեցաւ յանաւրէն ազդէն Հարաւայնոցն յանաւրէն Մահմետի*<ան> *անաւրէն ժողովոյն վասն եղկելի կենաց իմոց։*

*Արդ աղաչեմ զամենեսեան՝ յիշեցէք ի ձեր սուրբ աղաւթս* զՅովհաննէս *եւ Քրիստոս Աստուած այս սուրբ աւետարանչացս բարէխաւսութեամբ, եւ Սուրբ Աստուածածին եւ Սուրբ Կարապետն բարէխաւսութեամբ ողորմեսցի* Յովճաննէսի *հոգւոյն, եւ ջնջեսցէ զձեռագիր յանցանաց նորա, եւ գրեսցէ ի դպրութիւն կենաց ամէն։ Եւ որ յիշէք, յիշեալ լիցիք, եւ Աստուած ամենեցուն ողորմեսցի, ամէն։*

279բ *Արդ դրեցաւ սուրբ Աւետարանս ի հայրապետութեանն տեառն* Գրիգորի *եւ յինքնակալնութեանն Հոռմայեցւոցն ազգին ար[ի]ական, որ են Փառանգս, յորժամ շարժեցան եւ ելին անթիւ բազմութեանց ի վերին խնամոցն ազդմամբ ամենեկալին Աստուծոյ, եւ եկին հասին մինչեւ* յԱնդիոք, *եւ բազում աշխատութեամբ եւ մեծաւ պատերազմաւ բացին* զԱնդիոք *եւ ի սուր սուսերի յանխնայ կոտորեցին ղանաւրէնսն, եւ ետ*<Գ>*երից աւուրք եկին անթիւ եւ անհամար ազգն Թուրքաց եւ Պարսից ար[ա]պկաց եւ Տաճկաց, եւ բանակեցան շուրջ զքաղաքաւն, եւ զդաշտաւն թուով Դ (4) հարիւր հազար եւ Խ (40) հազար (այսինքն՝ 440 000)։*

280ա ‖ *Եւ ելին ազգն արիական եւ խմբեցաւ պատերազմն եւ վերին աւգնականութ[եա]մբն Աստուծոյ դարձուցին զբանակսն անաւրինացն, եւ զերիս աւուրս սուրն քրիստոնէիցն ճարակէր զանաւրէնսն, եւ մեծաւ յաղթութեամբ դարձան ի մեծ եկեղեցին Սուրբ Պետրոսի, եւ տան ուրախութեան կատարեին մեծին Աստուծոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ ետ զյաղթութիւնն ծառայից իւրոց։*

*Ի նմին ամի բացին զմեծ եւ ղհռչակաւոր մայրաքաղաքն* Երուսաղէմ, *եւ զբազմութիւն անաւրինացն ի սուր սուսերի կոտորեցին զաւրութեամբն Քրիստոսի։*

*Աւարտեցաւ սուրբ Աւետարանս ի մայրաքաղաքն* Աղեքսանդրու, *ընդ հովանե[ա]ւ Յովհաննու աւետարանչին ի Քրիստոս Յիսուս ի [Տէր] մեր, որում փառք [յա]ւիտեանս, ամէն։*

Բ

280բ *[Տէր Աստուած] ողորմեա [մեղուց]ելոյս* Անառ[ովէի] *շնորհեա իմ բ[աղու]մ մեղացս թողութիւն, ղի դու կարող ես [յամենայ]նի և քեզ փառք [յաւիտե]անս, ամէն։*

*[Գիր]ս մնայ և ձեռքս [գնայ, ա]յւաղ զեղկե[լոյս] յաւուրն յետնումն*[1]*։*

---

[1] *Ցիշատակարանքում Բ հիշատակարանը բացակայում է, իսկ գլխավոր հիշատակարանը համարվում է «անցման տարօրինակ բոլորգիր» գրչի ժամանակակից ... թերևս ստացողի գիրը» (էջ 266)։ Բ հիշատակարանից երևում է, որ այն գրչի գիրն է։ Այդ նույն բո-*

Գ

75բ Քրիստոս Աստուած այս սուրբ աւետարանշացս բարէխաւսութեամբ ողորմեայ Յովհաննէսի հոգւոյն ամէն, և որք յիշէք, յիշել լիցի, եւ Աստուած ամէնեցուն հասարակաց ողորմեսցի ամէն։

Այլ գրիչ

Դ

4ա Զորս աղաչեմ ղամենեսան, յիշել ի սրբամատոյց եւ յարագաթռիչ յաղաւթս ձեր, եւ որք յիշէք, յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս, ի Տէր ամէն։

Տէր ողորմեա մեզ, զի ի քեզ յուսով յուսացաք։

## 142

Շնթ 1100

### ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՀՌՈՎՄԱՅ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ԵՒ ՈՐՈՑ ԸՆԴ ՆՄԱ

Երևան 1522 (ԺԲ դ.)

208բ Յամի հինգհարիւրորդի քառասներորդի իններորդի (1100) թուականութեանս Հայոց, թարգմանեցաւ Պատմութիւնս հանդերձ այլ բաղում նեբրողա<ա>կան վկայական ճառիւք, ի յունականէն ի մերս, ի ձեռն սուրբ քահանայապետին Աստուծոյ տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի։

## 143

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՈՒԼՆԵՑԻՈՅՆ ԵՒ ԸՆԴԵՐԱՅՆ

Հովսեփյան, Ցիշատակարանք, էջ 257—58

Հեղինակ՝ Գրիգոր

Ես Գրիգոր մեղապարտ ծառայ Աստուծոյ՝ բնակելով ի վանս, որ յանուն սրբոցս, և ղի ոչ գոյր վկայութիւն սոցա ի լեզու հայերէն, անփառունակ իմն կատարիւր յիշատակ սրբոցս, ապա հոգ ի մտի եդի գտանել զսոցա վկայաբանութիւնս, և յուզեալ ի բաղում քաղաքս՝ ոչ գտի։ Ապա դէմ եդեալ գնացի ի հռչակաւորն Կոստանդինուպալիս, և հանդիպեալ անդ՝ ըստ տեսչութեանն Աստուծոյ՝ քահանայ մի, ըստ Նիկէական հաւատոցն, Ծաւոծ անուն, և ի ձեռն նորա թարգմանեալ զվկայութիւն սրբոցս՝ բերի ի վանս սոցա, և ապա ի ձեռն այլոց հմտագունից, յաւրինեցաւ ըստ մերումս լեզուի։ Վասն որոյ աղաչեմ,

---

լորգրով է գրված նաև ծվսերիի նամակը, համաբարբառները, ինչպես նաև աւետարանների անունները։ Իսկ ձեռագիրը ամբողջությամբ գրչագիր է։ Հիշատակագրություններում, զարդագրերում և սկզբի խաչում օգտագործված թանաքի նույնությունը ենթադրել է տալիս, որ Ահարոն գրիչը նաև ձեռագրի ծաղկողն է։

*ով տամասէր եղբարք, որք փափաքէք լսել զսոցա նահատակութիւն, բարւոյ յիշատակի արժանի արարէք զիմ աշխատութիւնս, զի մեծաւ աշխատութեամբ ի խնդիր ելեալ գտի ըՎկայութիւն սոցա։*

*Նա և զյարմարող ճառիս և ստացաւղքս, ամէն։*

### 144
### *ՄԱՇՏՈՑ*

*Վիեննա 240, Տաշյան, Ցուցակ, էջ 626*

*Գրիչ՝* Գրիգոր

*188բ* Զ**Գրիգոր** *մեղապարտ եւ անարժան դպիր և զծնողսն իմ հա- սարակաց յիշել ի Քրիստոս սուրբ եւ յարժանաւորս աղաւթս ձեր եւ Աստուած ձեզ եւ մեզ ողորմեսցի, ամէն։*

### 145
### *ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երևան 1999*

Գրիչ

ա

*59բ* *Տէր Յիսուս Քրիստոս ողորմեաց* Գրիգորի *եւ ծնաւղաց իւրոց, ստացողաց գրոյս, եւ իւրոցն ամէնեցուն։*

Բ

*102ա* Զ**Կոստանդին** *գրիչ, որ զաւրինակս էտ եւ զնիւթս, եւ զամենայն ինչ, յիշեսջիք, որք աւկտիք, նաև զգրողս։*

Գ

*112բ* *Զկարդացողսդ եւ զստացողսդ աղաչեմ յիշել զգր[ող]ս եւ զծնաւղսն մեր եւ զեղբարս*[1]*։*

### 146
### *ՄԱՇՏՈՑ*

*Երևան, պատառիկ 1277*

Գրիչ

*2ա* Սանուէլի *է Մաշդոցս աստուածասէր քահան[այ]ի*[2]*։*

---

[1] *Ձեռագիրը երեք տարբեր գրիչների գործ է։ Այս վերաբերում է սկզբի Ա—Ն պրակնե- րին։ Բ մասի գրիչը՝ (պրակ Ա—ԺԲ, թերթ 164—190) Ստեփաննոսն է։ Գ մասը (Ա—Ջ պրակ, էջ 192—276) Կարապետ գրիչն է գրել ԺԴ դարում։*

[2] *Գրված է ստորին լուսանցքում շրջանակի մեջ, իսկ շրջանակի աջ կողմում, տողերի ուղղության վրա նկարված է ստացողը։*

## 147

### ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ

*Երեւան 786*

Գրիչ

ա

66ա *Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ Սրբոյն Մակարայ ողորմեա* Գրիգորոյ *ստացողի սորա եւ ծնողաց իւրոց ամէն։*

բ

204ա *Մեղայ Տէր, թող ինձ վասն աստուածութեան քո։*

գ

Այլ ոմն

102բ *Զմեղուցեալս* զՄեճնեւաճ *յիշեցէք ի Քրիստոս աղաչեմ։*

* * *

## 148

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երեւան, պատառիկ 1259*

Գրիչ

1բ *Զստացաւղ սուրբ Աւետարանիս* զԳրիգոր *քահանայ յիշեսջիք ի Քրիստոս, վասն զի մեծաւ աշխատութեամբ եւ շանիւ ստացաւ զսա իւր որդի եւ յիշատակ հոգւոյ իւրոյ։*

*Արդ աղաչեմ զամենեսան, որք ընթեռնուք զսուրբ Աւետարանս, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր* զԳրիգոր *սրբասէր եւ գերամաքուր տէր քահանայ եւ Քրիստոս զձեզ յիշեսցէ յաւուր մեծի գալստեանն իւրոյ։*

## 149

### ՀԱԿԱՃԱՌՈՒԹԻՒՆ ՏԻՄՈԹԵԱ ԿՈՒԶԻ

*Երեւան 1958 (Թ դ.)*

Ընթերցող

235բ *Ոչ հաճելի է արուեստաբանութիւն անարուեստիդ այդորիկ թարգմանչի, որ զգեղ[ե]ցիկսդ արար ան[գ]եղաղ[ե]շ եւ զ[ք]աջաշն[որ]հդ բան[ի]ցն անյարմարութեամբ [ա]բար տաղտկալի։*

## 150
## ԴԱՒԹԻ ՔԱՀԱՆԱՅԻ ՄԱՏԵԱՆ ԳԻՏՈՒԹԵԱՆ ԵՒ ՀԱՒԱՏՈՅ (ՀԱՅԵՐԷՆ ԹՂԹԵԱ ՀՆԱԳՈՅՆ ՁԵՌԱԳԻՐԸ)

*Երևան 2679 (981 թ.)*

Ընթերցող՝

104ա *Այս Գորգ էր գոհացող, որ փոխեաց զՂուկասու դրած Կայսերքս եւ այլ իմն արա<ա>ր, որպէս և ինքն կամեցաւ, եւ Տէր ողորմի իւրմանն, ամէն*[1]*։*

## 151
## ՃԱՇՈՑ

*Վիեննա 3, Տաշյան, Ցուցակ, էջ 15*

*Գրիչ՝* Խաչանուն

ա

112բ *Ով սիրելիք Քրիստոսի եւ յարութեան նորա փափագողք յորոց ակն անգանի սայ ընդոմնելութիւն, ղտառապեալ եւ զանպիտան գրիչս* զԽաչանուն *եւ ղեղրարսն իմ՝ ղկենդանիս եւ ղմեռեալս, եւ ղծնաւղսն մեր, եւ զսարկաւագունս մեր եւ ղծնաւղսն իւրեանց յաղաւթս յիշեսցիք սիրաբար։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք լուսաւորիք ի սմանէ ուսմամբ եւ կամ գաղափար առնելով, կամ ըստ կարգի վայելչմանց, զտառապեալ գրիչս, զնուաքեկեալս ի սաստկութենէ ալեացն խռովութեանց յարուցելոց ի վերայ իմ, գթարար սիրով աղաւթանուէր հայցմամբ յիշատակել ի Քրիստոս այսպէս ասելով. Քրիստոս Աստուած, որ խոնարհեցար յերկնից ի փրկութիւն ազգի մարդկան, քո անրաւ գթութեամբդ ողորմեայ նոցա ի քո ի միւսանգամ գալստեանդ, ամէն։*
*Եւ Քրիստոս յիշողացդ եւ յիշելոցն ողորմեսցի, ամէն։*

բ

*[Զ]անպիտան գրիչս* զԽաչա[ն]ուն *եւ զեղրարսն [իմ], եւ ղծնաւղսն մեր եւ ղազգաինսն ի Քրիստոս յիշեսջիք։ Եւ որ սրտի մտաւք յիշէք, յիշեալ լիջիք եւ դուք յողորմութիւնն Աստուծոյ։ Վա՜շ որ զամէնն՛ ասէ, Ամէն, ամէն, Ռ (1000) ամէն։*

գ

ԶԽաչանուն *յիշեայ աղաւթս, ո՛վ սուրբ եղբայրք։*

դ

*Աստուած ողորմի* Իմրանա *հոգւոյն, վա՜շ որ ղամէնն ի վերայ դնէ։*

---

[1] *Գրված է ուղղահայաց սյունակի մեջ վերից վար, և ակնարկում է ժամանակագրության (Կայսերքի) սյունակների մեջ գրելուն, որ Գորգն է կատարել։*

## 152
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 267—268, 1046—1047*

Գրիչ՝ Յակոբ
Վայր՝ Հոռոմոսի վանք

ա

*Զտառապեալ աշխատաւորս զՅակոբ գրիչ անմոռաց յիշեսջիք ի Քրիստոս, ընդ նմին զՍահակ եւ զՅովսէփ՝ զերկու պատուական եղբարս իմ աղաչեմ յիշել, զի թերեւս եւ նոցա ողորմեսցի Աստուած յիւրում գալստեանն, վասն զի յոյժ սպասաւորեալ ինձ ի սուրբ Աւետարանս։*

*Ստացող՝* Վահրամ կոմս
Սենեքերիմեանց

բ

*Ես* Վահրամ *կոմս, որ ստացայ զսուրբ զԱւետարանս զայս առ ի յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց, եւ հարազատ եղբաւր իմոյ* Պետրոսի, *և աստուածազարդ որդոց իմոց եւ համայրէն ամենայն ազգի իմում, որ են կենդանիք եւ մեռեալք, եւ խոստացայ տալ զսա ի վանս, որ անուանեալ կոչի* Հոռոմոսի, *եւ սա փառաւոր մեծանուն եւ սուրբ հարս, որ յորջորջել կոչին* Անանէ *եւ* Ազարէ, *որ ի ժամանակ մեր փայլին իբրեւ զարեգակն երկրի, մարմին ունելով եւ զանմարմնոցն բերելով զաւրինակ։ Եւ իմ ապաւինել յաղաւթս սոցա իբրև յաշտարակ ամուր ունելով զսոսա ինձ յոյս կենաց եւ մահու, որ եւ աւանդեցի եւ ետու սոցա զսուրբ Աւետարանս զայս, զոր բազում ծախս եւ աշխատութիւն կրեցի ի վերայ սորա, որ չունի ոք իշխանութիւն ի բանէն Աստուծոյ զսա ընդ հարկիւ արկանել, եւ ոչ տուրս տալ, եւ ոչ գրաւական դնել, եւ ոչ վաճառել, այդ ազատ ուր եւ էր սա առ ի յիշատակ* Սենեքերիմեանց *սեռիս. եւ եթէ ոք յանզգամաց յանդգնի եւ վաճառէ զսա, մասն եւ բաժին զՅուդայի մատնչին առցէ, որ զՔրիստոս վաճառեաց ընդ երեսուն արծաթոյ։*

*Զաւրութիւն սուրբ Աւետարանիս աւգնեսցէ* Վահրամ կոմսին *եւ իր որդեացն, ամէն*[1]*։*

---

[1] *«Ձեռագիրը այժմ գտնվում է Երուսաղեմի Հայոց վանքի մեջ և տակավին չունի թվական... Մեծադիր աւետարան է, խոշոր երկաթագրով։ Ձեռագիրը զարդարված է երկու անգամով, հինը՝ առանց նկարչության, այլ միայն մեծ տառերի տողերին կպցրած փոքր զարդեր, որ արմավենիկ է ըստ մեծի մասին, նաև բոլորակի մեջ խաչ, չորս սրտաձև սուր ծայրերը դեպի խաչի գծերը կտրող անկյունները, սրտաձևերի մեջ թեթև եռատերև։ Այսինքն մի զարդ, որ հին է։ Նաև բոլորակի մեջ հավասարակող խաչ։ Զարդերից և գրից դատելով ուշ չէ քան ԺԱ դարը։ Տառերին կպցրած զարդերով նույնպես հիշեցնում է Գագիկ Կարսեցու Ավետարանը, միայն սա ավելի հին է ըստ իս։ Ձեռագրի ժամանակը կարծում եմ Ժ դարու վերջերից մինչև ԺԱ դարու կեսերը (Յիշատակարանք, էջ 1046)։*

## 153

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5432

Գրիչ՝ Յովճաննէս

ա

289ա *Փառք քեզ Կոյսի, քոյ արեքսազով, արարիչ կիսազնդի եւ Դիմնաոի, ամէն։ Փառք քեզ Երրորդութիւն Սուրբ յամենայն արարածոց, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Փառք իմոցն եւ դիս արարչի, եւ միշտ խնամաւղի, որ աւժանդակեաց ալիկարութեան իմոյ///։*

բ

71ա ԶՅովճաննէս *գրիչ,* զԳրիգոր *եղբայրացիս իմ, եւ* զԱրեւ *Հարազատ եղբայր եւ ղայղսն զերկուսին անմոռաց յիշեսջիք յաղաւթս ձեր, եւ զլծնաւղսըն մեր, որոց ողորմեսցի Քրիստոս՝ յիշելեացս եւ յիշողացդ, ամէն։*

գ

185ա ԶՅոճաննէս *գրիչ եւ զեղբայր իմ* զԱրեւ *եւ զորդեակ նորա* զԳրիգոր *յիշեսջիք աղաւթի[ւ]ք ի Քրիստոս, ասելով. Ողորմեաց Տէր եւ թող սոցա զըյանցանս իւրեանց, ամէն։ Եւ որք յիշէքդ, յիշեսջիք ի Քրիստոսէ, ամէն։*

դ

239բ ԶՅոճաննէս *վերստին արաստոոհիչս սորոյ Աւետարանիս ի*[1]։

ե

71բ *Աստուած վայելել տացէ* զԱւետարանս Գրիգորիսի *սրբալան քահանայի, ամէն*[2]։

## 154

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10554

Գրիչ՝ Պետրոս

ա

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն, այժմ եւ ամենայն յաւիտեանս, ամէն։*

*Փառք քեզ Կոնեայ քող արարիչ, կիսագնդի եւ Դեմետրի ամէն, ուխ*[1]։

---

[1] *Գրված է շղագրով, վերջին էջում։ Հաջորդ թերթն ընկած է։ Ձեռագրում կետադրության-տրոհման նշանները գրիչը լրիվ չի նշանակել, այլ վերջին հիշատակագրության կարմիր թանաքով նշանակել է Հովհաննես արտատրոհիչը։*

[2] *Գրված է երկաթագրով, մուգ կապույտ գույնով, ստացողի պատվերով։ Գրիչը նաև ծաղկողն է։ Ձեռագիրն ունի հետաքրքիր լուսանցազարդեր, գլխագրեր և գլխազարդեր։*

[3] *Սածկագիր է, նշանակում է «ամէն»։*

Փառք Եռակի եւ Եզակի Համագոյ Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Աւրհնեալ է նա յամենայն էից եւ յանէից,
312բ ի տարերից եւ յանտարերից, յանմիջակ եւ յանեզրական յաւիտե||անս, ամէն։ Ըստ յոգնազան շնորհացն Աստուծոյ, որ տուեալ են մեզ ի Քրիստոս, բազմաշաւիղ են, եւ ընթացք բարեգործութեանց եւ առաքինութեանց որք կեցուցանեն զոգիս մարդկան, ըստ որում որք ի քաղաքս արքունականս մտանել հանգերձեալից են, յոր կողմ եւ կամիցի դիմում ի պողոտայիցն բուռն հարեալ ի նոյն ձգիցէ աւթեվանս։ Եւ արդ եթէ այսպէս իցէ, որպէս եւ են իսկ, ապա չպարտին դանդաղել առ այս, որ կամիցին հպիլ վասն հոգեւոր շահից առաքինութեանց։

Յոլովմամբ ըղձացեալ ի սիրահարուստ վսեմ թարփիազգեաց երկնային արհեստիցն հետեւեալ, ես նըւաստ Պետրոս գրիչ, եւ ընդ նմին Գրիգոր[1] մեղապարտ եւ յոգնամեղ եւ վերջին գրչաց, դրեցաք զսուրբ Աւետարանս ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ, եւ ի հերքումն, եւ ի հալածումն լեգեովն դիւացն, եւ ի բժշկութիւն ամենայն ախտաժետաց, եւ ի բարեխաւսութիւն ստացաւղացն սուրբ Աւետարանիս հաւրն Վր[թանիսի՞]։

## Բ

71բ Զ Դաւիթ քահանայ յիշեսջիք ի Քրիստոս՝ թողութիւն մեղաց գտանել յարարչէն, ամենեցուն։

## Գ

233ա Որ կարդայք եւ կամ ընդաւրինակէք զսուրբ Աւետարանս, յիշեսջիք ի Տէր Քրիստոս զգծող սորա զՊետրոս մեղուցեալ եւ զծնաւղս իմ, եւ զհամաւրէն եղբարսն ըստ մարմնոյ, եւ զհոգեւոր եղբայրն մեր
233բ զՍրբաակէս քահանայ, եւ զամուսինն իւր || առ Քրիստոս փոխեցեալ, եւ Աստուած յիշողացդ եւ յիշեցելոցն առհասարակ ողորմեսցի իւրում սոսկալի եւ յանաչառ դատաստանին, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 155

## ՏՕՆԱԿԱՆ

**Փարիզ 178, Երեւան, մանրաժապավեն 879,**

Գրիչ՝ Պաւղոս

## Ա

3բ Բարեխաւսութեամբ Սրբոյն Ստեփանոսի ողորմեա Քրիստոս ստացողի սորա եւ անարժան գծաւղիս եւ Պապանուաճ հայրապետիս, որ զաւրինակս շնորհեաց։

## Բ

44ա Զստացողական վկայական մատեանս յիշեսջիք ի Քրիստոս եւ

[1] Գրիգորը վերջին մի քանի թերթի գրիչն է։

*ղտղատիպ հասակի ստընդեայս* Կոստանդ *սարկաւագ մի մոռանայք աղաչեմք, ով սուրբք։*

**գ**

*Զստացաւղ պատուական մարգարտիս զմեղապարտ* Պաւղոս *և զեղբարս իմ զկենդանիս եւ զննջեցեալսն ի Քրիստոս եւ զծնողսն իմ յիշեսջիք բարեացս յիշատակաւք ի Քրիստոս Յիսուս, զի բազում աշխատութեամբ մարմնով իմով յանձն առի զսա, վասն հոգւոյ մասին ժառանգ լինելոյ։*

*Աղաչեմ զի* զՅուսիկն *եւ* զԽաչապուր *յիշէք, որ զաւրինակ ետուն։*

**դ**

74ա Ձ*Պաւղոս գրիչ ի Տէր յիշեսջիք*[1]։

**ե**

212ա *Զստացաւղ վկայական մատենիս* զՊաւղոս *եւ զծնաւղսն իմ եւ զեղբարսն իմ յիշեսջիք ի Տէր աղաչեմ։*

**զ**

295բ *Բարեխաւսութեամբ Սրբոյն Եպրաքսեա ողորմեսցի Աստուած ստացողի սորա* Պաւղի *եւ ծնաւղաց իւրոյ, ամէն։*

**է**

299ա *Տէր Յիսուս ողորմեաց ստացողի սորա* Պաւղոսի *եւ* Պապանուանն, *որ զգաղափարս շնորհեց։*

**ը**

301ա *Տէր Աստուած ողորմեա ստացաւղի սորա* Պաւղոսի *անարժան քահանայի եւ անպիտան գծողի, բարեխոսութեամբ մեծ վկայի քո Գէորգեա։ Ընդ նմին եւ* Կարապետին *սրբասիրի եղբաւրն, որ եւ նմանեալ անուանակրի իւրոյ Յովհաննու Կարապետին՝ հեզութեամբ եւ հանդարտութեամբ եւ աստուածսիրութեամբ, ամէն*[2]։

**թ**

*Յիշեսջիք զսուտանուն* Հայրապետ, *որ զգաղափարս շնորհեաց։*

**ժ**

*Տէր Քրիստոս ողորմեա ստացողի սորա* Յոհաննիսի *հայրապետի մերոյ, որ եւ փափագող եղեւ սորա, փոխանակ ընչիցն ստացաւ ինչք իւր հոգեւոր փարթամութիւն։ Ընդ նմին ողորմեա և ինձ* Պաւղոսի *գրչի։*

**ժա**

643բ *Տէր Քրիստոս բարեխաւսութեամբ քո սուրբ հայրապետիտ* Յովհաննու Ոսկեբերանի *եւ ամենայն սուրբ հայրապետացն ողորմեա ստա-*

[1] *Գրված է զարդագրի մեջ, բոլորգրով։*

[2] *Անմիջապես հետո. «Եւ զետին ստացողքս* զՀերումն *և զեղբայրն իւր* զՑիրացուն՝ *յիշատակ բարի Սուրբ Աստուածածնիս* Խզենիս *եկեղեցոյն, աղաչեմ զընթերցողքդ՝ Աստուած ողորմայիվ յիշել՝ և որով յիշէք՝ յիշեալ լիջիք»։*

ցողի սորա Յոհաննէսի հայրապետի մերոյ, որ եւ փափագող եղեւ սորա, փոխանակ ընչից զսա ստ[աց]աւ ինչք իւր հոգեւոր փարթամութիւն։ Ընդ նմին ողորմեա եւ ինձ Պաւղոսի գրչի, ամէն։

ժբ

Կազմող՝ Խաչատուր

586ա Ողորմեա Տէր Քրիստոս Խաչատրի կազմողի գրոցս եւ ծն[աւղացն իմոց ա]մէն[1]։

## 156
## ԱՒԵՏԱՐԱՆ
Երևան 1501, պահպանակ

Գրիչ՝ Սարգիս վանահայր

Վայր՝ Սուրբ Յովան

ա

2ա Յանուն Աստուծոյ ես Ոսկետունգ էրեցս, որ տուեալ եմ զիմ բաժինն զխաչուաին ի Սարգիս հայր, ի Սուրբ Յեհան, որ չիշխէ ոքիկ յիմ յազգէ հակառակ կալ, զի իմ հոգոյս եմ տուեալ։ Եւ որ յանդգնի, յերեք հարիւրէն եւ ի տասն եւ ութիցն նզոված է ի կեանս և ի մահ։

բ

Գրիչ՝ Ներսէս

Յանուն Աստուծոյ այս իմ գիր է Վարգիս Ներսիսի, որ տուեալ եմ զիմ զբաժինն զխաչուտին ի Սո[ւ]րբ Յովհան իմ հոգոյս։ Եթէ ոք հակառակեսցի իմ որգեացս ՅԺԸ(ից)ն նզոված է։

գ

Գրիչ՝ Սարգիս

Յանուն Աստուծոյ այս իմ ձեռնագ[ի]րը Սարֆսի և իմ ընդանեացն Փառանձեմը, որ տուեալ եմք զմեր հոգոյն բաժինն, զինչ և ունինք, ի Սուրբ Գորգի վանքն, որ չումի ոքիկ իշխանութիւն յիմ հալալ վաստակն, ոչ աւազ և ոչ այղ ոքիկ։

Տուեալ եմ ի հայրն ի Յիսու եւ ի Գորգ եպիսկոպոս և ի Գորգ էրեցի թոռնն։ Եթէ ոք յանդգնի յերեք հարիւրէս եւ ի տասն եւ ութիցն նզոված է, և մեր մեղացն պարական։ Վկայութեմ(ք) Քրիստափորի անձ ///։

դ

Գրիչ՝ Վահրամ

Յանուն Աստուծոյ այս իմ [գ]էրս Ե Վրհր[ա]մա, որ տուեալ եմ զիմ բաժինն զխոշուտն ի Սուրբ Յեհնաս, եթէ ոք հակառակէ ///

---

[1] Գրված է բոլորգրով՝ ստորին լուսանցքում։

Ե

Գրիչ՝ Տիրան

*Յանուն Աստուծոյ այս իմ ձեռնգիր է* Տիրանա *փոխնկիս որ արբել եմ Սուրբ Յեհնա զայս խաչուգիրս, ու տուել եմ զինչ եւ իմ բաժին հող կա ի* Խաչուտն: *Յերկու դիմոսն*[1], *որ տուեալ եմ Սուրբ Յեհանես իմ հոգոյս, որ չունի ոքիկ իշխանութիւն՝ ոչ իմ որդիքն եւ ոչ իմ որդեցն որդիքն, եւ ոչ այղ ոքիկ յիմ ցեղէ, եւ ով ունի ոքիկ խաւսք եւ տեսի ձեռնգրիս վերա խաւսի ոքիկ, ի Սուրբ Երրորդութեննեն աւրհնութիւն չունի եւ ոչ ի Սուրբ Յեհնա, եւ ոչ յինձնէ ի* Տիրանա:

Գ

Գրիչ՝ Սարգիս

*Ես* Սարգիս *հայր, որ գրեցի* զՏիրանի *յիմ սուրբ Աւետարանս, որ հետ իմ ով եւ ի Սուրբ Յեհան հայր լինի, որ ենք նարա հոգեբարձ եւ աղաւթրար, և եթէ ոք զթերութիւն գործէ, համար նա է տալոյ առաջի Աստուծոյ վասն* Տիրանա, *եւ այս տունս նոցա աղաւթրար է, եւ իւրեանց որդեացն ի փառաց։*

Է

Գրիչ՝ Տանկզենի

*Ջեռագիրս իմս է* Տանկզենիս՝ Թորոսի *որդւոյս, որ տուեալ եմ որ ինչ իմ բաժին հող կա ի* Խաչուան՝ *Սուրբ Յեհնա, իմ հաւրն հոգւոյն* Թորոսի, *որ չունի ոքիկ իշխանութիւն, ոչ իմ որդիք և ոչ այդ մարդ յիմ ի ցեղէ եւ եթէ յանգգնի ոքիկ եւ խաւսի, ի Սուրբ Յեհնա աւրհնութիւն չունի և ոչ յիսնէ։*

Ը

Գրիչ՝ Համզէ

*Յանուն Աստուծոյ այս իմ ձեռագիր է* Համզեի, *որ տուեալ եմ զիմ բաժինն, որ* Խաչուան՝ *իմ աղբեաւրն հոգոյն խալմա, որ տուեալ Սուրբ Յեհնա եմ, որ չունի ոքիկ իշխանութիւն, թե Աստուած կամի։*

Թ

*Ես* Տանկիս *դուստրս տուեալ եմ զիմ բաժին հողն ի* Խաչուտն *Սուրբ Յեհնա՝ իմ հոգոյս Աստուծոյ կամաւքն, որ չունի ոքիկ իշխանութիւն թէ Աստուած կամի, եւ են մեզ աղաւթրար ի բարեխաւսութիւն իմ հոգոյս*[2]*։*

---

[1] *Այս բառը հանդիպում է 1067 թ. հիշատակարանում։ Այստեղից պարզ է դառնում, որ այն չափի միավոր է։ Նույնն է այս և նախորդ հիշատակագրությունների բնույթը, ժողովրդական է նաև լեզուն, իրար մոտ են և՛ տեղով, և՛ ժամանակով։*

[2] *Երկաթագիր հին Ավետարանի (25,5× 36,5 սմ) չորս թերթերը պահպանակներ են։ Սկզբից երկրորդ թերթի ա ազատ էջում (բ էջում խաչ է նկարված) գրել են սույն հիշատակագրությունները, որպես նվիրագրեր։*

*Ավետարանը պատկանել է Սուրբ Յոհաննու կամ Յեհնա վանքին։ Այդ անունով վանք հայտնի է Բասենի գավառում։ Տասներորդ դարում նահատակված Հովհաննես վարդապետը թաղվում է Ակսիգոմո վանքում, որը այնուհետև կոչվում է Սուրբ Յոհան կամ Յեհնա վանք* (Ասողիկ *Պատմութիւն, էջ 185)։ «Եւ մինչև այսօր ալ նույն անունը կը պահէ»* (Մ. Օրման-

## 157
## ԱԻԾՏԱՐԱՆ

*Երևան 10147, պահպանակ*

*Ստացող՝*

1ա /// Ոսկով եւ ակովք պատուիրականաւք, եւ աւանդ ետ ի սուրբ Աստուածածինս վս[ան] յիշատակի հ[ո]գւոյն իւրոյ, եւ պարծանաց ազգի իւրոյ տոհմի։ Իսկ նա տեսեալ զսա մերկացեալ ի հարսնազեղ վայելչութեանց եւ յոսկիակուռ պայծառութեանց [կո]ղոպտեալ յանաւրինաց եւ ար[հ]ամարհեալ ի տեսողաց, թաւալեալ [յ]աճիւն մոխրակուտաց եւ կար աչ կարկառման ձեռին ընթերցո[ղաց], գրէթէ լռելեայն լայր, ձայն [տալով] ստացողին եւ ոչ ուրեք գըտանէր։ Ել կատարի ասացեալ [մա]րգար[էի]ն։ Հռաքել լայր զորդիս իւր, եւ ոչ կամէր մխիթ[արել], [ք]անզի ոչ էին յաշխարհի։ Նա ես Նա/// զնկարագիր հաւ[ում իմո]յ [եւ] հ[ամբ]ուրելո[վ] արտասուաւք զ[Աստուած] առ ձայնելով թեպէտ [ձեռ]նահաս էաք, կամ եղեւ վե[րտին] Նորոգել դուզնաքեա պայ‖[ծառու]թեամբ ղաւա[կ ի հոգւոյն] մերոյ, [եւ] ի պայծառու[թիւն ման]կան[ց սր]բոյ ուխտիս, եւ ի զա[րդ] սբբ[ոյ] Աստուածածնիս եւ վասն յ[իշ]ատակի հոգւոյ իմոյ։

Վասն որ[ոյ] զսուրբ զաւետարանիչսն աղա[չ]եմ մաղթանաւք հայցել առ հա[յր] ի յերկինս՝ զթողութիւն յան[ցան]աց իմոց։

Արդ որք կարդայք ե[ւ] բերկրիւք տեսութեամբ սորա, ո՛ [սուրբ]

2բ դասք քահանայից եւ միագու[մար] կրամաւորաց, մանա‖ւանդ յ[որ]ժամ բարձրացուցանէք զ[ձայն] ձեր ձեռահիւսակն երգել սր[բաս]ացութիմ ի պատիւ մարմնացե[ա]լ որդոյն Աստուծոյ, աղա[չեմ] հայցել զթողութիւն յանց[անաց իմոց] առաջի զենլոյն Քրիստոսի, իսկ ույք յիշէքդ յիշեալ [լիջիք] ի Քրստոսէ Յիսուսէ Տեառնէ մերմէ, [որում փա]ռք, պատիւ եւ զաւ[րութիմ] այժմ եւ յաւիտեանս, [ամէն][1]։

---

յան, Աշխարհացոյց, էջ 1146)։ Իսկ խաչուտը՝ Թորթոմի Երաշխուտ գյուղն է (Ալիշան, Շիրակ, էջ 6)։ Ձեռագիրը հետագայում (ԺԳ դար) նվիրվում է Արշուառիճ վանքին։

Միավորները բերել ենք հաջորդականությամբ, ինչպես որ գրված է։ Ա. գ, զ. է. ը. թ. Սարգիս գրչի գրածն է, իսկ Սարգիսը՝ Եհնա վանահայրն էր, ինչպես երևում է զ. միավորից։

[1] Հիշատակարանը գրվել է ավետարանիչի նկարի հաջորդ էջում։ Հետագայում թերթը երկու կես է արվել և գրվել 1485 թ. գրված ձեռագրի սկզբում և վերջում, որպես պահպանակ։ Սկզբի պահպանակի ա, վերջի պահպանակի բ էջերում է գտնվում հիշատակարանը՝ բոլորգիր, երկսյուն գրությամբ, գրված ԺԱ դարի կեսերին։

## 158

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7659

Գրիչ՝ Ստեփանոս

ա

[Հրամանաւ տէր Յո]վհաննիսի, գրեցաւ ձեռամբ Ստեփանոսի
նուաստի եւ փցում գրչաւորի

բ

271բ [Հ ]Գնա յուղեղս խընդ
[Ր ]ո Բելով զսիրտ սուրբ, որՈ
[Ա ]յաւԵղեաք բնակարան եԻ
[Մ ]եցուՑուցանեմք զնԱ
[Ա ]ամս Առաջի աչաց մերոցՍ
[Ն ]եկն եԻՆ լուսոյ եւ զախՏ
[Ա ]զմեղ յանՁմերային մերժել զԻ
[Ի ա]մենայն որԵղիցուք մաքրեալք լԵ
[Տ ]զ եւ ի փաՌՆ բարձրաբերձ եԻ
[Է առա]ջինս ըստ պԱշտարակ ամուր չաՓ
[Ր ]իւրոյ կազՄեծարգոյ եցոյՑ
[Յ ]արեաց սուրԲեւեռելով ի խաչն զՈ
[Որ]ովայնիննն, եւ եւՍոխն մեր մեռոյց եԻ
Վասն նախահաւրն եՏաւալեաց զամուրսՆ
Հրաւէր ի զենումն Երկաթապինդս ի Գ
Ական գառինն երՓոյ տառապանաց աՐ
Ներփնն արկելով զԱգապէս արձակեաց Զ
Նազան տեսակովք Նչին փայտիւն։ ԱՀԱ
Ի զարդ անապական Որով մահ եւ կեանք, եԻ
Սկեհուռս եւ ետ ի Ստուգապէս իսկ է, Ո՛
Իրտս մեր դրոշմ Իսկ, ո՛, անմահի փըՐ
կըչի Փա՜ռք ասԻ
ամէն։

///գ ///որ///յաւե///եցուց///ամսա///եկն եւ ///զմեղ յանձ/// [ա]մենայն որ ե///զ եւ ի փառ///[առա]ջինս ըստ պա///իւրոյ կազմ ///արեաց սուրբ [որ]ովայնիննն, եւ եւս վասն նախահաւրն ետ հրաւէր ի զենումն եական գառինն երփներփնն արկելով զանազան տեսակովքն ի զարդ անապական ոսկեհուռս, եւ ետ ի սիրտս մեր դրոշմ ի գնա յուզեղս՝ խնդրելով զսիրտ սուրբ, որո եղեաք բնակարան, եւ ցուցանեմք զնա առաջի աչաց մերոց ս[ի]ւն լուսոյ, եւ զախտ ձմերային մերժել, զի եղիցուք մաքրեալք լեռն բարձրաբերձ եւ աշտարակ ամուր, չափ մեծարգոյ եցոյց, բեւեռելով ի խաչն զոսոխն մեր, մեռոյց եւ տաւալեաց զամուրսն երկաթապինդս ի գփոյ տառապանաց, արագապէս արձակեաց

չնչին փայտիմ։ Ահա որով մահ եւ կեանք, եւ ստուգապէս իսկ է, ո, իսկ, որ անմահի Փըրկչի փառք ասի, ամէն[1]։

Դ

271ա /// նո//յաւ/// Սաե[փանոս]:

159

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 7048, պահպանակ

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Սեբաստիոյ ճանանգ

... Բաղձայի այսմ տառի յոր եւ զկատարումն առ ի նահանգիս Սեբաստիոյ, ի ձեռն քահակցի իւր միածնին, փառակցի նորոգաւղին յաւիտենից յաւիտեանս, ամէն։

Արդ՝ ես նուաստս եւ յետինս յորդիս եկեղեցւոյ Վարդան[1]...

160

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Զմմառ, Անտոնեան հավաքածու, Բ, էջ 120

Գրիչ՝ Սուքիաս

116ա Ցարութեամբ քով, Տէր, նորոգեա զհոգի ստացողի պատուական գանձիս՝ Աստուածատրոյ եւ ծնողաց իւր եւ եղբարց, ընդ նո[սա] եւ զնուաստ գրչի Սուքիա[սի]:

---

[1] Հիմնական հիշատակարանը վերջին, պատռված թերթի վրա է պահպանվել այնպես, ինչպես ներկայացնում ենք։ Ենթադրաբար լրացրել ենք պակասող սկզբնատառերը։ Այս հիշատակարանի մեջ գրչի և ստացողի մասին տեղեկությունը ստեղծվում է տողերի սկզբնատառերի և վերջնատառերի ծայրակապերից, որոնցից և ստացվել է ա հիշատակարանը։ Գ հիշատակարանը բ-ի՝ աղատ շարահարությունն է։ Այս ծայրակապավոր (աքրոսաիկ) հիշատակարանի առաջին սյունակի տողերի վերջին տառերը միաժամանակ երկրորդ սյունակի տողերի սկզբնատառերն են, այսինքն երկու անգամ են կարդացվում՝ նախ որպես առաջին սյունակի տողերի վերջին և ապա երկրորդ սյունակի տողերի առաջին տառեր։

Ձեռագրի լուսանցազարդերը միայն փոքրիկ թռչունների նկարներ են, սկզբնավորված ԺԱ դարում։

[1] ԺԱ դարի մագաղաթյա ձեռագրից սույն հատվածը փրկվել է գերվելուց և այդպես հասել մեզ, որպես պահպանակ։





## 161
## ՎԱՐՔ ԵՓՐԵՄԻ ԱՍՈՐԻՈՑ

*Երուսաղեմ 787 (ԺԳ դ.), Պողարյան, Ցուցակ, Գ, էջ 238*

224 *Պատմութիւն վարուց երանելւոյն* Եփրեմի Ասորոյ *վարդապետի, որ թարգմանեցաւ յասորոց ի մերս, հրամանաւ* Գրիգորիսի Վկայասէր *Հայոց կաթողիկոսի, ի հինգհարիւրորդի, [յիս]ներորդի (1101) թուականութեանս մերում։*

## 162
## ՃԱՇՈՑ ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐԻ

*Երևան 979 (1286 թ.)*

162ա *Կանոն մեծի հինգշաբթին ոտնալուային, զոր արարեալ է տեառն* Եփրեմի խորին Ասորոյ, *զոր թարգմանեաց սուրբ դիտապետն* Հայոց Մեծաց Գրիգորիս Վկայասէր:

## 163
## ԵՓՐԵՄԻ ԽՈՐԻՆ ԱՍՈՐՈՑ ՆԵՐԲՈՂԵԱՆ ՊԱՏՄԱԳՐԱԲԱՐ ԱՍԱՑԵԱԼ Ի ԳԼԽԱՏՈՒՄՆ ՍՈՒՐԲ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԿՐՏՉԻՆ

*Երուսաղեմ 1 (1419 թ.), Պողարյան, Ցուցակ, Ա, էջ 12*

490բ *Անքաժանելի Սուրբ Երրորդութիւն պարգևեա զողորմութիւն և զթողութիւն մեղաց. ասացողացս և լսողացս, և փափագողին Ներբողինիս տեառն* Գրիգորիսի Վկայասիրի, *թարգմանողի ճառիս, ի Քրիստոսի փառք։*

## 164
## ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ԼԱՒՐԵՆՏԻՈՍԻ

*Վենետիկ 231 (1860 թ.), Սարգիսյան, Ցուցակ, Բ, էջ 494—498*

85ա *Տէր Յիսուս Քրիստոս, ողորմեա թարգմանողի ճառիս՝ տեառն* Գրիգորի (Վկայասէր) *կաթողիկոսի ամենայն Հայոց, և ծնողաց, և զարմից նորա, և ամենայն հաւատացելոց։*

## 165
## ՆԵՐԲՈՂԵԱՆ ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

*Երուսաղեմ 89 (1273 թ.), Պողարյան, Ցուցակ, Ա, էջ 281*

165բ *Թարգմանեցաւ լուսազարդ և վայելչազարդ ճառս այս ի յոմա-կանէն ի մերս, հրամանաւ երիցս երանեալ հայրապետին տեառն* Գրի-գորիսի Հայոց Մեծաց *կաթողիկոսի, ի ձեռն իմաստոմ և հանճարեղ թարգմանչին* Թէոփիստէի:

## 166
## ՎԱՍՆ ՊԱՏՈՒԻՐԱՆԱՑ ՆԱԽԱՀԱՐՑՆ

*Երուսաղեմ 1303 (1297—1307 թթ.) Պողարյան, Ցուցակ, Դ, էջ 533—534*

419 *Խաւսք* Գրիգորիսի Հայոց *կաթողիկոսի, ի նախ* Վահրամ *առձայ-նեալ, և յորժամ կաթողիկոս ձեռադրեցաւ* Գրիգորիոս *կոչեցաւ, յանոմ նախնոյն իւրոյ* Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, *ասացեալ Վասն պատուի-րանաց նախահարցն։*

## 167
## ՍՔԱՆՉԵԼԻՔ ՈՐ ԵՂԵՆ Ի ՁԵՌՆ ՍՐԲՈՑՆ ԳԷՈՐԳԱՅ

*Երուսաղեմ 1(1419 թ.), Պողարյան, Ցուցակ, Ա, էջ 39*

916 *Իրագործեցաւ գործ սքանչելեացս ի ժամանակս* Փոկասու Տիւրա-նոսի *կայսերն Յունաց, և թարգմանեցաւ ի հոռոմոց ի հայս սուրբ քահանայապետն* Հայոց Մեծաց Գրիգորիս Վկայասէր, *զոր և պսակա-կից արասցէ սրբոյն վկային աղաւթիւք ամենայն սրբոց։*

## 168
## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ
## ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 285—286 (ԺԳ .դ)*

*Ստացող՝* Գրիգոր Վկայասէր

ա

485ա Յաղագս յիշատակարանի գրոյս և թարգմանութեան սորին:
*Յամի հազարերորդի հարիւրերորդի երկրորդի (1102) Աստուծոյ մերոյ և Տեառն Յիսուսի Քրիստոսի գալստեանն և ի հինգ հարիւրերորդի յիս-ներորդի (1101) մերում թուականութեանս և յաւթն և ի տասներորդ[ի] թագա[ւորու]թեան* Կոմինոսի Ալէքսի *բռնակալի, ես* (Գրի)գոր՝ *որդի* Գրիգորի Մագիստրոսի *ի հայկազունւոյ ըստ աշխարհի* Պարթեւ, *ըստ ժառանգութեան* Պահլաւիկ, *ըստ ցեղընտիր լինելոյ յազգէ* Արշակունի,

որ և ողորմութեամբն Աստուծոյ կոչեցա ի դիտապետութիւն Ասքանազեանս և ընդ ատոռ հայրապետութեան նախնեացն իմոց, եւ բազում նեղութիւն կրեալ մեր յայլասեռ ազգաց հեթանոսաց և ի յե(ր)կաբնակաց։ Եւ ապա ի յառաջասացեալ ամդ հասաք ի սուրբ լեառնն, զոր Սեաւն կոչեն, ի մեր սեփհական պարգեւական եկեղեցիքն յուխտն սուրբ, զոր ըստ ասորի բարբառոյ Պաղակնոյ կոչի, որ թարգմանի «Դրախտ Աստուծոյ»։ եւ անդ յերեսուն և ի վեց ամի մերոյ աթոռակալութեանս՝ թարգմանեցի զվարս ճգնութեան մեծ և սքանչելի առնն Աստուծոյ Յովհաննու Ոսկեբերանի Կոստանդնուպոլսի հայրապետի, ի ձեռն առն միոյ, որում անուն էր Թէոփիստէ, ազգաւ յոյն։
Եւ ապա եւսու վերստին արծարծել զսա ի տարաբան և յստարաձայն բայից և բառից առաջին թարգմանութեանն, ըստ քերողացն իմաստից՝ միաշար տողելով ի ձեռն Մա[տ]թեոսի քահանայի, որ սնեալ և վարժեալ էր ընդ մերով ձեռամբ։

Արդ որք մտաւորաբար ընթեռնոյք զվարս սորոցն և կամ ընդաւրինակէք գրչութեամբ, աղաւթից մասին արժանաւորեցէք ղաոհասարակ աշխատողքս, որպէս զի աղաւթիւք սրբոյ հայրապետին ընկալցուք մասն ի յարութեան նորին։ Արդ աղաչեմ պաւրինակաղիծ գծողսդ, այլ և հրաման պատուիրանի աւանդեմ, մի ոք իշխեսցէ հատանել զյիշատակարան աշխատողացս, ղի մի և ինքն ջնջնեսցի ի դպրութենէ կենաց։

**Բ**

Գրիչ՝ Մատթեոս

Ըստ կարի իմում կրտսերութեանս յանգ հանի, զոր հրամայեցեր, ով դիտապետ սուրբ, վասն զի զ՞ր արդեւք ունէի ղաւրութիւն բաւել յայսպիսի գործ, եթէ ոչ շնորհն Աստուծոյ ներգործէր ինձ ի ձեռն սուրբ աղաւթից քոց՝ որպէս խնդրեցի։ Արդ այսուհետեւ ընկալ բարեմտութեամբ զիջանելով ըստ իս չմեղադրել իմոյ յանդգնութեանս։ Եւ թէ սխալեալ ինչ իցեմ ըստ մեծի իմաստութեանդ քո, ուղղեա։ Բայց եւ զայս աղաչեմ քեզ, հայր սուրբ և վարդապետ և տէր, զի թեպետ և առատ են յամենայնի պարգեւք քո, սակայն ըզվարձս վաստակոց իմոց աղաւթիւք հատո, զի թերեւս արժանաւորեցայց ողորմութիւն գտանել յահեղ աւուրն համառւստի, զի մի դատապարտեալ ի խղճէ մտաց իմոց՝ ամաւթալից և առանց պատասխանւոյ կայցեմ առաջի արդար դատաւորին, վասն զի ունիմ թուշակ այնմ ճանապարհի, բայց եթէ զստարութիւնս զայս մատուցանեմ աղերս մաղթանաց։

## 169
## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ ՍՈՒՐԲ ՀԱՒՐՆ ՄԵՐՈՅ ... ԳՐԻԳՈՐԻՍԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ ՆԱԶԻԱԶՈՒ ԵՊԻՍԿ(ՈՊՈՍԻ), ԶՈՐ ԹԱՐԳՄԱՆԵԱՑ Ի ՅՈՒՆԱԿԱՆ/ԷՆ/ ՍՐԲԱԶԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍՆ ՀԱՅՈՑ ՄԵԾԱՑ ԳՐԻԳՈՐԻՍԻ ՎԿԱՅԱՍԷՐ

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 283—284 (ժԳ դ.)*

*Թ՛արգմանեցաւ Պատմութիւն սրբոյ և փառաւորեալ հայրապետին* Գրիգորի Աստուածաբանի *ի հինգ հարիւրորդի յիսներորդի (1101) թուականութեան մերում, հրամանաւ նախասացեալ սուրբ վկայասէր կաթողիկոսին* Գրիգորիսի, *ի յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց և ազգի իւրոյ, ղոր և մասնակից արասցէ Քրիստոս Աստուած և բազմերջանիկն* Գրիգորի Աստուածաբանի։ *Այլ և դուք, ով սրբասնեալ մանկունք եկեղեցւոյ, զնոյն մաղթեցէք և ի յիշատակարանէ ընդաւրինակագրաց մի պակասեցուցանէք զյիշատակն նորա։*

*Ով հայր սուրբ ըստ Աւետարանին և տէր վարդապետ,, զհրամայեալս ըստ կարի իմում յանկ հանի, զոր և դու իջանելով ըստ իս, ընկալ գթածաբար և զսխալանսն ուղղեա վարդապետաւրէն։*

Զ*Աբրահամ* *հոգելից ծերունի յիշեսջիք ի Տէր Քրիստոս։*

*Այլ եւ* զ*Ստեփանոս* *հոգեւոր որդի նորա զստացաւղ գրոյս յիշեսջիք ի Տէր*[1]։

---

[1] *Ստեփանոսը ձեռագրի ստացողն է, իսկ Աբրահամը, Գ. Հովսեփյանի կարծիքով, կապված է թարգմանության ժամանակաշրջանի հետ (Յիշատակարանք, էջ 284, ծթ. 1)։*

## 170
## ՎԱՐՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՒՀՒՈՅՆ ՊԱՐԱՍԿԵՒԵԱՅ, ՈՐ ԿՈՉԻ ՈՒՐԲԱԹ

Երևան 7357

534բ Թարգմանեցաւ ճառս աստուածախօս պատմութիւն սրբոյ կուսին Ուրբաթի ի լաղին լեզու է, որ է ֆռանգ, ի հայ լեզուս, ի ձեռն սրբազան և աստուածահաճոյ Վկայասիրի Գրիգորի կաթողիկոսի, որում և ընդ սրբոց վկայիս և նա ընկալցի ի յաւուր բաժանմանց զմասն կենաց[1]։

## 171
## ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑՆ ԽԻՂԱՄԲՈՆՈՍԻ ԵՒ ՂԱՄԲԵՈՒՀԵԱ ՃԳՆԱՁԵԱՑ ՎԿԱՅԻՑՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Երևան 1522 (ԺԲ գ.)

226ա Յամի հինգհարիւրորդի յիսներորդի երկրորդի (1103) Թուականիս Հայոց, թարգմանեցաւ վկայութիւն սրբոցս այսոցիկ ի յունականէն ի մերս, ի ձեռն Գրիգորիսի Վկայասիրի սրբազան կաթողիկոսի Հայոց Սեծաց, զոր եւ Աստուած պսակակից արասցէ սրբոցս, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 172
## ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԵԱՆ ՍՐԲՈՒՀՒՈՅՆ ՎԱՌՎԱՌԱՅ ԿՈՒՍԻՆ ԵՒ ԵՐԱՆԵԼՈՅՆ ՅՈՒԼԻԱՆԵԱՅ

Երևան 2825 (1352 թ.)

470բ Զթարգմանող և զյաւրինող զպատմութեան սրբոց վկայիցս՝ զտէր Գրիգորիս Հայոց կաթողիկոս յիշեսջիք ի սրբամատոյց յաղաւթ ձեր։

---

[1] Գրիգորիս Վկայասերը, 1102 թ. գրել է. «Վասն Զատկին մոլորութեանն» (Պողարյան, Ցուցակ, Դ, էջ 534) «Ի թուականութեանն Հայոց ՌԾԱ (1102), ի սուրբ Զատկէն մոլորեցան Ժ ազգ հաւատացելոց, եւ Հայք եւ Ասորիք միայն մնացին հաստատուն, եւ Հոռոմք եւ Ֆռանկք հետեւեցան Իոփոնին, որ արկանէր զտումարն յայրելի Ե (հինգն) եւ զկրումն լուսնին հանդիպեցուցանէր ի տանն Ղազարու, զոր Հայք եւ Ասորիք, եւ Եբրայեցիք արկանէին յայրիելի Զ (վեցն) որ հանդիպեցուցանէր ի տանի Ծաղկազարդին։ Ցորժամ ժողով արարին եւ զԻոփոն ոչ կոչեցին, եւ նախանձնեալ ընդ նոսա, եւ եկեալ գաղտ առեալ՝ ըզվեցն հինգ արարին վասն

## 173
## ՃԱՇՈՑ ԳՐԻԳՈՐԻ ՎԿԱՅԱՍԻՐԻ

*Ն. Ակինյան, Հետազոտություններ, Ե, էջ 296—299 (1230 թ.)*

*Հեղինակ՝* Գրիգոր Վկայասէր

ա

Այս ինչ կայ  գիրս.

*Եւ այս է յիշատակարան տաւնից տէրունականաց եւ սրբոց Աստուծոյ, ցուցմամբ աւուրց Հոռոմի ամսոց, ըստ իւրաքանչիւր սրբոց՝ հանդիպմամբ չարչարանաց կատարման, եւ կամ ըստ խաղաղական ելից հանգստեան մարտիրոսաց եւ հայրապետաց սրբոց, որք հաճոյացան Աստուծոյ, նեղ եւ անձուկ ճանապարհաւն Քրիստոսի։ Զոր ես* Գրիգորիս *ծառայ Աստուծոյ և դիտապետ* Հայաստան *ազգիս, համարձակեալ վասն սիրոյ վկայից Քրիստոսի, յաւելի ի նախակարդեալ տաւնըսն Հոռոմի ամսոց, ընտրեալ ի Տաւնամակաց յոքունց զսակաւս, որ ի բազմաց անփոյթ էր լեալ։ Եւ մեք աշխատեալ զայսպիսի համառաւտահաւաք Տաւնամակս դրեցաք ի պայծառութիւն եկեղեցւոյ, զոր ցանկ ընթերցցի ի նմա ի ժամու սոսկալի պատարագին, զոր մի ոք աւելորդ վարկցի՝ զորոց զվարս քաղաքավարական պատմութեանց, զոր ոչ գոյր առ մեզ հայ դրով, մեք աշխատութեամբ թարգմանեցաք ի յունականէն ի մերս գիր և բառ։*

*Վասն որոյ աղաչեմ սրբովք վկայիւքս զամենեսեան առ հասարակ, մի անփոյթ առնել զմեր արէտանջ երկս աշխատութեան, այլ ընդաւրինակել գաղափար և գրելով պահել յամենայն սուրբ եկեղեցիս, եւ անխափան առանց յերկուանալոյ կատարել զկանոն. ընթերցուածիս ի տաւնս յիշատակի սրբոցն։ Եւ որ ոք գրէ զգիրս զայս, աղաչեմ գրել ի գլուխս գրոցն և զդոյզն բան յիշատակի մերոյ, եւ աղաւթիւք յիշել ի Քրիստոս զարարող գրոցս։ Եւ զ*Գրիգորիս *համանուն իմ եւ համազգի, որ եւ գրիչ եւ յաւրինիչ գրոցս, յիշեսջիք ի Քրիստոս. եւ որք յիշեքդ՝ յիշեալ լիջիք աւրհնութեամբ ի Տէր եւ ողորմեա։*

բ

*Գրիչ՝* Կիւրակոս

*Ես* Կիւրակոս *տրուպ գիտնական եւ անարժան ծառայ Աստուծոյ, ծանուցանեմ ձեզ վասն սուրբ կտակիս՝ Տաւնամակի եկեղեցւոյ սրբոյ եւ աստուածայնոյ յիշատակի։ Որպէս գիտէքդ ի սկզբանէ հաւատոց մերոց, մեր ուղղադաւան ազգիս Արամեան, որդիացեալք աշակերտութեամբ Սրբոյն* Գրիգորի *աստուածանման* Լուսաւորչին *մերոյ, համաւրէն ամենայն սրբովք, որ եղեն յազգս մեր հաճոյ Աստուծոյ, զայս գրոյ եկեղեցւոյ անփոյթ արարին վասն ժամանակին, եւ մեծ եւ աս-*

---

*որոյ յամէն ՂԵ (95) ամ մոլորին Ցոյնք ի Զատկին։ Ցայնժամ դասք քահանայից, որք էին ի քաղաքն Ուռհայ, ազդ արարին տեառն* Գրիգորիսի Վկայասիրի՝ *Հայոց կաթողիկոսի, եւ նա գրով ձեռին իւրոյ հաստատեաց զնոսա անշարժ (կ/ե/ալ ի հաւատս ուղղափառութեաննս։*

տուածային տամն Խաչի կամ Աստուածածնի, վկայիցն եւ սուրբ Հայրապետացն, Հարցն եւ ճգնաւորացն եւ կուսանացն վկայիցն, անճառավոր եւ անկատար եւ անյարմար լինէր առանց այս գրոց։ Ապա Հոգւն Սուրբ ազդեաց սուրբ Հայրապետին Գրիգորիսի աստուածասիրի եւ վկայասիրի, եւ նոր սկսեալ յաւրինեաց զսա՝ ըստ ամենայն տաւնից արժանապէս ի դէպ սաղմոսիւք եւ ընթերցուածովք աստուածախաւսիւք։

Բայց ոչ ի գլուխ աւարտեաց զամենայն՝ զոր պարտ եւ արժան էր տաւնելոյ։ Ապա ինձ, որ միշտ ընդ նմա էի, եւ յամենայն իրս աստուածայինս կցորդ եւ յորդորիչ, եւ փոյթ յաշխատութիւն Հոգեւորաց եւ Աստուծոյ սիրելեաց, հոդ եդ ի վախճանելն իւրում մի անփոյթ առնել զսմանէ, այլ յանկել ընթերցուածովք ըստ արժանին, զոր եւ արարի։ Զի հարկ եդեալ է մեզ յԱստուծոյ տաւնել զսոսա։

Եւ է այսպէս. քառասուն եւ վեց տաւն սուրբ Հայրապետն կարգեաց, եւ երեսուն եւ տրուպս յաւելի, որ լինին եւթանասուն և վեց, զորս բոլոր տարւոյն բաւական համարեցաք ընթերցուածովքն եւ մարտիրող(ոդ)աւքն։ Իսկ եթէ տարւոյ աւուրքն չլինին բաւական, զի է տարի որ զերկոտասնալուսին լինի. եւ է որ երեքտասան. եւ տաւնքն կարճ տարին յաւելուն՝ դուք զերկուսն ի մի տաւնեցէք. Դ. եւ Դ. եւ այսպէս զընան ի գլուխ տարէք, զի ըստ հաւատոց մերոց եւ տաւնքն սրբոցն պարտ է որ կատարին։ Իսկ զի սկիզբն ի սրբոց և աստուածասիրաց գրեցի, զի մի հայիցիք ի ծոյլ եւ յորովայնամոլ կրաւնաւորսն, եւ ընդ նոսին կորընչիցիք ի կենացն Աստուծոյ, այլ սրբոց նմանել՝ մեծ փափագմամբ տաւնեսջիք։ Մեք զընթերցուածքն առատապէս որիշ որիշ եդաք ըստ ամսոյն, զի մի աղքատ եղիցի կարգք եկեղեցւոյ։

Հարկ եւ հրաման ունիք յԱստուծոյ, զսակաւ յիշատակարանս խրատու ի գիրսն՝ զոր նորոգիցէք յաւրինակել, որպէս եւ զհոգեւոր տեառն յիշատակ ի նոր գիր. եւ ի վերայ ամենայնի զմեղ զերեքեանս ի նոյն, զսուրբ Կաթողիկոսն, եւ զհամանուն կարեւոր իւր Գրիգորիս, եւ զիս զԿիւրակոս յիշեսջիք առաջի Քրիստոսի ի սուրբ խորհրդին, եւ ի խորոց սրտէ խաղաղութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ. եւ նոյն ինքն Յիսուս Քրիստոս ամենեցուն ողորմեսցի եւ արժանի արասցէ արքայութեան երկնից, որում փառք յաւիտեանս։

## 174

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՑՆ ՄԱՄԱՍԱ ԾՆԸՆԴԵԱՆ ԵՒ ՍՆԸՆԴԵԱՆ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՆՈՐԻՆ

Երուսաղեմ, 1 (1419), Պողարյան, Ցուցակ Ա, էջ 27

Յաւրինեցաւ ճառս պատմութեան սրբո վկայիս Մամասա, մասնաւոր ինչ ըստ հնոց աւրինակաց, և բովանդակն ըստ նոր թարգմանութեան սրբազան կաթողիկոսին Հայոց Մեծաց տեառն Գրիգորիսի Վկայասիրի, զոր և պսակակից սրբոյս արասցէ Քրիստոս։

ՇԾԹ 1110

## 175

### ՎԱՐՔ ԵՎ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ՀՕՐՆ ՕՆՈՓՐԻՈՍԻ ԱՆԱՊԱՏԱԿԱՆԻ, ԶՈՐ ՊԱՏՄԵԱՑ ՍՈՒՐԲ ՀԱՅՐՆ ՊԱՓՆՈՏԻ

*Երևան 3208 (ԺԷ դ.)*

151բ *Ջնորոգող և թարգմանիչ սրբոյ պատմութեանս զտէր* Գրիգոր *Հայոց կաթուղիկոս*[1], *յիշեսջիք ի Քրիստոս։ Եւ թարգմանեցաւ ի թուականութեանս Հայոց ՇԾԹ (1110) ամի, (յ)աշխարհիս* Եգիպտացոց, *ի փառս ամենասուրբ Երրորդութեանն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

## 176

ՇԿ 1111

### ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7739 (1001 թ.)*

*Նորոգող՝* Անտոնի որդի Եղիազար

014բ *ՇԿ (1111) թուականիս Հա[յ]ոց վերըստի[ն] նորոգէցի զԱւետարանս զայս, որդի* Անտոնի Եղիազար[1] *քահանա։ Արդ, բարէխաւս ունիմ զձեզ զամէնէսեան, որք կարդայք զԱւետարանս, յիշէսցիք զմեզ ի Տէր մաքրամատոյց յաղաւթս ձեր եւ Քրիստոս զձեզ յիշէ յիւր հանդերձել դատաստանին։ Ընդ որում փառք յաւիտեանս, ամէն։* Եղիազար:

---

[1] *Այս կաթողիկոսը Գրիգոր Վկայասէր կաթողիկոսի քեռորդին էր։*

[1] *Այս, ինչպես և վերջին բառում անունը գրված է «Եղիւ»—պատվագրված։*

# 177

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6763

Հեղինակ՝ Կիւրակոս
Գրիչ՝ Գէորգ

Վայր՝ Դռազարկ

ա

20ա Գիր յիշատակի Աւետարանիս
Կամաւքն Աստուծոյ Հաւր կենդանւոյ եւ կարաւղի յամենայնի եւ միածնի
Որդւոյ իւրոյ կենարարի մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ կենդանարար եւ
երկրպագելի Հոգւոյն սրբոյ[1], ես՝ Կիւրակոս ի վերջ հասեալ գիտնակա-
նաց, մեղաւոր եւ անարժան ծառայ Աստուծոյ ցանկացող եղէ այսմ
լուսայիղծ եւ կենսակիր կտակիս, եւ ետու աւարտել Գէորգայ գրչի,
ի ստոյգ եւ յ[ը]նտիր գաղափարէ Սրբոյն Սահակայ Թարգմանչի, յստակ
եւ ականակիտ, որպէս եւ ի Փրկչէն ասացան, զոր յոյժ բաղձանաւք
եւ յօգնատոչոր տենչանաւք, մեծաւ աշխատութեամբ ստացայ զսայ ի
20բ լուսաւորութիւն մանկանց եկեղեցւոյ եւ ‖ յիշատակ ինձ եւ ծնաւղաց ի-
մոց եւ ամենայն բնաւ ղարմից կենդանեաց եւ ննջեցելոց։
Արդ, ո՛վ սուրբ հարք եւ ճգնաղգեաց կրաւնաւորք եւ առաքելա-
գումար դասք քահանայից, յորժամ վայելէք ի քաղցրաճաշակ եդեմա-
տունկ վտակաց քառառաջեա հոսանաց կենդանական աստուածախաւս
աւետարանական բանիցս, մանաւանդ յորժամ բառնայք ի ժամ սոս-
կալի պատարագին, յորժամ խաղան ի վերուստ յողչոյն ձեր իջանելով
ղաւրք հրեշտակաց, եւ սքողեալ ահիւ խառնին ընդ ձեզ, յայնժամ նո-
վին սուրբ Աւետարանաւդ եւ միջնորդական կենարար հ[րա]շիւք սուրբ
պատարագին, յիշեսջիք զստացողս սորին ողորմութիւն գտանե[լ] յա-
21ա հեղ աւ[ու]րն համառաւտի // ընդ ամենայն սուրբս ի Տեառնէ մեր-
մէ Յիսուսէ Քրիստոսէ։
Գրեցաւ սուրբ Աւետարանս ի հրեշտակակոփ մենաստանիս Դռա-
զարկիս առաջի Սուրբ Աստուածածնիս, ի սուրբ եղբայրութեանս ի մի-
ջիս, ի ՇԿԲ (1113) թուականիս Հայկականեան ազգիս, ի թագաւորութեանն
Յունաց Աղէքսի երկարենակի, եւ ի կաթողիկոսութեան Հայոց Բա[ր]սղի,
եւ յաջորդի նորուն Գրիգորի, ի փառս Քրիստոսի։

---

[1] Առաջին պարբերությունը գրված է կարմիրով։

## Բ

## Աղերսական բանք եւ մաղթականք վարդապետիս առ սուրբ Աւետարանս

*Հեղինակ՝* Կիւրակոս

*Ո՜վ Հրաշափառ եւ երջանիկ երկնաւոր Հրեղէն դասուն զարմանալի,*
*անըմբռնելի ծոցածին Հաւր բան եւ Համազոյգ Հոգւոյն կամաւղի, որ ի*
*ստորինս աստ իջեալ ընդ մեղաւորս խաւսեցար, եւ կալով առաջի*
21բ *քո մեղաւորաց առ քոյդ սիրոյ սրբեցան։ ‖ Քանզի եւ ընդ պոռնկին*
*կարգ բանի եգեալ բարւոյ ի բաց ոչ մերժեցէր, եւ զՔանանացին ան-*
*Համարձակ դիմաւքն ածեր ի լրութիւն Հաւատոյ, եւ ղկարկամեալն*
*կանգնեցեր, վասն զի Աստուած գոլով իմ Յիսուս, քղանցիւք զքանցեալն*
*յարենէ բժշկեցեր, եւ զոքանչին Սիմովնի զառժամայն փրկութիւնն*
*Հասուցէր, առատ աղբիւր՝ առ Սամարացին Հոսեալ, Հեղցիս յանար-*
*ժանս ծառայս քո* Կիւրակոս *ղդթութեանդ վտակս, եւ մի տար Տէր,*
*դատ ընդ ծառայի քում, որ ոչս արդարանամ, այղ մաղթանաւք մաւր*
*քո, Քրիստոս, ղմեղաց իմոց զլուծն խորտակեա, եւ քաւեա զիս զյան-*
*ցաւորս, որպէս զի ջնջան ամաւթոյ մեղաց գտից զվտակս արտա-*
22ա *սուաց, եւ // կացից ի դասուն քո Քրիստոս Աստուած մարդասէր։*
*Եւ զոր անաւսր լումայս եւ նուր<ր>բ խերեւէշս մատուցի, Տէր ընդ*
*այրւոյն ընկալ, զի առ քեզ եւ ի քեզ ետու զի[ս], եւ իմոյ կենացս*
*փրկանք դու ես, Քրիստոս Աստուած իմ, որ աւրՀնեալ ես ընդ Հաւր*
*եւ Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս, ամէն։*

## Գ

28բ *Զստացիչ սրբո Աւետարանիս* զԿիւրակոս *սու[ր]բ վարդապետ*
*յիշեսջիք ի Քրիստոս։*

## Դ

102բ ԶԿիւրակոս *տիեզերակալ եւ գերաՀռչակ գիտնական զստացող*
*կենսա[կի]ր սուր[բ] կտակիս յիշեսջիք ի Տէր։*

## Ե

145բ *Քրիստոս Աստուած շնո[ր]Հաւոր արասցէ զսուրբ Աւետարանս*
*սուրբ վարդապետին* Կիւրակոսի, *ամէն*[1]*։*

---

[1] *Վերջին երեք Հիշատակագրությունները գրված են ավետարաններին նախորդող խաչերի շուրջը շրջանակների մեջ, կարմիր ներկով։*

*Ձեռագիրն սկզբում ունի 18 թերթերի Հանդիպակաց էջերում նկարված խորաններ, որոնցից առաջին չորսի վրա Եվսեբիոսի նամակն է, իսկ մյուսների վրա Համաբարբառները։ Ամենայն Հավանականությամբ Գևորգ գրիչը նաև ծաղկողն է, ինչպես երևում է Ղուկասի սկզբի խաչի վրայի նկարչի գրած գրչագրի և բնագրի գրչության Համեմատությունից։*

## 178

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՈՑ ԳՐԻԳՈՐԻՍԻ ԱՐՇԱՐՈՒՆԻՈՑ

*Վենետիկ, Մեկնութիւն ընթերցուածոց 1964 թ., էջ 27*

*Ստացող՝* Գէորգ Մեղր
*Վայր՝* Դրազարկ

ԶԳէորգ *տառապեալ եւ տրուպ, զվերջին յորդիս եկեղեցւոյ, ըստա-ցող սուրբ գրոցս, որ բովանդակեալ ունի յինքեան զխորհուրդս տաւնից տէրունկանաց, զոր սրբոց հարցն մերոց ոգեշահ աշխատութեամբ բացայայտեցաւ՝ ի սրբոյն* Գրիգորիսէ *եւ* Յովհաննէսի *իմաստասիրի, եւ* Սամուէլի *վարդապետի, շարադրեցաւ ի քարտիսի։*

*Ով ընթերցող, յիշե[ս]ցի ողորմութեամբ* զՄեղրս *մեղաւոր*[1]։

---

[1] *«Յայսմ աւուր փոխեցաւ ի Քրիստոս սուրբ վարդապետն Գէորգ Մեղրիկն Սևանցի, այր սուրբ և առաքինի, կեցեալ մեծաւ ճգնութեամբ ամս Ծ (50)։ Որ և զամենայն գիշերս կիւ-րակէիցն յոտնաւոր տքնութեամբ անցուցանէր, և զնոյն կարգ հաստատեաց ի Դրազարկն ի սուրբ ճգնարանացսն»։ (Յայսմաւուրք, Հրոտից ԻԴ և Յուլիս Լ)*

*Գէորգ Մեղրիկի մահվան հավանական թվականը 1114-ն է։ Հիշատակարանը դնում ենք այդ թվականի տակ, որպես հնարավոր վերջին տարի։*





## 179

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻ

*Երևան 1347 (133? թ.)*

*Հեղինակ՝* Կիւրակոս
*Գրիչ՝* Ստեփանոս

ա

414ա Յիշատակարան գրոցս ըստ պատշաճի յանգման

*Զաստուածպետական բոլոր գոյութիւնն, թե զի՞նչ երբեք իցէ առ ի յասացելոցն աւրհնաբանի, գեր զրան և անհաս ի մտաց իմանալեացն և ի մարմնաւորաց, իսկ ղնոյն բարերարութիւնն որոշեալ և յայտնեալ ըղձափափագ աղաւթիւք ձեռնարկելի է մաքուր մտաց սրբոց առնլով։*

*Երրորդութիւն գերագոյ, գերագոյնդ Աստուած ե կերագոյնս բարութիւն, քրիստոնէից վերատեսուչ, յաստուածայնոյ իմաստութեանն ուղղեալ զմեզ ի խորհրդականացն ասացելոց, գերածանաւթ և գերաճաճանչ և ծայրագոյն գագաթն, ուրանաւր պարզքն և արձակք և անփոփոխելիք աստուածաբանութեանն խորհուրդք, ըստ գերալուսութեան ծածկեալ, թաքնախորհուրդ լռութեանն մի գոլ։*

*Բայց մեզ ըստ իրիս առաջի կացելոյ, ի զրաւ զաւրեղիս, աստուածախաւս տառիս, գոհութեամբ զամենալոյս աստուածպետական յառաջ ճանապարհացն զգործս աւրհնաբանելի է, վասն զի լոյսն փառաց, Հաւր, էական ինքնաբուն միութիւն, գերակատար ծայրալրութեամբ կատարողական տեսակ բարի, ի նիւթի ոչ տեսակ, մերովս արարչապետութեամբ տեսակ, զմերս բաց երեսաւորեալ անխառն յամենից և մաւտ առ ամենեսեան եկեալ խոնարհութեամբ ի մարմնի միացեալ, որով կատարեալ զտնաւրինականս, և վերստին արարչագործեալ զազգս մարդկան, ի փառս աւրհնաբանութեան երկրորդական դասուցս Որով ընտրեալ զընտրեալսն ի սկզբանէ, կենարար բանիւն և զաւրութեամբ մեծապայծառ լուսազգեացս արարեալ, վերակարգէ ի փառազնատեսակ կառուցման ի հոյլս ժողովրդոց գլուխս, որոց և զաստուածածանաւթ զաստուածագործ անունն, վերակոչեալ առաքեալս ինքեան պարգեւատուի, առաքեցելոյ փոխանորդս կացուցանէ, խոստանալով աւետեաւք զգալուստ ի նոսա աստուածպետական հոգւոյն։*

414բ *Արդ նոքա զաւրացեալք || ի բանէն աստուածագործ հոգովն լցեալք, տախտակք աստուածագիրք և արձանք բանաւորք աստուածատեսակք եղեալ, լուսոյն ճշմարտի կայարան գտեալք և թագաւորեալք ի լոյս*



10—1180

ընթացան լուսով ընդ տիեզերս, արեգակունք արդարութեան եղեալ աս-
տուածային կենարար բանիցն և աստուածագործ նորոգատուր Հոգւովն
լցին զընդհանուրս, հալածեցին զխաւար և բարձին զմոլորութիւն յաշ-
խարհէ, փախուցին զժանգն սատանա, ամենայն չարագործ գիւաւքն,
փշրեցին զպատկերսն սատանայի, զոր պաշտէին մարդիկ, և զճենճերս
շարաւահոտս, գարշելիս երեւեցուցին, սրբեցին զամենայն տիեզերս ի
մեղաց, ստացան մարդկան հոգի և միտ նորս և մարմինս ժուժկալս և
անմեղս և միանդամայն ասել, զերկիրս երկին արարին և զմարդիկ
ընդ հրեշտակս խառնեցին, գործելով զմեծամեծս քան զոր փրկիչն
արար ըստ նորուն խոստմանն։

Եւ ևս առաւելեալ անունակիրն անաւթն ընտրութեան քան զամե-
նեսեան գործս և ի բանս, յարևելս և յարեւմուտս, ի հիւսիսի և ի
հարաւ, ընդ ամենայն տեղիս ելից զԱւետարանն։ Վասն որոյ և երա-
նելի աւետարանիչս աստուածաբան Յովհաննէս, մականուանեալ ի փրրկ-
չէն Որդի Որոտման, դեր զընաւս և զյաւիտեանս անցեալ որոտալիր
հնչմամբ ի հայրականն սրտէ առեալ, Հոգւովն քննաւղ զխորս Աստու-
ծոյ, զանծան իմանալեացն և զանգիտելին բոլոր սեռի բանականացս,
ելից գոչմամբն զերկինս և զերկիր զերեւելիս և զաներեւոյթս, որով
ծանոյց ամենայն ընդհանրական եկեղեցւոյ սկիզբն և զպատճառ
փրկութեան ամենեցուն։ Զորոյ զհանգամանս ի սոյն սուրբ տառիս է
դիտելի համաւրէն աստուածասէր անձանց, որ կամին զկեանս իւ-
րեանց գտանել, և հանդիպին սմա սիրով և աղաւթիւք առ Տէր բա-
նալ զաչսս սրտից։

Ուստի եւ երանելին Յովհան Ոսկեբերան, հետեւաղն առաքելոց,
415ա զվարդապետականն գործ ի ձեռն առեալ, որ համազոյգս ընդ բնաւ//ա-
խաւս տառս Աւետարանին խաղացեալ գա ըստ որում եւ Տէրն մեր ի
վերջնում անաւրինական ժամանակիս զուսուցչապետականն առնելով
յանձն, թե մակարդեալ անուն թե եմ իսկ, զորոյ ձեւ բերեալ յինքեան
սորա լոյս ի լոյս յաւելեալ, աղբիւրաբար բղխեալ, լնու զընդհա-
նուր եկեղեցիս ուղղադաւան հաւատացելոց, մաքրելով զոգիս ամե-
նեցուն ի քրէական ծանունց ծառայականաց։ Որով աստուածայաւրս
ի զաւրս աստուածատեսս արժանացաք անծան դիմաց քատակիւ հա-
սանել, գեղապատիւ գաղափարութեամբ առ սարսափելին ներմար-
դութեամբ, անշատ խառնութեամբ միաւորիլ, որում աստուածաբանս
բանին աներեւակի կրական զմերս ցուցեալ փառաւք փանաքիս այսմ
տաղտկալի և քակտելի տաղաւարիս, տարան կենդանետղ գտեալ լիա-
պատար հոգւով, ոգեալ զերեք սրբեանն աւրհնաբանութիւն։

Վասն որոյ և ևս վերջացեալս ի գործառութենէ երկափրութեան,
ժամանելոցն ի գործս և ի բանս աստուածատուրս, տարտամ հետե-
ւաղս աշակերտութեամբ քեզ, ով տէր իմ, տէր, աստուածակիր լու-
սափայլութեամբ լցեալ Յովհան, և տեսեալ զքոյսդ աստուծունակ
պայծառութիւն և ծիա[ծա]նածաւալ ծաղկազուարճ, երանգախումբ
իմաստայիղձ գիւտս բանի, զարթուցեալ և զթափեալ ի դանդաղմանէ

և ջանիւ մեծաւ և անկիրթ արհեստիւ, բաղում տաժանմամբ աշխատեալ
վերստին ստացայ զքեզ գրաւորութեամբ։
Քանզի շնորհեալ շահատակումն ի խոյզս մանրորոն, սիրակար-
կաչ սաղապս իմաստութեան, խնդիր արանց աստուածաբելոց, զի ի
խնդիրս երկասիրաց յանգ առկայեալ կայ կուտակս գաղտակրականն
մարգարիտ, որ է նոյն ինքն բան, բանատու բերան բացունողաց և
ընկալողաց զհոգի կենդանախարուկիլ, դի սա է պանծալի պատուակա-
նութիւն, յորմէ յորդորմամբ յառաջատածի բերկրական խրատ և բա-
նալի ականչաց սրտից. Ասաց որ ասացն. Ստացիր իմաստութիւն և
զհանճար և զրեալ ի սեամս սրտի և արկ մանեակ սափիրական,
փառս փայլակիրս և գեր զմեծութիւն հանուրց քան զհոսանս ոսկւոյ, որ
և պատէ պետականաւն զշաւիղս, ուղեւորեալ անսայթաք, զարքունա-
կանն անստերիւր հորդել, պողոտայ, և զականակիտն սրբամաք[ու]ր
շափիղայի և գոյն վճիտ սառնատես պետին պատուանդանին ան-
նրկուն կարկառէ տեսումն, և ճրագ ճերոտաց դիմաց դիմառնութիւն
գնէ, սլացմամբ սարսափելեաւ, սաւսինաթաք սաւառնելեացն, քա-
ռիցն հայկայկակից ընդ լծակցութեամբն ներշրջանապտոյտ պակուց-
մամբն ահեղասպա գնդին, երիւք եռակետն թեւաքն պարածածկու-
թիւն ի թնդմանէ առ նոսայն, թերաքամ գիտնականութեամբն եղեալ և
լենդացեալ պարիւն պակչելեաւ յոլորտս ցանկասփիռ տափականու-
թեամբն, բազմաբերձն ձաւնիւք աչացն յանհունն, անշունչ շարսն շըր-
տուցեալ, ջանան անջնջելի զհայեցուածսն կացուցանել հանդէպ կանով-
նի վերտառութեանդ գիտի, ուստի և զանգիտանալն խոստովանաբար
բերէ բանն բարեբանական ասել, Աւրհնեալ են փառք Տեառն ի տեղ-
ւոջն իւրմէ։
Զայսոսիկ գերազանց լրութիւն լնուս յայնցանէ յանտեսութենէ ովա-
շարժ հայր մեր և ուսուցիչ հանուրցս Յովհան, քան զի դու հոգիակրով
կարեկցեալ մերումս ախմար արհեստականութեանս և տեսութեան, սուրբ
և փառազուարճ, նմանեալ Տեառն մերոյ Քրիստոսի և նորին աշակեր-
տացն, զորոց զգործս ի ձեռն առեալ և բացեալ ետուր մեզ և ամենայ-
նիւ նորոգելով զբնութիւնս մեր հրեշտակակրաւնս արարեալ վերա-
թռիչս կացուցեր, նոյնպէս տեսակաւորեալ գերահրաշափառունակու-
թեամբ զբազմացն հանդիսացար կարգս, ուղղածեցար յաջորդումն նա-
խաթոռոցն, ազգապետիլ քահանայապետութեամբն և սաւառնացելոցն
416ա հնչմանց զկցորդութիւն աւրհնաբանութեանցն, // առբերելով փողագոչ
երգս, զի ղգովեստականսն քո առ աստուածութիւնն, ուղղափառ հաւա-
տըդ և բանքդ քո վերառոցէ ի հանդիպումն երեսացն Աստուծոյ, և քո բազ-
կատարած աղաւթաբուղխ պաղատանաւքդ զստորանկեալս յոտս քո վե-
րամբարձեսցես ամենաթագաւորին Քրիստոսի։
Վասն որոյ ատտանաւր անդլակի յար[ա]կացո[յ]ց ի քարոզ ճըշ-
մարտութեանն, բան տեսողացն. ահա ժամանակ հաճելութեան, ահա
աւր պարղատաւղ ի հանդիսական մրցարանումս բերձաբերիլ ի ստորեւ
կենացս, ընդ երկնաթռիչսն հանդիպել դաս սրբազանս կառուցանել
իմոյ անձինս վարս, նմանել արքայազուն բանակացն գործակցաւղ,

*յարատեւ զոլի լուսափայլն ճեմարանին բոտ սրբա;ան բանին. եթէ Գիտակցեմ զիմսն և գիտիմ յիմոցն։ Եւ որ պաշտեցեալն, անդ և պաշտելին, ընդ նմին միաՀամեացի, ընդ որս եղիցի ինձ և ամենեցուն, որ սիրեն զքեզ ե պաՀեն զբանս քո, բացա[ք] երեսաւք փոխակերպիլ փառաց ի փառս Համարձակաւտես լինել փառաց մեծին Աստուծոյ ե փրկչին մերոյ Յիսուս Քրիստոսի, ընդ քեզ ե ընդ ամենայն սուրբս։*

*Այդ և դուք, ո՜վ սուրբ մանկունք եկեղեցւոյ Հրեշտակերամ լուսաձիր դասք կրաւնաւորաց, որք էք ընդՀանուրս առկայտցեալ ե ունիք փոյթ աշխատաժիր կրամից զտանել առաջակաց և սիրով սրտի ծարաւեալ ոգւով դիմէք ի սուրբ պատուիրանս, ի գիտել ե յառնել կամ առնել աւրինակ ի նորակերտել, ի խորոց սրտէ, մաքուր մտաւք ե բազկատարած պաղատանաւք Հայելով առ Աստուած, յիշեցէք զամենատրուպ և զբազմամեղս զ*Կիրակոս*, որ բազում աշխատեցայ ի սայս, սակս անյարմար և խրթնի թարգմանութեան Հռետորին յունականի, որ և ջանացի յերիւրել միայն, ոչ յաւելուլ ե ոչ պակասեցուցանել յաստուածաշունչ բանիցն։ Իսկ եթէ ի վեր դոլով սորայս մակացութիւն ե պակաս ինչ կամ այլատարաղ եղեւ, աղաչեմ ;լինել մեղադիր, զայս*
410բ *գիտելով, թէ ոչ ի ծուլութենէ կամ յաւփոյթ // առնելոյ եղեւ, այդ յանՀուսութենէ Հատակոտոր թարգմանելոյն։ Բայց ըստ իս ոչինչ պակասեցուցեալ ի ճշմարտութենէ, ուստի ե զսիալանոն անտես առնել Աստուծոյ եղբայրական սիրով զիջեալ ըստ իս, աղաւթեցէք ի վերայ վշտացելոյս, ներքին և արտաքին պատերազմաւք։*

*Այդ և զանգիտ Հայկազանցս զլուսաւոր մարգարտիս զպատճառն զերանելի* Լուսաւորչին *մերոյ զփոխանորդ* զԳրիգորիս, *զՀոգեւոր Հայր մեր և զխնամածու յիշեցէք ի Տէր, վասն զի նա եղեւ սկիզբն զսուրբ Աւետարանիս Մեկնութիւնս գրելոյ ի գիրս յայս, ի ձեռն բազում աղաչանաց իմոց զինքն զերանելին, որ և լուեալ ինձ ըստ աստուածասէր և պատուիրանասէր Հոգւոյ իւրոյ, սկիզբն ետ առնել թարգմանութեան նախ յասուրւոյն լեզուէ, ե քանզի շաղփաղփ այլատարաղ գոյ լեզուն ասորի ի մերս Հայկազանցս արամեանս ազգ և լեզու, ըստ որում վերստին իմ աղաչանս ի ձեռն առեալ վկայասէր ոգւոյ, ի յունականէ առնել զթարմանութիւն գերաՀրաշ ճառիցս և աստուածախաւս բանիցս, աստուածարան աւետարանչիս ՅովՀաննու Մեկնութեան, ի ձեռն Հոմանուն երանելի պատրիարգին* Կոստանդնուպոլիսի, *տիեզերակեցոյց աշխարՀալոյս վարդապետի,* Ոսկեբերանն *կոչեցելոյ մականունութեամբ, որպէս վերագոյնդ առ նա արարեալ իմ* Կիւրակոսի *զբանս մաղթանաց, վասն զի յարմար գոյ յունականն բարբառ ի մերս ըստ թարգմանութեանն։*

*Արդ ունկնդիր եղեալ ինձ՝ թողեալ* զԱնդրէաս *երէց ասորի զթարգմանիչ, յղէ ի* Միսապատամն *գաւառ առ յունականն Հռետոր* Թէոփեստէ *կոչեցեալ, որ էր քարտուղար և պռոյնաւոր իշխանին* Առաւն *կոչեցելոյ, և բազում ծախիւք առատատուր պարգեւաւք նմա ետ թարգմանել զսուրբ գիրսս։ Եւ արդ, նա ի Քրիստոս փոխեալ երանելի կեանսն,*

բաղում ճառք մնացին անթարգման, յոր ես ձեռնարկեալ նոյնպէս ա-
417ա ռատարար || ծրիւք զմնացեալսն եռու ավարտել Նմին առնւ

Եւ է ճառիցս թիւ, զոր Նորոգի ի յայտ ածաք, յիսուն և հինգ ճառ, բանզի զերեսուն և զհիսն բազում յուղիւք առաջին մերոց թարգմանչացն գտաք թարգմանեալւ Ի սկզբանն տասն և երեք ճառ յասորի լեզուէ, բանքն իսկ ցուցաննւ Իսկ քսան ի յունականէն, որ են երեսուն և երեք ճսու Բովանդակն էր լեալ գիրքն թարգմանած ի հայս, և ի ծուլութենէ և յանփոյթ առնելոյ այլքն կորուսեալ եղծեալ էին յաւրինակս հինս, ուր և կայր, և այս, զոր գտաք ի յախմար և ի աղէտ խաւարած գրագրերոյ այլայլած եւ թիւրած էր բանքն և տունքն և աւելի և պակաս, անաւգուտ ի կարդալոյ և յիմանալոյ, զոր իմ Կիւրակոսի տիպի և անարժանի ի ձեռն առեալ ուղիղ յաւրինակի ըստ կարի, այլ ըստ մտաց բանիցն և այլ ի կրկին աւրինակաց, և ըստ այսմ զնորոգ թարգմանելս բազում ջանիւ և աշխատութեամբ յերիւրեցաք յուղիղն բառ և բանս ըստ մերումս զհատակոտոր և զխրթին բանսն, և ըստ վերագոյն գրելոցն ոչ աւելի և ոչ պակասւ

Արդ այսպէս գրեցաք և տուաք վերջին աւուրց վերջին գարուս, յորում ըստ կանխասացութեան փրկչին և առաքելոց նորա՝ չար և գժընդակ են աւուրքս. սատանա թագաւորեալ, սէր և հաւաք և ճշմարտութիւն բարձեալ ամենայն մարդկանէ, քանզի բոլոր տիեզերք գնացին զհետ սատանայի, և որ անհաւատութեամբ, և է որ հերետիկոսութեամբ, և է որ մեղաւք, յոր թաւալեցան առ հասարակ և մերս ազգ, հաւատաւք և կարգաւք ուղիղ և գործաւք ըստ բանսարկուին կամաց հետեւեալք և հեռացեալք յերկնաւոր կոչմանէնւ Նախ բարձրացեալ յերկրէ աշտիճանաւ կրաւնաւորք և քահանայք, ընդ այլ չարահաւատ ազգս նախանձեալ ի մարմին զարձան և ի կամս նորա, աւտարացեալք ի կոչմանէն Քրիստոսիւ

417բ Այլ և յանիշխանութեան գոլով տիեզերք, քանզի || կարծեալքն իշխանք ի սուր և յաւեր դարձան յիրեարս, ևս և որ թագաւորք անուանէինւ Եւ մեք ի սոյն աւուրքս աշխատեալք նորոգեցաք զսա և տուաք ի յիշատակ աստուածասէր եղբարց սրբոց, թերեւս անձանց և բազմաց աւգուտս գործիցեն, որ և հովացեալք և ցրտացեալք եղեն բնաւք ի պատուիրանաց Աստուծոյ և ի սիրոյ գրոցւ

Զայս գրեցաք, զի որք ընթեռնուցուք իմացեալք զմերս և զսուրբ դիտապետին ջանս, ըստ այսմ ի փրկչէն հայցիցէք զողորմութիւն նորաւ

Ընդ որս և զսուրբ վարդապետն մեր զԳէորգ յիշեսջիք, զդիտապետն Հայոց, զհովիւն բարի և զգաստ և մարդասէր հոգին, որ վերստին ծնաւ զմեզ ի Տէր բանիւն կենացւ

Եւ զերէց աւուրբք և խոհականութեամբ զեղբայրն մեր և զանդրանիկ մերոյն կրթավարժ և հրահանդայիղձ աշակերտութեան զքրիստոսազգեացն զԳէորգ մականուն Սեղր կոչեցեալ[1], յիշեսջիք ի Քրիստոսւ

[1] «Վասն զի յորդորիչ եղեւ մեզ ի սկզբանն եւ թեյազիր ի կատարմանս սորա», № 1315 ձեռագրում պահպանվել է այս և հաջորդ՝ ծթ. 2 հատվածըւ

*Եւ ես ղծնաւղսն իմ զհանգուցեալս ի Քրիստոս[1] յիշեսջիք աղաւթիւք։*

Բ

Գրիչ՝ Ստեփաննոս

*Եւ որ զգիրքս գրեցի հրամանաւ սուրբ աստուածարեալ վարդապետիս* Կիրակոսի, *որում յիշատակարանս է և բովանդակ գիրքս յաւրինեալ և յարմարեալ ըստ տանց և ըստ ամենայն արհեստից պատշաճեալ, դիւրահաս ընթերցողաց և լսողաց, թեպէտ և խոշոր է գիրս, և անարհես և ախմար գրիչս։ Բայց աղաչեմ յիշել ի սուրբ մաղթանս զբազմամեղս* Ստեփաննոս *կոչեցեալ և զեղբարս իմ, որպէս զի աղաւթիւք ձեր և ամենայն Սրբոց հաճոյացելոց Տեառն ի սկզբանէ, գտցուք միաբան արժանաւորք կենացն յաւիտենից ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, ընդ որում Հաւր և ամենասուրբ Հոգւոյն փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Էր թիւ ի սկզբանցն արարչութեանց ի մեղ, ՑՇԼԶ (6536) ամ, իսկ ի կենարար գալստենէ ՌՃԺԹ[1] (1119) ամ, իսկ ի Խոսրովայն Պարսից սկսեալ մերս թիւ ըստ ամաց ՇԿԶ (1117), իսկ ըստ աւարտման առաջին շրջանին ՇԼԲ (532) նորս սկսեալ շար ամաց ԼԴ (34) ամ։*

418ա *Այլ և զաղաչանս իմ վերջին ընկալջիք սիրովն Աստուծոյ։*

*Ջկնի վախճանի իմոյ տւմ և տայ Աստուած ի ձեռն իմ զսուրբ գիրս զայս, մի արգելցէ տալ զսա աւրինակ՝ ով և կամեսցի գրել, զի տարածեսցի և մի ի մի փակեսցի խաւսքս Աստուծոյ, և որք գրել տայցեն, գրեսցեն և զյիշատակարանս զայս բովանդակ ի նմին, և մի հատցեն ի սմանէ բան մի։ Եւ որք զերկու խնդիրս զիմ կատարեսցեն, գրեսցէ զնոսա Աստուած ի դպրութեան կենաց։ Իսկ որք ստունգանեն, մի՛ գրեսցէ զնոսա Աստուածտ գիրն կենաց յաւիտենից։ Եւ Տէր Աստուած աւրհնեալ եղիցի յանբաւ յաւիտեանս, ամէն։*

*Մինչ զայս գրեցի թիւ նոր տումարիս ամաց ԼԷ (37) էր ընդ հինդ հարիւրիւ երեսուն և երկուցն ի սկսմանէ՞։*

---

1 «Եւ ես զծնողս իմ, հանգուցեալս ի Քրիստոս, որպէսզի աղաւթիւք ձեր եւ ամենայն սրբոց հաճոյացելոց Տեառն՝ ի սկզբանէ գտցուք միաբան արժանաւորք կենացն յաւիտենից ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, ընդ որում Հաւր և ամենասուրբ Հոգւոյն, փառք եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն»։

2 Գրված է «բ», պետք է լինի «թ», որպեսզի համապատասխանի հաջորդ թվականին։

Յիշատակարանքում (էջ 809—813) Գ. Հովսեփյանը բնագիրը հրատարակելիս տողատակում բերում է 1315 ձեռագրի տարընթերցվածները։ Քանի որ 1347-ը ավելի հատվածներ ունի, բերում ենք միայն այն։

## 180
## ՃԱՌՔ ԳՐԻԳՈՐԻ ՆԱԶԻԱՆԶԱՑՒՈՅ

Ն. Ակինյան, Հ. Ոսկյան, Ցուցակ, Զմմառի, 517, էջ 121

Վայր՝ Սամշուլդէ

130ա Ի ՇԿԶ (1117) թուականիս գրեցաւ մատեանս, ուրինակեալ վասն կարեաց իմոց, որ կատարեալ է ի յաշխարհս Վրաց, մերձ ի յամուրն կոչեցեալ Սամշուլդէ։

Փառք երրեակ միակին մշ[տ]ընջենաւորի եւ անստացականի եւ միայն բարւոյ երեքսրբենւոյ յաւետ անեղին եւ առաջնոյ բնութեանն, այժմ եւ ղամենայն յաւիտեանս։

Այլ, եթէ խիստ գիտնաւորն ես՝ եպերանս մի դնել, զի աստուածաբան է։ Վկա են ինձ սուրբ, որ ժամանակս չէր գրոց. թողութիւն շնորհեցէք և Աստուած հասարակաց ողորմեսցի[1]։

---

[1] Հիշատակարանը ներկայացնում ենք Լ. Խաչիկյանի ընդօրինակությամբ, որ կատարել է տեղում։ Վերը նշված Ձեռագրացուցակում այն տպագրված է բազմաթիվ թյուրընթերցումներով. ինչպես «մատեանս ուրինակեալ»-ի փոխարեն «վատթարս ուրինակս», և «կատարեալ է ի յաշխարհս Վրաց»-ի փոխարեն՝ «վտարեալ էի յաշխարհս Վրաց» և այլն։



ՇԿԷ 1118

## 181
## ՅՈՎՀԱՆՆԻՍԻ ՈՐԴԻՈ ՄՈՒՇԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ

*Երեւան 1214*

*Հեղինակ եւ գրիչ՝* Յովհաննէս
որդի Մուշի
*Վայր՝* Մարմեա գեւղ

207ա *Փառք ամենասուրբ Երրորդութեանն, անբաժանելի եւ անքակելի*
*միութեանն, անիմանալի եւ անհասանելի իմաստութեանն, Հաւր և*
*Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն այժմ եւ միշտ. եւ յաւիտեանս յավիտենից,*
*ամ[էն], որ արժանի արար զանարժանս դրել զաստուածախաւս ղտա-*
*ռըս որբոյն Եսաեա մարգարէին, առ որս եւ համարձակախաւս եղեալ*
*քան զամենայն մարգարէսն, ի քառահոլով շրջմունս արեգակնածագ*
207բ *փայլողութեանն, ծաղկերանգ վոյելչութըյամբքն, // գունագեղ գեղեց-*
*կութեամբն զտեսողսն հրճուալից ուրախութեամբ առ լնու համիք եւ*
*հոտովք խրախացուցանելով, որք ի բաց եղեալ զաշխատութիւնս մարմ-*
*նոյ ընդ ծայրս լերանց ճեպեալ, եւ ի հովիտս դաշտացն քայլայեղ ա-*
*րագութեամբն ժամանեալ, միահաւաք խրձնեալ զընտիր ընտիրսն ի*
*գոյնս եւ ի հոտս զանուշակսն բերեալ մատուցանեն քաջ սիրելեացն*
*եւ հարազատ ընդանեացն, կամ ճոխաղանցն թագաղարմեա զարմիցն,*
*զի եւ յոլովագոյնք են յարմատոյ բուսոցն, որք ըստ բժշկական ար-*
*հեստիցն՝ ախտից են փարատիչք եւ ցաւոց մերժիչք։ Այսպիսի աւրի-*
*նակաւ եւ իմ ի բաց եդեալ զաշխատութիւն մարմնոյ եւ միահաւաք*
*խրձնեալ զանուշակս ծաղկանց, որ ցանգալի է ինձ, քան զոսկի, եւ*
*քան զականս պատուականս, եւ լուսատու, քան զլոյս արեգական։*

*Արդ սուրէնք Տեառն աւրինաւորացն են խնդրելիք, եւ որպէս վե-հագոյն է ոգի քան զմարմին, նոյնպէս եւ լուսաւորութիւն մտաց ա-ռաւել գերապատուեալ գերազարդիցն ոգւով, քան զս[տ]որա[ք]արշ մարմնասիրացն հոգածութիւնս առողջութեան։ Արդ մեծի եւ հղաւրիս Եստեայս երջանկութեան երկնաբերձ բարբառ աւետաքարոզ ազդմամբ բոլորազանց ազգեալ բարձրաքարոզ Նորոյ Սիոնի՝ յութնակ շրջագա-յութեանն տէրունեանն աւուր։*

*Արդ՝ ես* Յոհաննէս *մեղաւոր եւ անպիտան կրաւնաւոր, որդի* Մու-շին *եւ աշակերտ սուրբ վարդապետին* Թադէոսի, *որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, որ մեծաւ ցանկութեամբ ի խնդիր եղէ ծած-կեալ զանձիս Եսաեայ, որով նախ Իսրայէլեանն պայծառանայր ժողո-վուրդ աղաւտատեսիլ խորհրդածութեամբ, եւ ըստ յաջողելոյն Աստու-ծոյ հանդիպեցան ինձ երկոքին հատածքն. զոր լուսաւոր բացայայ-*

208ա առութեամբ մնկնեաց Յոհան Ոսկեբերանն, // եւ լցի ղծարաւ իմ, ես ինքն իւրովի Համառատեցի ըստ իմում կարի, ի նուաստ նիւթ՝ վասն աղքատութեան, ի խոշորագիր՝ վասն տկարութեան։ Եւ վասն զի պակաս եւ թերի էին բանք բարբառոյ Հոգիաղարդ առն Եփրեմի[1] վասն զի նման մարգարէիցն խաւսեցաւ ղմարգարէսն նոյն Հոգւով կարճառատ վերաքաղլութեամբ, արդ, իմ խառնեալ եւ եդեալ առ միմեանս ղրանս երկուց լուսատու արեգականցն Յոհաննու եւ Եփրեմի։

Արդ որք ընթեռնուք եւ լուսաւորիք ի սուրբ մարգարէէս եւ ի լուսաւոր բանիցս սուրբ վարդապետացս, վասն տգեղութեան գրոցս մի յիմոցս զիս դատապարտեք, այլ ըստ քո բարի կամացդ ասա թէ՝ Տէր Աստուած. թող ղգրողին մեղքն եւ ողորմեայ նորա Հոգւոյն ի քո գալստեանդ, ամէն։ Արդ, որ այսպէս ասէ, աւրՀնեալ լիցի յամենակալ Տեառնէ Աստուծոյ։

Եւ գրեցաւ ի ՇԿԷ (1118) թուականիս Հայոց, ի գեւղս որ կոչի Մարմետ, ընդ Հովանեաւ սուրբ գերեզմանի վարդապետին Թադէոսի, ի Հայրապետութեանն տեառն Դաւթի Հա[յ]ոց կաթողիկոսի ի Վասպու-[րական]² յորում կայր եւ այլ կաթողիկոս ի ներքին երկրին, մերձ ի յԱնտիոք: Արդ, եթէ ո՞ր ճշմարիտ է կամ ո՞ր սուտ, ղայն Աստուած գիտէ։ Եւ ի բռնակալութեանս աղդիս Իսմայելացւոց, յորում ամի եղեւ նշան[ք աՀ]ագինք յերկնէ եւ յերկրէ եւ յաւղոց, կարմրանալ երկնից ի դոյն արեան, եւ թաւթափումն աստեղացն յայտնի տեսլեամբք, եւ շարժմունք մի ղմիոյ կնի եւ մեռանել սուլտանին որ կոչէր Տափար՝ առն բարեբարոյ եւ խաղաղարարի եւ շինողի աշխարՀի։ Եւ ապա ղկնի այնր յառնել աղգ յաղգի վերա, եւ թագաւորութիւն ի թագաւորութեան

208բ վերա, // ասպատակել անաւրէն աղգին Իսմաելի, որ կոչի Թուրքման եւ մականուն Խարամիր[3], ի գեղապանծ գաւառս Վասպուրականի, եւ ըստ վաղուց սրջացեալ եւ Հնացեալ կատաղութեանն իւրեանց, ղոր ունին ի վերա խաչապաշտաց, նորոգեալ ի վերա Տոսպ գաւառիս, զբաղումս անողորմաբար եւ սու ի պաշտաման մատուցանել կոտորեցին, թերեւս թոյլ տալով Աստուծոյ, վասն զի ոչ ամենեքեան, որ յԻսրայելէ են, նոքա Իսրայէղեանք իցեն։ Բայց ղառաջիկայն չգիտեմք, թէ զինչ է լինելոց, ղոր գթացեալ որդին Աստուծոյ պաՀեսցէ խաղաղութեամբ ղեկեղեցի իւր սուրբ եւ փրկեսցէ յայս ի բաղում եւ յանՀուն տարակուսանացս, որ եմք յանտանելի ՀարկապաՀանջութեան եւ յառի եւ յաւարի՝ բարեխաւսութեամբ Սուրբ Աստուածածնին եւ ամենայն սրբոց եւ կամարարաց իւրոց. Նմա փառք յաւիտեանս, ամէն[4]։

---

[1] Մոտ կես տող ջնջված է։

[2] Գրված է տողի վերևում, փակագծում առած մասը կտրվել է լուսանցքի հետ։

[3] Սրբագրողը սկզբի «խ» տառը վերցրել է շրջանակի մեջ և նրա փոխարեն վերևում գրել «Ղ»՝ «Հարամիր» կարդալու համար։

[4] Գրված է շղագրախառը բոլորգրով, շատ տառեր, ինչպես ջ, չ, ց, յ, շ, պ և այլ գրված են և՛ բոլորգիր, և՛ գրչագիր։ Բոլորգրերը նստած են տողի վրա։ Կետադրության նշանների գործածությունը ինքնատիպ է։ Հիշատակի ինքնագիրն է և միակ հայտնի օրինակը։

ՇՀԲ 1123

## 182
## ԱԻԵՏԱՐԱՆ

*Տեր-Մովսիսյան, Համառոտ ցուցակ, Աւետարանք, էջ 46—47*

Հեղինակ՝ Ներսէս Կլայեցի

ա

*Որ ի Հաւրէ ծնաւ Որդին միածին,*
*Նախ քան ղաւիտեանս ծնունդն առաջին,*
*Սուրբ ի յանբիծ կուսէ ծնեալ է չափով,*
*Ժամանակաւ երկրորդ ծնունդ է*[1]
*Կատարեալ Աստուած եւ մարդ է արդար,*
*Ի հաւրէ՝ անմայրս, ի մաւրէ՝ անհայր*[2]։
*Ի յանմարմնոց անուն փրկչին է Յիսուս,*
*Ի մարմնաւորաց օծեալ է Քրիստոս։*
*Գոյութեամբ եւ էութիւամբ ընդ Հօրն մի է,*
*Ոչ օտար ի բնութենէ Աստուծոյ Որդի է։*
*Որպէս արեգակն ճառագայթ և լոյս,*
*Այսպէս ի վերուստ եղեալ առ տուր կոյս։*
*Իւսմամբ Սուրբ Հոգոյն մարմինն կաղմի,*
*Հոգի և միտք համանգամայն անթերի։*
*Լոյս ի լուսոյ աշխարհի յայտնի է արագ,*
*Անարատ գառն Աստուծոյ եղև պատարագ։*
*Անմահ Աստուածն մեռանի,*
*Վասն Ադամայ նախաստեղծին։*
*Կամաւն Հօր իջեալ յաշխարհ,*
*Յիսուս Քրիստոս ազատայար։*
*Է սա դրեալ ամս քանիս*
*ՆՀԲ (1023) թվականիս*[3]։

---

[1] *Այստեղ մի բառ պակասում է։*

[2] *Քրիստոսի Հայր Աստվածը կին չունի, Մարիամը նրա կինը չէր, որից ծնվեց Քրիստոսը։ Մոր՝ Մարիամի ամուսինը Հովսեփն էր, բայց Քրիստոսը Հովսեփից և Մարիամից չծնվեց, այլ Սուրբ Հոգուց և Մարիամից, ուստի՝ անհայր։*

[3] *«Հին ոտանավոր է՚» նկատում է Մ. Տեր-Մովսիսյանը և ծանոթագրում. «Հիշատակարանից և հնից արտագրված հիշատակարանից, գրված ոտանավորով, կարող էր տեղիք տալ կարծելու, որ այս ձեռագիրը Ներսես Կլայեցու—Շնորհալու ձեռագիրն է, որի ծննդյան տարին 1153 թվականն է (սխալվել է. մահվան թվականը 1173-ն է—Ա. Մ.)։ Թե ո՞վ է այստեղ հիշված Կլայեցին, մեզ անհայտ է՚։ Մ. Տեր-Մովսիսյանը գրության մասին ոչինչ չի ասում։ Հնարավոր է, որ ՆՀԲ-ն եղծված է, և որ նախօրոք գրված է եղել ՇՀԲ—1123 թ., որովհետև ձեռագրի նկարագրությունից երևում է, որ այն ավելի ուշ շրջանի հուշարձան է.*

Բ

*Թվիս Հայոց ՆՀԲ (1023)։ Ես Ներսէս Կլայեցի, ծառայ Յիսուսի Քրիստոսի։*

Գ

*Ես* Ներսէս Կլայեցի *ծառայ Յիսուսի Քրիստոսի։*

## 183

## ՀԱԽԱՔԱՏՈՒ

*Ջմմառ 204, Քեշիշյան, Ցուցակ, էջ 494—495*

*Գրիչ՝* Թադէոս

*Վայր՝* Դրազարկ

Խրատք Նւագրի

*Փառք երից անբաւից... եզաբուն եռանձեան Աստուածութեանն պատիւ այժմ եւ յանծերանալի յաւիտեանս ամէն, արդար եղիցի, եղիցի։*

*Յամի Շ. որդի Հ. երորդի Երկրորդի (1123) թուաբերութեանս Հայոց, ես նուաստ քահանայ* Թադէոս *ցանկացաւղ եղեա աստուածախաւ մատենի սրբոյն* Եւագրեա *միայնակեցի միայնգամայն եւ վարդապետի, եւ դրեցի զսա մեծաւ ջանիւ եւ աշխատութեամբ ի լեռնապատ անապատիս, որ անուն* Դրազարկ *յորջորջի, առ ստորոտով մեծի լերինն* Տաւրոսի, *որ է մերձ յանմատոյց ամուրն, որ յոմական լեզուաւն* Կոպիտառայ *անուանի։ Զի որպէս Հռովմայեցւոց քաղաքն ունելով զերկուս արեգակն զՊաւղոս և զՊետրոս, նոյնպէս եւ* Անապատս *այս ունելով զերկուս լուսաւորս պգերակայ վարդապետն* Կիրակոս *եւ զմականուն վարդապետն արքայեցի* Գրիգոր *կոչեցեալ երկոքին քաջք եւ առաքինիք, առաքինութեամբ անհաս եւ գիտութեամբն զերիվերոյ քան զամենեսան, զոր եւ մեր սիրող եղեալ աստուածային գրոյս եւ սուրբ վարդապետս զաւրինակս շնորհեաց։ Ստացայ զաստուածաշնորհ եւ զպատուական եւ զծաղկալից բուրաստանս, որ ունի ամբարեալ ի գաւիթս ծոցոյ անծկութեան իւրոյ զվսեմական գանձունակ ոսկէնման բանք սրբոց մարգարէիցն եւ զառաքելոցն, մանաւանդ եթէ զնոյն ինքն Տեառն բանն որ է տէր առաքելոց եւ մարգարէից, եւ այլ զիւր զգուշաւոր խրատն, զի այս են պատուիրանք որ լուսաւորեն զամենայն հոգի, մանաւանդ զայնոցիկ որ լսեն եւ ի միտ առնուն ըստ այնմ զոր առաքեալ ասէ. Ոչ եթէ լսելիք արդարասցին այլ առնելիք։*

---

*ա Հաստ, բամբակե թուղթ... գեղեցիկ. հին բոլորգիր. զարդագրերով սկսված չորս գլխավոր էջերն ունեն խորաններ և ամբողջովին գրված են զարդագրերով, զգեստավորյալ եպիսկոպոսի և երկու անգամ Ստեփաննոս Նախավկայի պատկերը, նկարված են կարմիր, թափանցիկ թղթի վրա, միայն ոսկով նկարված։ Այս ամենը կարող էր Ներսես Կլայեցու ժամանակի գործ լինել, ոչ թե ՆՀԲ (1023), այլ ՇՀԲ (1123) թվականի, որին կհամապատասխանի նաև բանաստեղծության արվեստը, գրված պատանի Ներսեսի ձեռքով։*

Զսայ ստացայ յիշատակ ինձ եւ ծնողացն իմոց, եւ եղբաւր իմոյ եւ առաջնորդի տեառն Յովհաննիսի՝ ընտրեալ քաւշապետի, ի յիմ արդար վաստակոց՝ արձան յաւիտենական առաջի Աստուծոյ եւ մարդկան. զի սովորութիւն է աշխարհասիրացն, որ այդի հնարս գտանեն վասն կենցաղոյս յառաջանալոյ, նոյնպէս եւ մեզ պարտ է հնարս գտանել վասն հանդերձելոցն, զոր զսա գտայ դեղ եւ փրկութիւն անձին իմոյ, ուսումն մանկութեան եւ վայելս կենաց իմոց։

Արդ ով սուրբ հարք եւ երանեալ ճգնաւոր եւ բազմութիւն կրաւնաւորաց, որք լսէք ի սմանէ կամ ընթեռնոյք եւ կամ ուսանիք ի սմանէ եւ կամ ընդաւրինակէք, յիշելոյ զանարժանս արժանի արարէք եւ մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ, զի թերեւս ողորմեսցի Որդին միածին յիւրում զալստեանն, յահեղ աւուրն համաւրաւտի, որ աւրն է մեծ եւ երեւելի ի վերջնումն գիշերի, զի սովորութիւն է որ կենդանիքն վասն ննջեցելոցն աղաւթս առնեն, զի նոքա այլ չունին ակնկալութիւն եւ ապաւէն՝ բայց միայն զաղաւթս կենդանեաց եւ այդ բաւական է. եւ որ զմեզ յիշէ՝ ինքն յիշեալ եղիցի ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, նմա փառք յաւիտեանս ամէն, ամէն, ամէն։

184

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՅԱՂԱԳՍ ՎԱՐՈՒՑ ԵՒ ՍՔԱՆՉԵԼԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ՍՐԲՈՅՆ ՊԱՐՍԱՄԱՒՈՒ

*Երևան 2680 (1378 թ.)*

*Հեղինակ՝* Շմաւէլ

ա

120բ Ես Շմաւէլ նուաստ և յետին քահանա ի բազում գրքոյ գրեցի զվարս երանելւոյն Պարսամաւի, և զբազում նշանաց զանց արարաք, վասն զի յայտնի են վարք երանելւոյն և նշանք ընդ ամենայն տեղիս։ Այլ այս այնչափ գրեցաւ, զի հաւատասցիք և աւրհնիցէք զԱստուած, որ այնչափ փառաւոր առնէ զսուրբս իւր։

բ

*Թարգմանիչ՝* Գրիգոր

*Վայր՝* Մելիտինէ քաղաք

Թարգմանեցաւ Պատմութիւն երանելւոյն, ի թվականիս Հայոց ի նորում շրջանի յամի քառասներորդի առաջներորդի (1125)[1], հրամանաւն տեառն Գրիգորի Հայոց կաթողիկոսի, ի մայրաքաղաք Մելիտինի, ընդ հովանեաւ Սրբոյն Գրիգորի, ձեռամբ Գրիգորի մեղապարտ կրաւնաւորի, բարեխաւսութիւն ինձ և ի փառս ամենասուրբ Երրորդութեան, յաւիտեան եւ յաւիտենից յաւիտեանս։

[1] Թվականը նշված է Սարկավագադիր տոմարով։ Առաջին մասը Պատմության հեղինակի հիշատակարանն է, որ թարգմանիչը պահպանել է։ Մատենադարանի № 1522 ձեռագրում նույն պատմությունն ու հիշատակարանն ընդօրինակված են որոշ տարբերություններով, իսկ Շմավել անունը փոխարինված է Գրիգոր անվամբ։

## 185

## ՀԱՆԴԻՍ ԲԱՆԻ ՎԱՍՆ ԵՐԱՆԵԱԼ ԱՌՆՆ ԱՍՏՈՒԾՈՅ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ ԿԵՆԱՑ ԵՒ ՄԱՀՈՒԱՆ ԵՒ ԱՅԼՈՑ ՍՐԲՈՑ ՀՈՒՊ ՅԱՅՆ ԺԱՄԱՆԱԿՍ

*Երևան 2680 (1378 թ.)*

*Գրեցաւ ի բաղմացն սակաւ պատմութիւնս ընտիր արանցս, զըկնի երիցս երանեալ ամենեըջանիկ վարդապետին* Սարկաւագ, *զոր պատմեցաւ յոմանց դիտողաց, թէ մինչ սկիզբն առնէր ի մէջ գիշերոյն աղաւթից, ի խցկանն իւրում, ճառագայթ լուսոյ եւ հրոյ ընդ լուսանցոյցս խցին եռանդմամբ արտաքս հեղոյր անսպառապէս։ Եւ այսպէս բարւոք կացեալ ի ժիր մշակութեան, չոգաւ առնուլ զվարձն ի յաւերժականն ժառանգութեան, եւ եդաւ ի հանգստարանի սրբում ի Հաղբատ, որ սընաւ և վարժեցաւ ի փառս Տեառն և Աստուծոյ։ Թվին Շ[Հ]Ը (1129)*[1]*։*

---

[1] *Թվականը գրված է «ՇԸ» (1059), որ չի կարող լինել։ Կողքին լուսանցքում ավելի ուշ գրությամբ գրված է ՇՀԸ (1129), որը Սարկավագի մահվան թվականն է։*

*Հովհաննես Սարկավագը սրբագրությամբ արտագրել է մի շարք երկերի ձեռագրեր. ա.* Կիւրղի Երուսաղեմացւոյ կոչումն ընծայութեան. *«Գրեցի փանաք գրով յրնտիր եւ յաղնիւ օրինակէ, զոր* Սարկաւագ *բահանայ՝ սպասաւոր սուրբ կաթողիկէի մեծի, որ յ*Անի*, ի բազմաց օրինակաց ի ձեռն եւ այլոց գիտնականաց, զօգտակարսն առեալ հաւաքեաց ի մի դիր և շարադրեաց իւրով ձեռամբ, ի դիւրալուր մտաց եւ գիտութեան.» (տես՝ սատ. էջ 400)։*

*բ.* Սաղմոսարան. *«Բայց սաստիկ ծունցաւ ճշգրիտ բանքդ ի ձեռն անփութութեան գրագրաց և քաղութեան ուսումնաւորաց, կոր վերահասու եղեալ մեծ իմաստասէրն Հայոց հոգեխառն վարդապետն սուրբ* Յովհաննէս *մականուն* Սարկաւագ*, որ ի գերահռչակ սուրբ ուխտն ի* Հաղբատ *և գտեալ ի յարդեղս սուրբ վարդապետացն և թագաւորաց թարգմանչագիր Սաղմոսարանն, եւ պարապեալ ի յայնմ աւուրս բազումս, ի լոյս էած ծածկեալ եւ երաց զխցկեալ աղբւսրն, և ցրուեաց ընդամենայն սահմանս* Հայաստանեայց *դաւրինակս դայսս» (Մատենադարան. ձ. 10182, էջ 243բ—244ա)։*





## 186

## ԵՂԻՇԷԻ ՎԱՄՆ ՎԱՐԴԱՆԱՑ ԵՒ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

Երևան 4515, Փիրղալեմյան,նշխարք..., էջ 9

Գրիչ՝ Յակոբոս

Վայր՝ Տլուճ գաւառ

Գրեցաւ յիշատակարանս քաջին Վարդանայ և սրբոց ընկերաց իւրոց և սրբոց քահանայիցն և աշակերտաց նոցին և նախարարաց Հայոց, որք նահատակութեամբ և հեղմամբ արեան իւրեանց, հերքեալ կործանեցին գզրադաշտական մոլորութիւնս և եղէն վկայք Քրիստոսի Աստուծոյ, որոց աղաւթիւք և բարեխաւսութեամբ ողորմեսցի Քրիստոս Աստուած հայր Սամուէլի որ ընտրեալ աւրինակս շնորհեաց և բազում սատար եղեւ գրոցս։

Եւ ես անպիտան և վերջին ի գրչաց, սրտաջան աշխատութեամբ, ըստ կարի իմոյ գրեցի և կատարեցի զսա աւգնութեամբ և շնորհաւք Սուրբ Հոգւոյն։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան յիշեսջիք զգծողս, որ բազում մեղաւք վիրաւորեալ եմ ի սատանայէ, եւ արտասուաւք պաղատիմ ամենեցուն, ողորմեցարուք ինձ բանիւ առ Աստուած, յիշելով զծնողս իմ և զեղբայրիկն իմ, որ սակաւ ժամանակաւ յառաջ ի մահ կոչեցաւ ի Տեառնէ, և բարեխաւսութեամբ այս սրբոյս և ամենայն սըրբոց ողորմեսցի Քրիստոս Աստուած մեզ և ամենեցունց առհասարակ ի գալստեան իւրում, ամէն։

Էր թուականն Հայոց ՇՀԹ (1130) ի բռնակալութեանն Փռանգաց կոմսին Ճաւլենին: Բայց գրեցաւ ի գաւառս Տլուճ կոչեցեալ ի վանքս Պաւղոսի, ընդ հովանեաւ սուրբ Զաւրավարիս և յառաջնորդութեանն սուրբ հաւրն Սամուէլի:

## 187

## ՃԱՌԸՆՏԻՐ

Վենետիկ 205, Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 155—156

Գրիչ՝

Վայր՝ Մաշկեւորի վանք

ա

Որք ընթեռնուք եւ լուսաւորիք զնուաստ գրիչս ի բարի յիշատակեցէք, եւ Աստուած յիշողացդ ողորմեսցի, ընդ նմին եւ զստացող սորա

*ղ՛այր* Դաւիթ *եւ զբեռին իւր, որ եւտուն զրել մեծաւ փափագմամբ եւ յաւժարութեամբ սրտիւ, որում տացէ Տէր պարգեւս բարիս եւ վարձս բազումս գտանել ի Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ որում փառք եւ պատիւ յաւիտեանս, ամէն։ Եւ զեղբայր նորին (այսինքն* Դաւթի) *ա*Գրիգոր, *որ ի Քրիստոս է փոխեցեալ, յիշեցէք ի Տէր։*

**Բ**

*Ըզստացող գրոցս ըզհայր* Դաւիթ *եւ ամենայն ժառանգաւոր ուխտիս* Մաշկեւոր *վանացն յիշեսջիք յաղաւթս ձեր, ով պատուելի մանզունք Սիոնի սրբոյ։*

**Գ**

*Քրիստոս Աստուած քո սուրբ եւ առաջին վկայիս բարեխաւսութեամբ եւ ամենայն սրբոց, շնորհեա յարութիւն կենաց հաւր* Դաւթի *եւ ամենայն եղբարց* Մաշկեւոր *անապատի եւ բազմամեղ գրողի սորա, եւ ծնաւղաց իւրոց ամէն, ամէն։*

**Դ**

*Տէր Աստուած ողորմեա հաւր* Դաւթի *եւ ամենայն եղբարց* Մաշկեւորիս *եւ մեղապարտ գրողիս*[1]*։*

---

[1] *Բ. Սարգիսյանը գտնում է, որ «Ձեռագիրս ամբողջապես Դավթի հոր վանահայրության ժամանակամիջոցին գրված է հավանորեն, այսինքն յամին 1116—1130»։ Դնում ենք 1130 թվականի տակ, որպես հնարավոր վերջին ժամկետ։*

## 188

## ՎԱՐՔ ԵՒ ՔԱՂԱՔԱՎԱՐՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅ ԲԱՐՍԱՄԱՅԻ

*Երուսաղէմ 3152, (1384), Պողարյան, Ցուցակ, Թ, էջ 385—386*

*Թարգմանիչ՝* Ներսէս Շնորհալի

*Այս Պատմութիւն երանեալ ճգնաւորին Քրիստոսի Բարսամայի, նախ լինելով թարգմանեալ ի հոյակապ եւ ի հռչակաւոր մայրքաղաքն Հայոց* Մելետինոյ, *հրամանաւ եւ ծախիւք մեծին* Գրիգորիսի *կաթողիկոսի եւ վկայասիրի, ի ձեռն* Գրիգորի *ուրումն քահանայի. եւ քանզի դեռ եւս ըստ ասորոց չաղափաղփ եւ ծամածուռ, անյարմար եւ աշխարհաւորէն բանիցն գոյր, եւ ոչ ըստ մերոյին աղին սիղարայից. պայծառ եւ յոգնապաճոյճ բանից, յաղագս որոյ հրաման հասնեալ առ իմս նուաստութիւն, որ ոչ ըստ արժանոյն կոչեցեալ* Ներսէս *ի գերահռչակ եւ ի վսեմական տեառնէ իմմէ, եւ եղբաւրէ* Գրիգորիս, *գոլով նախնոյն մերոյ՝* Լուսաւորիչի *արեանառու աթոռակալի անուանակիր, որպէսզի ձեռն արկեալ ի սմա վերստին փոխարկեցից ըստ մերում լեզուի յարմարութեամբ, ըստ գրեցելում լնուլ զպակասութիւն ... արց, որդւոց։*

*Եւ արդ՝ իմ առեալ եւ առաւելեաւ ի սմա, ըստ այլայլութեան բանի եւ կէտի, մինչ գրի, ոչ գոլ ի սմայ այժմ ի նոցուն անտի, բայց միայն զաւրութիւն բանին, եւ պատմողականն. եւ այս ոչ ըստ ապիկար իմոյ զաւրութեան, այլ ըստ հոգւոյն Աստուծոյ տուչութեան, մանաւանդ թէ ի սիրոյ աստեղ եւ խորագրել։*

*Վասն որոյ պաղատիմք հանուրց եկեղեցւոյ մանկանց, որք միանգամ յաւրինակ առեալ վերըստին դրէք զայս պատմութիւն երանելւոյն, որպէսզի փոքրաբանս զյիշատակարանս գրեցէք իւրաքանչիւր ըստ նըմին, եւ թողութիւն մեղաց հայցեցէք ի Քրիստոսէ առաջնոյն աշխատողաց եւ վերջնոցս։*

*Նաեւ վերջինս այս խնդրողի հոգիանորոգ պատմութեանս՝* Սահակի *վարպետի եւ ծնողաց իւրոց եւ եղբարց, ամենայն հաւատացելոց ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս ամէն։*

*Ի թուաբերութեանն յաբեդական տումարիս ՇՁԶ (1137) թարգմանեցաւ ճառս*[1]*։*

[1] *Նախավերջին նախադասությունը, տաղող* Սահակի *վարդապետինն է, որ մասին է թարգմանության թվականից առաջ։*

*ՇՁԹ* *1140*

## 189

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ԳԷՈՐԳԵԱՅ ԶԱՒՐԱՎԱՐԻՆ

*Երուսաղէմ, 1365, Պողարյան, Ցուցակ, Դ, էջ 645*

*Թարգմանիչ՝* Կիրակոս

*Թարգմանեցաւ ճառս ի յասորի գրոց ի հայս, ի ՇՁԹ (1140) թուիս Հայոց, ձեռամբ* Կիրակոս *քահանայի, որոյ ողորմեսցի Աստուած եւ ամենայն աշխատողացն ի սմա, ամէն։*

## 190

*ՇՂ* *1141*

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ՆԵՐԲՈՂ ԱՌ ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉՆ

*Երևան 1912 (ԺԲ դ.)*

*Խմբագիր՝* Ներսէս

*Վայր՝* Կիլիկիա

*45բ* *Ի թուականիս ՇՂ (1141) թարգմանեցաւ ճառս ի յոմականէն ի մերս, ի ձեռն* Աբրահամու Ղոամարտիկոսի[1], *ի հին եւ եղծած աւրինակաց, իսկ յարմարեցաւ ըստ բանից գրութեան եւ բառի յիմոյ նուաստութէնէ* Ներսէսէ, *հրամանաւ տեառն իմոյ եւ հարազատի* Գրիգորիսի *Հայոց կաթողիկոսի, եւ գրեցաւ* Ստեփաննոսի *գրչի։*

*Արդ, որք ընթեռնուք կամ ընդաւրինակէք, յիշեսջիք զվերագրեալ աշախատաւորս ի սմա, ըստ իւրաքանչիւր անուան՝ ի Քրիստոս Յիսուս։*

*64ա* *Եւ զսակաւս զայս յիշատակի բան գրեսջիք իւրաքանչիւր փոխարկութեան, զի դուք գրեալ լինիջիք ի կենդանի // տախտակսն Քրիստոսի անջինջ յիշատակաւ։*

---

[1] *Այլուր՝ Ղոամատիկոսի։ Հիշատակարանը հանդիպում է նաև այսպես.* Յովհաննու Ոսկերերանի Ներբողեան Յաղագս վարուց և նահատակութեան Սրբոյն Գրիգորի Հայոց հայրապետի:

*Ի թուականութեանս Հայոց ՇՂ (1141) թարգմանեցաւ ճառս ի յունականէն ի մերս, ի ձեռն* Աբրահամու *[ղ]ոամատտիկոսի, ի հին և եղծեալ աւրինակաց։ Իսկ յետոյ յարմարեցաւ ըստ դրութեան րանիցն բառի ի* Ներսիսէ, *հրամանաւ տեառն* Գրիգորի *կաթողիկոսի Հայոց։ (Ն. Պողարյան, Ցուցակ, Ա, էջ 251, 256)։*



ՇՂԲ 1143

## 191

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 4149 (1305 թ.)*

*Գրիչ՝* Ներսէս Կլայեցի

«Յիշատակարան սրբո կաթողիկոսին Ներսէսի Կլա[յե]ցո [ւոս]ա միայն գրեալ վասն պատճառի

189բ *Յետ*[1] *յոքունց ստացուղաց և ղիս յիշեսջիք ի Քրիստոս, զՆերսէս անարժան, զոլով եպիսկոպոս, և եղբայր կաթողիկոսին Հայոց տեառն* Գրիգորի, *որ ստացա*[2] *զսա զնիւք յաւարէն Յունաց ի վանորէից Հայոց, յորժամ եկ թագաւորն Հոռոմոց յաշխարհն* Կիլիկեցւոց, *և առ զնա յիշխանէն* Լևոնայ, *որ էր հայ ըստ ազգի և հաւատոյ։ Եւ աւերեաց զբազում վանորայս և զեկեղեցիս, և զնշանս տերունականս խորտակէին և անհնարին հարուածս ազգի մերում հասուցանէին քինաբար։ Եւ այս եղև ի թուականիս ՇՁԶ (1137)։ Եւ երկրորդ գալ նորին արքայի եղև ՇՂԲ (1143), յորում և վաղշանի առաջի* Անարզաբոյ *և թագաւորի կրտսեր որդի նորին* Մանուիլ *անուն։*

Բ

*Գրիչ՝* Գրիգոր եպիսկոպոս

*Ընդ նմին յիշեսջիք և զ*Գրիգորիս *եպիսկոպոս, զորդի եղեալ եղբայր տեառնս* Ներսիսի, *որ և յետոյ կաթողիկոս Հայոց, որում եւ զայս գիրս շնորհեաց ուսեալ ի նմանէ և վարժեալ։*

## 192

ՇՂԳ 1144

### ՎԱՐՔ ՍՐԲՈՑ

*Մայր Աթոռ, 91*

*Գրիչ՝* Վասիլ Երեց

ա

2ա *Տէր Աստուած ողորմեա* Իշխանին *եւ իւր ծնողացն ի գալստեանն իւրում, ամէն։*

---

[1] *Գրված է լուսանցքում։*

[2] *«Յիշատակարանքում» «ստացա», որը կվերաբերի Գրիգոր կաթողիկոսին, այնինչ ստացողը Ներսեսն է (էջ 356)։*

Բ

7բ Ողորմեա Իշխանին միայնակեցին եւ իւր ծնողացն, ամէն։

Գ

84ա Եւ զանիմաստ գրիչս յիշեսջիք զՎասիլ երեցս, զծոյլս և զանիմաստս յիշեսջիք յարժանաւոր յաղաւթս ձեր և խոշորութեան գրոյս աղաչեմ չլինել մեղադիր, զի այսպես եր կարն մեր, և Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Դ

84բ Տէր Աստուած ողորմեայ Իշխան միայնակեցին և իւր ծնաւղացն, ամեն, և համաւրէն ննջեցելոց իւրոց, և վայելել տացէ Թորոսի որդոյ իւրոյ զգիրքս և Ստեփանոսի:

Եւ զանարժան գրողս յիշեսջիք զՎասիլ քահանայ յարժանաւոր յաղաւթրս ձեր, և ծնողս իմ, զհանգուցեալքն ի Քրիստոս, ամեն, և Աստուած զձեզ ողորմեսցի և մեզ ի գալստեանն իւրում, յորժամ բանք սպառին և գործ թագաւորի, ընդ յաջմէ դասեսցէ, ամեն։

Ե

Հեղինակ՝ Ստեփանոս

84բ Խրատուց պատճառք է: Ստեփանոս

Իմ սնունդն ու ծնունդն ու կեանքն ու տարիք
Եդեսիայ է, ի Միջնագետք, յԱսորիք:
Սև էաք, որ յամրութիւն չէ կարիք,
Իմ ցեղին տունուտեղն է և հա(յ)րենիք։
Հրամա[նա]ւն Աստուծոյ երեկ ժամանակ
Որ եղև Ուռհայ իւր թեմովն աւերակ։
Հեծելաց արձակում ու մեծ փաթերակ
Փռանգաց և Թուրքաց յիրար շահընդակ։
Աստուած տվել էր մեզ անց տուն և տեղ,
Որ չեաք մեք սնիք յոչ որբարու ցեղ։
Բայց երեկ աշխարհիս անչաք չար ու նեղ
Որ ի բուն հիմնախիլ աղաւ տուն ու գեղ։
Վտարութիւն հասաւ, յԱմիթ գնացաք,
Որ չկայ անց քաղաք ի ծով, ի ցամաք։
Հեծելութիւն հասաւ մեզ, անդ գնացաք,
Յազգացն տետաք, տարիք հով ու տաք[1]։

---

[1] Հաչորդ էջից գրությունը փոխվում է, նոր տեղում ձեռագիրը այլ գրչի է հանձնարարվում շարունակելու։

Ստեփանոսի նկարագրած ժամանակը համընկնում է Հալեպի Զանգի ամիրայի կողմից Ուրհայի սոսկալի կոտորածին, որը տեղի է ունեցել 1144 թ.։ Ուստի գնում ենք այդ թվականի տակ, որին համապատասխանում են նաև ձեռագրի հնագրական տվյալները։

Գ

Այլ գրիչ

86բ Զ**Իշխանն** պանձալի հոգով՝ յաղաւթս յիշեցէք և գրիչս անպիտան։

Է

101ա Զ**Իշխանն** ծերունի և զպատուական որդի նորա զ**Թորոս** յիշեցէք ի Տէր Յիսուս Քրիստոս։

Ը

114ա Զ**Իշխանն** և զորդիսն նորա զԹորոս և զ**Ստեփաննոս** և զմայր սոցա յիշեցէք յաղաւթս։

Թ

131ր Զ**Իշխանն** և զիւր ծնողսն, և զամուսինն և զորդիսն յիշեցէք յաղաւթս։

## 193
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետիկ 123 (Թ գ.) Սարգիսյան, Ցուցակ, Ա, էջ 544*

Գնող՝ **Աստուածատուր**

Կամաւն Աստուծոյ ես անարժան քահանայ **Աստուածատուր** գնեցի զսուրբ քառավտակ եդեմաբուխ Աւետարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ և ծնողաց իմոց, ի վայելումն զաւակաց իմոց, ի քահանայէ ումեմն **Սարգսէ**, (որ) **Փոքր** կոչի **Յոհաննես Քուշայկերանցոյ**։ Արդ որք ընթեռնոյք և աւկտիք ի սմանէ, յիշեցէք ի Քրիստոս զհայրն իմ զ**Սարգիս**, և զմայրն իմ զ**Աքարթի**(՞), և զիս... և տրուպ զ**Աստուածատուրս**, ի թվին ՇՂԴ[1] (1145), և ես... երեց վկայեմ, [որ զա]յս գրեցի։

---

[1] Բ. Սարգիսյանը կասկածելով Զ և Շ թվանշանների վրա (ՋՂԴ (1345), թե ՇՂԴ (1145), գրում է, որ գրված է հին բոլորգրով, և «նույնքան հնաձև բոլորգրով», որքան նույն ձեռագրում գրված 1171 թ. մի հիշատակագրություն։ Ուրեմն սույն հիշատակագրությունը ավելի մոտ կարող է լինել վերջինիս՝ ՇՂԴ (1145) թվականին։



ՇՂՁ 1147

## 194

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վիեննա 659, պահպանակ*
*«Հանդէս ամսօրեայ», 1908, էջ 62—63*

*Գրիչ՝* Կարապետ

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Յամի հազարերորդի հարիւրերորդի քառասներորդի իններորդի (1149) Աստուծոյ մերոյ և Տեառն Յիսուսի Քրիստոսի գալստեանն, յորում ամի ժամանէր թիւ շրջագայութեան Յաբեթական տումարիս ՇՂՁ (1147)*[1]*, գրեցաւ սուրբ եւ քրիստոսաձիր կըտակս Աւետարանիս, ի գաւառիս* Միջագետաց *յաստուածապահ եւ ի բազմահռչակ քաղաքս* Ուռհայ, *ձեռամբ իմոյ նուաստի* Կարապետ *նուաստ քահանայի ///, հրամանաւ* Ստեփանոսի *սրբազան եւ մաքրափայլ կրաւնաւորի՝ սպասաւորի Սրբոյ Նշանին, որ է ի* Տովուց *վանսն, մերձ ի սահմանս ամրոցին, որ կոչի* Հռոմկլայ, *որոյ ցանգացեալ հոգեւոր բաղձանաւք այսմ անգիւտ մարգարտիս եւ ամենալաւ աւրինակիս, որ կոչի* Գրիգորի Մուրղանեցւոյ *ճարտարագիծ գրչի, ետ գրել|| ընգանի վղենկաւ ի սակաւակեաց եւ յարգար ընչից իւրոց ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ եւ ի յիշատակ հոգւոց, եւ թողութիւն յանցանաց ինքեան եւ ծնաւղաց իւրոց։*

### Բ

*Ստացող՝* Ստեփանոս

*Ես՝* Ստեփանոս *նուաստս յորդիս եկեղեցւոյ, որ ոչ միայն եմ կրաւնաւոր, այլ եւ ետին քահանայ՝ սնեալ եւ վարժեալ դպրութեամբ եւ ուսմամբ ի նմին վանս, որ նշանակեալս է աստ, ստացայ յԱւետարանս զայս ի յիշատակ հոգւոյ իմոյ եւ առ հաւատչեա պարգեւաց ի Քրիստոսէ ընդունելութեան, ղի ոչ ի յաւելաստացութենէ, այլ կարեւոր արդեանց, զոր ինչ եւ ետ ինձ Աստուած, ծախեցի ի սմին փափաքանաւք եւ յաւժարութեամբ մեծաւ։*

*Արդ աղաչեմք զամենսեան զքրիստոսասէր եղբարս, որք ընթեռնուք և լուսաւորիք ի սմանէ եւ կամ գաղափար առնուք, յիշեսջիք///։*

---

[1] *Հավանաբար սխալ են կարդացել և նշանակել են ՇՂԳ (1144)։ Այնինչ Ջ-ի դեպքում միայն կհամապատասխանի փրկչական թվականին, որ միշտ երկու տարվա տարբերությամբ է տալիս Հայկականի հետ։*

## 195

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետիկ 159, Սարգիսյան, Ցուցակ, Ա, էջ 680*

Գրիչ՝ Կարապետ Ուռհայեցի

211բ *Ձմեղապարտ անձն* Կարապետի Ուռհայեցւոյ *անարուեստ գրչաւորի ի Քրիստոս աղաւթիւք յիշեսջիք եւ գուք յիշեալ լիջիք։*

## 196

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետիկ 179, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 748*

Գրիչ՝ Յովհաննէս

Վայր՝ Ծով

249բ *Յամի վեցհարիւրերորդի (1151), Արամեանս տումարի, ի հայրապետութեան տեառն* Գրիգորիսի *Հայոց հեղինակի և եղբաւր նորա՝* Ներսիսի. *եւ ի բռնակալութեան միջերկրեայս* Մելիք Մասուտին՝ յԻսմայելէ *եւ* Յիկոնիոն *քաղաքէ, գրեցաւ Աւետարանս այս յնդիր և ի ստոյգ աւրինակէ, յամբոցիս՝ որ կոչի* Ծով. *ընդ հովանեաւ Սրբոյ Աստուածածնիս և Սրբոյ Նշանիս։ Բայց գրեցաւ հրամանաւ աշխարհալոյս վարդապետին իմոյ* Գէորգեա *ի վայելս անձին իւրոյ, և յիշատակ իւր, եւ բարի ծնաւղաց իւրոց,* Յակոբոսի *քահանայի՝ հաւր նորին և մեր սնուցողի, և քրիստոսասէր մաւր նորա՝* Վարվառեայ, *եւ հարազատ եղբարց իւրոց* Գրիգորի *և այլոցն, յորոց անուն եւ զգիրս հրամայեաց գրել, որում վայելել տացէ Աստուած.*

*Արդ աղաչեմ զամենեսեան որք ընթեռնոյք զգիրս [յակն] առնոյք զաշխարհալոյս վարդապետն իմ եւ զբարի ծնաւղս նորա եւ զեղբարս, անմոռաց սրտի մտաւք յիշեսջիք ի մաքուր աղաւթս ձեր, որոց ողորմեսցի մարդասէր փրկիչն Յիսուս Քրիստոս աստ և յիւրում գալստեանն, ամէն։*

*Ընդ նմին յիշեսջիք եւ զտառապեալ աշխատողս* [Յովհան]էս *գրիչ …*

ՈԲ 1153

## 197

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Տեր-Մովսիսյան, Համահավաք ցուցակ, Աւետարանք, էջ 64*

*Շնորհիւ Աստուծոյ ես* Յովհաննէս *գնեցի զսուրբ Աւետարանս ի թուին Հայոց ՈԲ (1153)*[1]*. եւ ի հայրապետութեան Տեառն* Գրիգորիսի *Հայոց կաթողիկոսի, յամի յորժամ զաւրական ոմն իշխան, որում անուն* Սամուս *Ճանաչի, յոյժ բարեբար եւ երկիւղած յԱստուծոյ։*

*Յիշեսջիք զիս և զհայրն իմ* զՍտեփանոս *եւ զհարազատ եղբայրն իմ* զՍարգիս *և զայլսն ամենայն։*

---

[1] *Մինչ այս, 1084 թ. Թեոդորոս կաթողիկոսը ձեռադիրը նվիրել էր հայր Դավթին։*



ՌԳ 1154

## 198
## ԾԱՇՈՑ

*Երևան 832*

Գրիչ՝ Գեորգ

ա

218ա *Փառք Սուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ, որ արժանի արար զիս զտառապեալս հասանել ի գիծ վերջին գրոցս այսոցիկ, ամէն։*

*Շնորհիւ Աստուծոյ Հաւր արարչի եւ Աստուծոյ Որդւոյ կենարարի եւ Հոգւոյն Սրբոյ պարգեւողի սկսա, եւ ողորմութեամբ Սուրբ Երրորդութեանն կատարեցի զշարադրութիւն տաւնից տէրունականաց, առաքելոց եւ մարգ[արէ]ից եւ վկայից սրբոց, զոր կարգ[եցի]ն սուրբ հայրապետացն| զկնի ելից աստեացս։*

*Ռ-երորդի երրորդի թուականիս Հայւոց (1154) գրեցաւ աստուածային բուրաստանաց ծաղկագումար մատեանս ըստ ծաղկերանկ, նորափթիթ, վայրենաբոյս շուշանաց եւ վարդից, եւ այլոց համասփիւռ ծաղկանց, որ ի լերինս եւ ի դաշտս, ի բուրաստանս եւ ի խաղս[1] ընծեղեալք առ երկուս տեսակս ի մարդիկ ղինքեանս բաժանեն, մանաւանդ թեեւ ըստ այժմ բժշկական դեղս տուեալ ի նոցանէ, որպէս եւ ի պատուիրանաց ծաղիկս հոգւոց բժշկութիւն նոքա, եւ առ տեսութիւն եւ անուշահոտութիւն զմարդիկ ձգեն զտեսութիւնս զվարճացուցանէն, եւ զհոտոտելիս ուրախացուցան[են եւ] թեպետ եւ խոտ, սակայն եւ ի /// [զ]արմա///ցու[մն]։*

249ա *Որոյ բուրաստանի ցանգացեալ մեծաւ տենչանաւք սուրբ եւ պատուական այրս այս* Ստեփաննոս *քահանայ, լուեալ ի գրոց սրբոց, եթէ Պատուիրանք Տեառն լոյս են, եւ լոյս տան աչաց իմոց, եւ ճրագ են բանք Տեառն, եւ ի լոյս ուղղեն զշաւիղս մեր, վասն զի սովաւ լուսաւորին աչեացք, եւ խաւարեալք ի մեղացն նսեմութեանց եւ տկարացելոցն մեղաւք։ Սա է կազդուրիչ եւ կարողացուցող, սա է քարոզ բանին կենաց եւ ազդում Հոգւոյն Սրբոյ առ մարգարէսն, սա քարոզեցաւ յա[րուց]ելոցն, յորժամ անժաման[ակե]ա լոյսն խառնէր ընդ ժամանա-*
249բ *կեայս։ Սովաւ կատարեմք զտա[ւ]նս տէրունականս, եւ զյիշատակս մարտիրոսաց։*

---

*[1] Առաջին տառը դժվարընթեռնելի է, մի մասը թափված է և մյուս էջից թանաքը ներծծված։ Այնուամենայնիվ գծագրության ուրվագրով նույնանում է գրչի «խ» գրի հետ և կարդացվում է «խաղս», որ նշանակում է «ջրարբի տեղիս», «մարգագետինք»։*

Եւ արդ պատուական այրս նմանեալ վաճառականին իմաստնոյ, որ զամենայնն վաճառեալ գնեաց զագարա<ար>կն, յորում էր զանձն, ստացաւ զսա յիւր յիշատակ զկնի նլից աստեացս, եւ ամուսնի իւրոյ փոխեց[ել]ոյ ի Քրիստոս, եւ ի վայելումն հարազատ որդւոյ իւրոյ Աստուածատրոյ, եւ այլ եղբարց իւրոց, զոր Տէր Յիսուս տացէ վայելել խաղաղութեամբ։

Արդ որք ընթեռնոյք զսա, յիշեսջիք զՍտեփաննոս քահանայ, եւ զեղբայր իւր զԱնտրեաս ք[ահա]նայ, զՎարդն, եւ զամուսին [իւր]
230ա ‖ յիշեսջիք ի սուրբ աղաւ[թ]ս ձեր։ Ընդ որս եւ ես ժտիմ պաղատանաւք յընթերցողացդ, յիշել զաշխատող սորա զԳեորգ, որ մեծաւ ջանիւ գրեցի զսա յընտիր եւ յազնիւ յաւրինակէ։ Արդ յիշեսջիք զիս եւ ծնաւղսն իմ ի սրբամ[ա]տոյ[ց] աղաւթս ձեր, եւ զԽաչատուր եղբայր մեր յիշեսջիք ի Տէր։ Եւ որք յիշէքդ, յիշեալ եւ աւրհնեալ եղիջիք ի Տեառնէ, որ աւրհնեալ [է] յաւիտեանս, ամէն։

Քրիստոս Աստուած ողորմեա ստացողի սուրբ կտակիս տիկին Խուշ[ուշին] եւ ծնողաց իւրոց, ամեն։

Եւ ետ զսա յեկեղեցին Սուրբ Աստուածածին՝ յաստուածասէր քահանային Ստեփաննոսի:

Բ

120ր Կատարեցաւ կանոն ժողովոց սրբոյ Յայտնութեանն ծնիցելոյն ի կուսէն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, փառք յաւիտեանս, ամէն։

Զընթերցողսդ աղաչեմ յիշեցէք զմեղաւոր գծողս յաղաւթս ձեր։ Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ սրբոց քոց ողորմեա եղբաւր իմոյ Վարճամայ՝ փոխեցելոյ ի Քրիստոս, ամէն։

## 199

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Երուսաղէմ 799 (1676 թ.), Պողարյան, Ցուցակ, Գ, էջ 256

Հեղինակ՝ Սարգիս վարդապետ

ԶՍարգիս վերջացեալ ծերս, ղանպիտան եւ զանարժան եւ զախմար գիտնականս, զկրկին աշխատող գրոցս ի յերկս բանի մեկնութեան նախագումիցն, եւ ապա ի համառօտել զսլիտանացուսն ընթերձօղ լուսամիտ համբակացդ ուսումնասիրաց եւ քրիստոսասիրաց, զորս եւ աղաչեմ սիրով հոգոյն եւ մախթեմ թախանձելով մի անտես առնել զերկայն ժամանակաց աշխատութիւնս իմ, այլ սրբամատոյց աղօթիւք յիշել միշտ առաջի յուսոյն մերոյ Քրիստոսի, զի թերեւս ի ձեռն ձեր ողորմութիւն դտայց ի նմանէ աւուրն մեծի եւ համառօտի. եւ Աստուած յիշողացդ եւ յիշեցելոցս ողորմեսցի, ամէն[1]։

---

[1] «Սա (Սարգիս Շնորհալին Ա. Մ.) մեկնեաց զԿաթողիկեայս... ի թւականիս Հայոց ի ՋԾ և Գ (1154) ամին» (Մատենադարան, ձեռ. № 5435, էջ 469 բ)։

## 200

## ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՒՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ

*Երևան 1530 (1289 թ.)*

### Յառաջաբանութիւն ասացեալ յաղագս սուրբ եւ երանելի վարդապետին Սարգսի

1ա *Ամենայն ոք, որ զգիրս աստուածայինս ի ձեռն առնուցում, նախ-
կի զմակագրութիւն նորա ընթեռնու ե նովաւ հասու լինին, եթէ մարգա-
րէական իցէ արդեաւք ե եթէ առաքելական և կամ թէ ի ներշրջական
արհեստից, ի բանիբուն արանց ասացեալ։ Զի յառաջաբանութիւն գրոցն
է պատկեր նորին, զոր աւրինակ մարդ ի պատկերէն իւրմէ ճանաչի,
այնպէս և գիր ի նախերգանէն։ Եւ գրեթէ ամենայն աստուածայշունչ
գիր Հնոյ և Նորոյ կտակարանաց զնոյն վերագրութիւն յինքեան ունին
և նովաւ ճանաչին։ Այս ի մանգանց եկեղեցւոյ ի սկզբանէ աւանդեալ
եղեւ, զի առ յապայ եկելոցն համառաւտ բանիւ՝ ի ցոյց և ի տեսիլ ա-
ծել զբովանդակն, որպէս հանճարեղ քարտուղարն Եւթաղի՝ նախ Առա-
քելական թղթոցն Պաւղոսի, ե ապա Գործոց Առաքելոցն գրեաց։ Քանզի
նախաղասեալ բանն երի՛ս եղանակս բացայայտէ. նախ՝ եթէ յորո՞ւմ
ժամանակի գրեցաւ, և կամ թէ յումմէ՞ հարկաւորեցաւ, և կամ թէ յի՞նչ
պէտս գրեցաւ։
Եւ որպէս ժամանակ յերիս ունի վրաժանումն ժամանակաց՝ յան-
ցեալն, և ի ներկայումն, և յապառնին, նոյն գունակ և եկեղեցիս սուրբ
յերիս բաժանէ զմանգունս իւր, խորհրդաւոր առնել խորոցն Աստու-
ծոյ. զոմանս սերմանող բանին կենաց, և զոմանս հնձաւղ, և զոմանս
մատակարարս, զի մարգարէքն սերմանեցին, ե առաքեալքն սուրբ հրն-*
1բ *ձաւղք եղեն, ‖ որպէս և Տէրն յաւետարանի բանս իւր հրամայէ, յայսմիկ
է բանն ճշմարիտ, զի այլ է, որ սերմանէ, և այլ է, որ հնձէ։ Ահաւա-
սիկ յայտնապէս եցոյց Տէր սերմանաւղ՝ զմարգարէսն և հնձաւղ զառա-
քեալսն, իսկ վարդապետք կազմաւղք բանին, զի յըմբռշխումն ածեն հա-
սարակաց։
Եւ զոր աւրինակ մարք, յորժամ զմանկունս մատաղ կերակրեն,
նախ ինքեանք ծամելով զկերակուրսն, զխստութիւնն կակղելով ատա-
մամբքն, և ապա մանկանցն մատուցանեն, զի մի փափկութիւն լնդաց
մանկանն կեղեքեսցի. այսպէս և վարդապետք զառաքելական զբանս և
զմարգարէական, զխորինս և զծածկեալս՝ նախ ինքեանք որոճալով, և
ապա դիւրալուր ի յայտ ածեալ, կերակրեն զհաւատացեալս, այսինքն
իմաստնացուցանելով զոգէտս, և խորհրդազգածս առնէն զամենէսեան
աւրինացն Աստուծոյ, զի վարդապետաւքն ծովացուցանէ Հոգին Սուրբ
զբանն կենաց, և զամենայն պասքեալ անձն արբուցանելով՝ զովացու-
ցանէ։
Եւ այսպէս մանկունք եկեղեցւոյ ընտրեցան յերիս դասս և եղեն
հազարապետք աստուածային խորհրդոցն, և որ ընտրեցան՝ ընտիրք*

*եղեն, զի կոչողն մի է, և կոչումն հասարակաց իսկ որք ընտրեցանն և լուան զձայն կոչողին, նոքա եղեն անդրանիկք եկեղեցւոյ և հաւատարիմ պաշտամեայք բանին Աստուծոյ, որպէս ասաց փրկիչն առ դասս առաքելոցն՝ Ոչ եթէ դուք ընտրեցէք զիս, քանզի անզուգական է աստուածային էութիւնն և անհամեմատ, այլ ես ընտրեցի զձեզ և եդի զձեզ, զի դուք երթիցէք և պտղաբերք լինիցիք, և պտուղն ձեր կացցէ։*

*Այսպէս երիցս երանեալ և ճշմարտասէր հոգի, սուրբ վարդապետն* **Սարգիս** *և կատարեալ պուէտիկոսն ընտրեցաւ ի Հոգոյն Սրբոյ և գրեցաւ ընդ անդրանիկս եկեղեցւոյ, ի տանէ Հայկազնեան և յազնէ Թորգոմեան։ Եւ որպէս ասաց փրկիչն՝ թէ Ի պտղոյ անտի ծառն ճանաչի, որպէս և հոգելից հայրս մեր, փորձ և ընտիր գտաւ ի համացեղս, և այս յայտնի է ի խորհրդական և ի հանճարեղ բանս իւր։ Թուի թէ առաքեալքն սուրբ, որք արբին զծորանս բանին ի վերնատանն՝ իշմամբ հրեղինաւք լեզուաւք Հոգին Սուրբ ի վերայ նոցա առ բանն ընտրութեան, եղին զդուլ կենդանարար բաժակին ի ձեռս նորա, զի արբուցանէ* 2ա *զուրախարար բաժակն արժանաւոր և ընտրեալ անձանց, այսինքն է՝ ամենայն հաւատացելոց, որպէս բերան առաքելական մեզ արգեեցաւ։*

*Այսու յայտ լիցի, թէ ոչինչ ընտրութիւն է ժամանակին, զի առ յապա եկեալքն ընտրին և լինին իբրև զառաջինքն, զի մի է Հոգին Սուրբ, և յամենայն ժամ ընտրէ զընտիրսն, և իբրև ի տաճար Աստուծոյ բնակէ ի նոսա, և յորդաբուղխ իբրև զականակիտ աղբիւր բըղխէ ի բերանոյ սրբոցն, և արբուցանէ զանդաստանս եկեղեցւոյ իւրոյ սրբոյ, զի ճարակ գտցէ հաւտն բանական։ Որպէս և ի մերս ժամանակ եւթնարփեան շնորհաւք հոգւոյն լցեալ սուրբ հայրս մեր՝ վարդապետս* **Սարգիս** *և եղև ջահ եւթնաստեղեան անշիջանելի՝ յաւէտ լուսատու Հայաստանեայցս եկեղեցւոյ. բայց զոր աւրինակ արեգակն ի ծայրս կամարացն լինելով ի հասարակ ժամու զամենայնս առհասարակ զարարածս, ըստ մարգարէութեանն Դաւթի՝ թէ Ոչ իցէ որ թաքիցէ ի տապոյ նորա, զի զծերպս և զփապարս ի լոյս ածէ և ի տեսիլ, այսպէս և սա զառաքելական բանս ղծածկեալս և զխորինս զՆւթանեցունց թղթոց կաթուղիկեայց՝ ի յայտ և ի տեսիլ ածեալ ամենեցուն, և ոչ եթող խուն մի ի բանից նոցա՝ որ ոչ մեկնեաց վարդապետաւրէն, այլ ի հաճ և ի դէպ ի կարգ անկեալ՝ մեկնէ զամենայն, ոչ նուրբ բանիւք և ոչ գեղջուկ՝ այլ զմիջակ և զարքունականն գնալով ճանապարհ, զի դիւրալուր և ախորժ լինիցի լսողացն, զի ի պարսաւագիտաց և յարհամարհողաց ի բաց փախչի, և անկարաւտ և անտարակուսելի զլսաւղսն առնէ։*

*Արդ, պարտ է մեզ հարկաւորաբար եւս գրել, թէ յորո՞ւմ ժամանակի էր սուրբ վարդապետս, կամ առ ո՞վ վարժեցաւ, կամ ո՞յք էին ուսումնակիցք սորա, և տեղին, ուր գրեաց զգիրս, և թէ ո՞ւր կան սուրբ ոսկերք նորա եդեալ, զի հաւատարիմ լիցի լսողացն, թէ ոչ որպէս ամենայն Հին և Նոր կտակարանք ի լեզու Հայոց թարգմանեցաւ, այլ սուրբս այս ի մերոց ազգաց է և ի տանէ Հայոց՝ առաքելական շնորհաւք լցեալ, գրեաց զգիրս առաքելական մատենից մեկնութիւնս։*

Արդ յաւուրս տեառն Բարսղի սովորութիւն էր Հայոց կաթուղիկո-
սացն՝ յառաջն շրջիլ ամ յամէ ընդ Հայք և ի հայրական խնամաւք ուղ-
ղել զամենեսեան ի կանոնական սահմանս։ Գնաց ի յաշխարհն Կիլիկեց-
ւոց և եմուտ ի Սեաւ լեառնն, ուր էին բազում անապատք և վանորայք։
Եւ յայնմ ժամանակի հալածումն եհաս յաշխարհն Հայոց յանաւրէն
2բ ազգէն Իսմայիլի, և բազում գա‖ւառք և վանորայք աւերեցան, և մնա-
ցեալքն փախստական լինէին։ Իսկ մանուկ մի քահանայ գոլով և վար-
ժեալ և Հին և ի Նոր կտակարանս վարդապետական ուսմամբ ի հաւր-
եղբաւրէն իւրմէ՝ անուն կոչեցեալ Ստեփանոս՝ որպէս թէ ութ և տասն
ամաց։ Սորա ընդ այլ փախստականս հասեալ ի գաւառն Քեսնու, ի մե-
ծահռչակ սուրբ ուխտն, որ Կարմիր վանքն կոչիւր, որ էր իշխանաց իշ-
խանին Վասլի, որ Գող Վասիլն կոչէր յայլազգեացն վասն արիութեան
նորին, և ի նոյն տեղի բնակեցաւ։ Բայց ծածկեաց զանուն վարդապե-
տութեանն վասն մանկական հասակին։

Իսկ յետ աւուրց յայտնի եղեւ բնակչաց տեղւոյն, եթէ ուսեալ է
զՀին և զՆոր կտակարանս լիով, և հրաման ունի առանց գաւազանի
վարդապետել ի տեղի աղաւթից։ Եւ ապա ծերքն, որ անդ կային, որ սի-
րողք էին լսել զպատուիրանս Աստուծոյ՝ հարկեցին զնա վարդապետել
ի հասարակաց տեղին, աւրինակ բերեալ ի մէջ, եթէ Դանիէլ մանուկ էր՝
սակայն զաւրացեալ Հոգւովն յանդիմանեաց զանաւրէն ծերսն ի սա-
տակումն անձանց, և Սողովմոն մանուկ գոլով՝ և նստաւ յաթոռ թա-
գաւորութեան հաւր Դաւթի։ Իսկ նա ոչ եղեւ անհնազանդ կատարել
զխնդրուածս նոցա, մանաւանդ զմտաւ ածեալ զտէրունեան հրամանն,
եթէ Ոչ ոք լուցանէ ճրագ դնէ ընդ գրուանաւ, այլ ի վերայ աշտանակի,
զի լոյս տայ ամենեցուն, որ ի տանն իցեն, և նա յանձն առնու խաւ-
սել առաջի հրեշտակաց զբանն կենաց, և անաւթ ընտիր գտեալ զնա
Հոգին Սուրբ Աստուած՝ առատաբուղխ լինէր ի նա զաստուածախաւս
վարդապետութիւն, և ել համբաւ նորա ընդ բազում գաւառս։

Եւ ոմանք նորա նախանձաբեկ լինէին վասն մտնկական հասակին.
վարդապետք և առաջնորդք որ ի ժամանակին էին, և չարախաւսէին առ
տէր Բարսեղ՝ անարգել ոչ միայն զնա, այլ և զբնակիչս ուխտին։ Իսկ
կաթուղիկոսն առնու ընդ իւր վարդապետս և եպիսկոպոս, այլ և յընտիր
իշխանացն, որ էին ի ժամանակին, և գայ յողջոյն իշխանաց իշխանին
Վասլի, և զգլխաւոր վարդապետս զՄեղրիկ և զԿիրակոս, և գայ նոքաւք
ի մեծ ուխտն սուրբ՝ ի Կարմիր վանքն։ Եւ բնակիչք տեղւոյն ելին ընդ-
առաջ մեծաւ հանդիսիւ, և ընկալան զնա բազում պատուով։ Եւ քանզի
շաբաթ էր աւրն այն, և յորժամ ի գիշերաին պաւտամոյսն հասին, կա-
ցին առաջի կաթուղիկոսին և խնդրէին, եթէ Հրամայեա վարդապետացդ՝
խաւսել մեզ մխիթարական բան։

3ա Իսկ վարդապետաց‖ն արհամարհեալ զծերսն, ասեն. Խաւսեսցի ընդ
ձեզ վարդապետն ձեր, որ յայնքան ի մանուկ հասակի համարձակու-
թիւն տայք ի մէջ եկեղեցւոյ վարդապետել, և զհրամանս սրբոյն Գրի-
գորի Աստուածաբանի ի վկայութիւն ածեալ, եթե Յիսուս երեսնամեայ
մկրտեցաւ և դու յառաջ քան զմաւրուսդ վարդապետե՞ս։ Մինչեւ յամե-

ննցունց յառաջ զմանուկն կոչել զՄտեփանննոս կամ վարդապետել առաջի իմաստնոց և գիտնական գլխաւորաց, և կամ թե ոչ՝ արհամարհիլ անարգանաւք. և զայն ոչ զմտաւ ածէին, զոր ասաց փրկիչն, ԵԹԵ Որ հարցի ընդ վիմիս ընդ այս, փշրեսցի, և յոյր վերայ անկցի, հոսեսցէ զնա։

Իսկ նա զաւրացեալ Հոգւովն Սրբով, տեառնագրեալ զսիրտս իւր տէրունեան նշանաւն, որպէս թե ասէր զմարդարէին, Տէր, Տէր տա ինձ լեզու խրատու խաւսել ինձ զբանն։ Եւ սկսաւ խաւսել առանց երկիւղի առաջի ամենեցուն՝ մինչեւ զահի հարան վասն բանին առատութեան և մտացն իմաստութեան, և մինչ զբանն յաւրհնութիւն Տեառն աւանդեաց՝ երկրպագանէր կաթուղիկոսին։ Ասյա նոյն ժամայն յառաջ մատուցեալ տէրն Բարսեղ՝ գիրկս արկանէր նմա և համբուրէր, և եդ զզարդարեալ գաւազանն յոսկոյ, և յարծաթոյ ի ձեռս նորա, և զվաւերականն իւրովի ի մատն նորա, և ի վաղիւն, որ էր աւր տէրունեան՝ արար գնա եպիսկոպոս նահանգացն, որ ընդ իշխանութեամբ մեծ իշխանին Վասլի:

Իսկ նա հասեալ ի հասակ կատարեալ՝ ժողովեցան առ նա աշակերտք բազումք, իսկ նա ոչ վարդապետաւրէն ուսուցանէր, այլ առաքելաշնորհ եղեալ՝ ի նոսա զբանն կենաց։ Որ և մի էր յաշակերտաց նորա հզաւր վարդապետս Սարգիսս, որ և գրեաց զԿաթուղիկէաւյց Մեկնութիւնս, և ընգեր սորին Իգնատիոս, որ և գրեաց նա զՄեկնութիւն Աւետարանին Ղուկայ և այլ եւս երկու եղբարք՝ Գրիգորէս և Ներսէս, եղբաւրորդիք տէր Վահրամայ կաթուղիկոսին Հայոց, որ յետ նորա նըստան յաթոռ հայրապետութեանն, յառաջագոյն տէր Գրիգորէս, և զկնի նորա՝ տէր Ներսէս եղբայր նորա։ Եւ այս յայտ իսկ է ամենեցուն, թէ որքան երգս հոգեւորս աւանդեաց եկեղեցւոյ տէր Ներսէս, որ և այժմ երգեին յամենայն տեղիս, որ և սկիզբն արար մեկնելոյ, զԱւետարանն Մաթէոսեան՝ քաղցր բանիւք և առատ մտաւք, որ և հաճելի էր գիտնականաց, և եհաս մինչեւ ցայն վայր, զոր ասաց փրկչին, Մի համարիք, եթէ եկի լուծանել զաւրէնս, և աւարտ եղեւ կենաց նորա։

3բ Իսկ երէց եղբայր նորա տէր Գրիգորէս, որ Վկայասէրն անուանեցաւ և մինչեւ այժմ ասի, սա բազում ճառս սուրբ մարտիրոսաց, էր որ ի յունաց և էր որ յասորաց, ի հայս թարգմանեալ, որ և այժմ ընթեռնուն յեկեղեցի։ է որ ներբողեանք են, և է որ պատմութիւնք, վասըն այսորիկ Վկայասէր կոչեցաւ։ Քանզի ասաց ումն յիմաստնոցն, եթե Ծածկեալ գիտութեան վարդապետի՝ բերան են աշակերտքն, քան զի լուսաւորիչք եղեն ազգիս Հայոց ի մերս ժամանակի։

Իսկ լցեալ Հոգւովն Սրբով ի մէջ ընկերացն սուրբս այս վարդապետ Սարգիս, վասն որոյ պատմութիւնս է, արբ զհուրն կենդանի առաքելական, և գնոյն կենդանարար հուր իբրեւ զանսպառ աղբիւր մշտընջենաւոր՝ ետ յարբումն Հայաստանեայցս եկեղեցւոյ։ Սա զամենայն ժամանակս իւր ետ զկանս իւր ի խոկումն գրոց, և արար բնակութիւն իւր ի սուրբ ուխտն ճգնաւորաց որ և յասորի լեզուն Քարաշիթու կոչի.

անդ աւարսևաց զասաուածային մատեանս, և ի նոյն տեղի կան սուրբ նշխարք ոսկերաց նորա։

Ահաւադիկ ցուցաւ փափագողաց և խնդրողաց՝ անտարակուսելի լինել ժամանակն և կենցաղավարութիւն կենաց նորա, և թե առ ո՞ վարժեցաւ, և ո՞յք էին ընկերք նորա, և տեղին, ուր փոխեցաւ առ Քրիստոս։

Այլ մեք սիրաւղք Քրիստոսի՝ յարդարեսցուք զանձինս մեր արթունս և՝պատրաստս լինել, և յաւժարամիտ սիրով՝ ունկնդիր լինել առաքելական հրամանացս, զհետ երթիցուք կենդանի և կենդանարար բարբառոյ սոցա, զի սոքա են մեզ առաջնորդք կենաց և յոյս փրկութեան, սոքա՝ մեզ դուռն երկնաւոր և ճանապարհ արքայութեան, որ անմոլար շաւղաւք հասուցանեն առ Քրիստոս զհնազանդեալսն պատուիրանացն Աստուծոյ, զոր եդ ի բերան սուրբ վարդապետիս։ Որով և զմեզ զամենեսեան բարեխաւսութեամբ սուրբ առաքելոցն արժանի արասցէ Քրիստոս վերին կոչմանն և երկնից մտիցն ընդ սուրբ առաքեալսն և ժառանգորդ լինել անստուեր լուսոյն և անտրտում ուրախութենն, անթառամ պսակացն և երանաւէտ կենացն ի Քրիստոս Յիսուս, որում փառք, պատիւ և զոհաբանութիւն ընդ Հաւր իւրում և ընդ ամենասուրբ Հոգւոյն, այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն[1]։

201

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՉՈՐԵՔՏԱՍԱՆ ԹՂԹՈՑ ՊԱՒՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՑ ԵՓՐԵՄԻ ԱՍՈՐԻՈՅ ԵՒ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

Ալիշան, Հայապատում, Բ, էջ 310 (999 թ.)

Կազմող՝ Գրիգոր՝

Վայր՝ Յովհաննու վանք

Ես Գրիգոր[2] նուաստ ի մակս քանակութեանց ուսումնական արտադրութեանց յազատ տանէ, ստացայ զմարգարիտս հաւատոյ, յաւերժ ցնծութիւն անձին և յիշատակ հոգւոյ։

Ի ՈԳ (1154) թուոյ կազմեցի ձեռամբ իմով, յաշխարհս Արարատեան, ի վանս Յովհաննու, ի գուռն Սրբոյ Կարապետիս։ Աղաչեմ որք ուգտիք, յիշել աղաւթիւք եւ զննմամբ մարմնոյն Քրիստոսի։

---

[1] Սույն Յառաջաբանությունը գրված ենք համարում «ի ՉԶ և Գ (1154)» թվականից ոչ շատ ուշ և դնում ենք այդ թվաշարքում։

[2] Գրիգորը Տուղեորդին է։

## 202

## ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՍԻՒՆԵՑԻՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՋՈՐԻՑ ԱՒԵՏԱՐԱՆՋԱՑՆ

Երևան 5551

Գրիչ՝ Կիւրակոս

Վայր՝ Կաւրչաձոր

ա

224ա *Թվին ՈԴ (1155)։*

*Տէր Յիսուս Քրիստոս Աստուած մեր ||| ամենազաւր աջովդ պահպանի զՌոմանոս քահանայս ընտրեալ ի բիւրոց, որ սպա[սա]ւոր եղ[եւ] գրոցս աշխատասիրաբար*[1]*։*

*Աստանաւր յանգ ելեալ կատարեցաւ աստուածապատում գրկունքս մեկնութեան սուրբ Աւետարանին Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ երկուց աստուածարեալ արանցն մեկնաւղաւրէն բացատրեցաւ՝ ի* Նանայէ *վարդապետէ Ասորոց եւ ի* Ստեփանոսէ *վարդապետէ Հայոց, ի սուրբ և ի գերահռչակ ուխտս* Կաւրչաձոր *կոչեալ, ի գաւառիս* Ա[ր]շարունեաց *եւ ընդ հովանեաւ աստուածընկալ եւ առաքելական Սուրբ Խաչիս, որ ի սմա, աղբէւր շնորհացն Քրիստոսի ի* Հայաստան *աշխարհիս, պարգևեալ մեզ ի փրկչէն Քրիստոսէ։*

*Եւ գրեցաւ ի ձեռն* Կիւրակոսի *անպիտան ծառայի, նախհոգութեամբ և խնամով սուրբ և ամենագով հաւրս* Յովանէսի, *որոյ Աստուած եղիցի վարձահատոյց. և աստեաւքս զանվախճանն պարգևեսցէ կեանս ի Քրիստոս Յիսուս, ամէն։*

բ

83բ *Ամենայն բարեաց պարգևիչ Քրիստոս, բարեխաւս առ քեզ ունիմ զսուրբ և զկամաւոր չարչարանսն քո, և զ(ը)նտրեալսն քո, յառաջ քան զլինելն աշխարհի. մի մտանէր ի դատաստան ընդ չար ծառաի քո* Կիւրակոսի *անարժան քահանաի, զի թէ իբաւամ[բ]ք դատիս, Տէր, ահա պապանձիմ ի պատասխանւոյ, վասն զի և ոչ բնաւ գոյ յիս ի քոց սուրբ պատուիրանացն, այլ միաբանեցի յաւժար կամաւք մարդասպանին ի կորուստ անձին իմոյ, և աւր առ աւր նորոգ ուրախացուցի զնա։ Եւ արդ յու[ղ]եա զդաւանութիւն ուղիղ հաւատոյ իմոյ, որ ի Հայր և յՈրդի Ա ի Սուրբ Հոգիդ, և ընդ անհաւատսն մի պատժէր, քաղցր և անոխակալ և բարերար, որ աւրհնեալդ ես յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

---

[1] *Այս պարբերությունը թանաքով ջնջված է։*

Գ

56ա *Իմ Աստուած Քրիստոս բարերար և բարերարին Հաւր Որդի, ընծա մատուցանեմ քեզ զդաւանութիւն հաւատոց իմոց, որ առ ամենասուրբ Երրորդութիւնդ, մի զրկեր զիս՝* զԿիւրակոս *անարժան քահանա ի կենացն յաւիտենականաց, այլ տուր և ինձ ձեռն, որպէս և երբեմն Պետրոսի, զի առաւել ընկղմիմ յալեաց մեղաց քան որ նայն, սաստեա հողմոց դառ[ն]աշնչից կորուսչաց անձին իմոյ, բաց դդրունս փակեալ մտած անառակիս՝ յիշել զհայրենի փարթամութիւնն, մի թողուր սովամահ՝ ցանկալ խոզիցն կերակրոց, և թէ դիմեցից առ Հայրդ բարերար, միջնորդեա և ինձ յուսահատիս զտարածումն սուրբ դրկացն, տուր անդգամիս ճաշակ յիմաստութեանդ սեղանոյ և լուսով քո Աստուծո վխաւար հոգո իմոյ հալածեայ, որ աւրհնիս միշտ յաւիտեանս, ամէն։*

Դ

68բ ԶԿիւրակոս *գրիչ գարշ գրոյս յիշեա ի բարի, ո՛վ եղբայր սուրբ, որ ընթեռնուս, և թողութիւն արա, զի իմ կայր այտշափ է։*

Ե

70բ *Յիշեա զիս* զԿիւրակոս, *Քրիստոս Աստուած, զի հաւասար և զուգապատիւ խոստովանիմ զամենասուրբ Երրորդութիւնդ։*

Զ

83բ *Որք կարդայքդ և յաստուածային իմաստիցս փարթամանայք, աղաչեմ ի սէրն Քրիստոսի զիս՝ զամենամեղս* զԿիւրակոս *յիշել ի Քրիստոս աղաւթիւք։*

Է

156բ *Եւ ես* Կիւրակոս *զաշացու երկիրպագանեմ փրկչիդ իմոյ Յիսուսի Քրիստոսի, բաց կենարար զաչս հոգւոյ իմոյ՝ կարկառմամբ ամենակար աջոյդ։*

Ը

175բ *Լուր,* Գրիգոր, *բայց եւ ոչ գոյ լսաւղին ի միտ առնուլ։*

Թ

176բ *Աստանաւր յանգ ելեալ աւարտեցաւ գիրքս այս ցանկալի գիտութեան աստուածային խորոցն իմաստից ի սուրբ և ի տիեզերահռչակ ուխտս* Կամրջաձորոյ, *առ հովանեաւ աստուածընկալ և զարմա[նա]գործ նշանիս Քրիստոսի, որ ի սմա, ի ձեռն* Կիւրակոսի *մեղապարտ գրչի, զաւրացուցանողին ի կատարումն զոլ գարշ գրոյս, Քրիստոսի փառք, ամէն։*

Ժ

292ա *Զամենամեղ և զյետինսն ի քահանայս և զստունգանող պատուիրանաց արարչին իմոյ Քրիստոսի,* զԿիւրակոս *յիշել աղաչեմ յաստուածահաճոյ աղաւթս ձեր, ով աստուածահաճոյք և հաւատարիմ ծառայք բարերարին Քրիստոսի, թերևս յաղաւթից ձերոց գթասցի յիս Քրիստոս և ներող լիցի բազում պարտուց իմոց, զի թէ իրաւամբք դատի, ահա-*

կորուստ մշտնընջենաւոր պահի ինձ։ ՈՀ ամենաչար անձինս։ Աւգնեա ինձ, Տէր, կարկառմամբ ամենակարող աջոյդ, աւրհնեալ Տէր Յիսուս։

ժա

307ա ԶԿիւրակոս գարշ գրիչ յիշէ ի բարի, ո՛վ աստուածասէր։

ժբ

339բ Որդի և բան Հաւր՝ Յիսուս Քրիստոս, Աստուած բոլորից և իշխան կենաց և մահու,· բարեխաւս առ քեզ ունիմ զսուրբ և զանարատ մայր քո և բնաւին, որք յաւիտենից քեզ հաճոյացան սուրբք և սիրողք քոց սուրբ պատուիրանացդ, և ես առաւել անբաւ մարդասիրութիւնն քո, գթայ ի յիս, Կիւրակոս անարժան և յոքնամեղ քո ծառա[յ] յայնմ մեծի աւուրն ահաւորի, և մի զրկեր զիս յանբաւ երանութենէն։

Ա[րդ] հաւատով հաւատամ երեքանձեայ և միոյ աստուածութեանդ [դաւ]անութեան, որպէս և սուրբ առաքեալքն քո ուսուցին, բայց ի չարէն պատրեալ ի գործոց ոչ ունիմ յոյս, բայց եթէ զու, ամենագութ, յայսմհետէ շնորհեսցես եւ ինձ ապաստանայ ժամանակ և տեղի, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։

Եւ արդ ես Կիւրակոս՝ ծառայակից ամենայն պաշ[տ]աւնեից Քրիստոսի, [կցուր]դ և հաջորդ սուրբ և ուղղափառ դաւանութեանն, որ ի Հայր և յՈ[րդի] և ի Սուրբ Հոգին, աղաչեմ մեծաւ պաղատանաւք զամենայն ընթերցողսդ, սիրովն Քրիստոսի գթալ ի տառապեալ անձն իմ, և ձերով լիութեմարդ, զոր ունիք ի Քրիստոսն, կերակրեցէք զսովամահս ի կեն[գան]ի հացէն, յիշել զամենամեղս ի սուրբ աղաւթս ձեր՝ իբրև զ[եղ]բայր և ծառայակից ձեր, որպէսզի և զուք ունիք առ նա հատուցումն բարի, զանապականն պսակ եւ[1] /// [Եւ ա]րդ յիշ[եա]յ Քրիստոս բարերար քո գթութեամբդ և զԹաթու[լ] արի /// այ պաշտաւնեայ եւ ընկալուչ աբեղայից ի մխիթարութիւն կերագրոց, որ և զնիւթս պարգեւեաց զգրոցս, գրեսցի և ինքն իւրայնովքն ի գիր դպրութեան արդարոց անջինջ, ի սուրբ աջոյն Քրիստոսի Աստուծոյ։

ժգ

Գրիչ՝ Ռովմանոս

8ա Զկիւրակոս սուրբ վարդապետ եւ ստացող սուրբ գրոցս յաղաւթս յիշեսջիք առաջի Աստուծոյ աղաչեմ, եւ զՌովմանոս գրիչ մի մոռանայք վասն Տեառն։

---

[1] Ձեռագիրն սկսվում է Նանայի Յովհաննու Մեկնութեամբ։ Ա պրակը չկա։ Սկսվում է Բ պրակից, որի առաջին թերթը հետո է ավելացված և ունի այլ գրություն։ Պրակի մնացած թերթերը Ռոմանոսն է գրել, բացի 9ա էջից։ Այնուհետև՝ գրիչը Կիւրակոսն է, ուր տեղ-տեղ գրում է նաև Ռոմանոսը։ Ձեռագիրը հետագայում կազմելիս Ծ և Զ պրակների միջև (էջ 180—222) տեղավորել են այլ նյութ։ Ստեփանոս Սյունեցու Մեկնութիւնը սկսվում է 224 թերթից։ 291բ-ում ավարտվում է Մաթեոսի Աւետարանի մեկնությունը, 292ա-ում սկսվում և ավարտվում է «ըստ Մարկոսի Աւետարանս», որովհետև «ոչինչ զանազանէ ի Մաթէոսեան, և վասն այսորիկ կարճառաւտիւ ասասցուք զմեկնութիւնս, քանզի աւելորդ համարիմք զնոյն կրկնաբանել զմի անգամ ասացեալսն», գրում է Ստեփանոս Սյունեցին։

299բ-ում սկսվում է Ղուկասի մեկնությունը և 307ա-ում ավարտվում է, որտեղից սկսվում է Յոհաննեսի մեկնութիւնը (ավարտվում 322բ-ում)։

ժդ

Այլ գրիչ

28ա Ընթերցասէր յիշեա յաղաչանաւք վասն սի[րոյն] Քրիստոսի։ Խիստ սովամահ եմ։

## 203
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Մուրադյան, Ցուցակ Մշո, 1 (1229 թ.), էջ 7*

Յամի հազարերորդի [հարիւրերորդի] յիսուներորդի ութերորդի (1158) Աստուծոյ մերոյ եւ Տեառն Յիսուսի Քրիստոսի գալստեան, յորում ամի ժամանէր, թիւ տոմարի շրջագայութեան Հայոց ՈԶ (1157), գրեցաւ աստուածախաւս մատեանս քրիստոսակիր կտակ սրբոյ Աւետարանքս, յընտիր եւ լաւ աւրինակէ, որ կոչի Գրիգորի Մուրղանեցւոյ գրչի ճարտարի, որոյ առեալ էր զաւրինակն ի գանձատանէն Գագկայ թագաւորին Հայոց, եւ իրաւք ձեռաւք գրեալ զԱւետարանն մեծի կաթողիկոսին տեառն Գրիգորիսի։

## 204
## ԹՈՒՂԹ ԱՌ ԻՆՆԵՒՏԱՍՆ ԵՂԲԱՐՍՆ ԳԼԽԱՒՈՐԱԳՈՅՆՍ ՈՐ ՅԻԿՈՆԻՈՆ

*Երուսաղեմ 1 (1419 թ.), Պողարյան. Ցուցակ Ա, էջ 30*

Թարգմանեցաւ ճառս սրբոց վկայիցս, ի թուականիս վեց հարիւր և վեցն (1157), ի ձեռն Ներսիսի Հայոց կաթողիկոսի, յարմարութեամբն բանի և գրութեամբ բառի։ Իսկ ի յունականէն՝ ի ձեռն քահանայի Կոստանդեա՝ ի մերս փոխադրելով, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած, ամէն։



12—1180



*ՌԷ* *1158*

**205**

297բ ### *ՎԿԱՅՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ՍԱՐԳՍԻ ԶԱՒՐԱՎԱՐԻ ԵՒ ՈՐԴՈՅ ՆՈՐԱ ՄԱՐՏԻՒՐՈՍԻ*

*Երևան, 1522 (ԺԲ դ.)*

*Հեղինակ՝* **Ներսէս Շնորհալի**

296բ **Թուղթ առ Ներսիսէ եղբաւր անառն Գրիգորիսի կաթողիկոսի Հայոց, պատասխանի թղթոյն Գէորգա Արևելյան եպիսկոպոսի, առաջնորդի սուրբ ուխտին Հաղբատա, յաղագս ն՝տուգատելոց առ ի ստուգութիւն զպատմութիւն երանելոյ նահատակի սրբոյն Սարգսի զաւրավարին մեծի:** *Որոց բաղձալի է ճշմարտութիւն յիրս եւ ի բանս, նոցում եւ յաւետ ըղձալի խնդրոյն նմա փոյթ, իբր ական պատուականի եւ գեղեցիկ մարգարտի, ըստ իմաստում վաճառականին, որոյ աղագաւ ոչինչ անխաեան յանձին տաժանումն կամ ի նիւթականաց գոյից ծախումն յանհասանելեացն հասումն, այլ ղոսկեհանացն բերելով զնմանութիմ երկրորդ ղբովանդակ աշխատութիմս առ սէր և յոյս վարկանին փարթամութեանն։*

*Ըստ այսր ապացուցի եւ ըղքոյդ տեսանմեք պարզական մըտաց լուսաւորութիմ խոհականին մասին փափագաւղ և համատեոից նորա, որով բանականիս զարգարին մասունք, որ եւ յոգնաբեղում պտղոցն քաղցրագոմից առ ի բարոյդ ծառոյ ամբարումն ի միո աստի ծանուցաւ պտղոյ ճաշակմանէ, քան զի հոգևորական այս խնդիր բարէյաղթ վկաին Քրիստոսի սրբոյն Սարգսի, անճահ սլատմութեանն քննութիւն, առ ի գիւտ ճշմարտութեանն, որ ի նախնեացն հարցն անտես եղեալ մինչև ցմեզ, ի քէն միայնւոյ շարժեցաւ զմերո զարթուցանել թմրութիմ ի գիւտ այսր խնդրոյ։*

*Վասն որոյ և մեք ըստ նշանակութեանն որ ի ձենշ տըվեցելոյ գրով, որ և ծանուցաւ մեզ երբեմն յաղաւթական եղբաւրն զրուցատրութենէ, առաքեցաք առ եղբարս գերահռչակ ուխտին Ասորւոց, որ յանուն սրբոյ միայնակեաց ճգնավորին* **Մար Պարսամոյի**, *առ սահմանաւքն* **Մեղիճտինւոյ Հայոց**, *որպեսզի յարկեղս մատենից իւրեանց հետազոտեալ քննեսցեն, և եթեէ գըտցի նշանակեալն, թարգմանեալ տացեն մեզ զխնդրելին։ Որոց յաւժարական սրտիւ զառ ի մենջն ընկալեալ խնդրոյ փոյթ, պատասխանեցին մերոյն զայս ինչ, թէ վասն զի առ մեզ համանում վկայք չորք են կոչեցեալ Սարդիս, ընկերն Բաքոսի, որ յ*Ռուծափ *նահատակեալ, և այլ ոմն, որ յ*Ամիթ, *եւ միւս ևս ի* Տարա, *որ հնոցն է*

երից մանկանցն, եւ զաւրավարն Սարգիս, հանդերձ որդւովն ի Պարսս վկաեալ։

Արդ զորոյ արդեաւք ի չորեցունցս յայսցանէ խնդրէք ստուգել զպատմութիւն. եւ մեզ թէպետ եւ այլքն, բայց յընկերէն Բաքոսի, անծանաւթ էին, սակայն իբրու մտաւք ինձ տեսանելով, եթէ զոր խնդրեմքն, ոչ այլ ոք է ի սոցունց, բայց զաւրավարն անուն, որոյ և որդին, վասն որոյ գրեալ առ Նոսա կրկին անգամ, զնորայն յանուանէ խնդրեցաք թարգմանել զվկայութիւն։ Եւ Նոցա ընկալեալ զառ ի մենջն ցուցեալ անուն և թարգմանեալ, որքան էր կարողութիւն ջերմեռանդն սիրով ի ձեռն ուրումն իմաստնւոյ Միքաէլ անուն կոչեցելոյ. աղաւտարար զմերս գիտողի դպրոթիւն, առաքեցին առ մեզ, որ թեպէտ և յարմարութեամբ բանից և շաղկապս բառից ոչ զուգիւր ընդ մերումս լեզուի, սակայն զընութիւն բանին և զկարգ պատմութեանն ամբողջ ունէր յինքեան։ Զոր և մեր ընկալեալ և ըստ չափոյ զաւրութեան յղկեալ զդիրս բանիցն, և զպատմողականն առաքեցաք առ ձե՛լ և հանուր(ց) եկեղեցաց Հայաստանեաց, ււանձ երկնաին ե. հոգևոր, որ ծածկեալ էր յազարակի այլալեզու արանց, և այժմ յայտնեցաւ շնորհաւքն Քրիստոսի, ի ձեռն քոին խնդրոյ, պատուականդ ի գլուխս եկեղեցւո Գէորգիոս, զոր և քո առեալ, սերմանեսցէս՝ որպէս գրանն սերմանող Բանին յամենայն տեղիս, որք կարդան զանուն Տեառն, և կատարեն հանդիսաւոր տաւնախմբութեամբ զյիշատակ սրբոյ վկաին, որովք աղատե(ս)ցին միտք իմաստուն լսողաց, ի տարբերակն կրից թերակատար այնր պատմութեան, յորմէ ոչ ժամանակ, և ոչ տեղի, և ոչ թագաւոր, և ոչ թէ յորմէ ազդէ, և կամ ուստի դիմեալ յայսքան եկն յառաջադիմութիւն, մինչ զի տարևոր պատուել զնա տաւնիւք և ժողովրրդովք ծանուցեալ լինի։

Նաև որք հակառակաբարն բերին Յոյնք և Վիրք ընդ վկաիս և ընդ մեզ առասպելական յաւդեալ բաջաղանս, իսկ որք հակառակինն ի ստուգելն վիրին ճշմարտութիւն, թև ով արդեաւք սա իցէ, զըղջասցին կամ ըմբերանեսցին և մեզ յաղագս ճշմարտագունի յայտնութեան պատմութեանս փութոյ և երկուց վարձ փոխարինի ի ձենջ և յամենեցունց այս տացի թողութիւն մեղաց հայցել ի Տեառնէ ի յիշատակի երանեալ վկաիս, զնոյն ինքն վասն որոյ բանս է, բարեխաւս ունելով վասն մերոյ փրկութեան։

Եւ արդ սկսեալ ի պատմութեանս, զոր ընկալաք գրով ի Նախասա-
297բ ցեալ սրբոյ ուխտին մար Պարսամոյի սպասաւորաց // եւ արդ է այսպէս։

305ա Թարգմանեցաւ ճառս յասորւոց ի մերս, ի ձեռն Միխաելի ուրումն կրամաւոր քահանաի Ասորւոց, և յարմարեցաւ ըստ կարի մերում լեզուի շարադրութեամբ, ի Ներսիսէ եպիսկոպոսէ, եղբաւրէ կաթողիկոսէ Հայոց Գրիգորիսի, ի թվականի ՈԷ (1158), որովք մաղթեմք զընթերցողսդ և զգաղափարողսդ յիշել զաշխատեալքս ի սմա աղաւթիւք առաջի Աստուծոյ յաւուր տաւնի երանելեացս, եւ զբանս զայս յիշատակի դրել յիւրաքանչիւր դրեալս հայցեմք։

## 206
## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 844*

Գրիչ՝

ա

157ա *Աղաչեմ զձեզ սիրոյն Քրիստոս(ի) անմեղադիր <ուք> լերուք գրիս խոշորութեանս։*
*Թվ(ին) ՀԴ (1158) գրեցաւ։*

բ

24ա *Այ վախ, շատ ղրհուցայս, կու սխալիմ։*

## 207
## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՑ

*Երևան 2684 (973 թ.)*

Կազմող՝ Յովնան

240բ *Ջանպիտան կազմիչ գրոցս զՅովնան յաղաւթս յիշեսջիք։ Թուականս ՈԸ (1159) էր, յորում ամի կազմեցին։*





## 208
## ԱՒԵՏԱՐԱՆ
*Երևան 10360*

Գրիչ՝ Սիոն

Վայր՝ Խարդբերդ

ա

*Փառք եւ երկրպագութիւն յիմանալեացն եւ ի սգալեացս եւ համան-*
*գամայն ի բոլոր սեռական համասերիցս տէրութեանն և միաստուածու-*
*թեանն, ամէն։ Աստանաւր յանգ ելեալ աւարտեցաւ շնորհաձիր տառս,*
*ծաղիկս լուսերանկ, ծառ անծերանալի, ճոխս եւ ոստս ոմնելով բարձ-*
282բ *րածայրեալս, սեղան ամենալի եւ յոգնախորտիկ, || սեղան, ոչ որ պա-*
*կասեալ լրութիւնն կարաւտանա, այղ յայն յանծայրածաւալ սեղանոյն,*
*զոր Տէրն հրամայեաց ուտել եւ ոչ ճաշակել դմահ։ Յորոյ սեղանոյ ճա-*
*շակեալ ճշմարիտ աւետարանիչքն աւժանդակեցին մեզ հաւաստապէս*
*զխորհուրդ տնաւրէնութեան Տեառն մերոյ, եւ աւանդեցին ընթ(հ)ա-*
*նուր հաւատացելոց Նոր Սիովնի։*

*Արդ, ի թուականիս Հայոց ՈԹ (1160) հանդիպեցաւ եւ մեզ շա-*
*րադրել զսա ի կածի, ի վարժ և ի կիրթ, եւ յետիր աւրինակէ ի պար-*
*ծանս հաւատացելոց։ Գրեցաւ ի մայրաքաղաքիս* Խարդբերդ, *ընդ հովա-*
*նեաւ Սրբոյ Կարապետիս, ի կաթողիկոսութեանն տեառն* Գրիգորիսի,
*յեպիսկոպոսութեանն տէր* Թեոդոսի, *ի դատաւորութեան* Խարասլանին:
*Արդ յայսմ վայրի աղաչեմ ղամենեսեան յիշել յաղաւթս ձեր բարեխաւ-*
283ա *սութեամբ Սուրբ Կարապետիս, որոյ ընդ || հովանեաւ սորա գրեցաւ*
*տառս այս, եւ ի պաղատանս աղաչեմք յիշել ղփանաքիմա գրիչս* Սիով-
նի, *եւ զեղբարս իմ, զկրամաւոր եղբարն իմ* զՅովսէփ, *եւ զյառաջ*
*վախճանեալ եղբարն իմ* զԿոզմա, *եւ զծնողսն իմ, եւ* զԱճճայ, *եւ* զԱր-
դեկ, *որ աւգնեցին ի սուրբ Աւետարանս, եւ զնոքայ յիշեսջիք ի Քրիս-*
*տոս, եւ ինքն Յիսուս իւր ապենիազ եւ անհատ ողորմութեամբն յիշողա-*
*ցըդ եւ յիշեցելոյս, որ ի սմա եմք տրամադրած, ըստ իւրաքանչիւր*
*աշխատանաց վարձս բարեաց պարգեւեսցէ, ամէն։ Եւ ինքն աւրհնեալ*
*է յաւիտեանս բանն համագո, ամէն։*

բ

282ա *Քրիստոս Աստուած սուրբ աւետարանչացս բարեխաւսութեամբ ողոր-*
*մեայ* Խանկեանն *հոյգոյն, և իր ամուսին, և իր գաւակին* Կոստընդնայ,
*որ աւգընական եղև ի սուրբ Աւետարանս։*

գ

288ա ԶՄխիթար *միայնակեացս յիշեսջիք ի Քրիստոս.*
ԶՍիրամարգ *յիշեսջիք ի Քրիստոս։*
ԶԱղբրացս *յիշեսջիք ի Քրիստոս։*





## 209
## ԱՒԵՏԱՐԱՆ

Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 380—381

Գրիչ՝ Վասիլ Ուռհայեցի

Վայր՝ Եդես[իա]

ա

275 Փառք ամենասուրբ Երրորդութեանն ի բարձունս Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ։ Գրեցաւ ի թուականիս Հայից ՌԺ (1161) յամենալաւ աւրինակէ, որ կոչի Կոստանդին Ուռհայեցւոյ, ի կաթողիկոսութեանն տեառնն Գրիգորի եւ ի թագաւորութեանն Հոռոմոց Մանուէլի, ընդ հովանեաւ եկեղեցւոյս Սուրբ Աստուածածնիս, ընդ ձեռամբ Վասիլ մեղապարտ քահանայի եւ անմար գրչի։

Ա[յ]րս այս Քրիստափոր ցանկացաւ աստուածային պատուիրանացս եւ ետուն դրել զԱւետարանս վասն հոգոց իւրեանց։ Որ կարդայք կամ աւրինակէք, մեղաց թողութիւն հայցեցէք Քրիստափորի եւ կնոջ նորա Այգոցի։ Որ զմեզ յիշեք, եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ եւ յԱստուծոյ մերոյ, եւ Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Գրեցաւ ի գաւառիս ի Միջագետաց՝ ի քաղաքի, որ կոչի Եդես։ Աղաչեմք զամենիսեան զընթերցաւղսդ այլ եւ հրամանաց պատուիրանի աւանդեմ, մի՛ ոք իշխեսցէ հանել զյիշատակարանս գրոցս... աշխատողացս, կամ զԱւետարանս յեկեղ//

բ

41 Տէր Աստուած, ողորմեա Քրիստափորի եւ կնոջ նորա Այգոցի ամէն։

գ

141 Տէր Յիսուս ողորմեայ ի քում գալստեանք Քրիստափորի եւ կնոջ նորա Այգոցի, որ ստացան զԱւետարանս ի յեկեղեցւոջ Սուրբ Աստուածածնիս, ի յարդար վաստակոց իւրեանց, ի յիշատակ հոգւոց իւրեանց։ Որ կարդայք կամ աւրինակէք, մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, զի կարող է Աստուած ի ձեռն այլոց այլում ողորմութիւն առնել։ Որ զմեզ յիշեքդ եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, եւ Աստուած մեզ եւ ձեզ ողորմեսցի, ամէն։

դ

222 Տէր Աստուած ի քո գալստեանդ յորժամ գայցես, ողորմեա Քրիստափորի հոգւոյ եւ կնոջ Այգոցին ամմէն, որ ստացան զԱւետաքանիկս զայս վասն մեղաց իւրեանց։ Որք ընթեռնույք մեղաց թողութիւն հայցեցէք, եւ Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Աստուած վայելեալ տացէ զԱւետարանս Գրիգորի քահանայի ընդ երկայն աւուրս, ամէն։

Եւ Վասլի Ուռհայեցւոյ յանցաւորի եւ յետին եւ անպիտան գրչի յիշեցէք ի Քրիստոս, եւ Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

## 210
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6202 (909 թ.)*

Գրիչ՝ Քրիստոսատուր
Վայր՝ Սուրբ խաչ (Վանի մոտ)

431ա Յամի վեցհարիւրերորդի եւ տասն[ե]րորդի (1161) թուականութեանս Հայոց, [ե]ս տէր Վահան Սուրբ խաչի եպիսկոպոս, [ց]անկացող եղե[ա]լ [ս]տացա ղսուրբ [Ա]ւ[ետա]րա[ն]ս ի տէր Ստեփանոսէ պրտու կուրապաղատին[1], եւ ե[ղ]բաւր տեառն Դաւթի կաթողիկոսին։

Արդ ա[ղ]աչեմ զձեզ, ով սուրբ քահանայք եւ մանկունք սուրբ եկեղեցւոյ, որք /// յ[իշ]ե[ս]ջիք ի Քրիստոս [Աստուած] ե[ւ] Քրիստոս զ[ձե]զ [յի]շեսց[ի] ///

Ջտէր Ստեփան[ոս] յաղաւթս ձեր յիշեսջիք, եւ զՔրիստոսատու[ր][2]:

---

[1] Այս Ստեփանոսն է, որ նորոգել է տվել Թովմա Արծրունու Պատմությունը։ Վերջինիս մեջ կարդում ենք. «Նա ստացաւ զմատեանս Թումայի Պատմագրիս զայս և ետ նորոգել վերըստին յիշատակ իւր և բարի ծնաւղաց իւրոց, և աստուածատուր պտղոյ որովայնի իւրոյ Խեղնեկին, զի ի պտղոց արդարութեան բուսանի ծառ բարեաց... Որոյ յիշատակ իւր աւրհնութեամբ եղիցի, աղաւթք սրբոյ ի վերայ նորա եկեսցէ» (Ձեռ. № 10451, էջ 321ար)։

[2] Այս բառը Հ. Թոփչյանը սխալմամբ կարդում է «դիս ստացողս» (Ցուցակ, Բ, էջ 29), իսկ Գ. Հովսեփյանը վերծանում է ճիշտ՝ «գքսատուր», բայց ոչ որպես հատուկ անուն (Յիշատակարանք, էջ 382)։ Քրիստոսատուրը հիշատակարանի գրիչն է։

ՌԺԱ 1162

## 211

## ՊԱՏՄԱԳՐՈԹԻՒՆ ԱՐԱՐԵԱԼ ՄԱՏԹԷՈՍԻ ՄԵԾԻ ՔԱՀԱՆԱՅԻ ՈՒՌՀԱՅԵՑԻՈՅ, ՎԱՍՆ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ ԹԱԳԱՒՈՐԱՑՆ ԵՒ ԱՅԼՈՑ ԲԱԶՄԱՑ

*Երևան 1896 (1689 թ.)*

*Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898 թ., էջ 112—114, 227—282*

*Հեղինակ՝* Մատթէոս Ուռհայեցի

*Վայր՝* Ուռհայ

*Արդ, ահա, մինչև ցայս վայրս բաղմաջան և աշխատաւոր քննութեամբ գտեալ գրեցաք զշարագրական դրեալս ըհարիւրից ամաց, զորս ի բազում ժամանակաց հետաքննեալ հասու եղաք ընդ այնքանեաց տեսողացն և լսողացն, որք էին ի հին ամաց ծնեալք, և ընդ ընթեր-*
35բ *ցողլ|ոն առաջին պատմագրացս, որք ականատեսք էին լեալք ամենայն եղելոցս և նեղութեանցս այսոցիկ, զոր վասն մեղաց կրեաց* Տունն Հայոց:

*Եւ ահա, որ զայս բազում անգամ մտաւ ածեալ եմ վասն այս ետին ժամանակին գրեալ զդառնաշունչ կատարածսն զայս սոսկալի բարկութիւնս, զոր կրեաց զազգս Հայոց ի գիսաւոր և պիղծ Եկիմացւոց ազգէն Թուրքաց և եղբարց իւրեանց Հոռոմոցն Եւ վասն այսորիկ հարկ եղև ի մտաց խորհրդոյս իմոյ անդադար յուզմամբ, իբրև զմեծ իմն համարելով գտանել զայս գործս կատարածին Եւ վասն այսորիկ զօրաժողով արարի և գրեցի մինչև ցայս վայր ըերեք ազդացս և ըհայրապետացս և զայլ պէս պէս քննութեանց ըազգաց և զթագաւորաց՝ զորս յառաջ ասացաք, և որ զկնի դեռևս[1] ասասցուքն Զսկիզբն կատարածիս զոր ինչ եղև յաւուրս հարցն մերոց, որք էին տեսեալ բազում անգամ աչօք իւրեանց, զոր և իմ իսկ խորհեալ զխորհուրդս զայս և զԸ (8) ամ անհանգիստ քննութեամբ կացի, և զայս ամենայն յօժարեցի ի տեսութիւն և ի մատենագրութիւն ածել գրով, վասն ըի մի ի շարաշունչ դառնութեան ժամանակս կորիցէ այս ամենայն և մոռասցին*

*Եւ վասն այսորիկ ես* Մաթէոս Ուռհայեցի *և վանական, զաշխատութեան զգործս իմ ոչինչ համարեցայ, այլ Թողի զայս յիշատակ սիրողաց ժամանակագրութեանց, ըի յորժամ ի հանդէս քննութեան ելցեն յաղագս ժամանակաց անցելոց, դիւրաւ կարասցեն գտանել զժամս և զժամանակս, և զկատարած բարկութեանն ի վերայ ժամա-*

[1] *Տպագրում և աշխարհաբար թարգմանության մեջ՝ «թերևս», որ սխալ էւ*

նակացն գտանիցեն, և այնու ևս ըմատ ածեալ յիշեսցեն զաստուածասաստ բարկութիւմն, զորս վասն մեղացն ընկալաք զ՞ատուցումն յարդար դատաւորէն Աստուծոյ, և վասն այսորիկ կողմանց զկորուստ հաւատացելոցն և զխրատ, զոր անօրէն ազգաւ խրատեաց զմեզ Տէր Աստուած մեր, և ահա, որ ոչ կամեցաք զսպառնալիսն և զխրատն Աստուծոյ մոռացուցանել ի վերայ .մեր։

Արդ, արժան է միշտ և հանապազ լսել զխրատն Աստուծոյ մերոյ և դարձեալ ի նոյն պատուհասն մեղացն դեգերեալ շրջիմք, զորս ընկալաք ըստ արժանեաց մերոց զհատուցումն։

Նա և այլ ևս ունիմք ասել ձեզ ամաց ութսնից զաշխատութենէ Մաաթէոսի Ուռհայեցւոյ և վանաց իւրեցու։

85ա Ի յամի Ն-երորդի[1] (951) Շ-երորդի Ծ-երորդի (1101) ի գիրս այս ժողովեցաք զգործ ժամանակաց ՃԾ (150)-ից ամաց, և յայսմ տեղւոջ լռեալ դադարեցաք ի յարուեստաւոր քննութենէս մերմէ, վասն զի այլոց ոմանց թողաք զայս մարտ մտաց և պայքարումն խորհրդոց, և մեր յետ ելանելո տեղի տալով հանճարեղացն և իմաստուն արուեստաւոր քննողաց, ըստ բանի սրբոյ առաքելոցն Պօղոսի, որ ասէ. Եթէ ոք յա-
85բ տենի ելցէ// առաջինն լռեսցէ։ Եւ այս եղև ի հայրապետութեանն Տանն Հայոց տեառն Գրիգորիսի և տեառն Բարսղի, յորժամ եղև սկիզբն առաջին երկրապատմութեանս, և էր ի հայրապետութեանն Հոռոմոց, որ ի Կոստանդնուպօլիս՝ Նիկօլայ, և ի հայրապետութեանն Անտիօքայ Յօհաննու, և ի հայրապետութեանն Երուսաղէմայ Սիմէօնի, և ի հայրապետութեանն, Աղէքսանդրու Յոհաննու, և ի հայրապետութեան տանն Ասորոց Աթանասի: Եւ ի յԱդամայ էին ամք ժամանակաց Ց և Ո և Ժ (6610)։

Եւ արդ զամս Ժ (10) մինչ արարաք հոգս վասն այս ժամանակագրութեանցս և թողեալ էաք ի բացեայ զարուեստ գրչութեանցս, և տեսանելով մեր հանապազօր զաստուածասաստ բարկութիւնս հեղեալ ի վերայ քրիստոնէից, և ամյամէ անկեալ և դլորեալ լինէր զօրութիւն զօրաց հաւատացելոցն, և տեսաք զի ոչ ոք ունէր ի մտի զայս խնդրել կամ ի գիրս հաւաքել, զի ապագայիցն յիշատակ լիցի այս կատարածս և նեղութիւնս առ բարի ժամանակն, յորժամ տացէ Տէր Աստուած գխոստացեալսն յետին ժամանակին, յորժամ տացէ Աստուած հաւատացելոց զժամանակն, որ լի իսկ իցէ անմենայն ուրախութեամբ։

Եւ ապա մեր յառաջ եկեալ յայն ժամ բազում ուրախութեամբ, որպէս թէ յԱստուծոյ այս հրամայեցաւ ինձ, զայս այսպէս ի գիր հաւաքել և ապագայիցն թողուլ զայս յիշատակս, և թէպէտ և ոչ է սա հոգևոր հմտութեամբ զարդարեալ, կամ արուեստ հոգևոր, և կամ շաւիղս առաքինութեան ինչ, այլ զխրատն Տեառն, զոր վասն մեղաց ազգի յանցանօք ի բարկութիւն շարժեցաք, զՏէր Աստուած ի վերայ մեր, և ի նմանէ առաք զխրատ զայս գաւազանաւն նորա։

[1] Հրատարակիչները «Ն երրորդի»-ն դուրս են գցել բնագրից, համարելով գրչական սխալ. Այնինչ հեղինակը ցույց է տալիս նախորդ մասի շարադրանքի սահմանները, 951—1101 թվականները։

*Եւ արդ, պարտ և արժան է ոչ մոռանալ զսա որք կենդանիքս են
ժամանակիս, այլ գրել և յիշատակել զսա ծնանելոցն, եթէ այս է մե-
ղաց պտուղն, զոր ցանեցին հարքն մեր և եւթնապատիկ ժողովեցին։
Եւ վասն այսորիկ ես* Մատթէոս՝ *որ անարժանս եմ, ողորմութեանն
Աստուծոյ, զամս բաղումս քաջաջան քննութեամբ կացի և արիաբար
մտօք ի քաղաքս* Միջագետf յՈւռհայ, *ժողովեալ գրեցաք մինեւ ցայս
վայր, և ղամաց երեսնից դեռեւս առաջի կայ ի դրի հաւաքել։*

*Եւ արդ, ահա այս վարդապետաց և կորովի գիտնականաց էր գործ,
86ա և ոչ մերում տկարութեանցս, և կամ սակաւ|| գիտութեանցս։ Բայց այս
սովորութիւն է Աստուծոյ, զի տկարաց և ի նուաղից գործ ինչ պիտա-
նացու պահանջէ. որպէս տեսանեմք զերամս մեղուացն և զարմանամք
ընդ դասապետութիւնսն նոցա, եթէ որպէս յոչինչ և ի թեթեւ մարմնոյն
ամենայն որդիք մարդկան յագենան քաղցրութեամբն նոցա, և ի պէտս
սրբոց մատչին գործք նոցա, և առաջի թագաւորաց փառաւորի, եւ կամ
մեռեալ որդն, որ գայ և կենդանանայ, և վաստակովք իւրովք ի գոյնս
ղարդարէ զթագաւորս և զիշխանս, և ամենայն եկեղեցիք նովաւ հարս-
նանան պէսպէս զարդարանօք։ Այսպէս և տկարութիւնս մեր համար-
ձակութիւն էառ, և առաջի հռետորաց և իմաստնոց [հզօրաց] և խորին
հանճարեղաց և քաջակիրթ քննողաց խօսեցաք զայս, և յանձին արա-
րաք զմատենագրութիւնս մեր նոցա, վասն զի արկցեն ի րովս և քըն-
նութիւն արասցեն, և մեք ոչ ընդդիմանամք, վասն զի մերս ընդդէմ
գիտնակա[նա]ց ոչ ունի դիմադրութիւնս։ Որպէս և այն թեթեւ թռչունն,
թէպէտ և ձայնովն ընդդիմանայ բաղմաց, այլ մարմնովն տկարանայ,
այն որ կոչի ծիծառն։ Սակայն նա զմերս ունի նմանութիւնս առ զար-
մանալի գործ բնութեանն իւրոյ, թէ զիա՞րդ յոչինչոյ բնակութիւն կազ-
մէ և ի բարձունս առանց հիման կառուցանէ, շաղախաբեր և շիզաբեր
վաստակս հնարով հնարէ, և ամրութիւնս պնդագոյնս հաստատէ, և որդ-
ւոց իւրոց զնա տացէ ժառանգութիւնս, զոր և այլ յաղթանդամ թռչնոց
անհնար է ղայն գործել արծուոյ ասեմ և նմանեաց նորա, վասն զի
զայլ քաջութիւնս մեծաւ կարողութեամբ առնեն հաւքն քաջաթռիչքն,
բայց զայն զոր գործեաց թեթեւ թռչունն՝ զայն ոչ կարեն առնել։*

*Արդ, այսպիսի օրինակաւս հանճարեղք և գիտնականք զամենայն
քննութիւնս Հին և Նոր կտակարանացն Աստուծոյ կարող են առնել և
ի յայտ բերել ահաւոր և լուսաւոր քննութեամբ, բայց զայս հաւաստա-
պէս ասացից և առանց երկբայութեան վասն այս, որ ի մէնջ քննեալ
գծագրեցաւ, անհնար է եթէ այլ (ոք) կարող լինի զայս գտանել և կամ
հաւաքումն առնել միահամուռն ազգաց և թագաւորաց, հայրեպետաց և
իշխանաց, զամենայն ժամանակս թուականութեամբ ի գիր հաւաքել,
վասն զի վճարեալ հատան առաջինքն, որք ականատեսք էին ամենայն
ժամանակացն։ Արդ զայս ոչ ոք է կարող առնել, զոր ինչ մեք արարաք,
զի զոր ինչ գրեցաք՝ գրեցաւ. զի զամս հնգետասան ունէաք՝ զայս գործ
86բ քննութեանս, զոր ի մա||տենագրութիւնս ընթերցեալ գտանէաք զթուա-
կանութիւնս ժամանակացն՝ ի յիշատակարանս գրոցն, և ընդ ծերսն ի*

*քննութիւն մտեալ դեգերէաք անդադար քննութեամբ և հաւաքեալ գրեցաք ի դիրս զայս ինչ։*

*Եւ արդ ես* Մատթէոս *այսու եղէ ցանկասէր, և կամեցայ դառնալ ընդ նոյն ընաբան պողոտայն, զորօրինակ ոք ի բազում ժամանակաց շրշեալ ի վերայ համատարած մեծի ծովուն Ովկիանոսի, և ցնորեալ բազում նեղութեամբ, զկնի ալեկոծութեանն երթիցէ ի տունն իւր խաղաղութեամբ, և զմտաւ ածեալ յիշեսցէ զսէր բազում շահիցն, յայնժամ ոչինչ ի յանցեալ նեղութեանցն մտաբերէ։ Եւ առ ոչինչ համարելով զամենայն ինչսն, զոր ի ծովուն նաւակոծեցաւ, այլ փութայ մեծաւ փափագանօք դառնալ ի նոյն ծովագնացութիւնս։ Այսպիսի օրինակաւ և մեք դարձցուք ի մեր թողեալ կէտ գրոյն, և գտաք զբնաբանն զառաջինն զոր թողեալ էաք, յորժամ էաք ի յամս ՇԾ (1101)։*

*Եւ արդ սկսաք ասել զայլ ևս ամաց քսան և հինգից, և երեսուն լիցի վճարումն գրոցն, վասն զի աճեաց թուականութիւնս Հայոց բազում նեղութեամբ, և ի նոյն հայրապետութիւնս տեառն* Գրիգորիսի *և ի թագաւորութեանն յունաց* Ալէքսին, *դարձաք յօժարական մտօք, և սկսաք առ ի պատմել զկոտորածն և զնեղութիւնս չար ժամանակիս այսորիկ։*

*Եւ ոչ արարաք զսա ի պէտս սնափառութեանց, որպէս կարծել ոմանց, այլ ի յիշատակս և ի յազդումն առ ի յապա ժամանակին, և ոչինչ զմտաւ ածի զտկարութիւն մտաց և զանկարողութիւն ի գիտութենէ հմտութեանց, այլ ոք կատարեալքն են գիտութեամբ Հին և Նոր կտակարանացն Աստուծոյ, նոքա են կարողք քերականական արուեստիւք զբանսն սրբել, և զամենայն սխալանս բանիցն պայծառացուցանել ըստ աստուածատուր շնորհացն, որ տուաւ նոցա։*

*Իսկ մեք, ըստ տխմար գիտութեանս մերոյ զայս քննեալ մաքրութեամբ, և դրեցաք ղբաղում մատենագրութիւնս, զորս գտաք վասն նեղութեանց ժամանակացս այսոցիկ, զոր ի տեղիս տեղիս գրեալ էին և թողեալ էին զայն յիւրեանց յիշատակ, զոր և մեք ժողովեալ զայն ամենայն բազում հոգեբարձութեամբ և լսեցաք յայլոց ոմանց պատուականաց, որք հասու էին ժամանակացն և նեղութեանցն, և անսխալ*
87ա *հասեալ էին ի վերայ ժամանակացն և թվականացն, || և ընդ ծերս ունէաք խօսակարգութիւնս և քննութիւնս, որք տեղեակք էին անցեալ ամացն՝ ըստ բանի մարգարէին որ ասէ. Հարցիր դու ցհարսն՝ և ասասցեն քեզ, և ընդ ծերսն՝ և պատմեսցեն քեզ։*

*Արդ այսպիսի օրինակաւ անհանգիստ եղեալ մեր և զամենայն հոգս զբաղանաց թողեալ էաք, և զամենայն ցանկութիւնս արհամարհեալ էաք, և միշտ և հանապազ զայս ունէաք պայքարումն մնաց, զոր դարձեալ սկսաք ի գործ երկրապատմութեանս, ըստ երանելի վարդապետին* Գրիգորի Նիւսացւոյ, *որ ասէր. Դարձեալ ես ծերունիս յասպարիսի։ Զորս և մեր մնացեալ յայլոց ոմանց թողաք զայս քննել, եւ ահա տեսանէաք զամենեսեան հրաժարեալ ի պատմագրութենէ աստի, և տեսանէաք մեք ղի ժամանակս գնալով գնայր, և հոսմունս և ծորմունս, և զպակասութիւն մեզ ցուցանէին, եւ զոչ կալ դադարման մարդկութեան ի վերայ երկրի, այլ զփոփոխմունս յաստեացս ի հանդերձեալսն ի յայտ*

բերէին. վասն զի անցաւոր են ամէն և ժամանակքս, այսպէս անցաւորք են ծնունդք նորա, և զոր օրինակ մշտնջենաւորք են հանդերձեալքն, այսպէս և անկատարածք են ծնունդք նորա. և երանի որք հանդիպեսցին այնմ ուրախութեանցն, և երանի որք կերիցեն հաց յարքայութեանն Աստուծոյ։

## 212
## ՏԵԱՌՆ ՆԵՐՍԻՍԻ ԱՍԱՑԵԱԼ ՄԱՂԹԱՆՔ ԱՌ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԻՆ ԳԱԲՐԻԷԼ ԵՒ ՄԻՔԱՅԷԼ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ԶՕՐՍՆ ԵՐԿՆԱՒՈՐԱՑՆ

Երևան 4477 (1159 թ.)

Հեղինակ՝ Ներսէս Շնորհալի

64բ Զանծին բարեաց ծնող բանիս
Մի մոռանայք տամող վեհիցս,
Զներսէս եղբայր հայրապետիս,
Որոյ անուն տեառն Գրիգորիս,
Յորմէ խնդրոյ իջեալ ըստ իս.
Յարմարեցաւ շինուած ճառիս,
Եւ եղանակ Շարականիս,
Առ ի պատիւ մեծի տանիս։
Արդ (յ)իշեցէք ընդ տեառն և զիս,
Լսողք վեհիցն գովեստիս,
Եւ դուք յիշեալ առ տէր ունիս,
Լինիք երկնից նորայն բանիս։

Ասացաւ և գրեցաւ ճառս ի տէր Ներսէսէ եպիսկոպոսէ՝ յեղբաւրէ տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի, ի խնդրոյ նորին, Ի ՁԺ և ի ԺԱ (1162) թվականին։

*ՌԺԳ* *1164*

### 213
### ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

*Հանդես ամսօրեայ, 1922 թ., էջ 152*

Վայր՝ Կաստաղաւն

55ա *Զայս բան գրեցաք մեք ի թըւական*
*ի վեց հարիւր ու երեք տասան (1164),*
*Ի յանբարի ժամ տրտմական*
*զոր քրիստոնեայք իսպառ անկան[1],*
Անաիոճու զաւրքն *հարան*
*և զաւրագլուխքն ըմբռնեցան,*
*Ի յաւգոստոս երեքտասան (13)*
*չորեքշաբաթ աւր տըխրական,*
*Վասն մեղաց, որ բազմացան*
*բարերարին կամք բարկացան,*
*Անաւրինացըն մատնեցան,*
*զի յաւրինաց նորա դարձան։*
*Բայց աչըն Հաւր պահպանական*
*պահեաց զիշխանըն հայկական,*
Զթորոս *անուն յոյժ վեհական*
*ազգաւ սերեալ* Ըռուբինեան:
*Շնորհեաց մեզ ձիր պարգևական*
*և աշխարհի իւր սեփահական,*
*Լուաւ ըղձայն աղաւթական*
*որ ի բնաւիցըս մատուցան։*
*Որպէս մանգունք Բաբելոնեան*
55բ *|| ապրեալ հայցմամբ Դանիէլեան,*
*Կամ մարգարէն մեծն Յունան*
*յորովայնէ փրկեալ ձըկան։*
*Արդ, դուղնաքեա գրեալ այս բան,*
*յերկիր սորին գոլ տիրական,*
*Ի* Կաստաղաւն *ուխտ սրբազան,*
*յիւրոց նախնեացըն դամբարան։*
*Մինչ ճանապարհ մեղ ուղղեցան*
*գալ ի* Կլայէն Հըռովմայական
*Ի տեսութիւն իւր ըղձական*

---

*[1] Այս երկու տողը մոռացված է տպագրության մեջ։ Լրացնում ենք Մատենադարանի № 10653 ձեռագրից (էջ 162բ)։*

պատուասիրեալ սիրոյ բաղձման։
Որում հայցեմք պարագայց ամ
գերալըրապէս անղրրաւական.
Անճառ[ել]աք մինչ ի վախճան
յաղթել ի սպառ, որք ներհական։
Սիրել ղբարին աստուածական
ատել բղչարն դիւական,
Ջի անդ բարեացն, որ խոստացան
արժանասցի միշտ յաւիտեան, ամէն[1]։

## 214

### ՏՕՆԱՊԱՏՃԱՌ—ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 3082 (1267 թ.)

420բ Գիր հաւատոյ խոստովանութեան Հայաստանեայց եկեղեցոյ, գրեալ ի Ներսիսէ Հայոց կաթողիկոսէ, եղբօրն Գրիգորի Վկայասէրի, ի խնդրոյ գերապատիւ փեսային ինքնակալ թագաւորին Հոռոմոց Ալախսիոսի մեծ պրոտոստրատողին, յորժամ եւ յարևելս և էր ի Մամեստիա մայրաքաղաք Կիլիկեցւոց, անդանալը և հետևելով և նորին կոչմամբ, ի թվին Հայոց ՌԺԴ (1165)։

---

[1] Գրված է 1283 թ. ընդօրինակված Լևոն Գ թագավորի Սաղմոսարանում, հավանաբար ղաղափար օրինակից։ Մատենադարանի № 10653 ժողովածուի մեջ ի թիվս այլ հիշատակարանների, ընդօրինակված է նաև այս, գրիչ Եփրեմ վարդապետի վկայությամբ, նույն Սաղմոսարանից։

## 215
## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7347

Գրիչ՝ Կոզմա

Վայր՝ Հռոմկլա

Փառք ամենասուրբ Երրորդութեանն, ամէն։

340ա Շնորհիւ [Տեառն ակ]սայ եւ ողորմութ[եամբ նո]րին [կա]տարեցի զաստուածախաւս չորեքվտակեան կենսաբեր սուրբ Աւետարանս յընդ-րեալ, ճշմար[տապատում յաւ]րինակէ, ի յամի վեց հարիւրերորդի հնկետասաներրորդի (1166), ի կլայս Հռոմեական, ընդ հովանեաւ սուրբ եւ փ[առա]ւորեալ կաթողիկէ եկեղեցւոյս Լուսաւորչի Սրբոյն Գրիգորի, ի հայրապետութեան աստուածաբնակ սուրբ տեառն իմոյ տէր Գրիգորիսի, որոյ առաջն[որդութեամ]պ եղև զ[րաւ գրու]թեանս իմոյ, զոր հատուցէ նմա փոխար[էն]ս Քրիստոս Աստուած իւր ա-[ռ]ատ պարգեւացն։

340բ Գր[եց]աւ ձեռամբ Կոզմաի // [մեղ]աւորի եւ [ա]նարժան գրչի, հրամանաւ սուրբ և արհեպիսկոպոսի եւ [ար]դիմական վարդապետի տէր Առաքելի Անձաունեայ վերայ [դի]տողի։

Արդ, [աղաչեմ] զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, որք կար-դայք եւ կամ [աւ]գտիք ի սմանէ, յիշեցէք զմեղա[պարտ գրի]չս զԿոզ-մա եւ ծնաւղս իմ, եւ ղ[ե]զբարս իմ, զի ողորմեսցի մեզ Քրիստոս Աստուած, որ ըստ կարողութեան իմոյ յամենայն ղաւրութենէ իմմէ բազում աշխատեցի եւ ծաղկերանգ եւ վարզափթիթ ոսկէհուռն զար-դարեցի յաղագս /// զանազան[1] /// իմանալոյ ինչ ի սուրբ տառս։

Արդ, որ հատուցա//նող[ն] եւ բաշ[խ]աւղն է Քրիստոս՝ Աստուածն ամենայն բարութեանց, հատուսցէ մեզ ղվարձս բարեաց ըստ մերոյ աշխատութեանս։ Եւս առավել ստացողին սորայ տէր Առաքելին [որ] յոյժ փափաքանաւք եւ յորդոր մտաւք ստացաւ զսա ի յիշատակ հոգ-ւոյ իւր եւ ծնաւղաց իւրոց, զոր եւ տացէ նըմա Քրիստոս Աստուած վար-ձըս բար[իս] ը[նդ ա]մենայն սուրբս իւր և Քրիստոսի Աստուծոյ մե-րոյ փառք յաւիտեանս։

Ցանբաւ եւ յանճառ պարգևաց աստուածայնոց առաւելութեան լցեալ հոգւոյն աստուածազգեստից արանց կատարելոց եւ անմահական աղբե-րէն արբելոց, որք նորոգապէս ծնաք աւազանին լուսազգեստ///թեամբ [որ] երկնեաց Սիոն եւ ծնաւ ազգ անարատ եւ ամուլ սկնդուկն եղեւ բազմորդի։ Եւ զի ի ծագմանէ կենարարին Ցիսուսի եւ յերեւմանէ աս-տուածախառն բնութենէ լցաք նորոգ բարութեամբ, եւ յաստուածացեալ մարդւոյն ծնեալքնիսն համակեալ մահկանացուքս [յան]մահն, եւ ան-

[1] Մի տող չի կարդացվում։

մահկանացուքս ընդ մնա[ցեալ]սն բնութեան աստուածութեանս եւ գերադրական ճոխութեամբ[ս] յանկապուտ փարթամութեանքն [մե]ծութիւն վերառեալք անմահ[ա]ցաք, Աստուած ընդ Աստուածս միաւորէ եւ ծանուցանէ եւ այնքան առել մինչ զի ծայրս աստուածութեանն ժամանեա յըստակ հայեցուածովք հոգւ///[1]...

Բ

9r Ողորմեա Քրիստոս // տէր Առաքելի:

Գ

11r Ահա [ղ]քոյս առեալ քեզ տամ,
[Բ]արձեալ ի ձեռս առաջի դ[ա]մ,
Զայս նուերս բար[եխն]ամ,
Ցիս հայեաց Տէր հաշտակամ։
Տէր Առաքեալ ստացաւղ սորա[2]։

## 216

## ԱԻԵՏԱՐԱՆ

Տէր-Մովսիսյան, Համահավաք ցուցակ, Ավետարանք, էջ 75
Կոնիբիր, Ցուցակ Լոնդոնի, էջ 3

Գրիչ՝ Սիմէոն

ա

Փառք քեզ Աստուած Հայր, Աստուած Որդի, Աստուած Հոգի, երրամիութիւն եւ միաստուածութիւն, որ բանդ Աստուած էակիցդ և փառակիցդ Հոգւոյն Սրբոյ Որդիդ միածին, իջէր երկնից եւ առեր մարմին ի Սուրբ Աստուածածնէն վասն փրկութեան մարդկան։ Զքեզ շաւշափեցին սուրբ աւետարանիչքն ի մարմնի, եւ հնչեցին զկենսաբեր տնաւրենութիւն Քրիստոսի անդ քառոլորդս տիեզերաց։

Արդ, բարեխոս առ քեզ ունիմ զսուրբ կոյսն Մարիամ եւ զսուրբ զառաքեալքս, զորոց եւ զԱւետարանս գաղափարեցի։ Ողորմի անարժան գրողի գրոցս ի քո ահաւոր գալստեանդ աներեկ միաշաբաթուն, եւ քեզ փառք այժմ եւ յանսպառ յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ ի Հայ թուականիս ի ՁԲ (1166)[3]։

---

1 Գարեգին Հովսեփյանը հիշատակարանի վերծանության առթիվ գրում է. «Երկու որ տանջվելուց հետո հազիվ այսքանը հնարավոր եղավ կարդալ. բարեբախտարար ժամանակն ու ստացողը, տեղը որոշ, բացի գրչից։ Ձեռագիրը կարևոր մանրանկարչական տեսակետից» (Յիշատակարանք, էջ 395)։

Չվերծանված մասը, հիրավի, անընթեռնելի էր, որը շատ ժամանակ պահանջեց կարդալու համար։ Ճշգրտվել են նաև որոշ բառեր և նախադասություններ։ Արդյունքը եղավ այն, որ ժամանակի, ստացողի և տեղի մասին տեղեկություններին ավելացավ գրչի և ծաղկողի (որ միևնույն անձն է) մասին տեղեկությունը, որով և հարստացան մեր գիտելիքները, Նորմա խարբերդցու ժառանգության մասին։

2 Գրված է ստացողի նկարի շուրջը։

3 Կոնիբիրի մոտ շատ համառոտ է հիշատակարանը։ Մ. Տեր-Մովսիսյանը գրում է. «Հիշատակարանից հետո մի թերթ ևս կար. դժվար է ասել, որ հիշատակարանը շարունակություն չի ունեցել։ Ես 1166 թ. գտա հին ցուցակ կազմողի ձեռագրում, իսկ Կոնիբիրի մոտ ժամանակը նշանակված է ԺԲ դար։ Թվականը Սարկավագի տոմարով է՝ 1166։

Բ

Տէր Յիսուս ողորմեա Սիմէոնի մեղաւորի գրողիս սուրբ Աւետարանիս, ամէն[1]։

## 217

## ՃԱՌՔ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ

*Երուսաղեմ, 1268, Պողարյան, Ցուցակ Դ, էջ 447—448*

Գրիչ՝ Աւետեաց

ա

518 Գրեցաւ գիրքս այս աստուածաբանական խիտ եւ խոշոր գրով, նուրբ եւ նուաղ ձեռով, ձեռամբ Աւետեացս, մեղապարտ գրչաւորի, ի ՌԺԶ (1167) թուականութեանս Հայոց, ի յընտիր աւրինակէ, եւ դարձեալ ստուգարանեցաւ յայլմէ աւրինակէ, աշխատութեամբ սուրբ եւ տիեզերական հռետորին Գէորգ կոչեցելոյ։ Աղաչեմ զձեզ, հարք եւ եղբարք, որք աւգտիք ի սմանէ եւ կամ եթէ գաղափար առնուցուք, զգրիչս եւ զստացիչս զԱւետ, եւ զծնաւղսն, եւ զեղբարսն իմ, անմոռաց յիշմամբ թողութիւն հայցեցէք մեղաց մերոց։ Եւ որ թողութեանցն է տուող, զձեզ յիշեսցէ յիւրում գալստեանն, ամէն։

Զկազմող սորին զԽաչատուր քահանայ, զեղբայրն իմ ըստ մարմնոյ, մի մոռանայք. եւ Քրիստոս հասարակաց ողորմեսցի։

Բ

18 Ով սուրբ հարք և եղբարք, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր, զԱւետիսս՝ զանպիտան աշակերտս, և որք յիշէքդ, յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։

---

[1] Լուսանցքում «Ժաժկանց Աւետարանի ընկերն է սա» (49ր)։



13—1130

## 218
## ԱՐԵՏԱՐԱՆ ՍԱՄՍՈՅ

Երուսաղեմ 725
Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 397—405

Գրիչ՝ Առիստակէս

Վայր՝ Միջնաղբիւր ուխտ

ա

*Փառք անսկզբնական և էական գերագոյն գոյութեանն և անքակ միութեանն և բնաւոր աստուածութեանն ինքնեան միայնոյ ելով հասութիւմն յաւիտեանս, ամէն։*

*Ի ձիր շնորհի սորա յուսացեալ՝ օգնութեամբ Երրորդութեանն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ Աւետարանս՝ ի հայրապետութեանն տեառն* Ներսիսի *Հայոց կաթողիկոսի և ի տէրութեան* Սանանոյ Վեգենայ *մեծի պռոտօնուելեսիմոսի, որդւոյ* Զորդուանելի *թոռն* Թոռնկա *մեծի հզօրի և քաջի, որ բնիկ յԱստուծոյ հաստատոմ հիմնակառուցեալ ունի զաթոռ հայրենի տէրութեան իւրոյ, և ի թուականութեանս Հայոց ի ՌԺԸ (1169), հրամանաւ երանելի քրիստոսասէր թագուհոյ* Մելեքսեթայ, *ամուսնոյ* Վեգենայ, *որ է յազգէ* Արծրունի *և ի շառաւեղէ Սրբոյն* Վարդանայ, *դուստր մեծ իշխանին* Մսկաց *Հմա*յեկի:

*Իսկ բարեացապարտ երից երանեանն Վեգեն և ամենայն օրհնութեանցն արժանի երանելի աստուածասէր թագոյի՝ սոքա ըստ ազնուականութեան հայրենի պատուոյն և ըստ աստուածային օրինացն՝ գեղեցիկ քաղաքաւարութեամբ կացեալ առ միմեանս, և զամենայն օրինակ բարեպաշտութեան յանձինս իւրեանց բերելով և զարդարեալ ոչ միայն մարմնաւոր մեծութեամբ, այլ և հոգեւոր փարթամութեամբ, աստուածպաշտութեամբ, զի երանելին* Վեգեն *զխաղաղութեան զհետ երթեալ ըստ տերունեան բանին, որ ասէ, Երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին, և զաշխարհի շինութեան, զարդար դատողութեան խրատելով զստահակսն, դատ առնելով զրկելոց, օգնական լինելով նեղելոց, եւ ապաւէն, ամենայն փախուցելոց, շինելով զեկեղեցիս Աստուծոյ և զարդարելով ամենահրաշ սպասեաւք և զարդուք, և զքահանայս Աստուծոյ պատուելով և մեծարելով և զկեանս նոցա դարմանելով և յամենայնի առաջին սուրբ նահապետացն և թագաւորացն նմանեալ, որք զպատուիրանս Աստուծոյ պահեցին և հաճոյ եղեն նմա և ի վերայ այս ամենայնի զողորմութիւն և զսէրն ունելով, որ է գլուխ ամենայն առաքինութեան։*

*Նոյնպէս և երանելի թագոյի զամենայն առաքինութեանց զհետ*

երթեալ և զարդարեալ ոչ միայն ի հիւ[ս] ոսկեմանս ընդելուզեալ մարգարտով և ակամբք պատուականօք կամ ի հանդերձս ոսկեհուռս՝ հպարտացուցանողս զմիտս կանանց թագաւորազանց, այլ սա զկնի մարմնական մեծութեան ստացեալ և զհոգեւոր առաքինութիւն, զսրբութիւն, զհամեստութիւն, զխոնարհութիւն, զպահս սրբութեան և զաղօթս հանապազորդս, եկեղեցաեաց զարդարիչ և քահանայից յանձանձիչ, որբոց և այրեաց խնամածու, զմերկս զգեցուցանելով, և զքաղցեալս կերակրելով և այլ բազում առաքինութեամբ, ըստ օրինակի առաջին սրբոցն, որ ընթացան զկնի Քրիստոսի կոչմանն և առաքելական քարոզութեանն, որպէս ասէ Պօղոս՝ փողն տարսոնական, անօթն ընտրութեան, քարոզն տիեզերաց, յուսուցանելն իւրում, եթէ Կանայք հնազանդ լերուք արանց ձերոց յամենայնի իբրեւ տեառն, և արք սիրեցէք զկանայս ձեր իբրեւ զանձինս ձեր։ Իսկ ամենագով երանելիքս ըստ առաքելական խրատու և ըստ Քրիստոսի պատուիրանացն սուրբ և պարկեշտ ամուսնութեամբ կացեալ առ միմեանս որպէս զմի մարմին և ծնեալ ուստերս լուսածաղիկս և դստերս գեղեցկատեսիլս, և սնուցեալ խրատու և ուսմամբ, կրթելով զնոսա յերկիւղ Տեառն և ի հրահանգս բարեպաշտութեան, ապա ոմանք ի զաւակաց սոցա յառաջագոյն փոխեցան յաստեաց ի հանդերձեալսն իբրեւ զպտուղ ինչ նոր յառաջին արմտեաց ընծայ մատուցեալ, յորոց մինն Գրիգորիոս Ճանաչիւր, և այլոց անուանքն դրեալ են ի դպրութեան կենաց, և սուղ ինչ զվախճան նոցա արտասուեալ և գոհութիւն Աստուծոյ մատուցեալ վասն ըն[դունելոյ] զպտուղ որովայնի նոցա։ Ապա, զկնի այսորիկ աստուածապաշտ կարղօք ուրախացեալ բարեկարգութեամբ վարէին զիշխանական տէրութիւն իւրեանց՝ հանդերձ մնացեալ որդւովն, զերից երանեան և զամենագովելին ասեմ՝ զՁորդուանելն, զգեղեցիկն, զբարետեսիլն, զզանգրահերն, զխարտիշագեղն, զլայնաթիկունքն, զհաստաբազուկն, զշափահասակն, զքրիստոսասէրն, զաղօթասէրն, զքահանայասէրն, զխոնարհամիտն, զհեզն, զերկայնամիտն, զսիրումն, զսիրեցեալն, զողորմածն առ ամենեսան, զօգնականն անօգնականաց և զբարեխօսն դատապարտելոց և զհանիչն բանտարկելոց և զկերակրիչն քաղցելոց։

Եւ զի՞նչ թուեմ մի ըստ միոջէ, զի ամենայն շնորհօք զարդարեալ էր ի հոգեւորականն և ի մարմնաւորականն և այսպիսի վարուց աճեր և իմաստնանայր և հնազանդ և հլու էր ծնողացն, և հպատակ հրամանաց նոցա, և ոչ երբեք զմանուկ թագաւորազին ամբառնայր ընդդէմ կամ բարձրամրտեր, այլ ընդ խոնարհս զիջանէր, զտէրունեան հրամանսն կատարելով, թէ Որ խոնարհեցուցանէ զանձն, բարձրասցի, և վասն գեղեցիկ վարուցն և լաւութեան բարուցն՝ ծնողք նորա առաւել սիրեին զնա։ Ապա խորհուրդ ի մէջ առեալ աճեցուցանել կամելով զշառաւեղ ազգին իւրեանց, փեսայացուցանեն զնա ի դուստր Վասլի՝ եղբօր տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի, հզօրի և մեծի, որոյ անուն Վաճինէ Ճանաչի, որոց եկեալ առ միմեանս, եղեալ իբրեւ զմի մարմին՝ սիրունք և սիրեցեալք, և ըստ աստուածային օրինացն կեցեալք ծընանին երիս որդիս գեղեցիկս և հրեշտակատեսիլս, որում առաջնոյն՝ ասի

Վասիլ, իսկ Երկրորդին՝ Շահինշահ և Երրորդին՝ Թոռնիկ, և կային բարեկարգութեամբ, ղուրճացեալք լուսածաղիկ ղաւակօքն։

Իսկ զկնի այսմ եղելոցս աստուածասէրն Վեգէն և երանելի ամուսին նորա Մելեքսարի օրհնութիւն ամենատեառն մատուցանէին, տեսանելով զբարեկարգութիւն տէրութեան իւրեանց և ղաճումն զաւակաց և զշինութիւն աշխարհին։

Էր ապա դուստր մի իւրեանց՝ կոյս գեղեցիկ, յոյժ զարդարեալ ամենայն բարեձեւութեամբ և յոյժ սիրեցեալ յաչս մօրն՝ առաւել քան զամենայն մանկունս իւր, որոյ անուն յորջորջեալ կոչի Կատա, կատարեալ հասակաւ և գեղեցկութեամբ և ամենայն առաքինութեամբ, յորոյ անուն սուրբ Աւետարանս գրեցաւ։ Զնա կամեցեալ ծնողաց իւրոց տալ մեծաշուք պատուով ի թագուհոյութիւն Շահինշահի՝ որդւոյ Գրիգորի, թոռին Կադակոլաւսի, որդւոյ Կամենի մեծի, ի Տեգեաց գաւառ՝ ի մեծ ամրոցն որ կոչի Ուղուկ: Որ իբրեւ երթեալ անդ ըստ հայրենի ազնուականութեանն և ըստ մայրենի աստուածապաշտութեան, որով սնեալ էր, և անդ ցուցեալ զգեղեցիկ բարեձեւութիւնն, զսրբութիւն, զողորմածութիւն, զեկեղեցեաց և զքահանայից հոգաբարձութիւն, և սուրբ ամուսնութեամբ ծնեալ մանուկ մի, որոյ անուն է Շահմնլիք, զոր իբրեւ լսեին ծնողքն զնորա բարի յառաջադիմութիւնն, փառս ի բարձունս Աստուծոյ մատուցանէին, և ինքն երանելի չքնաղագեղն Կատայն գոհութիւն Աստուծոյ մատուցանէր, որ եթող զտուն հօր իւրոյ ի մեծութեան և յուրախութեան, եղբարբքն հանդերձ և ամենայն ընտանիքն։

Եւ մինչեւ յայսմ ուրախութեան էին, և բերկրէին ի միմեանց բարեկեցութեան, և ի շինութեան էին, և ուրախ էին առ հասարակ ամենայն սիրելիք՝ հեռաւորք և մերձաւորք, պետք և իշխանք և ամենայն քրիստոնեայք և վանորայք և կրօնաւորք, որ ընդ իշխանութեամբ նոցա էին, ապա մեղսաւէրն և բարիատեացն սատանայ նախանձեալ յազգն իսմայէլեան, յարուցանէ պատերազմ ի վերայ տանն Վեգենայ, այլ ի զօրութենէն Աստուծոյ յայտնապէս պատերազմաւ ոչինչ կարացին ստանալ նմա, այլ գաղտագողի իբրեւ զօձ սողեմտին և աւերեցին տեղիս ի գաւառաց նորա, և գերեցին բազումս ի քրիստոնէից, և այն էր սկիզբն թանձրամած սգոյն, զոր ունելոց էր զմեզ և զնոսա և զամենայն քրիստոնեայք և զամենայն սիրելիս՝ զհեռաւորս և զմերձաւորս։ Զի հուպ ընդ հուպ, կարճ ի կարճոյ ի նմին ամի յաւուրս պահոց քառասնորդացն՝ ի հինգերորդում շաբաթուջն, զկնի տօնի Սրբոց Քառասնիցն, ըստ աստուածակոչ հրամանին հասանէր վախճան երանելւոյն Զորդուանելի ի տիս երիտասարդական, թողեալ շառաւիղ ազգի զլուսածաղիկ զաւակսն իւր և մխիթարանք ծնողաց իւրոց, և ինքն փոխի ի Քրիստոս, առ որ անձկացեալ էր, բայց զաղետս տարակարծ դիպուածոյն և զիրս անբով կոծոցն, որ եղեն յայնժամ, զոր գործեցին հայակոյտ բազմութիւնն ազատացն, ծառայից և աղախնաց և տիկնաց ազատաց, և գաւառաց ընդ խուռն եկելոց ի կոծ լալեաց, և զողբս հօրն և մօրն և ամուսնոյ նորա, ոչ կարեմք զգրով արկանել, բայց ի նմին ժամու ժո-

ղովեալ բազմութիւն քահանայից և կրօնաւորաց և վարդապետաց, զսպեալ զգեղեցիկ մարմին նորա պայծառ և պատուական հանդերձեօք և բարձեալ տարան ի հայրենի տապանատումն իւրեանց՝ յուխտին, որ կոչի Վանդիր, ի դուռն սրբոյ կաթողիկէին, զոր շինեաց իւր երանելի հայրն Վեցեն՝ իննխորանեան, և փոխեն զնա ի հանգիստ սաղմոսիւք և նրդոք հոգեւորօք ի փառս տուեալ արձակեցին զժողովուրդսն։

Գործեցաւ այս ի Հայոց թուականիս ի ՈԺԴ (1165)։

Եւ մինչ յայսմ տրտմութեան էին, և սակաւ մի զանձինս իւրեանց մխիթարել կամելով, գեղեցիկ մանկամբն իւրեանց Վասակաւ և որդւովքն Զօրդուանելին, հասանէր նոցա տրտմութիւն ի վերա տրտմութեան, զի քրիստոսասէր բարեպաշտուհի դուստր իւրեանց Կատայն, մինչդեռ յուրախութեան էր և ի մեծութեան ինքն և ցանկալի տէրն իւր Շահինշահն, և համակեալ էին ի սէր իրերաց, և բերկրէին ի միմեանց տեսլենէ, և զուարճանային ընդ տեսիլ զաւակի իւրեանց, և ոչ էր լուեալ դմահ նղբօրն և զտրտմութիւն ծնողացն, և ակն ունէր բազում ժամանակս վայելել զկեանս աշխարհիս և ծնանել ուստերս և դստերս։ Ապա եղեւ նորա ժամանակ ծնանելոյ՝ ունելով յորովայնին մանկունս երկուս, եկին հասին երկոմք ծննդեանն, ըստ տէրունեանն հրամանին, որ ասաց ցնախամայրն թէ՝ Տրտմութեամբ ծնցես որդիս և ի կենսաբեր ւուրբ Աւետարանին ասէ, Կին յորժամ ծնանիցի, տրտմութիւն է նմա, ղի հասեալ է ժամ նորա, և ի ստիպել երկանցն, զկնի ճեպէին երկոմք մահուն, և ի մեկնել մանկանց, եկն եհաս օրհասն մահու, և ուրախութեամբ փչեալ ղոգին, ղերծեալ ի պատրանաց աշխարհիս և ի զբաղմանց աշխարհի, փութացեալ առ նաւահանգիստն Քրիստոս։

Եւ անդ էր տեսանել զաղէտս անբով տարակուսանացն և զողբս անհնարինս և զկականումն պատուական և աղատ կանանց, զաղիողորմ արտասուս տըղայոցն, զհառաչանս սիրելեացն, զաշխարանս բարեկամացն, զի ամենեքեան մինչդեռ յուբախութեան և ի հանդերձս հարսանեաց համակեալք էին՝ վաղվաղակի սգոյ հանդերձ զգեցեալ ի թխութիւն դառնային, և այսպիսի կոծով երանելի և սիրեցեալ առնն զվախճան նորա սգացեալ, ղի ի մատաղ հասակի հրաժարեաց ի նմանէ և սուղ ինչ ժամանակս բերկրեցան ի միմեանց տեսլենէ և կարճակտուր եղեւ սէր նոցա, փոխի յաշխարհէս ի հանդերձեալսն առ Քրիստոս յանվախճան ուրախութիւնսն։ Ապա առեալ զպատուական մարմին՝ պատեալ պայծառ հանդլրձիւք, եդեալ ի տապանի և բարձեալ դասեօք քահանայից և բազմամբոխ ժողովրդովք տարեալ յիւր սեփհական վանքըն, որ կոչի Սուբբ Փրկիչ, յորում բնակեալ էին կրօնաւորք միաբանակեացք, հրեշտակակրօնք սուրբք և ընտրեալք՝ փոխեն զնա ի հանգիստ սաղմոսիւք և օրհնութեամբ և երգօք հոգեւորօք, և կնքեալ զգերեզմանն և մեծարեալ զօր հանգստեան նորա, արձակեալ զժողովուրդըսն՝ գնացին ի տունս իւրեանց։

Այսոցիկ այսպէս եղելոցս լուեալ ապա երանելի ծնողացն ըզվախճան դստերն՝ յանհնարին սուգ տրտմութեան ընկղմեցան, և նորոգեցաւ կեղեքումն առաջին վիրացն և այրումն ի վերայ այրման, և մոռացան

զառաջին սուգն՝ զսորայս խիստ համարելով, զի ի հեռաւորութեան եղեւ վախճան նորա և ոչ տեսին զմահ նորա, և բազում աւուրս սգացեալ զնա, ապա զյոյսն Քրիստոսի առաջի աչաց եդեալ՝ զմխիթարիչն ամենայն սգաւորաց, գոհութիւն Աստուծոյ մատուցեալ, որ էր զնոսա և դարձեալ կամեցաւ առնուլ զնոսա, զոր Տէր Քրիստոս մխիթարեսցէ զնոսա մխիթարիչ Սուրբ Հոգւովն և հանդերձ մնացեալ զաւակօքն անտրտում ուրախութեամբ և հաստատուն պահեսցէ ողջութիւն նոցա և յաղթող ի վերայ թշնամեաց՝ աղգաց յազգս մինչեւ յաւիտեան։

Իսկ ապա քրիստոսասէր և բարեպաշտ թագուհին՝ մայր գեղեցիկ աստուածասէր Կատային բարի խորհուրդ զմտաւ ածեալ, զպակասումն զաւակին իւրոյ լնուլ կամեցեալ և զտրտմութիւն յուրախութիւն փոփոխել, նմանեալ առն վաճառականին, որ խնդրեցէ զպատուական մարգարիտն, զոր տէրն յԱւետարանի առակեաց, ելեալ ի խնդիր այսմ լուսաւոր մարգարտի, որ ոչ ինչ յեղելոցս փոխանակի ընդ սմա, ստացաւ զսա նիւթականօքն զանանց մեծութիւն ստացեալ, և յիշատակ դստեր իւրոյ ի տեղի նորա կացուցեալ, իբրեւ այն, թէ զնա կենդանի տեսանելով յորժամ ղսա տեսանիցեն և ընթեռնուցուն։ Ապա հրաման ետ ինձ գծագրել ղսա՝ Առիստակիսի յոգնամեղ և սուտանուն կրօնաւորի՝ անիմաստ և փծուն գրչի։

Եւ գրեցաւ սոյն Աւետարանս ի լերինս Sor[ոսի]՝ ի սահմանս Սանենոյ՝ ի սուրբ յուխտիս, որ կոչի Միջնաղբիւր, որ է ի մէջ աղբերաց քաղցրահամ ջուրց, ընդ հովանեաւ Սուրբ Փրկչիս և Սրբոյ Աստուածածնի, յառաջնորդութեան տեառն Ստեփաննոսի՝ երջանիկ և ընտրեալ եպիսկոպոսի, զոր Տէր օրհնեսցէ և պահեսցէ ընդ երկայն աւուրս։ Զ ||| նա մեր հոգացեալ։ Եւ ետ սուրբ Աւետարանս ի Սուրբ Փրկիչն, յորում է գերեզման դստեր իւրոյ, ի յիշատակ նորա, և ի պայծառութիւն տօնից տէրունականաց, և ի զուարճութիւն մանգանց եկեղեցւոյ՝ ընթեռնելով յաւուրս տօնից և զատկաց և ի ժամ պատարագելոյ մեղսաքաւիչ և կենարար մարմնոյ և արեան Քրիստոսի։

Արդ, ո՛վ դասք սրբոց, պարք երկնագումարք, հրեշտակք բանաւորք, տաճարք Երրորդութեան, որգիք վերին Սիոնի, աղաչեմ ղձեզ սուրբ Աւետարանաւս, զի յորժամ ընթեռնուք զսուրբ Աւետարանս և լուսաւորիք, յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր զաստուածասէր թագուհին զԿատայն, և զերանելի եղբայր իւր Զօրաւանելն, և զմայր իւր, և ղծնողս նորա, զի աղօթիւք ձերովք և Աւետարանիս շնորհիւ յորժամ գայցէ Տէր։

Բ

Ծաղկող՝

Ծրագրութիւն պատկերիս այս է յանուն Կատայի՝ դստեր Վիգենայ, որ ի ծնունդն վախճանեցաւ ի տիս մանկութեան, եւ եթող սուգ անհնարին մաւր իւրում, որում ողորմեսցի Տէր իւրում մեծ գալստեանն, ամէն[1]։

[1] Գրված է եղել Կատայի, մոր և իր երկու զավակների նկարի տակ։ Ավետարանը մեծագիր է եղել և երկաթագիր, կոչվել է Սասունցի։ Գ. Սրվանձայանցը այն տեսել և ընդօրի-

## 219
## ԹՈՒՂԹ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ՆԵՐՍԷՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Երևան 3906 (ԺԷ դ.)*

**Վայր՝ Սիս**

1ա *Ի փառս ամենամեծ Աստուծոյ և Սրրհւոյ Աստուածածնին, ի թուականութեան կենարարին մերոյ ՌՃՀ (1170) և Հայոց ՌԺԶ (1167)։ Յորմէ գաղափարեցաւ՝ ՌԺԸ (1169) թվին Հայոց, ի քաղաքն* Սիս[1]:

---

*նակել է հիշատակարանը (Թորոս Աղբար, Բ, էջ 308—318)։ Գ. Հովսեփյանը վերցրել է Երուսաղեմի № 725 Հարանց վարքից, որի մեջ արտագրվել է սույն հիշատակարանը՝ այլ ժամանակագրությունների հետ միասին։ Ն. Պողարյանի Ցուցակում (Բ) չի բերված։*

*Գ. Հովսեփյանը Կոտայի ամուսին Շահինշահի պապահայր Կամենին նույնացնում է Գրիգոր Մագիստրոսի և Աոոնի գործակցի հետ, որը նշանակված էր Մոնոմախ կայսեր կողմից Հայոց գավառները պաշտպանելու։ «Շահինշահ անունը ապացույց է, թե տոհմը կամ հայ ծագում ունի կամ խնամությամբ հայոց հետ կապված» (Ալիշան, Հայապատում, 394)։*

[1] *Գրված է առաջին էջի վրա, XVIII դարում, XIII դարի բնագիրը նորոգողի և լրացնողի կողմից։*

## 220
## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 313*

Գրիչ՝ Յոհաննէս

Վայր՝ Եդեսէա

ա

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդոյ [ե]ւ Հոգւոյ Ս[րբ]ոյ ամէն, ամէն։*

267բ *Գրեցաւ եւ աւարտեցաւ աստուածախաւս և փրկչական գիրս Աւետարանիս, ի թուի ՈԻ (1171), ի մայրաքաղաքս* Եդեսէա, *ընդ հովանեաւ Սրբոյն Գէորգեաւ։ Արդ դրեցաւ յընդիր եւ ի լաւ աւրինակէ, ձեռամբ* Յոհաննիսի *մեղապարտ և անարժան քահանայիս։ [Ձեռ]աւք իմաւք ի սկզբնահայրն սկսեալ մինչև ի սպառումն ծննդոց նորաւ Ոչ զոք դտի համեմատ [ին]ձ պարտաւոր։*

*Ո՜վ սուրբք եւ սիրեցե[ալ]ք Աստուծոյ եւ կ[աթողիկ]է ե[կեղ]եցո[յ քա]հանայք, որք կարդայք յաւուրս տէրունական տաւնից եւ սուրբ կիւրակէից, եւ կամ աւրինակէք, եւ կամ գաղափար առնոյք, յիշեսջիք ի սուրբ եւ յարմարահայց մաղթանս ձեր զգրող սորին* զՅոհաննէս *եւ զհայր իմ* զՄանուկ *քահանայ, եւ զմայր իմ։ Եւ որք ջերմեռանդ սրտիւ խնդրէք զթողութիւն մեզ, եւ [դուք] դտջիք զթողութիւն ի Քրիստոսէ Աստուծոյ։*

268ա *Արդ աղաչեմ զամենեսեան ղի խոշորութեան դրոյս [եւ ա]մենայն [յանց]անաց թողութիւն շնորհեցէք։*

*Տէր Յիսուս Քրիստոս, ողորմեա, խնաեա, տես ի տարակոյսս անձեռնհաս տագնապիս, զի դու միայն բաւես կորզել ի ժանեաց սատակման, որ եսդ առ կեանսն՝ փոյթ, առ ողորմութիւնն՝ սթափ, առ ձեռնկալութիւնն՝ պատրաստ, առ փրկութիւն՝ կ[ա]զմ, առ երկայնմտութիւնն՝ ճոխ, առ անհասութիւնն՝ բարձր, առ անբաւութիւնն՝ լի, եւ Ք[րիստոսի փառք]յաւիտեանս, ամէն։*

*Արդ աղաչեմ զամենեսեան, որք աւդտիք և լուսաւորիք ի սուրբ Աւետար<ետար>անէս, զստացող սորա* զՍահակ *յիշեցէք յաղաւթս ձեր, որ ստացաւ զսա յարդար վ[աստ]ակոց իւրոց, և* զԳրիգոր *միակեացն, որ աւգնական եղև ի գինս սուրբ Աւետարանիս, և* զՊատրիկ *հոյսն, որ զտախտակն երետ և* զՎահր[ամ *որ]արկեց, յիշեցէք յաղաւթս [ձեր] և Աստուած ձեզ ողորմեսցի։*

բ

129բ *Արդ աղաչեմ ղամենեսան, որք կարդայք ղսա կամ աւրինակէք՝ թողութիւն մեղաց հայցեցէք անարժանիս, եւ խոշորութիւն դրոյս անմեղադիր լիք, եւ Քրիստոսի Աստուծոյ փառք յաւիտեանս։*

Գ

211ա Ողորմեա ինձ Տէր Աստուած յայն մեծի ատենին, մինչ աչացս կող-կողակին հայեցուածս ի բարձրունս նկատիցի, ըբազմակարծեան ուղ-ւոյն զանզերծ ընթացից, զանփախչելին ճանապարհ յաչս բերելով, մտացս տեսմամբ էանա յամենայնի վտանգեալ եւ յերգրնակութեան յարկիս նկատեալ ի խորոց աներեւութից զզործելոցս, ողբալով հա-ռ[ա]չեմ, կարող ես բարէզութ եւ անդ հրաշագործել յաւետ ղաւրեղու-թեամբ, ասելով թէ՝ Եղիչիք ողջ յոգւոյդ խորտակմանէ, եւ կամ Թողեալ լիցին քեզ մեղանք քո, եւ կամ թէ Երթ ի խաղաղութիւն սրբեալ ի մե-ղաց, եւ քեզ փառք յաւիտեանս, ամէն։

Դ

19ա Անցաւ այս տողս, մի մեղադրեք[1]։

## 221
## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ, 123 (911) Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 545

Գնող՝ Աւետիս

Վայր՝ Խազղուղf

Ի թուականութեանս Հայոց ի ՋԺ եւ Ի (1171), ես անարժան ծա-ռայս Աւետիս երեց գնեցի ղԱւետարանս ի քաղաքես Մանազկերտոյ, ի քահանեն Ստեփանոսե, ի գեւղս որ անուն կոչի Խազղուղf, և անուն եկեղեցական Սուրբ Սիոն և Սուրբ Գեորգ, ի յիշատակ հոգոյ իմոյ եւ Սարգսին հոգոյն։ Արդ, ի աղմանէ չարին գողացան ղԱւետարանս յա-ւուրս պենղեկոստեից, յամսեան սահմի, որ օր ԺԵ (15) էր ամսոյն, և խափանեցին զկարդացմունս և ղժամատեղն, և զքահանայսն տրտմե-ցուցին։

Այլ յորժամ եհաս ողորմութիւն Աստուծոյ, յայտնեաց զփրկական սուրբ Աւետարանս ի ձեռն հաւատարիմ կնոջ միոյ՝ որոյ անուն կոչի Շուշան, որ մեծաւ ջանիւ յերեւան եհան ի յաւազակացն։ Արդ դողա-ցողքն դատապարտեցին ընդ Յաքարայ գողին և ընդ տիրայսպան ժո-ղովոյն։ Քահանայ, որ կարդայ յիշեսց[է] դՇուշան և զծնողս նորին, զհայրն Ստեփանոս և զմայր նորայ Մարիամ. և ... աւրհնեսցէ զնոսա։

## 222
## ԱՒԵՏԱՐԱՆ

Տեր-Մովսիսյան, Համահավաք ցուցակ, Աւետարանք, էջ 78

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի գաւառն Կիլիկիոյ, ձեռամբ ա-պիկար քարտուղար Ստեփանոսի վարդապետէ գծագրեալ ՈԻ (1171) թուոջ մերում...

[1] Մի տող մոռացել է և լուսանցքում է գրել, որի համար ներքեւից մի տող բաց է մնացել։



ՈՒԱ 1172

## 223
## ԵՂԻՇԷԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՆԱՑ ԵՒ ՀԱՅՈՑ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ

*Երևան 1890*

Գրիչ՝ Դաւիթ
Վայր՝ Կոշ

**ա**

209ա *Փառք փրկչին եւ յիշատակ գրչիս Դաւիթ կոչեցեալ։*

*Փառք հզաւրի եւ ահաւորի, վեհի եւ մեծի, անհասի եւ անճառի,
անսահմանի եւ անսլասմի, անպատարակի եւ անորակի, անքանակի
եւ անձեւի, անչափի եւ անժամանակականի, փառաց փառաւորի եւ ան-
մահի, եզակի եւ եռանձնեա, պարզ եւ անշարոմակ, սուրբ եւ վճիտ,
յստակ եւ մաքուր, համագո Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն,
ամէն։*

210ա *Ի Հայկազեան թուականիս վեցհարիւրերորդի եւ երկուց տասանց,
եզակաւ միով առաւելեալ (1172), եւ ըստ նորում շրջանիս միոյ յոբե-
լենի եւ երից տասանց եւ քառից երկուց (1172), եւ ըստ ծննդեան կեն-
սարարին եւ մերոյ ազատութեան ի մահուանէ յանմահութիւն՝ են ամք
ՌՃՀԴ (1174)։ Արդ յայսմ ամի գրեցաւ գիրքս այս Եղիշէի պատմագրի
եւ ընտիր վարդապետի, որ եւ տեղեակ եւ հմուտ էր ամենայն պատե-
րազմաց Վարդանանց եւ նեղութեանց, որ անցին ընդ աշխարհս Հայոց,
որ եւ այլ գիրս ստացեալ կանոնականս զգուշաւորս սրբոյ եկեղեցւոյ եւ
առաւելեալ ի վարս արդարութեան, հաճոյ Աստուծոյ եւ մարդկան, եւ
ետ այսր՝ վարս կրաւնաւորութեան յանձն առնոյր, եւ զխստամբերու-
թիւն ճգնութեան, պահաւք եւ աղաւթիւք հանդիսանայր, եւ որպէս
210բ յալ//եաց ծովու ի նաւահանգիստ, փութացեալ յանապատ, ի բաց լքեալ
զերկրաւորս՝ զհետ երթայր երկնաւորին, եւ զամենայն առաքինութիւն
յանձին կատարելով, զամայութիւն սիրելով եւ խոտաբուտ կենաւք ան-
ցուցանելով զաւուրեա կենցաղս՝ սուրբս այս Եղիշէ իբրեւ զանմար-
մինս ի մարմնի կեցեալ, եւ զդիւացն մարտս վանեալ, եւ յանապատի
ուրումն յայրի վախճանեալ բարի խոստովանութիւն ի Քրիստոս Յի-
սուս ի Տէր մեր, ամէն։*

*Արդ ես՝ Դաւիթ ցանկացող եղէ այմ գրոց եւ գծեցի զսա ի սակս
յիշատակի հոգւոյ իմոյ՝ մեղաւք վարակելոյ, եւ ծնաւղաց իմոց, և եղ-
բաւր իմոյ հարազատի Մխիթար կոչեցեալ, որ սպասաւորեաց ինձ ի
գրելս։*

*Եւ գրեցի զսա ի վանս Կոշա, ընդ հովանեաւ Սրբոյ Ստեփաննոսի,
ի մէջ սիրելի եղբայրութեանց։ Արդ հայցեմ յիշել ի Քրիստոս, եւ Քրիս-
տոս յիշողացդ ողորմեսցի, ամէն։*

Բ

01ա Զգծող գրոյս զԴաւիթ նուաստ եւ յետին կրաւնաւոր եւ զծնողս իմ յիշեսջիք ի Տէր Յիսուս, աղաչեմ։

Գ

123բ Ո՛վ եղբարք, յիշեցէք զանարժան գրիչս։

Դ

184բ Ջստացող սորին եւ զգծողս զԴաւիթ յիշեսջիք, զի թերեւս ողորմեսցի Տէր բարեխաւսութեամբ սրբոցս, ամէն։

## 224
## ԱՒԵՏԱՐԱՆ ԱՍՈՐԵՐԷՆ

*Նյու-Յորք (մի կրոնական հաստատություն)*

*Գրիչ՝* Սիմէոն
*Վայր՝* Մելետէնոյ գաւառ որ
կոչի Լաղապնի

*Փառք քեզ կոնեա արեդսագւոյն արարիչ կիսագնդի եւ Դեմեարիեայ։ Կազմեցաւ չորեքգլուխ սուրբ Աւետարանս ի թուաբերութիւնս Հայոց ի ՈՃԻԱ (1172), ի կաթողիկոսութիւնն տեառն* Ներսիսի, *եւ ի պատրիարգութիւն տէր* Միխաւիելի Ասորեստանեաց, *// ի նահանգիս մայրաքաղաք* Մելետէնոյ *գաւառի, որ կոչի* Լաղապնի, *ընդ հովանեաւ Սրբոյ Ստեփաննոսի Նախասարկաւագի եւ առաջի մարտիրոսի։*

*Արդ, ամենայն որ ոք աւգտեսցի ի սմանէ՝ տ[ե]սմամբ, եւ եթէ ընթ//եռլով, կամ ի պէտս գաղափարի, աներկբայ առցէ, [եւ] զմեղապարտ եւ զյետին քահանայ* Սիմեւովն *յաղաւթս ձեր յիշեսջիք, եւ Աստուած ձեզ ողորմեսցի յիշողացդ եւ յիշեցելոցն, ամէն։*

*Աստուածատունկ եւ հոգիաբողբոջ բիւրաստան սաղարթաւփիթիթ, յոքնապտուղ հոյլ բիւրաբանութեամբ բեղմնաւորեալ, մանաւանդ քնարս այս բազմայարմարս եւ բազմայպայծառ սքողաչուք երկնաւորին հարսին եկեղեցո, հանուրասփիռ, տիեզերագոչ, ոլորտածաւալ աղդարակ անմահագործ, լցեալ ղաւրութեամբ, զոր ամենասուրբ Հոգին սատարի բարձանց, ի շրթունս թելադրեալ սրբոց աւետարանչացն Մաթէոսի, Մարկոսի, Ղուկասոյ եւ Յոհաննու չորրորդ աղ//բեւր վտակաց, որ արբուցանէ զամենայն տիեզերս բոլոր բովանդակ աստուածային պարգեւացն անկեաւ անկողոպտելի, յարապայծառ, միշտ զուարթ պարունակ հոգեշար, բաղձացեալ բովանդակ կենաց մերոց է պտոյտս անկայիս յաւրինաւորն կապ եւ սահման աւետարանեկան քաղաքաւարութեամբ ըզկեանս մեր պայծառացուցանէ ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Ո՛վ սիրելի եղբարք, որք ընթեռնոյք զգիր աղաչանաց, մաղթանաւք հայցեցէք ի սրբոյ ճգնաւորէն Քրիստոսի Մաւր Պարսաւմոյէ մեղապար-*

*տիս Սիմէոնի նուաստ քահանայի եւ ծնողաց իմոց եւ եղբարց, եւ Տէր ողորմեսցի ձեզ, ուր բանք սպառին եւ գործք թագաւորեն։*

---

** Ասորերեն Ավետարանի այս հիշատակարանի լուսանկարը Մատենադարան է ուղարկել ամերիկահայ բանասեր Միհրդատ Թիրյաքյանը։ Հաջորդ էջում ասորերեն և արաբերեն հիշատակարաններն են՝ հետևյալ բովանդակությամբ.*

*«Աւարտվեց այս գիրքը 1481 թվականի հուլ ամսի 21-ին, Երկուշաբթի օրը, մեր բարի, Օրհնյալ և սուրբ տէր* Միխայել Ասորու՝ Անտիոքի *և* Սիրիայի *առաքելական աթոռի պատրիարքի օրոք։ Թող Տերը փրկի, պահպանի և ազատի մեզ փորձություններից, Եգիպտոսի Մարկոս պատրիարքի և ուսուցչի... տէր և մեծ* Հովնան *եպիսկոպոսի րնակավայր* Կատարմինում (Մարդինի *մոտ) և* Տուր Ղաբդինում:

*Այս գիրքը նրա համար է գրված, որ աղոթենք Աստծուն, որ նա ազատի մեզ դժբախտություններից, թշվառությունից, չարից և ատելությունից։ Աղոթեք գրողիս համար* (ասորերեն):

«...Հարան ալ-Վարկրան (Վարքա՞ն) /Ա/րմանի,

*Չորս ավետարաններ։ Ավարտվեց այս գիրքը հունաց 1481 թվականին, Երկուշաբթի օրը,* Անտիոքի *և* Սիրիայի *առաքելական աթոռի պատրիարք մեր տեր, սրբազան հայր* Միխայիլ *պատրիարքի օրոք»* (արաբերեն):

ՈՀԲ 1173

## 225

## ՍԱՄՈՒԷԼԻ ԱՆԵՑԻՈՅ ՀԱՒԱՔՄՈՒՆՔ Ի ԳՐՈՑ ՊԱՏՄԱԳՐԱՑ

*Երևան 5619 (1176 թ.)*

Հեղինակ՝ Սամուէլ Անեցի

**ա**

9ա *...Իսկ իմ մոռացեալ զտգիտութիւն եւ զանուս(ու)մնութիւն իմ, ի*
*թախանձելոյ քոյ. սրբազգեացդ* Գրիգոր, *յաղթեցայ ի սիրոյ կամաց*
*ձեր, առ ի գրել, զոր կամեցար։ Եւ այժմ աւժընդակեալ ի Հոգւոյն Սրբոյ,*
*ժողովեցից ի սոցանէ կարճ ի կարճոյ զախորժակս ձեր զբանից հան-*
*դէս, միայն զճշմարտութեան գնալով զհետս, եւ ի յոլովից առաւել*
*դերկոքումբքս թեւակոխեսցուք, ձեռնտու ունելով զնոսա,* զԵւսեբի *ա-*
*սեմ, և* զՄովսէս Խորենացի: *Եւ նախ յԱդամայ սկսեալ՝ կատարեսցուք*
*ի Նոյ|| եւ անտի մինչև ցԱբրահամ եւ անտի մինչև ի ծնունդն Քրիս-*
*տոսի եւ ապա ըստ Քրոնիկոնին գաւազանաւք դրաւեսցուք ի ներկայս,*
*զաւելորդսն թողլով, և զկարևորսն ի ներքս մուծանելով, թերեւս հասա-*
*նիցես փափագելոյն։*
*Արդ՝ աւելորդ վարկաք ասելով զանվաւեր պատմութիւնս Քաղդէաց-*
*ւոց, եւ զդժ[ուար]ակ անուանակոչութիւնս, յորս եթէ ոք կարաւտասցի,*
*առ ձեռն պատրաստ ունի զգիրս զարմանալւոյն* Եւսեբեայ, *առանց որոյ*
*եւ ոչ մեք կարասցուք գրել, եւ որ զնոցանէ դրեալն է յիւրում տեղւոջն՝*
*կարի ի դէպ է՝ եւ պիտանի. զի թէպէտ եւ այլանման զանուանսն կո-*
*չէ զնախնեացն հարց, եւ զթիւս համարոցն առաւելեալ անչափութեամբ,*
*սակայն թիւ հարցն՝ զոյգ աստուածայնւոցն են։ է՝ եւ այլ իմն պատ-*
*ճառ, զառ ի նոցանէ անըրջաբանեալսն գրելոյ, զի Քաղդեայ էր Աբրա-*
*համ, եւ նորին || նախնիքն ի Քաղդէացւոց աշխարհէն էին, որպէս*
*Գիրք արարծոցն յայտ արարեալ ցուցանէն։ Արդ՝ վասն զի առ ի նոցա-*
*նէ ճառեցեալքն՝ վկայեն մասնաւոր իրաւք ճշմարտութեանն, զչրհեղե-*
*ղէն եւ զաշտարակաշինութենէն, և զայլս յետ նոցա վաւերական վար-*
*կան յիշել հարքն երանելիք, զորս բաւական համարեցաք զնոցայն աշ-*
*խատութիւն, գրել մեզ միայն զոր մերոյս պատշաճաւոր է խնդրոյս։*
*Եւ արդ՝ սկիզբն ժամանակագրութենաց՝ յելանելոյն Ադամայ ի*
*բազմեր(անէ)անն կայանից, կարգեցին երիցունքն՝ քաջահմուտ։ Եւ*
*որ այդ իմն բաջաղի գիտել զժամանակ թիւս այնր բնակութեան, կամ*
*յարարչութենէն երկնի եւ երկրի ասել համարձակին՝ մի հաւատար, զի*
9բ *յորմէ հետէ եղ յանուշակ կենացն՝ և կոչեցաւ Ադամ, զհասարակ ||*
*զբնաւ մարդիկ նշանակելով, յայնմհետէ առ սկիզբն ժամանակագրու-*
*թիւնս, և զայն ըստ Եւթանասնիցն թարգմանութեան, զի բազում ան-*
*միաբանութիւն ի մէջ Եբրայեցւոցն, մանաւանդ վասն թուոց ժամա-*
*նակաց գտանի։ Բայց որք Եւթանասնիցն հետևիցեն իբրև ի Հոգւոյն*
*Սրբոյ առաջնորդեալք, նոցա և մեք ուշ եդեալ շարադրեսցուք զձեռ-*
*նարկեալս։*

Բ

53ա Արդ ով սրբազգեաց տէր իմ Գրիգոր, հարկեցայ ի թախանձելոյ ձեր՝
վեղկելի անձն իմ, ետու զանարհեստ ձեռն իմ ի մշակութիւն այս գոր-
ծոց, մոռանալով զբաչաղմունս կենցաղականքս, որ յարաժամ վզուէ ի
գործել զառաքինութիւն, ջանացի յոյժ, եւ ի նեղ կեանս մարմնաւորա-
կանքս արտայայտեցի զամենագեղեցիկ աստուածարեալ Եւսեբեայ
53բ զՊատմութիւնս կրկին գրելով, որպէս պցայտումն արեւոյ, որ ի // մը-
թին տեղիս ծագէ եւ լուսաւորէ։ Է այսպէս գանձս աստուածային, որ
զխաւարեալ միտս մարդոց զարթուցանէ ի գիտութիւն ժամանակաց
անցաւորիս, եւ դարձեալ հմտանալով այս կենցաղոյս, ծանաւթանայ
վերին գիտութեանն, որ անճառն է եւ անբաւելին եւ ծնանի զաստուա-
ծապաշտութիւն, որ(պէս) Եւագր երանելին ասէ՝ Գիտնական եւ արդիւ-
նականս։

Սկսեալ ի ծնընդենէն Քրիստոսի յառաջին ամէն, զոր կարգեցից բուն թուական, եւ զթագաւորսն Հոռոմոց, Հրէից եւ Պարսից եւ մերոյ ազգի ստոյգ գտակաւ գրեցից անյապաղ[1]։

## 226
## ՃԱՌՔ ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑՒՈՅ

Վենետիկ, 314, Սարգիսյան, Ցուցակ, Ր. էջ 1267—1268

Գրիչ՝ Սարգիս

Վայր՝ Հաղբատ

216ա Որ զթերութիւն եկեղցւոյ միշտ լրացուցանէ՝ Հոգին Սուրբ՝ իւրով ամենապատիկ շնորհաւքն, նմա փառք ընդ Հաւր և ընդ Որդւոյ միա-կամութեան, այժմ և միշտ և յաւիտեանս։

---

[1] Սամվել Անեցու ժամանակագրության վերջին վկայությունը ՌԻԲ (1173) թվականն է. «ՌՃՀԵ-ՌԻԲ. Փոխի մահուամբ առ Քրիստոս տէր Ներսէս և փոխանորդէ զաթոռն տէր Գրիգոր Տղա կոչեցեալն»։ Ավետիս գրչի գրությամբ ու թանաքով նշված են հաջորդ երեք տարիները, Ա, Բ, Գ (որոնք վկայություն չունեն) և հասցնում են ՌԻԵ (1176) թվականը։ Այս ձեռագրի գրության թվականն է։ (Հիշատակարանը տես ստ, այդ թվականի տակ)։ Ավետիսը պարզապես տարիները նշանակել է հասցնելով մինչև իր ժամանակը և դրել է իր հիշատակարանը հաջորդ թերթի (108) առաջին էջում՝ 1176 թվականին։

Քսան տարի անց, և այլ գրությամբ է գրվել նաև Գրիգոր Տղայի անվան մոտ Ի (20) թվականը։

Ժամանակագրությունը նույն ՌԻԲ (1173) թվականով է ավարտվում նաև Երուսաղեմի № 1801 ձեռագրում (Փիրղալեմյանի վկայությամբ՝ գրված 1183 թ. Հոռոմոսում, Մատենադարան, ձևռ. № 9027, էջ 37ա)։ Մատենադարանի № 5619 ձեռագրի 107բ էջի հիշատակարանը վերաբերում է Սամվելի շարունակությանը. «...Աստանաւր ղտեղի առեալ կացին շարադրութիւնքս գեղեցկաբանին Սամուէլի՝ զոր բաղում երկասիրութեամբ հոգ տարեալ ստուգագրութեան եւ ճշգրտիւ հասուցեալ մինչեւ յիւրն ժամանակ։ Եւ վասն զի պատմագրութեանց սահման է յանցեալոյն եւ զներկայէն ճառել, իսկ յառաջիկայն ոչ գոյ հնար անցանել, այլ թէպէտ յայսմհետէ դարձեալ մտանէ կանոն իշխանութեան Հայոց ի շարագրութիւնս, սակայն սխալն յոլով տեսանի կանոնացս. վասն զի այսմհետէ այլոց ուրուք է շարադրութիւնս, և գրեթէ Քրիստոսի ծննդեանն ամք եւ թուականն Հայոց միայն գայ անսխալ»։ Երուսաղեմի № 343 ձեռագրում, ընդօրինակված 1480 թվականին, բերված է նույն այս հիշատակարանը և դրված Սամվել Անեցու ՌՃԶ—ՌՃԷ (1177—1178) վկայությունից հետո, որպես այդ թվա-

Ցոյժ ըղձիւ և յաւետ տարփմամբ անձկոյ՝ ի վաղուց ժամանակաց տոչորեալ այսմ աստուածահրաշ վարդապետութեան սիրով սրբոյն Բարսղի՝ սուրբ ուխտս Հաղբատա, քանզի թէ յանփոյթ առնելոյ առաջ. նորին և թե ի չպատահելոյ ժամու դիպաւորի, ոչ գրեալ և ոչ ստացեալ ումեք զայս գիրս, ամենափարթամ գանձարանս այսմ ուխտի ոչ ունէր զսա, որոյ թերութիւն զիւրն խնդրէր լրումն, որ պաշտօնէր համայ-նաւոս իւրոյ տեառն Բարսղի, արհիեպիսկոպոսի այսմ աստուածարնակ որբարանի, որ ըստ կանխանկատ գիտութեան վերնոյ դիտմանն՝ եկեալ ի գաւառէն Խաչենոյ, եղեւ ըստ աջողելոյ հոգւոյն Աստուծոյ վերատե-սուչ համայն քրիստոնեից Հայոց, որ ընդ գաւազանաւ թագաւորու-թեանս Վրաց, յաջորդեալ զաթոռ տեառն Գէորգայ: Ամենայնիւ առա-ւելեալ քան զառաջինսն ի փոյթ շինութեան սրբոյ ուխտիս, քան զի թէպէտ եւ էր ի հարց և ի հաւուց ազատ յազատաց, և մեծազգի ի մեծազգեաց, և փառաւոր ի փառաւորաց, եւս առաւել զոյր արժա-նաւոր մեծի գովութեան՝ վասն հոգւոյ անարատութեան և վարուց մաք-րութեան, որով և կոչեցաւ իսկ յայս աթոռ, ըստ վկայելոյ թագաւո-րիս և համայն աղատաց։

Այլ և ճգնաւորական զասու կրամաւորաց և յամենեցունց եղեւ պատուեալ ըստ արժանւոյ, եւս առաւել ի մեծ ամիրսպասալարէն յԻվանէէ և ի զուգակցէ նորին ի բարեսէր թագուհւոյն Ռուսուդանայ, որ էր յազգէ Բագրատունեացն, մերոց կորուսեալ ազգիս թագաւորաց, որ ցուցանէր զգութ հարց իւրոց և նորոգէր զիւրոց նախնեացն սէր առ ամենեսեան, առ հնաւոր և մերձաւոր ուխտս սուրբս։ Քանզի ամե-նայն տեղի, որ ի նախնեացն սորա շինեալ էին և նուազեալ յետոյ, ի սորայ աւուրս պայծառանային և նորոգէին վերստին, եթէ ի մերում գաւառիս և եթէ ի գաւառն Անւոյ՝ սեփհական քաղաքին իւրեանց, և ի նոյն իսկ յԱնի, և եթէ ի գաւառն Դւնա, վասն զի յամենայն տեղի իշխանութիւն և երկիւղն մեծի սպասալարին Իւանէի՝ առն սորա հա-սանէր, և նա ջանայր զի զիւր նախնեացն շինեալ եկեղեցիսն պայծա-ռացուսցէ։ Որ և կամեցաւ զգերեզմանս առաջնոյ թագաւորացն, որ ի սուրբ ուխտիս, առաւել պատուել և պայծառացուցանել։

Վասն որոյ եղ զսուրբ ուխտս ի ձեռս տեառն Բարսղի, սա ելից ընդ այդ թերութեանցն բազմաց և զայսմ գրոց պակասութիւն և հաստա-տեաց ի սուրբ տեղւոջս, զի մի ոք իշխեսցէ հեռացուցանել ի սուրբ ուխտէս՝ թշնամութեամբ կամ ագահութեամբ, ապա թէ ոք յանդգնեսցի՝ տարագրեսցի և ինքն յորդեգրութենէն Աստուծոյ՝ զօրութեամբ Սրբոյ Նշանիս. իսկ եթէ ըստ ժամանակի բերմանց և գողանայցի յումեքէ կամ ի ձեռաց աւարառուաց գերեսցի, և ոք զսա դարձուսցէ ի տեղի իւր, նորոգեսցէ Աստուած զյիշատակ նորա և գրեսցէ զանուն նորա ի կենաց դպրութեանն։

Գրեցաւ գիրքս ի թուականիս Հայոց նորումս ՋԻԲ (1173), իսկ Հռ-ռոմոց՝ ՑՂԴ, ի հայրապետութեանն տեառն Ներսիսի Հայոց կաթողի-

կանին գրված հիշատակարան։ Սակայն բովանդակությունից երևում է, որ այն գրված է ժամանակագրության շարունակության ավարտից (1348 թ.) հետո։

կոսի, և ի թագաւորութեանն Վրաց և այղ բազում ազգաց՝ Գեւորգիա՝ որդւոյ Դէմետրէի, գրեցաւ ձեռամբ Սարգսի նուաստ գրչի և անմար և յետին աշակերտի եկեղեցւոյ սրբոյ ուխտիս, յորոց ամենեցուն հայցեմ լինել մեղադիր տգիտութեան իմոյ և յիշատակի թերեւս արժանի համարել զիս և հասարակաց փրկիչն Քրիստոս յիշողացդ և զկնի յաւպագայ յիշողաց ողորմեսցի յիւրում միւս անգամ գալստեանն, ամէն։

Կազմեցաւ ձեռամբ Յովսեփայ վարդապետի և եդաւ յարկեղ Սրբոյ Նշանիս, զոր կարապետս և կազմիչս ամենի նորոգեսցէ յիւրում գալըստեանն, ըստ համապատուակցաց իւրոց, ամէն։

## 227
## ԱԻԵՏԱՐԱՆ
Երևան, 311 (1066 թ.)

Ստացող և նորոգել տվող՝
Գրիգոր Ապիրատ որդի
Զաւրավարի

ա

219բ Ես տէր Գրիգորիս ծառա ծառայից Քրիստոսի, եղբաւրորդի տեառն Ներսիսի կաթողիկոսի Հայոց, եւ որդի Զաւրավարի, ետու վերըստին նորոգել արտաքուստ կուսէ զաստուածային Աւետարանս գեղեցիկ մետաքսէիւք եւ ակամբք պատուականաւք՝ ընդելուզեալ ի մարգարտոյ մեծագնոյ, ի ձեռն աստուածաբանական վարդապետի Ստեփանոսի՝ դրան սարկաւագի՝ տեառն իմում, որ և վասն անմոլար ճանաչելոյ՝ կոչի սա Յակոբցի, ի յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց. Նախ եւ առաջին հոգևոր տեառն իմոյ Ներսէսի ,կաթողիկոսի, որ եւ զսոյն իսկ զԱւետարանս շնորհեաց ինձ ի ղբաւսանս և ի խրախճանութիւնս հոգևոր՝ այսու զուարճանալ եւ մի՛ պատրանաւք անցաւոր կենցաղոյս։

Արդ որք ընթեռնոյք կամ աւգտիք ի սմանէ, թողութիւն մեղաց խնդրեցէք ի Տեառնէ յառաջասացելոցս, զի և տուիչն յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի, ամէն։

բ

13բ Ըստ անսուտ եւ ճշմարիտ խոստմանցդ քոց, Աստուած իմ Յիսուս, լեր ընդ մեզ յաւգնականութիւն ընդդէմ ներհակին եւ ամենայն հաւատացելոց քոյին մարդեղութեանդ, զի կարողըք լինիցիմք մինչև ի կատարած հանդերձելոցն յանգ հանել զհաւատս քրիստոնէութեան և առ քեզ հասուցանել զդաւանութիւնս մեր, ով Երրորդութիւն Սուրբ, և զքանքարն ճշմարիտ տալ ի ձեռս քո, Քրիստոս[1]։

[1] Ինչպես երևում է հիշատակարանից, ձեռագիրը պատկանել է Ներսես Շնորհալուն, որը մինչև 1173 թ. այն նվիրել է իր Զորավար եղբոր որդի Գրիգոր Ապիրատին, որի ձեռքով է գրված այս հիշատակարանը։ Ձեռագրի ավետարանիչների նկարները և ավետարանների առաջին թերթերը նկարել և երկրորդ էջերը ձեռագրի բուն գրչության նման գրել են տվել այդ ժամանակ, հավանաբար արտաքուստ զարդարելուց առաջ։ Այժմ պահպանվել են միայն Մարկոս ավետարանիչի նկարը և Մարկոսի և Ղուկասի ավետարանառաջները։ Նկարազարդողը, հավանաբար, Գրիգոր հուշկանուն գրիչն ու նկարիչն է, որին 1173 թ., և այնուհետև, ավելի քան 40 տարի, տեսնում ենք Սկևռայում, Ներսես Լամբրոնացու գպրոցում։

## 228
## ԹՈՒՂԹՔ ՊԱՒՂՈՍԻ
Երևան 3345

Գրիչ՝ Թորոս

Վայր՝ Դռազարկ

Փառք քեզ Կոնեա քող արեգսագովն, արարիչ կիսագնդի եւ Դէմէտ-րի, ամէն։

380ա Աստուածային եւ ցանկալի բանից սուրբ առաքելոյն Պաւղոսի փա-փագաւղ եղեւ սրբասէր վարդապետն Գրիգորէս եւ սիրելի եղբայր նո-րին Խաչիկ՝ պատուական քահանայք եւ եղբաւրորդիք սրբազան եպիս-կոպոսի տեառն Գրիգորի, Սեբաստիոյ նահանգին առաջնորդի եւ Սրբոյ Նշանին սպասաւորի, եւ ետուն գրել զսա ի վայելումն ինքեանց եւ ի յիշ(ա)տակ հոգւոյ տեառն Գրիգորի՝ հոգեւոր հաւրն իւրեանց։ Եւ գրե-
386բ ցաւ սա ի սրբազան ուխտս Դռազարկիս, որ կոչի Աւագ վանք, // ձե-ռամբ Թորոսի անիմաստ կրանաւորի եւ սուտ գրչի, ի թուականի ի ՈԻԲ (1173), ի հայրապետութեանն տեառն Ներսիսի եւ առաջնորդու-թեան այսր անապատի տեառն Սամուէլի:

Արդ աղաչեմ զամենեսեան ոյք աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ գա-ղախափարաւ, յիշեսջիք զստացաւղք սորա զԳրիգորէս վարդապետ եւ զԽաչիկ սրբազան քահանայ, եւ զԻգնատիոս նորին հարազատ, եւ զծնաւղսն իւրեանց՝ զկենդանիս եւ զհանգուցեալս, զի ողորմեսցի նոցա
187ա Քրիստոս ի գալստեանն իւրում։ || Յիշեսջիք եւ զառաջնորդս մեր զտէր Սամուէլ եւ զհամաւրեն եղբարքս, յորոց միջի գրեցաւ սա, եւ զծնաւղսն իւրեանց։ Ընդ նմին եւ զտառապեալ գրիչս Թորոս եւ զծնաւղսն իմ, եւ Աստուած, որ մեծն է ողորմութեամբ, յիշողացդ եւ յիշելեացս ողոր-մեսցի, եւ նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Յերկուց աւրինակաց գրեցաւ, վա[ս]ն որոյ է՝ բան, որ ի դէմսն է կրկ<ի>ննն, եւ է որ գիր ի ներքս է բերած, եւ նշան ի վերայ եդած[1]։

Բ

44ա Աստուած ողորմեա Թորոսի, անմար գրչի, ամէն։

Գ

165ա ԶԳրիգորէս վարդապետ ստացող գրոցս յիշեսջիք ի Տէր։

Դ

343բ ԶԹորոս անիմաստ յիշեսջիք։

Ե

361ա Գրիգորիսի եմ ես։

[1] Իսկապես, շատ էջերի լուսանցքներում մանրատառերով գրված են երկրորդ օրինակի տարբերակները։

գ

373ա Աստուած ողորմեաց Թորոսի գրչի, ամէնւ

229

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 1568

Գրիչ՝ Գրիգոր

Վայր՝ [Սկեւռա]

ա

24ա Զմեղապարտ գրիչս յիշեա, ով տէր իմ Ներսէս:

բ

54բ Ստացաւղ սորա զՆերսէս՝ զորդի մեծաղաւր սեւաստաւսի Աւշնի յիշեսջիք ի Քրիստոս[1]ւ

գ

103ա Զմեղաւք դատապարտեալս աղաչեմ յիշելւ

դ

118բ Ստացաւղ սորա զՆերսէս աստուածամերձ քահանայ յիշեսջիք եւ զգրիչս՝ աղաչեմւ

ե

132ա ԶՎարդան աստուածամերձ քահանայ, որ բարիոք ծերութեամբ հանգեաւ ի Քրիստոս՝ յիշեսջիքւ
Թու[ին] ՈԻԲ (1173)ւ

զ

177բ Զաստուածամերձ քահանայ Ներսէս, զորդի մեծազաւր սեւաստասի Աւշնի յիշեսջիք ի Քրիստոս, որդիք լուսոյւ

է

191ա Մեղաւք դատապարտեալս Գրիգորի թողութիւն հայցել աղաչեմւ

ը

234ա Զողորմելի գրիչս Գրիգոր աղաչեմ յիշել ի տէրւ

թ

Վարք սրբոյ առնն աստուծոյ Գրիգորի Նարեկացւոյ

Գրիչ, ստացող՝ Ներսէս Լամբրոնացի

Վայր՝ (Սկեւռայ)

119ա Սուրբ հայրս մեր աստուածաշնորհ քահանայս և կրաւնաւոր Գրիգոր, էր ի Նարեկայ վանից ի Հայս՝ ի գաւառն Վասպուրականի, ի ժամանակի թագաւորացն Հոռոմց Վասլի և Կոստանդեայ, որ տիրէին Հայոց

[1] «Սուրբ Ներսէս քըւերորդի էր Տեր Գրիգորիոսի կաթողիկոսի ամենայն Հայոց»—գրված է հետագայում սրանից ներքեւ

աշխարհին, իսկ Վասպուրականի թագաւոր էր Սենեքերիմ բարեպաշտ յԱրծրունեաց՝ ի թուականիս Հայոց ՆԼԲ (983), ի հայրապետութեան տեառն Վահանայ: Եւ էր սա որդի դստեր եղբաւր հաւր Անանիայ ճգնաւոր վարժապետի և Նարեկայ վանից առաջնորդի։

Սա, զերանելիս Գրիգոր, անդրանիկ եղբարբ իւրով, որոյ անուն Յովհաննէս, սնոյց և դաստիարակեաց ի մանգութենէ ընդ աստուածաշունչ, գրոց կրթութիւնս, և վախճանեալ եղբաւրն՝ մնաց Գրիգոր միայնակ յերկս առաքինութեան և յաշխատութիւն ընթերցման անյագ բաղձանաւք, որ և եղեալ հոգւոյ սրբոյ ընդունարան, և գերազանց շնորհաւք գիտութեան, սկիզբն արար և խաւսեցաւ Զգիրս աղաւթից ըստ հայցման խնդրոց կրամաւոր եղբարց բանս ՂԵ (95)։

119բ Եւ արտաքոյ նորին ունիմք խաւսս երանելւոյս // զայսոսիկ. Պատմութիւն կենսատու խաչին, որ բերաւ ի Կոստանդնուպալսէ ի Հայս, ի վանսն Ապարանք, ի թագաւորացն պարգև ըստ յիշատակեալ խորհրդոյն, և յարմարեալ ընդ նոյն Ներբողեան սուրբ խաչին ըստ այբուբենից տառից. զկնի որոյ Գովեստ սուրբ Աստուածածնին, զոր և յիշէ ի սոյն գիրս, և Ներբողեան առաքելոցն դասուց ի միասին, և Բան գովեստի ի սուրբն Յակովբ եպիսկոպոս Մծբնայ: Ունիմք և խաւսս սորա ի վերայ Երգոյ Երգոյն համառաւտ և Քարոզութիւն տամից խորհրդոյ՝ Հոգւոյն սրբոյ, խաչի և եկեղեցւոյ, և ընդ թիւք աղաւթից գրոցս բանն, որ վասն ժամահարին և սրբոյ և սրբարար միւռոնին։

Զայսոսիկ թողեալ յեկեղեցի Քրիստոսի կենդանի յետ իւր յիշատակ, ինքն գնաց ի միշտ կենդանեացն քաղաք աստի փոփոխմամբ. չեւ եւս հասարակեալ աստ զընթացս կենաց, այլ յերիտասարդական աստիս վախճանեալ, որոյ պատուական մարմինն եդեալ կայ ի նոյն Նարեկայ վանս, հուպ եկեղեցոյն Սրբուհոյն Սանդխտոյ։ Զմաղթանս սորա, սոր արծարծեալ ի հուր սրտիս խնդ(ր)եմք. եւ Քրիստոս ընգալ բարեխաւսութեամբ սուրբ հաւրս հաշտութեամբ, և քեզ փառք, յաւիտեանս, ամէն[1]։

## 230

## ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ ԿԱՄ ՍԱՀՄԱՆՔ ԿՐՕՆԱՒՈՐԱՑ Ի ԲԱՐՍՂԷ ԿԵՍԱՐԱՑՒՈՅ

Ն. Ջուղա 390, Տեր Ավետիսյան, Ցուցակ, էջ 59։

Գրիչ՝ Աառմ

281ա Յամի վեց հարիւրորդի քսաներորդի երկրորդի (1173) թուականին Հայկազեան տումարի, գրեցաւ աստուածային այս մատեան, ձեռամբ

[1] Ձեռագրի բոլոր պրակները 8 թերթից են, բացի ԺԵ պրակից, որի առաջին չորս թերթը ավարտվելուց հետո, ավելացվել է ևս երկու թերթ, որոնցից առաջինի ա և բ էջերում շարադրված է Նարեկացու սույն վարքը, մյուսի բ էջում նկարված է Նարեկացին։

Նարեկացու չորս նկարների վրա գրված է. «Գրիգոր փիլիսոփա» (7ա), «Գրիգոր հսկող» (55բ), «Սուրբն Գրիգոր ճգնաւոր» (117բ), 178բ-ում, չի ընթերցվում։

Այս վարքի շղագրով, առաջին մամուլի բ էջում գրված է. «Բանք նշանաւորք, որ ի գիրս յայս», ուր նշված են 12 տարբեր գլուխներ։

Սույն երկու գրությունների համեմատությունը Լամբրոնացուց մեզ հայտնի ձեռագրի

Առոմի մեղաւոր և անպիտան կրաւնաւորի, ի սեռն սիրոյ և ի հրամանէ քրիստոսազգեաց անձանց առաջնորդաց եկեղեցւոյ, սրբոյ հաւր Յովհաննէսի և աստուածարեալ Աստուածատուր վարդապետի, և ի յորդեռանդն բաղձանց հոգիագումար միաբանելոց սոցա, որոց ոչ դուզնաքեայ յաւժարութեամբ կէտ նպատակի եղեալ քաջաջան արութեամբ ղոմականացեալս բարութիւն ի ծոցոյ սորա ամբարեալ ի սրբասնեալ ոգիս իւրեանց, սակս որոյ հարկ արարին մերոյ ախմար և անարհեստ գրչութեանս զսայ մատենագրել։

Եւ արդ, ես գլուխս մեղաւորաց և քրիստոսագումդ ժողովս միաբան, աղաչեմք սիրովն Աստուծոյ ակնարկել աղերսիւ առ ամենայն ոք որ /// ...[1] ձեզ ամբարձումն մտաց իւրոց սրտի սրբութեամբ առնուլ ի սմանէ զ///սոյ փափկութեան և կենդա///առաջի զենլոյ նորա եղելով սատարութեամբ/// թից արծաթապատ թեւաւք ամենասուրբ Հոգոյն զաւրութեամբ ի թիկունս հասանել մերոյ տկարութեանս, զարգանալ առ արքայ Քրիստոս և ի կամաց նորին ոչ արտաքս ընթանալ։ Եւ որ ոք ողորմելով մերոյ կողկողագին և վանաքիմաց բայիս բան Աստուծոյ և Հոգի կենդանի, ընդ նմա էասցի, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Աղաչեմ չմեղադրել խոշոր և սխալ դրոյ, դի թէպէտ և ի միոջէ գրեցաւ, այլ այլմէ ընդօրինակեցաւ. դաանի առաջնոյն ըստ կարգի, իսկ երկրորդին հանդէպ նմին, ի լուսոյ անցսն, զոր կամի ընտրեսցէ և զմեզ աղաւթիւք ի Քրիստոս յիշեսցէ։

## 231

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 442—444

Գրիչ՝ Գրիգոր

Վայր՝ Սկեռա

Գրեցաւ... յամի Ո-որդի քսաներորդի երկրորդի (1173) ի հայրապետութեան աստուածապատիւ հոգեւոր տեառն Ներսիսի Հայոց դիտապետի, խորհուրդ իմն, որ յաստուածայինսն բերիւր, ազդեալ յոդի աստուածահաճոյ անձին Կոստանդեան քահանայի՝ սպասաւորի տեառն Ներսէսի կաթողիկոսի, որով զըփափագ սրտին և զըտենչումն ցանկութեան միշտ առաջի արկանէր գրչիս, զի թերեւս հասցէ բաղձալեացն, զոր տեսեալ իմ Գրիգորի զըարեյաւժար կամսն, յանձն առի յաւժարական կամաւք գրել զաւետարեր եւ զկենսունակ տառս քրիստոսեան մատենիս։ Եւ մինչեւ յաւարտ հասեալ սորին՝ փոխի յաստեացս սրբազան հայրապետն Ներսէս: Յետ որոյ բազում յուզմունք խռովութեանց ներքոյ եւ արտաքոյ յարեան սակս ոչ հանդիպելոյ ի միջի բարեհոչա-

---

հետ ցույց է տալիս, որ սրանք են նրա ձեռքի գործն են, ուրեմն վարքի և ցանկի շարադրող հեղինակը և գրիչը ինքը Ներսես Լամբրոնացին է։

[1] Այստեղ գրված տառերը թրջվելու հետեւանքով ջնջվել են։

կեալն անուն տեր Գրիգոր՝ եղբաւրորդի կաթողիկոսին, որում անդարձ կտակն հաստատեալ պահիւր յաւագ կաթողիկոսէն Հայոց Տէր Գրիգորիսէ՝ կացուցանել զսա փոխանորդ եղբաւր իւրոյ տեառն Ներսիսի: Որում յառաջադէտ լեալ այնմ կտակի հարց սրբոց եպիսկոպոսաց եւ վարդապետաց, նաեւ ղլաւութիւն բարուցն եւ զսրբութիւն անձին տեսեալ՝ իբր ի հրամանէ Աստուծոյ ժողովեալք, գրեն փութանակի գալ հասանիլ առանց իրիք պատաղանաց, ղի Մի, ասեն, աւերեսցի տունն, որ ա րեամբ ստացեալ է։ Եւ վասն որոյ երթեալն էր համողել ի խաղաղութիւն ի մէջ երկուց ոստիկանացն, ղայն ի բաց տային թողուլ, եւ բերեալ հասուցին յանառիկ ամրոցն Հռոմկլայ անուն կոչեցեալ, որ իւրում նախնեացն էր աթոռ սեպհական, եւ հաստատեցին զնա յաթոռ վերակացութեան բազում խրախութեամբ և մեծ հանդիսիւ։

Եւ արդ աղաչեմ զամենեսան, որ ընթեռնուք զսա, յիշեսջիք ի Քրիստոս յառաջ զսրբազան կաթողիկոսն Ներսէս, յորոյ ոտս ստացող սորին սնեալ և բազում Նրախտիք ի նմանէ ընկալեալ։ Եւս եւ զարժանին յիշատակի զգլխապետն Հայոց զՏէր Գրիգոր, յորոյ ժամանակն տառս աւարտեցաւ, և սատար սմին եղեալ բանիւք եւ արդեամբք։ Այլ և զստացող սորա զըԿոստանդին աստուածամերձ քահանայն, զըծընողս իմ և զազգատոհմս ըստ մարմնոյ։ Եւ որ զաւրինակն շնորհեաց, զՆերսէս սուրբ և ընտրեալ քահանայ՝ զորդի մեծաղաւր սեաւստոսի պատրոն Աւշնի, որ ամենեւին հանգիստ եղեւ գրչիս տկարութեան յիւր սեպհական անապատն Սկեւռայ անուն կոչեցեալ, որ է մերձ յանառ դղեակն Լամբռնացու: Յիշեսջիք աղաչեմ և զայնոսիկ, որք աւժանդակ եղեն գրչիս ի դրութեան սորա, մանաւանդ զարդիւնական վարդապետըն զՍտեփաննոս, որ դրան սարկաւագն էր Ներսիսի հայրապետի, և զՅակոբ եկեղեցպանն։

Աղաչեմ ե ես մեղապարտ ի գրչաց Գրիգոր յիշել ողորմութեամբ… և որք աշխատեալ են ի վերայ իմ աստուածահաճոյ անձինք Վարդան գրիչ և Կոստանդին մականուն Կ. Ո. Շ. Ի. Կ….։

## 232
## ԷՋՄԻԱԾՆԻ ԱՒԵՏԱՐԱՆ
Երևան 2374 (989 թ.)

Գրիչ՝ Ստեփաննոս

Վայր՝ Մաղարդա վանք

ա

3բ Ի թուականութեանս Հայոց ՈԻԲ (1173) եւ ի տէրութեան աթաբակ Ալակզին, եւ ի հայրութեանս Գրիգո[րո]յ, ես՝ Գուրժի՝ որդի Վահրամայ, գնեցի յիմ հալալ ընչից զսուրբ զԱւետարանս, եւ տւի ի մեծահռչակ վանքս Մաղարդիս՝ ի Սուրբ Նախայվկայս, ի յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց, որդոց իմոց և ամուսնոյն իմոյ։

Արդ, աղաչեմ զամենեսեան, ո՛վ աստուածասէր քահանայք, յոր-

*ժամ ընթեռնոյք զսուրբ Աւետարանս առաջի սուրբ խորհրդոյն, զիս եւ զծնողս եւ զորդիս իմ եւ զամուսին իմ յիշեսջիք առաջի զենմանն Քրիստոսի, եւ Տէր Աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն։*

*Եւ ես տէր* Ստեփաննոս *դրեցի, եթէ ոք հեռացուցանէ զսուրբ զԱւետարանս ի սուրբ ուխտէս, կամ դրաւ ա[ր]կանելով կամ ծախելով, այնպիսին նզովի [ի] ՅԺԸ հայրապետացն։ Կատարիչք հրամանաց աւրհնեալ եղիցին։*

Բ

*Գրիչ՝* Գուտչի՝ որդի Վահրամայ

9ա *Ես* Գուտչի՝ *որդի* Վահրամայ, *հրաման առի [ի] հոչակաւոր և ի մեծ վանացն* Մաղարդին *Սուրբ Ստեփանոս նախայվկայէն վանաց շինելոյ, ու շինեցի* զԹիզայպառակիս *վանս։ Ով որ վանիցն հայր լինի կամ գեղիս առաջնորդ, որ մեծ վանացն մտոց, կամ հասի կամ գրաւի մահոյ կամ կենաց, նզովի ԳԺԺԸ հայրապետացն, յայս Աւետարանէս անիծած ու կապած ելնի, ամէն։*

Գ

*Միաբանող՝* Տիկնաց

*Վայր՝* Նախավկայի վանք

8բ *Յանուն Աստուծոյ ես* Տիրատիկին *[ա]զախ[ին] Քրիստոսի միաբանեցայ Սուրբ Նախավկիս։*

*Այլ զի եւ ես* Տիկնաց, *աղախին Քրիստոսի միաբանեցայ Նախավկայիս։ Յայսմ աւրէ ի հետ, զինչ մեր կարողութիւն լինի, ծառայութիւն առնենք սրբոյս։*

*Գրեցաւ յիշատակ*[1]*։*

233
## ԲԱՆ ԴԱՒԱՆՈՒԹԵԱՆ

*Երևան 3082 (1267 թ.)*

*Հեղինակ՝* Ներսէս Լամբրոնացի

430բ *Զսրբասնեալ հայրապետն Հայոց զտէր* Գրիգորիս վկայասէր *աղաչեմ յիշել ի Տէր, և զիս զհարազատ նորին* զՆերսէս *եպիսկոպոս, որ շարադրեցի* զԲան *դաւանութեան* Հայաստանեաց *եկեղեցւոյ, ի թուականութեանս Հայոց տոմարի ՈԻԲ (1173)։*

---

[1] *Այս միաբանության գիրը գրված է 1173 թ. հիշատակարանից առաջ, շղագրով։ Տեղագրում ենք այդ թվաշարքում։*

ՈԻԳ 1174

## 234
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Թորոս Աղբար, Ա, էջ 114—118*
*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 453—459*

Գրիչ՝ Գրիգոր

Վայր՝ Հռոմկլա

320բ *Որոց փափագ սիրոյ եւ տենչումն ցանկութեան միշտ եւ հանապազ յաստուածայնումն ընդի, ոչ զաղարէ երբեք զցայգ եւ զցերեկ խոկալ ի նոյնն, թէ զիարդ եւ կամ որով աւրինակաւ հասանիցէ բաղձալոյն եւ լցցէ զըտենչումն բորբոքելոյ սորին յաստուածային սէրն, որպէս եւ մերս երջանիկ տէրր եւ աստուածարեալ հայրապետ ըստ մարմնոյ զարմ եւ շառաւիղ Սրբոյն* Գրիգորի *մեծ նահատակին Քրիստոսի, եւ ըստ հոգւոյ համանման եւ զուգահաւասար նորին, բանիւ կատարեալ եւ հոգով լցեալ, առատաբուխ իբրեւ զյորձանս գետոյ՝ յառնել եւ յուսուցանել զգիտութիւն աստուածաշունչ գրոց, հեզ եւ խոնարհ սրտիւ, զգաստ եւ արթուն ի քննութիւն աստուածայնոյ գրոց, որ եւ լի աւուրբք եւ կատարեալ հասակաւ տիաւք ծերութեան, չար եւ յանբարի ժամանակի յաջորդեաց զաթոռ հայրապետութեան տանս Թորգոմայ եւ քրիստոսազգեաց յեղբաւրէն իւրմէ* Գրիգորիսէ, *որոյ քաջութիւն անուանն եւ գովութիւն իմաստիցն անցանէ քան զմիտս, որ եւ բազմամեայ ժամանակաւ՝ երկայնաձիգ գաւազանաւ վարեաց զհոգեւորս այս իշխանութիւն փառաւորելով յԱստուծոյ և ի մարդկանէ, զթշնամիսն և զհակառակորդսըն Աստուծոյ եւ սրբոյ աթոռոյս նկուն արարեալ եւ հալածական, եւ բազում արդեամբք եւ սրբութեամբ ճոխացուցեալ զաթոռս սուրբ, լի աւուրբք եւ պատուական ծերութեամբ փոխեցաւ ի Քրիստոս յամին, յորում էր թիւս Հայոց ՈԺԵ (1166), եւ ժամանակ հայրապետութեան նորա էին ամք Ե թիւ կատարեալ եւ Ե միակ՝ (55) յիւր արեամբ սասցեալ ամրոց, որ կոչի* Հռոմայական Կլա, *մեծ սուգ թողեալ իւրոցն եւ յիշատակ բարի յաշխարհի։*

*Եւ ըստ վերոգրելոցս փոխանորդեաց զհայրապետականն աթոռ եղբայրըն նորա՝ երջանիկն* Ներսէս, *որ եւ ըստ աստուածային սիրոյն բորբոքելոյ յոգի նորա ցանկացող եղեալ այսմ աստուածային գանձուս եւ լուսերանգ տառիս, որ է աւետեաց քարոզ բոլոր աղգաց եւ ազանց, եւ փրկական տնաւրէնութեան մարդացելոյ բանին, պատմող եւ հրատարակիչ, եւ մեզ պատճառ փրկութեան եւ ազատութեան։ Ետ գրել զսա ի լաւ եւ յընտիր աւրինակաց սրբոյ աթոռոյս եւ զարդարել զանազան երանգաւք եւ ծաղկաւք յոսկւոյ սրբոյ եւ ի դեղոց պատուականաց, ոչ ի պատճառս մեծութեան եւ փառաց, որ ի սմայս խաւսի Աստուած, այլ ի վայելումն եւ ի զուարճութիւն մանկանց եկեղեցւոյ եւ ի յիշատակ իւր յապագայն։ Որ եւ յաւարտումն լուսազարդ տառիս եւ ի լնուլ փա-*

փագման սորին, փոխի յաստեացս առ Քրիստոս՝ վարեալ զիշխանութիւն իւր ամս :Է (7) եւ յիշատակ բարի թողեալ յաշխարհի։

Յետ որոյ բազում խնամք ողորմութեան եցոյց Տէր ի վերայ աղքատացեալ ազգիս եւ սրբոյ աթոռոյս, վասն զի բազում ամպրոպք խռովութեան ի վերայ ներքոյ եւ արտաքոյ, յաւտարաց եւ սուտ եղբարց, զոր աւելորդ համարեցաք գրել, եւ ապա ի հաւանութենէ բոլոր ազգիս եպիսկոպոսաց սրբոց հարց եւ վարդապետաց, վանականաց եւ աշխարհայնոց՝ զաւրականաց եւ զաւրապետաց, եւ ի հրամանէ ղերերջանիկ տեառնն Գրիգորիսի եւ յանդարձ կտակէն եհաս վիճակ հայրապետական եղբաւրորդոյ նորին տեառն Գրիգորի մականուն Տղայ կոչեցելոյ, որ ամենեւին ղարդարեալ էր ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ, ղորոյ լաւութիւն բարուց եւ զկորովութիւն մտաց ոչ ոք կարէ ընդ գրով արկանել, մանաւանդ զգեղեցկագունութիւն կերպարանին բնաւին մարմնոյն յորմէ հրաժարեալ ամենեւին անարժան զանձն վարկանելով՝ Շատ է ինձ, ասէ, մատակարարութիւնս հաւատացեալ, զոր ունիմ։ Որում ոչ անսացեալ սրբազանիցն հեղինակաց, որ ի հոգւոյն շարժեալ՝ նստուցին ղսա յաթոռ սուրբ իւրում նախնեացն բազ[ում] խրախութեամբ [մե]ծաւ հանդիսիւ, յոր[ո]յ վերայ խաղաղացեալ Հոգոյն Սրբոյ՝ ընդ ոլորտս տիեզերաց հռչակեալ եղեւ, մինչ զի այղասեռք հեռաբնակք ընթացեալ մեծապարգեւ ընծայիւք ի տեսիլն չքնաղ եւ զարմանալի։ Որ տեսանէրն՝ պշնոյր եւ երթեալ համբուրէր, եւ որ լսէրն՝ բորբոքէր առաւել։ Այս այսպէս գործիւր ի բազում ժամանակս։

Եւ ապա ի հանդարտեալ ընծայաբերից՝ յառաշ բերէր զաստուածեան մատենաս, ընթեռնոյր աւր[ը]ստ աւրէ եւ յաւելոյր ի թիւ կարգաւորաց եկեղցւոյ՝ վարդապետաց, երաժշտաց և քահանայից։ Կազմէր եւ անաւթս պատուականըս ի սպաս պիտոյից սրբոյ աթոռոյս, յորոց եւ անաւթս այս պատուական աստուածավայելուչ մատեան, որ իմով ձեռամբ գծեալ Գրիգորի մեղապարտի եւ անկատար մնացեալ, ղորոյ պակասութիւն լցեալ իմ, հրամանաւ վերադիտողիս Հայոց Գրիգորի՝ ի թուականիս ՈԻԳ (1174)։ Վասն որոյ աղաչեմ զամենեսան զստացաւղսդ, յետ սոցին զընթերցաւղսդ յարաժամ եւ զամենայն որդիս լուսոյ, յիշել ի Տէր յառաջ զպատճառն բարեաց ի սորայս ղոբծառնութիւն՝ զսուրբ եւ զաստուածազգեաց հայրապետն Ներսէս, եւ ապա զերկրորդ լուսաւորիչն Հայոց՝ զեղբայր սորա զԳրիգորիս կաթ[ողիկոս]. ընդ սոսին եւ զեղբաւրորդին սոցին Գրիգոր վերատեսուչ հանուրց սեռի։

Յիշեսջիք եւ զեղբայր երկուց լուսաւորացն տեառն Գրիգորիսի եւ տեառն Ներսիսի՝ բարեպաշտ եւ զքրիստոսասէր իշխանն Վասակ՝ զպատճառն լինելութեան ի կենցաղս նորընծայ հայրապետիս, եւ զամենայն բարեաց աւրինակն աշխարհի զմիւս եղբայրն զԱպիրատ, եւ զքոյր նոցա Մարիամ յայրութեան եւ ի սրբութեան վախճանեալ եւ զ///սըն նոցա զբարե[պաշտ] իշխանն Ապիրատ, ... զմայր նոցա Վանէն[ի], ընդ նոսին եւ զբարի հոգի մայր պսակաւորիս զՄարեմիկ՝ դուստըր Հեթմոյ սեւաստաւսի, եւ ղորդիս նորա հարազատ զԱսպետն որ եւ Սարգիս քահանայութեան վախճանեալ, եւ զարիագոյն զինուոր-

սըն Աստուծոյ՝ զԱպիրատն քաջ եւ զՀասան կորովին, զՎահրամ խոհեմըն եւ զՎասակ հեզն, զՀեթում պատանի եւ մանուկ գեղեցիկ, որ ի քսանամենից մինչեւ ի տիս երիտասարդութեան վախճանեալ ի հնգամեայ ժամանակս, եւ զԴ (4) կուսանսն բարեհոգիք՝ քորք սոցին, զորոց պայծառացուսցէ Տէր զհոգիս յիշեցելոցս, եւ յիշողացդ վարձս բարիս պարգեւեսցէ, որ ասրհնեալն է յաւիտեանս, ամէն։

Աղաչեմ եւ ես՝ մեղապարտ գրիչս, առաջին ի մեղաւորս եւ յետին ամենայն բարեգործաց՝ յիշել ողորմութեամբ զմեղուցեալ հոգի իմ եւ ղծնաւղաց իմոց, եւս եւ զարժանաւորսն յիշատակի, որք աշխատեալ են յիս՝ Վարդան գրիչ եւ Կոստանդին պատուական ծերունի, միանգամայն եւ զայնոսիկ, որք բարի կամաւք աւժանդակ եղեն գրչիս՝ բանիւք եւ գործովք, զի եւ նոցին վարձս բարեաց պարգեւեսցի ընդ նախաղասեալ ստացաւղացն, եւ որ Տէրն է հասարակաց ամենեցուն՝ ողորմեսցի ստացաւղացն եւ աշխատողիս, յիշողացդ եւ յիշատակելոցս, եւ ինքն աւրհնեալ եղիցի յաւիտեան, ամէն։

## 235
## ԱԻԵՏԱՐԱՆ

Երեւան, 6273. Փիրղալեմյան, Նշխարք, էջ 26—27

Գրիչ՝ Բարսեղ

Փառք ամենասուրբ Երրորդութեան... ես Բարսեղս փցուն գրիչս և յետինս յամենայն ոք, մեծ ջանիւ և աշխատութեամբ յանգ հանի զսա ի թուականիս Հայոց ՌԻԴ (1174), ի մեծ և հռչակաւոր քաղաքիս ընդ հովանեաւ Սրբոյ հայրապետիս Վասլի:

Արդ, որք ընթեռնուք կամ ընդօրինակէք զմեռեալս մեղօք յիշեսջիք ի Տէր, և զծնողսն իմ, և ննջեցեալք ի Քրիստոս, զի սովոր է մարդասէրն ի ձեռն աղօթից այլում ողորմել։ Ընդ նմին և զստացող սուրբ Աւետարանիս՝ զսրբազան քահանայն զԳրիգոր, որ ցանկացօղ եղեալ պատուիրանիս Տեառն, և որք յիշեք՝ յիշեսջիք և դուք ի տեառնէ և անմահի փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 236
## ԳԻՐՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ
## ԿԻՒՐՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՅ

Երեւան 3276 (ԺԷ դ.)

Գրիչ՝ Ներսէս Լամբրոնացի

Վայր՝ Սկեռա՞

ա

Փառք ամենասուրբ Երրորդութեանն, ամէն։

50ա Ի թուականութեան Հայոց ՌԻԴ (1175) աւարտեցաւ հիմն հաւատոյ Գիրքս պարապմանց, զոր իմ Ներսիսի տրուպ և անարժան [բան]ա-

*սիրի[1] ի վարժումն իմաստից գոլով ընթերցա ընդ բազում բանս սրբոց և զսրբոյն Կիւրղի քննութիւնս ուղղափառ հաւատոյ։ Եւ ի դիպող ժամանակի եկեալ ի հայրենի աշխարհս, սկիզբն եստ առնել սմին ի ձեռն պաշտօնէի եղբօր մերոյ* Յովսեփայ, *և ձեռամբ իմով աւարտեցաւ գրձուձ և մրճոտեալ օրինակէ։*

Բ

Գրիչ՝ Բասիլ

*Ի ՌԻԴ (1175) թուականիս շարադրեցաւ բանս աստուածային՝ ի ձեռն* Ներսէսի: *Զ*Բասիլս *յիշեցէք ի* Տէր, *զկնի աշխատողի սորին*[2]։

---

[1] *Գրված է «անարժանասիրի»։*

[2] *Այս հիշատակագրությունը վերցրել ենք «Սիսուանից» (էջ 87)։*

## 237

## ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ Ի ԳՐՈՑ ՊԱՏՄԱԳՐԱՑ ՍԱՄՈՒԷԼԻ ԱՆԵՑԻՈՅ

*Երևան 5619*

*Գրիչ՝* Ավետիս
*Վայր՝* Կամրջաձոր

ա

108ա *Ձեռամբ անպիտանի և ապիկար անձին* Աւետիս *կոչեցելոց տառագծեցաւ այս համառաւտ յայտարարութիւնք իբաց գործեցելոցք և ցուցք ժամանակաց ի նախաստեղծէն և այսր, հրամանաւ տեառն իմոյ սրբազանի* Քրիստափորի, *ի ՈԻԵ (1176) թուականութեանն Հայոց, ի տիեզերահռչակ ուխտս* Կամրջաձոր:

*Աղաչեմ զամէնեսեան, որք խրախանայք սովաւ, յիշել զմեզ աղաւթիւք՝ զստացող սորին* զՔրիստափոր, *և զեղկելի և զաւաղելի գծողս և Տէր Յիսուս զձեզ յիշեսցէ, ամէն։*

*Ընկալ պատուականդ յորդիս եկեղեցւոյ, տէր իմ Քրիստափոր, զսակաւ սիղոբայսդ սեակաւս տրամադրեալ յանպատկանաւոր քարտիստ սակս գիտից ամանակաց անցաւորիս, որով իմաստնացիս անանաց և անյաջորդելի ժամանակին լինել ներհում, որպէսզի լքանելով ղանվաւերս և զանկայուն, տեղեկացիս ճշմարտապէս հաստատնոյն, և ղմեզ արժանի արասցես յիշման, թերևս հասցուք ի Տեառնէ խոստացելոցն։*

## 238

## ԱՒԵՏԱՐԱՆ

*«Սիոն», 1973, № 1—4, էջ 38—40*

*Գրիչ՝* Աւետիս[1]

ա

280բ *Փառք /// նին Աստուծոյ ընդ Հաւր իւրում եւ Սրբոյ Հոգւոյն յաւիտեանս, ամէն։*

*Զշարագծող սուրբ Աւետարանիս զյոքնայանց պարտաւորս* Աւետիս, *եւ* զԽաչատուր, *եւ* զՔրիստափոր, *եւ* զԹովմայ՝ *փոխեցեալս ի Քրիստոս, եւ* զՍտեփանոս *պատանի։ Այղ եւ ղծնողս մեր յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս։*

բ

216բ *Յիշեա Տէր զմեղապարտ գրիչս* Աւետիս՝ *հանդերձ* Թովմայիւ *եւ* Խաչատրով *եւ* Քրիստափոր, *եւ պարգեւեա մեղ ողորմութիւն քո ի քում գալստեանդ, ամէն։*

---

[1] *Հ. Քյուրտյանը Ավետիսին նույնացնում է նախորդ ձեռագրի գրչի հետ (տես «Սիոնի» 38—40 էջերը)։*

գ

8ա Մեղաւոր ոմն եւ անարժան այսմ Աստուածային դրութեան յԱւետիս կոչեցեալ, աղերսէ յիշեցէք ի Քրիստոս։

դ

Ծաղկող և կազմող՝ Աբրահամ

3ա Քրիստոս Յիսուս, քո անճառ ծննդեամբդ ողորմեա աշխատողի նկարիս եւ կազմողիս Աբրահամի։

ե

103բ Տէր աստուած ողորմեա Աբրահամի։

զ

46ա Տէր Աստուած ողորմեա Դաւթի եւ եղբաւր։

## 239
## ՀԱՒԱՔՈՒՄՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ ԵՒԹԱՆԵՑՈՒՆՑ ԹՂԹՈՑՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՑՑ

Կյուլեսերյան, Ցուցակ Անկիւրիոյ, էջ 311

Գրիչ և սրբագրիչ՝ Ներսէս Լամբրոնացի

228բ Զայս գիրս Բարսեղ վարժապետն անուանի, առաջնորդ Դրա[զ]արկի սուրբ ուխտին, եւ բերել փափաքանաւք ի Կոստանդնուպալսէ, և մինչդեռ թարգմանէր զսոյն Գրիգոր դպիր ի Լամբրունն՝
229ա վախճանեցաւ հայրն։ Իսկ ես Ներսէս նու//աստս ի Քրիստոս՝ անագան ուրեմն վարժեալ և յարբունս հասեալ, յարմարեցի ըստ քերթողական արհեստի ի յիշատակ աշխատողացն։

Թարգմանեց[աւ] թու[ին] ՈԺԲ (1163) և սրբագրեցաւ ի ՈՒԵ (1176)[1]։

## 240
## ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 21, Տէր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 32

Գրիչ՝ Եղիա

ա

105բ Քրիստոս Աստուած բարեխօսութեամբ սուրբ և կենսարար Աւետարանի քո, քարոզութեամբ ընդ ամենայն չորեքեզ[երե]ա տիեզերս ողորմեա ստացողի սորա քրիստոսազարդ և պատուական քահանայիցս Քրիստոսատրին եւ Աստուածատրին և Խաչատրին, և ամենաւրհնեալ ծնողաց իւրեանց, և ամենայն ազգայնոցն մեծի և փոքու, ի քո փառաւոր և միւսանգամ գալստեանդ. եւ ջնջեա զգիր պարտուց յան-

1 Լամբրոնացին ծնվել է 1153 թ., վարդապետ է օծվել 1168-ին, իսկ Տարսոնի արքեպիսկոպոս՝ 1176-ին։ 1163 թ. Լամբրոնացին 10 տարեկան էր, երբ Գրիգոր դպիրը թարգմանում էր Կաթողիկեայց մեկնությունը, իսկ 23 տարեկան հասակում սրբագրում է այն։

ցանաց նոցա, և քեզ փառք յամենայն երկրածին հողեղինացս այժմ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Տէր Յիսուս Քրիստոս, ողորմեա աշխատողի սորա և պատուական գրչի Յակովբոս վարդապետի, և ծնողաց իւրոց, ամէն։

Եղիա յիշեսցի ի Տէր։

Բ

2 7բ Զստացող սուրբ Աւետարանիս զԱստուածատուր եւ զՔրիստոսատուրն եւ զԽաչատուրն եւ ղծնաւղսն իւրեանց յիշեցէք ի Քրիստոս Յիսուս, ամէն։

Գ

4բ Փառք սուրբ եւ սրբարար, միշտ կենդանի եւ կենդանարար, միշտ բարի եւ բարերար Երրորդութեանն, մի աստուածութեան, Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրրոյ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուիս ՈԻԵ (1176)։ Որք լուսաւորիք ի սուրբ Աւետարանէս, զմեղաւոր աշխատողս յիշեցէք ի Քրիստոս Յիսուս՝ Տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 241
## ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ ԽՈՍՐՈՎԻ ԱՆՁԵՎԱՑԻՈՅ

Մուրադյան, Ցուցակ Մշո, էջ 97

Վայր՝ Սուրբ Գէորգ Տօրոսի

Գրեցաւ ի թուականիս ՈԻԶ (1177), յանապատս Սուրբ Գեւորգի, ի մէջ Տօրոսի, ի գաւ Կիլիկիոյ, եւ սկիզբն Պամփիւլիոյ, ի կաթողիկոսութեան տեառն Գրիգորի եւ իշխանութեան Հեթմոյ սեւաստոսի։

ՌԻԷ 1178

## 242
## ԴԱՒԹԻ ՔՈԲԱՅՐԵՑԻՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՃԱՌԻՑ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ ԵՒ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՅ

*Երևան 5602*

Գրիչ՝ Դաւիթ [Քոբայրեցի]

268բ *Զաւրացուցանողին տկարաց Քրիստոսի Աստուծոյ յուսոյն մերոյ,*
*փառս վերառաքեսցի գոհացողական ձայնիւ յաւարտման գծիս, ի*
Դաւթայ *աղերսողէ, որ աշխատեցայս ի յարմարումն ստորագծու-*
*թեանս, յոր երկիւղիւ մերձելով ի սկսումն, գուցէ ոչ բաւեցից տոկալ*
*հասանել յայս գիծ, սակայն ժամանեցոյց, որ աայն իմաստս և ղաւ-*
269ա *րութիմ, որ և զմեռեալս կենսագործէ և ղայ//լսն հրաչակերտս, ի պա-*
*տիւ և ի փառս մեծագործութեան իւրոյ, որում ընդ մերումս գոհացո-*
*ղական ձայնի, համանգամայն յամենեցունց, յերկնաւորաց և յերկրա-*
*ւորաց փառս վեր առաքեսցի, Հաւր ամենակալի, և Որդւոյ նորա միած-*
*նի և փառակցի, և ամենասուրբ Հոգւոյն արարչակցի և իշխանակցի*
*յանսպառ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Յոքնախոնջ ջանիւ ի յոլովից քննեալ իմաստնոյ ղգիրսս ղայսոսիկ*
*գեղձմամբ սրտի ի գիւտս ճշմարտին մտաց, ե ի վերջէ հանդիպեալ*
*իմ միւսոյ իմաստնացելոյ ի նոյն կրթութիմ, որ ի մէնչ իսկ սորին բդ-*
*ձիւ ընթացեալ էր մերձ ի սահմանս* Ասորւոց և Կիւղիկեցւոց Վարդան
*մակձայնեցելոյ, որոյ յոլով ժամանակս ի սակս քննութեան դեգերեալ*
*առ դրան մեծի իմաստնոյ տեառն* Ներսէսի *Հայոց վերադիտողի, յոր-*
*մէ մինչ եհասն առ մեղ, վերստին տեղեկացեալ իմ առ ի հաստատու-*
*թիւն և ի լրումն առաջնոյն կրթութեանց, վստահ եղեալ հաւանութեամբ*
*նորին և այլոցս իմաստնոց, ձեռն ի գործ արկի ի մասնաւորս տարա-*
*ցոյց մեկնութեան գրոցս երկոցունց, մեծին սոփեստոսի* Գրիգորի Աս-
տուածաբանի, *այնմիկ, որոյ սկիզբն Ի ծնունդն Քրիստոսի խորին ի-*
*մաստիւք ասացեալ, և ոյք յայլ տնաւրինականսն Տեառն, և միւսոյն*
*ևս՝ Առ որս բանիւն են պաճուճեալք, իրաւաբանութեամբ ընդդիմութիմ*
*Եւնոմինոսացըն և այլոցն չար աղանդից, զորս ըմբերանելով հաս-*
*տատէ զհաւատոցն բան մեծաւ աշխատութեամբ յաստուածաբանականս*
*տարրութիմս, ընդ որում և զկարգաւորութիմ արարածոցս ցուցանէ ի*
*սահմանս իւրանքանչիւր, իսկ զմարդ միայն յարտասահման ընթացս,*
*ընդ որում և զխաղաղութեանն բարիս աւարտ ամենայնի ցուցանէ։*

*Արդ, որ ի մէնչս աշխատութիւն տարացոյց միայն է իմաստնոց,*
*քանզի և ոչ մարթ իսկ և վայելուչ էր աւելի քան ղայս լինել, զի մի*
*առանց աշխատութեան ոք վստահասցի անուամբ միայն իմաստուն*
*ցուցանիւ սովաւ, այլ առ ընդդէմ դիցէ զընագրեալսն յիմաստնանալն,*
*և ծանցիէ հանդէպ նորին զՄեկնութիմ, զի թեպէտ և տարորոշեալ*

է մեր զՄեկնութիւնն ի բնաբանէ անտի, սակայն ի բաղում տեղիս վե-
րաշրջութիւն ոլորակ բանիցն ի մեկնութեան համարի եղեալ է եւ զի
ի սկիզբն ճառիցն պատճառաց, բովանդակ զաւրութիւն ճառեցելոցն. ի
270ա սուղ բանսն ներսափակեալ է // և երկու կետիւքն, որ ի միջոցի տանցն,
իմայ ղտարորոշումն բնաբանին և մեկնութեանն։ Եւ յայսպէսն աւգտու-
թեան անմեղադրութիւն մերոյ յանդգնութեան հայցեմ, և աղաւթս ծիգս՝
ինձ աշխատողիս, և յորոց վարժեցայն, զի թերևս ողորմութիւն գըտ-
ցուք յառատածիրն պարգևողէ զթողութիւն սխալանաց և զհանդի-
պումն մեծին իմաստութեան սեղանոյ, զոր այժմ հայելեաւ և աւրի-
նակաւ տեսանեմք, իսկ յայնժամ զբովանդակն՝ ըստ առաքելոյ, որում
հաղորդիցիք և դուք, որք դեդերիքդ յայսոսիկ երկս, և ի միասին վայե-
լեսցուք, յոր կայն և պահի ամենայն յուսով ակն ունողաց, յանճառե-
լիսն բարիս ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, ի ճշմարիտ ապրեցելոցն
կեանս և խնդութիւն, որ է աւրհնեալ ընդ Հաւր և ընդ ամենասուրբ Հոգ-
ւոյն յաւիտեանս յաւիտենից, ամէն։
Արդ, եղև շարագծութիւն այսր տառի Մեկնութեան յամի Ո-րդի և
եւթան առ քսանիւ (1178) թուաբերութեան Հայազնեան քրոնիկոնիս,
իսկ Նորոյս շրջանի իննսնի և չորից (1178) և ի կենարարին մերոյ ծը-
նընդենէ հազար և հարիւր եւթանասուն և ինն էին (1179) ամացն շրջա-
գայութիւնք, իսկ Հոռովմին շրջանի, չորեք հարիւր իննսուն և ութ էին
բովանդութիւնք ամաց։
270բ Նախքան զայս միով ամաւ խաւարեցաւ արեգակնն յապրիլիոս
ամսոյ, ի Նորում կիւրակէին, յառաջնումն ժամու, և նշանք յետ այսր
ցուցան շփոթման, զի վրան թաղաւորին երկփեղկէր և նոյնհետայն
զապըստամբութիւն խռկաւին մեծամեծքն Վրաց աշխարհին ի թագաւորէ
անտի, զոր ի վաղուց հետէ երկնէին, և գտեալ դիպող ժամ իւրեանցն
հնացեալ չարախոհութեան, առնուն հրապուրանաւք առ ինքեանս զեղ-
բաւր որդի Նորին թագաւորի անուանեալքն Ուրբելf, Իւանէ սպասալար
և Հիպարխա եղբայր իւր, որդովք և ազգականաւք իւրեանց, եւ բերեալ
յԱգարակ դղեակ թագաւորեցուցանեն, որպէս թէ ոչ ոք ձեռն հասիցէ
դեդևել զնոցայն գործ, որպէս խոհականն Աքիտոփել ի հնումն յԱ-
բեսաղովմայն իրս, յուսալով յամուր դղեակս իւրեաց ամրոցաց և
յ[ը]նտանեաց և յայլոց խորհրդակցացն յոլովութիւն, զորոց միտս
յինքեանս յանկուցանեն, նախ իւրեանցսն գաւառականաւք և ամրա-
կանաւք, զանառիկն Կայան և զԿայծոն՝ հանդէպ Նմին, պայմանեն ի
բնակչաց անտի։ Ձեռնտու սոցայ լինին և որք ի կողմանս Շաւfւոյ, և
271ա Հերեթւոյ, և Կախեթոյ // իշխեցողքն դաշամբք բանից, ապստամբեն
և նոքա ի թագաւորէն, և ամրանան յիւրեանցսն, և գերփումն առնեն
սահմանակից գաւառաց թագաւորին, և սոքա յայսմ կողմանէ Նոր
թագաւորաւն առնուն զթագաւորանիստ դեաւղորայսն պարապով, և
առաքեն յամենայն խորհըրդականսն անդր գումարել, զի փախստեայ
հանիցեն զթագաւորն կամ ընդ բռամբ ածիցեն։
Իսկ նա, վասն զի տակաւին ընդ ձեռամբ ունէր զքաղաքս և զամ-
րոցս սեփհականս թագաւորութեան իւրոյ, և զգանձարանսն արքունիս,

ընթանայ ի մեծ շահաստանն Տփխիս, և ի խորհուրդ միաբանութեան
կոչէ զմտերիմս թագաւորութենէ իւրոյ, և նոցին խորհրդակցութեամբ
խոստանայ և բաշխէ գանձս ոսկւոյ և արծաթոյ և հանդերձս պատուա-
կանս ըստ արժանի խառնիճաղանջ հետևակ սպառազինացն Դուա-
լեթոյ, և ոյք ի սահմանս Քարթլ գաւառի, զորս ի մի վայր գումարեալ
գայ հասանէ ի հայրենի գաւառն սպարապետին, և յաւարի խաղացու-
ցեալ՝ հրձիգ առնէ զապարանս նոցա, և ինքն խաղա հասանէ ի սահ-
271բ մանս ապստամբացն, զոր ի բացու//ստ տեսեալ ապստամբացն, ղպն-
գիտեալ ի փախուստ դառնային՝ ամրանալ ուր և դիպեսցի։
Իսկ սպարապետն Իւանէ որդւովքն և կնաւն, և ամենայն աղխիւն
դայ մտանէ յանառիկն Լաւռէ, և եղբայր նորին Լիպարիտ իւրովքն ժո-
ղովովք, և յարտաքուստ միաբանեցելովքն, առնու զորդի թագաւորին
զԴեմետրէ, և դիմէ յանմատոյցն Կայան, որոց զհետմտեալ հրամանաւ
թագաւորին բարեպաշտ ամիրապետն Տփխեաց Քուրդն անուանեալ,
հասանէ ի կիրճս ճանապարհի նոցա՝ իւր սեփհականն գաւառն Մահ-
կանաբերդն կոչեցեալ, հարկանէ դէմ յանդիման նոցա զաւագափոզն
պատերազմի, և ի փախուստ ընդ կրունկն դարձուցանէ, որոց զհետմտեալ
առնու զկահ և կարասի բանակին, և ձիապուրծ՝ միայն ղերձեալք, հա-
սանեն և նոքա ի դղեակն Լաւռէ, և ամենայն ազգ ապստամբացն ի մի
վայր գումարին։
Զայս տեսեալ ամրականացն Կայանւոց, գան ի հնազանդութիւն
թագաւորին, և սահմանկիցքն ամենայն։ Իսկ թագաւորն զհեզութիւն
272ա ի ձեռն առեալ բազում անգամ պատգամս յղեալ աղաչէ ի // խաղա-
ղութիւն և ղ/ը/նդդիմակն լսէ պատասխանի, որպէս թէ չիցէ հնար տե-
սանել զնա ի կեանս, այլ միայն թէ զկէս թագաւորութեանն ի նոսա
թողցէ, զի պարապով և ի միւսմէ ևս կիսոյն հանցեն, զոր ոչ յանձն
առնու թագաւորն, թէպէտ և կասկածէր ի զաւրացն երկպառակութենէ
զմահ ի ձեռն առնու և ժողովլի դեսպանաւ առ ինքն յամենայն կողմանց
զկասկածաւորս և զանկասկածս և նստի ի վերայ ամուր դղեկին Ագա-
րակոյ երկուց ամսոց և կիսոյ ժամանակ։
Եւ խուճապէ մենքանայիւք խարխարեալ զպարիսպսն և ղապարա-
նսըն, որ ի ներքս և նեղեալ, որք ի ներքսն կային արք անուանիք ի
պատերազմի, և ժահահոտութենէ դիականացն մարդոյ և անասնոյ և ի
ծարաւոյ, զի և զջրոյն ևս արգելին ճանապարհ, և ակամա իջանեն առ
նոսա և տան զդղեակն։ Յետ որոյ յոլովս գումարէ զաւրս թագաւորն, և
գայ նստի ի վերայ ապստամբանոցին Լաւռէոյ, և սիրոյ միաբանու-
թեան պատգամաւորս յղէ ի ներքս, տալ ցնա զեղբաւրորդի իւր, և ին-
քեանց յանհոգութեան մնալ։ Զայս առնէ բազում անգամ, և ոչ հաւա-
272բ նին, զի նախ քան զգալ թագաւորին առա[քեալ] // սպարապետին զեղ-
բայր իւր Լիպարիտ երիւք որդւովք, և զիւրըն ևս կրտսեր որդի, առ
զաւրաւարն պարսից Խզիլ՝ ձեռնտու լինել զաւրու կամ ինքեան իսկ
գալ ընդ նմա փախստական առնել զթագաւորն և յինքեանս գրաւել
զտէրութիւնն։ Որ և գումարէ ընդ նմա ըստ խնդրոյն զաւրս բազումս,
որք մերձ եղեալ ի սահմանս թագաւորին մինչ ականատես բանակին

լինել, դանդիտեալ ի՝ բազմութենէն, գաղտագողի ընդ կրուկն դառնային։
Իսկ զաւրք Թագաւորին ասպատակ արձակեալ ի վերայ Զօրագաւառի ամրականացն, առնուին զամրոցս բազումս բռնութեամբ և զինչսն յաւարի տանէին, մինչև ակամա յամենեքեան գային ի հնազանդութիւն ամրոցաւք և դղեակաւք։ Եւ յորժամ յամենայն կողմանց սպառեաց յոյս աւգնականութեան, զի և ազգայինք ես ուրացեալ զնոսա, ի հնազանդութիւն դիմեցին Թագաւորին, որ ասէր՝ Զապաւինութիւն յԱստուած ունել և յաղաւթս սրբոց։ Ապա եւ ինքեանք, իսկ նեղեալ և անհնարեալ, նրգման միջնորդութեամբ արտաքս ելանեն և գան սևազգեստեալք առ ոտս Թագաւորին, վասն զի նախ եղբաւր որդի Թագաւորին գաղտագողի էջ վանդակաւ ընդ պարիսպն, և եկն առ Թագաւորն։

## 243
## ՀԱԻԱՔԾՈԻ

Ցմմառ 204, Քեշիշյան, Ցուցակ, էջ 494

Գրիչ՝ ՍաՆւիէլ

ա

99բ ՍաՆւիէլ է անս[1] իմ, Տէր Յիսուս Քրիստոս, ողորմեա ինձ ի քո փառաւոր գաստեանդ, ամէն։ Յոնաց է։ Ով Ղազար, Իով(ա)Նէս[2]:

բ

105բ ԶՍաՆւիէլ մեղապարտ քահանայ յաղաւթս ձեր յիշման արժանի արարէք եւ Քրիստոս ողորմեսցի, ամէն։
Շրջան լուսնին ԺԹ (19) ամ է։
Բառք գեղջուկ պարզ ի Թւականիս Խորոմիս ՈԻԷ (1178) գրեցաւ գիրս։

---

[1] Գուցե՝ «անո՞ւնս»։

[2] Ամբողջ հիշատակարանը հայերեն և հունարեն է գրված. հետագայում մեկ ուրիշը հունարեն տառերի վրա գրել է հայերեն տառերը և թողել է այսպիսի հիշատակագրություն. «Ով եղբայր չկարացի ճանաչել, բայց զոր կարացի ես գրեցի, եւ զիս յիշեա»։

Հիշատակարանը վերաբերում է 1ա—105բ թերթերին, և պարունակում է «Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ» (1—45) «Մղոնահամարք» 45—46 և «Տումար» (47—105) երկերը։



15—1130

ՈԻԸ 1179

## 244

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 4947 (ԺԳ դ.)*

*Ստացող՝* Ներսես Լամբրոնացի

*Վայր՝* Հռոմկլա

ա

1ա Գրիգորի սրբազան պապու երիցուն Հռովմայ Բանք պատմողականք առ Պետրոս նախասարկաւագն իւր, վասն քաղաքաւարութեան զանազան հարցն որք յԻտալիայ փայլեցին, ի գիրս չորս:

Նախագրութիւն[1]: )

*Գովելի է արդարև քան զամենայն ինչ ստանալ զառ[աքինու]թիւն, յ[որ]մէ ոչ ինքեանք միայն շահին, այլ և որք զկնի ուղ[իղ] վարուցն հետևին, զի որպէս շնչաւոր պատկեր և արձ[ան յի]շատակ իւրեանց թողուն, առաւել ևս գովելի է և նա, որ նոյն փոյթ դնէ ղուղղել առաքինութիւնս սրբոցն գրով[արկանել] և թողուլ։ Զի կարելի է այսոքիւք կրթել որք ցանկութեամբ յ/// տեն[չ]ան և ընդարձակ ճանապարհ [առ] ի նոյնն գտցե[ն] ///ղի առաքինի գործոց նա ///թիւնն իբրև զպատկեր շն[չաւոր]////։*

1բ *// առաջի մեզ որպէս և ոմն ի սուրբ հարցն զայս իմաստասիրել ասաց։*

*Արդ բազմաց փոյթ եղև ի հնումն և ի նորումս զվարուց սրբոցն զկտակ թողուլ գրով, որք պատմեցին զեղեալսն և մարգարէացան զառ յապա լինելոցն։ Եւ ոչ միայն այս, այլ և վարք սրբոցն և առաքինութիւն արանցն, որք[2]* յԱրևելս *և* յԵգիպտոս *ճգնութեամբ երևեցան, և շնորհաւք սուրբ հոգոյն ամենայն գովութեան գերազանցեցին գրով պատմի ի մէջ մեր։*

*Այսպէս և որ մեծի սուրբս հայրըս մեր ամենաերջանիկ* Գրիգորիոս՝ *մեծանուն քաղաքին* Հռովմա՝ *եղեալ պապ, ընդ այլ գիրս բազումս, զորս պաճուճաբանս և խոր մտածութեամբ խաւսեցաւ, երեւեցոյց և զվարս որք յ*Իտալիա *փայլեցին սուրբ արք, և ժամանակս յորում էին, և զտեղիս յոր եղեն և արար ի հռովմեցի լեզու, զոր վասն նոցին* <գ> *զգիրսս։ Եւ անց ընդ մէջ ամս հարիւր վաթսուն և հինգ, և ոչ ոք փոյթ արար յեղաշրջել զգիրսս զայս ի հռովմեցի լեզուոյն յելլադացի բարբառ։ Իսկ* Զաքարիա *երջանիկ և հրեշտականման առաքելական աթոռոյն* Հռովմա *պապն, որ ի վերուստ աստուածային ազդնականութեամբն վերակոչեցաւ հովիւ և հովուապետ, և առաջնորդ ուղ[ղ]ափառ հաւատոյն, աստուածասէր և բարէսէր հոգին յետ ամե-*

---

[1] *Սկզբից մինչև այս էջի վերջը արտագրել է ստացող Հովհաննես Արքաեղբայրը, որի ստորագրությունը դրված է այդտեղ։*

[2] *«Ք»-ն սրբագրիչն է ավելացրել։*

նայն առաքինութեան և ուղղութեան՝ եղ զանձն իւր ի յաշխատութիւնս յայս, և ջանիւ պար[ապէր] յաստուածային դրոցս ըստ պատուիրանին Տեառն որ ասէ. Քննեցէք գ[գիրսս] զի նորաւք համարիք ունել զկեանս յաւիտենականս։

/// զորս գիրս, որպէս վերագոյն յիշեցաք, զորս ասացեալ է [սուրբ] հայրըն մեր Գրիգորիոս ի հռովմայեցի բառըս, որ ունի երևեցան զսուրբ հարցն զառաքինութիւնսդ և այսպէս /// զանձ անկողոպ-
2ա տելի եթող ն///որբ հ///[ս]մա ցանկութեամբ և իւր զառ յապայ /// հաւատար//մապէս և իմաստութեամբ ստացաւ։

Իսկ ապա ի հուսկ յետին ժամանակս ըստ թուո Հայոց վեցհարիւր և քսան և ութ (1179) յամի իմո Ներսէսի Տարսոնի եպիսկոպոսի՝ ի մանկական հասակ ուսումնասիրութեան և բարեկարգութեան տենչանաւք շրջելով ի վանորեայսն որք առընթեր մեծի քաղաքին Անտիոքայ, ի լեառն որ Ռասխանձիր կոչի, յափն ծովու հիանաի ի տեսանելն զառաքինազարդ միայնութիւնն և ըղձմութիւն հռովմաեցի միաբանակեաց վանականքիցն, որ այժմ կոչին փռանգք։

Եւ իբրև ընդ անընդել իրս սխրացեալ, հարցի ընդ ումն իմաստուն կրաւնաւոր որ ի յունաց, Բասիլ անուն. Ուստի՞ սոցա այսքան ուղղութեան կարգացս շնորհ, որով գերազանց գտանեին այսաւր ձեզ և մեզ։ Պատասխանեց. ի Բէնէդիքտոսէ երանեալ հաւրէն, զորոյ զվարսն պատմէ Սուրբն Գրիգոր պապն։

Եւ ունի՞ս արդեաւք զնոյն գիրս, տսացի։ Պատասխանեաց՝ Այո։ Եւ երեր առաջի իմ։ Եւ իմ փոքր մի վարժ գոլով հելլենացի գըրոցն, ընթերցա ստ անդ, և բորբոքեցաւ զիս ցանկութիւն աստուածային գրոցս թարգմանութեան։ Այլ զի ոչ կամէի անձամբ վճարել զգործն, խափանեցաւ յայնմ ժամ։

Եւ թարգմանեցի զնորին Բէնէդիքտոսի Կարգ և զաւրէնս կրաւնաւորաց նոյն ժամայն ի լատին լեզուէն, ի փռանգ վանս Սուրբ Պաւղոսի որ ի քաղաքն Անտիոք, ի ձեռն հասակակից կրաւնաւորի միո ի նոցանէ Կիլամ անուն։ Իսկ ապա եկեալ ի վանսն որ Սիմանակլա կոչի, հուպ Անարզաբոյ, յորում բազում գրեանք ի յունական գիրս աւանդեալ է, մանրամասնաբար խուզեալ գտի զայս գիրսս և [հրճ]ուեալ ի [վ]երա անչափ խնդութեամբ, որպէս գիտեն փորձքն ուսումնասիրութեան, որ է
2բ նոյն և աստուածասիրութիւն, առեալ գնացի ի հայրապ//ետական աթոռն որ կոչի Հռոմկլայ, յափն Եփրատա, և կամաւք տեառն իմո կաթողիկոսին Գրիգորոյ թարգմանեցի զսա[1] և զՄեկնութիւն Յայտնութեանն Յովհաննու, ի ձեռն առաքինի մետրապաւլտին Յերապաւլսի Կոստանդեայ: Եւ իմովսանս տկարութեամբ յեղյեղեալ և ուղղեալէ թողի զսոյն յեկ[եղ]եցի Հաոց ապացոյց բարեաց և հրճուականք մխիթարութեան զբաղելոցն ի վարս առաքինութեան։

Արդ որպէս ընկալաւ զսա եկեղեցին հռոմաեցւոց ի յերջանիկ հաւր

---

[1] Ուրեմն Բենեդիքտոսի սույն գործը ունի հայերեն երկու թարգմանություն, լատիներենից Անտիոքում թարգմանել է Կիլամը, իսկ հունարենից՝ Հռոմկլայում Կոստանդինը։

Գրիգորի Պատմութենէն և յեկեղեցին յունաց ի թարգմանութենէ սրբոյ և հայրապետին Զաքարիա, նոյնպէս և դուք, որ Հայաստանս եկեղեցու էք մանգունք, ընկալարուք ի նըւաստ պաշտաւնակցէ ձերմէ ղսոյն, և հաւատով պատուեալ՝ մխիթարեցէք զանձինս ի յոյսն, որ ի Քրիստոս։

Բ

Ներսէս տրուպ և անարժան,
Սուրբ Պատմութեանս սիրով թարգման,
Յորոց սովաւ հոգւով ցնծան,
Հայցեմ ներումն թողութեան[1]։

## 245

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ

Երևան 1418 (1280 թ.)

Ծրագրիչ՝ Ներսես Լամբրոնացի

Վայր՝ Տաւրոսի սուրբ Գէորգ

(Յիշատակ տառիս գտաւղի տեառն Ներսիսի գերաճոչակ վարդապետի զոր գտեալ ի մեծն Անտիոք՝ գրեաց զսա ի լուսաւորութիւն ճոգւոց):

125ա Ես Ներսէս՝ նուաստ ի Քրիստոս և տարտամս յուս[ու]մնասիրաց, վերջին եւ նուազեալ ժամանակի ծնունդ, յրնթեռնուլն զՅայտնութիւնն Յոհաննու՝ տագնապէի յանձն իմ առ ի յոչ գիտել զլուծումն բանիցն աքանչելեաց, և այսր անդր խուզելով՝ զՄեկնութիւն նորին ի մերս բարբառ ոչ գտի։ Յետ որոյ եհաս ինձ ընթանալ ի մեծն Անտիոք, և շրջելով

---

[1] Ձեռագրի գրիչ Ներսիսուկը սույն քառյակի առաջին տողը բաց է թողել, գրել է «ԶՅոճաննէս եպիսկոպոս եղբայր թագաւորին Հեթմոյ» բառերը, ապա՝ մյուս երեք տողերը, և ավելացրել մի քառատող իր անվամբ։ Ձեռագրի երկրորդ գրիչ Առաքելը լուսանցքում ավելացրել է բաց թողած առաջին տողը, որով ճշտվում է թարգմանչի քառյակը և վերացվում այն թյուրիմացությունը, որ գրիչ Ներսիսուկը թարգմանիչ է համարում Հովհաննես արքաեղբորը, գրելով. «ԶՅովհաննէս եպիսկոպոս եղբայր թագաւորին, Սուրբ պատմութեանս սիրով թարգման...» կամ «... զսուրբ եպիսկոպոսն և զեղբայր թագաւորին Հայոց զՅոհա[ննէս] զբարեմիտն և զբարէսէրն զառիթ թարգմանութեան ըզստացող սորին մախթեցէք Քրիստոսի յաստիս խաղաղութեամբ պահել և ի հանդերձեալն ընդ սրբոց իւրց յերկնից արքայութեանն ընդունել» (էջ 89ա)։ Այս շփոթը գալիս է գրչի անփորձությունից («մի մեղադրէք, զի առաջին է գիրս և չէի հմուտ»)։ Նա բառացի վերցրել է Լամբրոնացու գրած Մեկնութիւն Յայտնութեան Յովհաննու հիշատակարանի այն մասից, որ վերաբերում է Գրիգոր կաթողիկոսին։ (Տես հաջորդ հիշատակարանը)։

Այս միաժամանակ նշանակում է, որ Հովհաննես Արքաեղբայրը Ներսիսուկ գրչին ընդօրինակել է տվել նաև Մեկնութիւն Յայտնութեան Յովհաննու երկը։

յոր անգ վանորայս հոռոմոց և փռանկաց, այս տենչումն բորբոքէր ի
միտս իմ. ուստի և քննեալ գտի ի գրեանս հռչակաւոր ուխտի Սրբոյն
Պաւղոսի ի քաղաք անդ՝ զՄեկնութիւն Յայտնութեանս ի լռմպարտ
բարբառ, և ի նոյն գիր, որով վարին Փռանկք, երկու մեկնչաց արա-
րեալ, և փափաքելով թարգմանեալ, ոչ գիտի զոք, որ յայնմ բարբա-
125բ ռոյ ի //հայս կարէր յեղաշրջել։
Ապա յ ելեալ արտաքոյ քաղաքին ի սուրբ լեառնն, որ ի հիւսիսոյ
կողմն անդր ի մի վանորէիցն հոռոմոց, որում անումն էր Պեքիաս,
առ ոմն արգելական միայնակեաց, որոյ անուն Բասիլ, կնքեալ գտի
զցանկալին ի հելլենացի բարբառ և ի գիր, ուղղաբան և վայելուչ, որ
լեալ էր Աթանասի պատրիարգին նորին քաղաքի, և խնդրեալ աղա-
չանաւք ի բարեմիտ առնէն, առեալ փութացա գրովքն ի հայրապետա-
կան աթոռն՝ առ տէրն իմ և կաթողիկոսն սուրբ Գրիգորիոս, զոր
ծանուցեալ ուրախ եղև յոյժ, և հրամայեաց թարգմանել ի ձեռն մետ-
րապաւլտին Յերապաւլոսի Կոստանդեայ, որ անդ ի ներքո սրբոյ հայ-
րապետին հովանոյ հանգչէր։ Եւ սկսեալ աւգնականութեամբ Աստու-
ծոյ և սրբոյ տեառնն, նայ ի թարգմանել և ես ի գրել, վերընծայեցաք
եկեղեցոյ Հայաստանեաց ուսումնասէր մանկանց զայս սքանչելի և
աստուածային Յայտնութեանս Մեկնութիւն։
Աղաչեմ զընթերցողսդ և իմաստութեան զսիրողսդ, յիմանալ զխորս
իմաստիցն Աստուծոյ քննութեամբս՝ զտուրբ հայրապետն Հայոց զտէրն
126ա իմ զԳրիգոր՝ զբար//եմիտն և զբարեսէրն և զառիթն թարգմանութեանս
և հրամայող, մաղթեցէք Քրիստոսի յաստիսս խաղաղութեամբ պահել,
և ի հանդերձեալն սրբոց իւրոց յերկնից արքայութիւնն ժառանգակից
ընդունել։
Այլ եւ զԿոստանդին մետրապաւլիտ, որ թարգմանեաց և զԲասիլ
կրաւնաւոր, որ զաւրինակս ետ, Քրիստոս ողորմութեանն իւրոյ ար-
ժանացուսցէ աղաւթիւք ձեր։
Թարգմանեցաւ աստուածային Յայտնութեանս Մեկնութիւն ի թուիս
Հայոց ՈԻԸ (1179), ի սուրբ և ի հայրապետական աթոռն, որ կոչի
Հռոմկլայ, շրջապատեալ յադենական աղբերէն Եփրատայ, որ մա-
տակարարէ բնակչացն զամենայն մարմնական պիտոյս խնամաւքն Աս-
տուծոյ, ընդ հովանեաւ աստուածընկալ նշանին Վանկոյ, և այլ սքան-
չելի սրբոցն որ հանգուցեալ են անդր ի փառս Աստուծոյ։
Իսկ սրբաբանեցաւ ի նշանագրութենէն քերթողական արհեստիւ՝ ի
յապահով անապատս Սուրբ Գէորգ, ի մէջ լերինս Տորոսի, որ է ի գահ
Կիլիկյոյ և ի սկզբն Պանփիւլայ, ձեռամբ նուաստ էպիսկոպոսի նորին
մայրաքաղաքի Տարսոնի՝ տառապելոյս Ներսիսի, շնորհաւք և ողոր-
մութեամբն Քրիստոսի, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։





## 246
## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

*Երուսաղեմ 313, Ն. Պողարյան, Ցուցակ, Բ, էջ 169*

*Հեղինակ՝* Ներսէս Լամբրոնացի

*Ի թուիս ՈԻԹ (1180) ըստ շրջաբերութեան Հայոց տումարիս, կատարեցաւ յարմարումն Մեկնութեան Երկոտասան մարգարէիցս, տաժանմամբ վաստակոյ նուաստի* Ներսիսի, *որ յընթեռնուլն զճգնազգեաց Հաւրն* Եփրեմի *Հոգիաշնորհ Մեկնութիւնն ոչ կարէի աւգտեցուցանել զմիտս իմ տկար, վասն ոչ ունելո յարմար ընդ տեսութեանն և զբնաբանն, ապա ձեռն ի գործ արկի զբաւսումն առնել ինձ յանապատական լռութիւնս զյարմարումն սորա և* Կիւրղին *ընդ միմեանս, և թէ ի մէնջ ինչ յաւելաւ առ թերութեանն լրումն, ի դիւրութիւն ինձ յընթերցումն և այլոց, որք կամիցին աւգտել։ Աղաչեմ հարք սուրբք և եղբարք անմեղադիր մնալ ժպրհութեանս իմոյ, որ պատճառաւ տգիտութեանս եղեւ. իսկ ապա թէ բարոյ յիշման արժանի համարիք զաշխատութիւնս, և զձեզ յիշեսցէ Քրիստոս ի խոստացեալ բարիսն իւր, մաղթանաւք սուրբ մարգարէիցն և սուրբ հաւրն մերոյ* Եփրեմի, *և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։*



ՈԼ 1181

## 247
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Կոնիբիր, Ցուցակ Լոնդոնի, էջ 5*

Գրիչ՝ Թորոս

Վայր՝ Դրազարկ

*Փառք եզակի, եռահիւսակ դաւանութեանն, ալէնիազին կատարեալ և անսահմանելի Աստուծոյ հաւր, Աստուծոյ որդւոյ, Աստուծոյ հոգւոյ, յաւիտեանս, ամէն։ Շնորհիւն Տեառն աւարտեցաւ եռահրաշ և հոգիազարդ Աւետարանս, զոր էր շաղկապեալ երանեալ աւետարանչացն ըստ բազմերանգ դունոց ի մի ոստայն տնկելով հանճար, ղոր արուեստակեալ անուշոցաց ծաղկանց իւղեփեցական կազմութեամբ, որ ըստ հոգւոյն յատկութեամբ իմանի զանազան որակութեամբք գաղափարելով ըստ յոքունց արփիացելոցն դասակցութեանց առ ի յեկեղեցւոյ յարմարումն յուղիղ խաղաղութեամբ գլխոյն պատշաճեալ, ղի յայսմանէ կատարելութիւնն չորք Աւետարանք ի բաղում պատճառէ…*

*Բայց գրեցաւ լուսազարդեալ Աւետարանս ի լուսալրական ժամանակի, սկզբաց արարչութեանն մինչև առ մեզ ՑՈՉ (6606), իսկ ի կենարարին գալստենէն ՌԾ[ՁԲ] (1183)*[1]*, իսկ ի խաւարովայն Պարսից սկսեալ մերս թիւ ՈԼ (1181)։ Եւ գրեցաւ սա յանապատիս* Դրազարկ *կոչեցեալ, ձեռամբ* Թորոսի *անիմաստ գրչի, հրամանաւ տէր* Սամուէլի *առաջնորդի ուխտիս, ի հայրապետութեանն տեր* Գրիգորի *Հայոց կաթողիկոսի, և յիշխանութեան այսմ գաւառի* Ռոբենի *բարեպաշտ իշխանի։*

*Արդ, աղաչեմ զամենեսան, որք հանդիպիք այսմ գրոց, յիշեսջիք ի Տէր զգրող սորա և զստացող, և զ*Խաչատուր *սրբաբէր քահանայ նկարիչ ծաղկանց, և զհամաւրէն եղբայրութիւնս՝ զկենդանիս և զհանգուցեալս ///։*

*Որ զհամբայքն գիտէ, ճանաչէ զաշխատութիւնս իմ։ Ով սուրբ տառ, ղու գիտես զաշխատութիւնս իմ եւ զընդոմնելութիւնս ընդ որով եմքս։*

## 248
## ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ

*Երևան 3792*

Գրիչ՝ Խաչատուր
Վայր՝ Դրազարկ

ա

*153բ* *Զհոգեշնորհ սուրբ առաջնորդ մեծի ուխտի* Դրազարկիս *տէր* Սամուէլ*, եւ զվարդապետն* Գրիգորէս*, յորոյ անուն սուրբ կտակս գրեցաւ,*

[1] *Թվականի վերջին տառերը մաշված են, այդ պատճառով տպագրում տեղը սև գծեր են գծված։ Կարծում ենք «ՁԲ» (82) պիտի լինի։*

եւ զմեղապարտ գրիչս Խաչատուր[1], եւ զծնաւղսն մեր յիշեսջիք աղաւ-
թիւք, աղաչեմ։

Բ

208բ Զսաացող գրոցս զԳրիգորէս վարդապետ յիշեսջիք ի Քրիստոս, ընդ նմին եւ զմեղապարտ գրողս, եւ Աստուած զձեզ յիշեսցէ։

Գ

26յա Աշխատելոցս ի գիրս ողորմեսցի Աստուած ի հանդերձեալսն, ընդ նոսին եւ ստացողացդ։

## 249
## ԺՈՂՈՎԱԾՈՒ ՃԱՌԻՑ

Ն. Ջուղա 395, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 596

Գրիչ՝ Խաչատուր

Ո՛վ սրբազան դասք քահանայից, որք ոռոգիք ի հոգևոր վտակացս առ ի զովացումն պասկա ծարաւութէան լուսաւոր վտակաց, յիշեսջիք սրտառուչ հայցմամբ ղերջանիկ երաժիշտն Յակովբոս՝ ստացող այսմ անյագ գանձարանի, նա եւ ծնաւղս նորին մասնակից վարկջիք մաքրափայլ աղաւթից ձեր։

Աղաչեմ եւ ես թշուառական գծողս Խաչատուր, եւ զիս ոչ առնել անտես։ Եւ ինքն որ առատն է յամենայնի, ողորմութիւն շնորհեսցէ մեզ եւ ձեզ։

## 250
## ԱԻԵՏԱՐԱՆ

Վենետիկ 87, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 395—396

Գրիչ՝ Յովհաննէս

Վայր՝ Հոռոմոսի վանք

ա

243ա ... Արդ զայսպիսի աստուածային իրագործութիւն տեսեալ անղատացեալս յամենայնի Յովանէս, չհամարեալ [յ]որդիս եկեղեցւոյ, հրամանաւ Վարդանայ՝ երեց եղբաւր իմոյ եւ ուսուցչի, եւ սատարութեամբ կրտսեր եղբաւր աշխարհաւարի՝ Գրիգորոյ, արիւնաթաթախ մատամբս՝ զոր յաղագս մեղաց իմոց վիրաւորեցաւ, գծագրեցի խոշրութեամբ յանպատկանաւոր եւ ի չնչին նիւթի աստ, յուսակնեալ ի մարդասիրութիւն եւ ողորմութիւն սրբոցս... Եւ դուք, ո՛վ սուրբ մանկունք, սուրբ հաւրն երկնաւորի, յիշեսջիք զմեզ առաջի Քրիստոսի հանդերձ ծնողաւք մերովք։

[1] Այս և հաջորդ ձեռագրի Խաչատուր գրչին նույնացնում ենք նախորդ ձեռագրի նկարիչ Խաչատուրի հետ և անթվական այս հիշատակարանները դնում 1181-ի թվաշարքում։

Գրեցաւ աստուածային կենարար Աւետարանս ի Թուիս Հայոց ի ՈԼ (1181), ի տիեզերահռչակ վանս Հոռոմոսի՝ ընդ հովանեաւ Սուրբ Յովաննիսի, ի հայրապետութեան տէր Բարսղի, եւ յառաջնորդութեան ուխտիս Խաչատրոյ, եւ ի հոգեւոր տեսչութեան Կարապետի ծերացելոյ իմաստիւք ի Քրիստոս, եւ ի սպասաւորութեան սուրբ եղբարց իմոց՝ զորոց զանուանսն անջինջ պահեսցէ Քրիստոս Աստուած առաջի փառաց իւրոց, ամէն։ Արդ աղերսիւ հայցեմք յամենեցունց, որք ընթեռնուք եւ որք լսէք, յիշեսջիք յաղաւթս զնուաստ աշխատողս զՅովանէս, եւ զեղբարս իմ ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ՝ զՎարդան, զՄխիթար եւ զԳրիգոր, եւ զհարսն մեր եւ զեղբարսն, հանդերձ վերոյիշեցելովքս, եւ Քրիստոս Աստուած յիշեսցէ զյիշողքն մեր, և ողորմեսցի ամենեցուն, ամէն։

Բ

Քրիստոս Աստուած, քո անճառ տնօրէնութեամբ ազնեա Գրիգորոյ, եւ փրկեա յամենայն փորձութենէ հոգւոյ եւ մարմնոյ. ընդ նմին եւ անպիտան եղբարցս աշխատաւորացս՝ Վարդանայ եւ Յովաննիսի, եւ ծնողաց մերոց ողորմեայ մարդասէր Տէր։ Որ ոք յիշեսցէ զմեզ ի բարի, յիշեսցի ի Քրիստոսէ յուսոյն մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

251

ՄԱՇՏՈՑ

Երուսաղեմ 3299

Գրիչ՝ Յովանէս Հոռոմոսիվանեցի

ա

123 Վասն յուսոյն որ առ Աստուած, ես Յովանէս Հոռոմոսիվանեցի՝ եղբայր Վարդանայ, մեծ տառապանաւք աշխատեցայ ի գիտս բանից գրոց եւ գրեցի ըստ իմում կարի, աղաչեմ յիշեսջիք զմեզ յաղաւթս։

բ

227 Ո՛վ աստուածասէր ընթերցող, վասն Աստուծոյ ասա սրտի մտաւք Աստուած ողորմեա Յովանիսի եւ ծնողաց իւրոց եւ եղբարց։

գ

337 ԶՅովանէս գրիչ եւ զստացիչ սրբոյ գրոցս յիշեսջիք յաղաւթս՝ հանդերձ ծնաւղովք մերովք, աղաչեմ։

## 252
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Բարխուդարյան, Արցախ, էջ 101, Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 491*

Գրիչ՝ Ռստակէս

*ԶՌստակէս գրիչ յիշեսջիք սիրելի եղբարք*[1], *[Որ փոխեցաւ առ Քրիստոս], որ գրեց զՄատթէոս, զՄարկոս [Աւետարանքս]։*

Բ

*Տէր Աստուած, ողորմեա* Ռստակիսի, *ամէն*[2]*։*

Գ

*Բայց գրեցաւ սուրբ Աւետարանս [ի փրկչական թուին] յՌ[Ճ]ԼԴ (1184) եւ Յապեթեանս թուականին ՈԼԱ (1182), ձեռամբ* Ռստակիսի[3]:

Դ

Գրիչ՝ Վրդանէս

ԶՎրդանէս *գրիչ, որ գրեցի զՂուկաս և զՅովհանէս՝ զվիրաւորս մեղաց յիշեսջիք, ով պատուական եղբարք, զի չիք մարդ մեղաւոր քան զիս՝ երկրի*[4]*։*

Ե

Նկարիչ՝ Յակովբ

*Տէր Աստուած ողորմեա* Յակովբայ *նկարչի*[5]*։*

## 253
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 283 (1033 թ.)*

Վայր՝ Հոռոմայր

180բ *Ով զայս Աւետարանս կամ այլ գիրք գողանա ի Հոռոմայրէս, նզոված է ի սուրբ Աւետարանէս, ամէն։*

*Յամի ՈԼԱ (1182) կազմեցաւ Աւետարանս, հրամանաւ* Քրիստափորի *կրաւնաւորի, վասն եղբաւ[ր] իւրոյ* Սարգսի *յիշ(ատ)ակի։ Որք կարդայք՝* զՍարգիս *եւ* զՔրիստափոր *յաղաւթս յիշեսջիք։*

---

[1] *«Աւետարանս մագաղաթեայ և մեծադիր է, որ ունի Ռստակէս, Վրդանէս և Ստեփանոս վարդապետների պատկերները, բայց անճաշակ նկարված»,— գրում է Մ. Բարխուդարյանը։ Առաջին նկարի մոտ գրված է ա. հիշատակագրությունը, իսկ փակագծերում ավելացվածը այլ գրչի համելում է։*

[2] *Գրված է խորանների մեջ։*

[3] *Գրված է հավանաբար Մարկոսի վերջում, որ* Ռստակեսն *է՝ գրել։ Փակագծերում ավելացրածը Գ. Հովսեփյանինն է։*

[4] *Գրված է իր նկարի տակ։ Մի այլ նկարի տակ գրված է* «Ստեփանոս»:

[5] *Գրված է Մատթեոսի պատկերի տեղում։*

*ՈԼԲ* **1183**

**254**

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երուսաղէմ, 3133, Պօղարյան, Ցուցակ Ի, էջ 349—350*

*Գրիչ՝* Յովսեփ
*Վայր՝* Մլիճո անապատ

*Փառք Երից անբաւից, անհասից, աննղրական տէրութեանն եւ միոյ աստուածութեանն, յամենայն արարծոց, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Պարտ է ամենայն եղանակացս փառս տալ արարչին արարածոց, որ զաւրացուցանէ զամենսեան ույք հաւատովք խնդրեն ի նմանէ առնուլ զհայցելին ըստ կամայ։ Վասնզի ճանապարհորդք եւ նաւորդք ոչինչ այլ (բաղձան) եթե հասանել ի հանգիստ ըստ կամաց։ Նոյնպէս եւ գրիչ բաղձայ հասանել յետին գծին. եւ ապա ոչ սակաւ ուրախութիւն լինի ամենեցուն որոց հասանեն հանգստի, եւ ապա զուրաճանան եւ բերկրին ընդ բարեկամս եւ ընդ դրացիս մոռանալով զառաջին վիշտս եւ զնեղութիւնս յանցեալ ժամանակին։*

*Որպէս եւ զիմ անարժանութիւն արժանացոյց հասանել ի յաւարտումն սրբոյ Աւետարանիս ի դառն եւ ի նեղ ժամանակի, յորժամ ամենայն արարածս տարաբերէր եւ զղուէր յանաւրինաց իսմայելեան տոհմին որդւոց հագարու, երկուց վիշապաց բերանաբաց լինել ընդդէմ քրիստոնեից, ահ արկանելով ամենեցուն, որպէս զծով սաստիկ ալեաւք պարփակեալ շուրջ* զԿիլիկեցւոց *գաւառաւքս, եւ աւգնութիւն ոչ ուստեք ի մարմնաւոր տէրանց, բայց միայն ի հինէ անտի Հայոց սպարապետն մեծ* Ռուբէն *որդի* Ստեփանէի յՌուբինանց, *տիրապետեալ իւր հայրենի գաւառացս այսոցիկ* Կիլիկեցւոց. *եւ աւգանութիւն ունելով յԱստուծոյ միայն։ Սա զաւրաժողով ունելով զքրիստոնեից գունդն ահ (ար)կանէր առ այլ ազգիսն եւ ոչ կարեին մտանել ի քրիստոնեից աշխարհս։*

*Արդ եղեւ գրչութիւն սորա ի թուաբերութեանս Հայոց ՈԼԲ (1183)-ն, եւ ի վերագիտողութեանն տեառն* Գրիգորի *Հայոց հեղինակի, որդւոյ* Վասլի: *Եւ վասն զի ի ստոյգ աւրինակաց ստուգեցաւ եւ գրեցաւ Աւետարանս ձեռամբ իմով անարժանիս* Յովսեփայ *յետնոյս ի գրչաց, ի ծովահայեացս որ կոչի* Առեւծկան Կացոցն *մեծահռչակ անապատին* Մլիճոյն, *ընդ հովանեաւ Աստուածածնին, եւ ընդ վերակացութեամբ հաւր* Ստեփանոսի, *մերձ առ ստորոտով անմատոյց ամրոցին* Պապեռունին, *առ սահմանաւք* Տարսոն *քաղաքի, եւ ընդ իշխանութեամբ մեծազաւր եւ բարեպաշտ պատրոնին* Ռուբինայ, *ի վայելումն հոգեւոր որդւոյ իմոյ* Ստեփանոսի *քահանայի, որդւոյ* Գրիգորի *քահանայի, թոռին* Ստեփանոսի *քահանայի, եւ յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնաւղաց իւրոց, եւ իմոյ անարժանիս եւ ծնաւղաց իմոց, եւ բնաւ զարմ<արմ>ին*

իմոյ, եւ որ զարծաթս շնորհեաց յաղագս զարդու սուրբ Աւետարանիս, եւ ի Թագուհի մայր սորին Ստեփանոսի՝ յիշատակ հոգւոյ իւրոյ, եւ նորին հաւրն Կարապետի քահանայի։

Արդ աղաչեմ զամենեսեան որք ընթեռնուք եւ կամ ընդաւրինակէք՝ յիշատակի արժանի արարէք զիս զբազմամեղ գրիչս եւ զամենայն վերատացեալք ի սմա, զի թերեւս ողորմութիւն գտցուք աղաւթիւք ձերովք յահագին աւուրն, եւ Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Իսկ յառաշագոյն ասացեալ վիշապքն երկուք. էջ սուլտանն Խլիճ Ասլան եւ առ ղըմայրաքաղաքն Սելեւկիայ, եւ զաւրացաւ ի վերայ ամրոցացն այնոցիկ, եւ սինաւո հաստատեցաւ ընդ սպարապետն Հայոց Ռուբէն գետն Պռականոյ, եւ յետս չոգաւ սիրով։ Եւ ապա ի միւս այլ կողմանէ փքայր անաւրէնն եւ պիղծն յորդւոցն Քետայ Սալահըտտինն, որ եւ բռնակալեաց եւ առ զԵգւպտոս եւ զԴամասկոս եւ զԵդեսեայ, որ այժմ կոչի Ուռհայ, եւ զԵմիթ, եւ չոգաւ անց ըգետովն Եփրատ, եկն առ ստորոտով Սուրբ լերինն, զոռայր ընդդէմ սպարապետին Հայոց Ռուբինայ եւ լսէր խստագոյն պատասխանիս իմանէ, կամէր մտանել յաշխարհս քրիստոնեից եւ ոչ կարէր, վասնզի եւ քրիստոնեից գունդն զաւրաժողով եհին ընդդէմ նորա, մահ ի մտի եղեալ ամենեցուն, զաւրաւիգն ունելով զՍուրբ Նշանն, եւ զամենասրբուհի Աստուածածինն եւ զամենայն սուրբս առ ի յաւգնութիւն կոչելով քրիստոնեից։

Այս ինչ իրագործեցաւ մինչեւ ցայս վայր, եւ առաջակայն Աստուծոյ է դիտելի։

ԶՄանուէլ եւ զԿիւրակոս հոգևոր սրդիք իմ յիշեսջիք աղաւթիւք ի Տէր։ Իսկ եւ զԳեորգ քահանայ սրբասէր եւ հոգևոր եղբայր իմ՝ աղաչեմ յիշել ը Տէր, զի տացէ նմա (շարունակութիւնը կորսված)։

## 255

## ԱԻԾՏԱՐԱՆ

Երևան 6264

Գրիչ՝ Հայրապետ

Վայր՝ Կարինի Խաչկա վանք

ա

285բ Փառք սուրբ եւ սրբարար, միշտ կենդանի և կենդանարար, միշտ բարի եւ բարերար Երրորդութեանն մի աստուածութեան՝ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ՝ այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ցանսպառ խաղացմանէ շնորհաց Հոգւոյն առատացեալք դասք սրբազանիցն ի վերնայարկ խորանին, որով եւ լուսաւորք երեւեցան յաշխարհի լուծանելով զգիտութիւն ոչ վարժիցն կրթութեան ներհուն ճեմարանացն, այլ իմաստութեան ծածկելոյ խորոց, հրազինեալ աղբեւրաբար լցուցին զտիեզերս, վասն որոյ առեալ պատուէր աւանդել զլուր
286ա աւետաբեր քարոզութեան բանին հասարա[կե]ցան տիեզերաց վիճակելոց անյապաղ մեծափայլութեամբ արագապէս լցին// զստորեւս ա-

մնայնւ Իսկ ի նախընտրելոյն համագնդից կոչեցան ոմանք աւետա-
[րա]նիչ դրով արձանայուցանել զանքննին մեծութիւնն Քրիստոսի,
մինչ ի կատարած ի վկայութիւն ամենայն հեթանոսաց եւ զուգա-
հաւ[աս]ար չափով յաղինական բառաձևլով դևտոցն կանխահրավէր
կոչման բաժանել չորից վտակաց իմանալ տեղի յադինայ զիմաստու-
թիւն, եւ ի նմանէ արտահեղուլ վտակաց քառից, ղալարացուցանել
դխորշակահար որոմնապատ չարին սերման, վասնզի աննիազ թոր-
մամբ արբուցին միշտ ղան[ձինս]//[1]։

Սակս որոյ առաջին ըստ դասու եւ զաւրութեան մաքսաւորն Մա-
թեոս, որ եւ նրգ կենաց [ի] բերան հրոյ կենաղուտ բորբոքմամբ, եւ
երկրորդն բարձու պատուէր ի գերազանցն առնելով սկիզբն վկա-
յութեամբ եւ կարդաւ համառաւտ պատմութեամբ ընթանալով միշտ,
իսկ երրորդն համբակն անտիոքացի վերայկոչեալ Յարութիւն բազմա-
նշանակ թարգմանութեամբ առաջին ի մեղաց յարուցանելով ի ճանա-
պարհ արդարութեան և այլ ի թմբրութենէ կամ ի գլորմանէ քնոյ զար-
[թ]ուցանել, որով լուսատու լինի Քրիստոս, եւ չորրորդն Յով[հա]ննէս
Տեառն հնազանդութեան ա[ն]երբ և անժամանակ պատմէ։

Այս չորքաւետրանաիչ[ք]՝ լցեալ ի նուս չորից ողոմանեկաց,
բառնան զերկնային բանաւոր տապանակ, զուգակշիռ աւետեաւք լու-
սոյ համաբոլոր տիեզերաց նախահրավէր պատմաբանութեամբ քարո-
զեալ։ Յաղագս որո եւ ես յետինս քահանայ եւ վերջա[ցեալ]ս յամե-
286բ նայնի [Հայրա]պետ, հայեցե[ալ] // ղանձու ի ///թեամբ, ոչ վարկե-
ցա///! [ան]զուգական յէիցս, կամ եղեւ գործառնութ[իւն] իմոյ արհես-
տի, մեծաւ աշխատութեամբ ըստ կարի կան[գ]նել զսա արձան հաւ-
տատութեան եւ յիշատակ մըշտնջնաւոր, գանձ անկողոպտելի եւ փրկա-
կանս ի Քրիստոս ճանա[պարհ]։

Բայց արդ, գրեցաւ Աւետարանս այս ի թուականիս [Ո]ԼԲ (1183)[2]
ի Կարին գաւառի, ի վանս Խաչկայ, ընդ հովանեաւ Սուրբ Յարութեանս,
եւ առ ոտս աստուածընկալ սուրբ նշանին Դաւթայ, յառաջնորդութեանն
տէր Ստեփանոսի՝ հեզի եւ խոնարհի, զոր հատուցէ նմա Քրիստոս, եւ
ի տէր Աստուածատուրի, եւ ի հայրապետութեանն տէր Գրիգորի Հայոց
կաթողիկոսի, ի բռնակալութեանս Տաճկաց Մահմատ անուն կոչեցելոյ,
ձեռամբ Հայրապետի մեղապարտ և անարժան կրաւնաւորի։ Եւ ընդ իմոյ
յաւժարութեամբ կատարեցի [զսա] /// նշան հաստատութեան եւ ինձ
դրաւղիս թոշակ ուղեւորութեան հոգւոյ ի Քրիստոս։ Մանաւանդ եւ ծնաւ-
ղաց իմոց՝ հաւր իմոյ Առաքելի քահանայի, եւ մաւր իմոյ փոխեցե-
լոյ, եւ եղբարց իմոց Աւետեաց քահանայի եւ Կարապետի քահանայի՝
փոխեցելոյ ի Քրիստոս, եւ Գուգորին, եւ քուերաց երեցունց։ Ըստ նմին
եւ եղբաւրորդւոյ իմոյ Ստեփաննոսի մանկագոյն քահանայի եւ պաշ-
տաւնեա եկեղեցւոց ընդ իս յիշատակեցէք։ Ընդ նմին եւ զհանն իմ փո-
խեցեալն, եւ զքեռին իմ զՍեփանն քահանայ, եւ զԳէորգ, զփոխեցե-

[1] Կազմելու ժամանակ մի տող կտրվել է։

[2] Գ. Հովսեփյանը կարդացել է «ՈԼ» (1181), բայց թանաքակեր հետքերով նշմարվում է միավոր թիվը։

*ալսն, զոր հատուցէ նոցա Քրիստոս,* *եւ* զՆերսէս *[կ]րիչ վարդապետ իմ, եւ կարեւոր եւ ընտանի եւ խրատտու, եւ ամենայն բարեաց առիթ, զի հատուսցէ նմա Քրիստոս։ Եւ* զՅովհաննէս *քահանայ զթափն, եւ* զԱբրահամ *կաղմող սորա, եւ զհոգեւոր եղբայր իւր* զՊաւղ *քահանայ, եւ* զՅովաննէս *քահանայ, որոց սոցա աղաւթիւք եւ Քրիստոս զիս փր[կէ] յաւիտենանից հրոյն, ամէն։*

*Ընդ նմին եւ* զՅակոբոս *վարդապետ՝ զփոխեցելն, որ զաւրինակն գրեաց, եւ* զՄխիթար, *եւ* Տրդատ: *Արդ, որ զմեզ յիշեն, յիշեալ եղիցին ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յա[ւիտեանս, ամէն]։*

Բ

137բ *Քրիստոս Աստուած, քո սուրբ աւետարանչացդ բարեխաւսութեամբ յորժամ գաս հայրենի փառաւք լուսաւորես զքո զարարածս, լուսաւորեա զմեղուք մեռեալ անձին իմոյ զհոգի՝ զմեղապարտ եւ զանարժան կրաւնաւորի* զՀայրապետի *աշխատաւորի։ Ըստ նմին եւ զծնաւղաց իմոց, զհայր իմոյ* զԱռաքելի *քահանայի, եւ մաւր իմոյ փոխեցելոյ։*

Գ

222ա *Քրիստոս Աստուած, քո սուրբ աւետարանչացդ բարեխաւսութեամբ եւ հրաշափառ հարութեամբ եւ համբարձմամբդ յերկինս, ողորմեա մեղաւք մեռեալ անձին իմոյ* Հայրապետի:

*Ո՛վ պատուական եղբարք, յորժամ ընթեռնոյք զԱւետարանս զմեղապարտ և զանարժան գրողս յիշեցէք յաղաւթս ձեր, եւ զծնաւղսն իմ, եւ զեղբարսն իմ, եւ* զՍտեփաննոս *քահանայ եղբաւրորդի ըստ մտի։*

287բ *Արդ, ստացաւ զԱւետարանս զայս* Ստեփանոս *ընտրեալ քահանա, փրկականս հոգւոյ իւրոյ, քանզի ստացաւ զսա զաւակ ի* Սիոն *եւ ընտանի ի վերինն Երուսաղէմ։*

*Ա[րդ], ո՛վ աստուածասէր քահանայք, յորժամ ընթեռնոյք կամ ընդաւրինակէք զԱւետարանս զայս, յիշեցէք յաղաւթս* զՍտեփաննոս *քահանայ, ընդ նմին եւ զծնողսն իւր՝ զփոխեցեալսն ի Քրիստոս, զհայր իւր* զՎարդն, *եւ զմայր իւր, ընդ նմին եւ զեղբարսն իւր զփոխեցեալսն, եւ զքուերսն, եւ զհամաւրէն զամենայն զընտանիս իւր՝ զկենդանիս եւ զննջեցեալսն։ Ընդ նմին եւ զհայր* Գրիգոր՝ *ընտանի իւր, առաջնորդ սուրբ կաթողիկէի։ Եւ Քրիստոս Աստուած յիշողացդ եւ յիշե[ցել]ոցս ողորմեսցի, ամէն։*

## 256

## *ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑՒՈՑ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՎԵՑՕՐԷԻՑ*

*Երևան, 9027, Է. Փիրղալեմյան, Նշխարք..., էջ 37ա*

*Գրիչ՝* Յովհաննէս

*Վայր՝* Հոռոմոսի վանք

*Կատարեցաւ աստուածահրաշ առասութիւնս սրբոյն* Բարսղի... *սակս որոյ ըղձմամբ սրտի տարփացեալէ, չուառս քան զամենեսին յորդիս*

*եկեղեցւոյ, լոկ անուամբ միայն քահանայ* Յովանճէս *գծագրեցի զսա տկար մատամբ և անարժան ձեռամբ, ի տիեղերահռչակ ուխտիս Հոռոմոսի կոչեցեալ վանք, ընդ հովանեաւ Սուրբ Յովաննիսի, ի հայրապետութեան մեծարգոյ և հռչակաւոր առն Աստուծոյ տեառն* Բարսղի *և եղբօր որդոյն նորա աստուածարեալ մանկագոյն քահանայի* Սարգսի, *զոր պահեսցէ Տէր Աստուած ամենազօր աջովն իւրով հանդերձ եղբարբք և ազգաւ արտաքոյ ամենայն վտանգից հոգւոյ և մարմնոյ, ի պարծանս մեզ։*

*Արդ աղերսահայց մաղթանօք խնդրեմ յամենեցուն, որ օգտիք ի սմանէ, յիշեսջիք յաղօթս զաճիմնացեալս մեղօք* զՅովանճէս *և զեղբարյն իմ* Վարդաճ *միայնաւոր, հանդերձ ծնողօք մերովք և եղբարբք։ Եւ Աստուած զյիշողքդ մեր և զամենայն հաւաստացեալսդ օրհնեսցէ և պահեսցէ ի խաղաղութեան երկակի կենդանութեամբ, ամէն։*

*Թուական Հայոց ՈԼԲ (1183)*[1]։

## 257

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2877*

*Նորոգող՝* Վարդաւաճ

*Վայր՝* էրեզի Սուրբ Աստուածածին

ա

217բ *Ըղձից փափագումն յորդորէ զամենեսան եւ բարեխոհ առնէ ի գութ
եւ ի սէր աստուածային եւ ի գործս բարութեան, եւ զընչից շահաւետութիւնսն տայ մոռանալ եւ որոշել ի կենցաղոյս ///երի յաստեացս և գշահաւէր մարգարիտն տայ գնել, որ է յաւգուտ առ վերջինսն։*

*Ըստ որում եւ եղբարքս այս կրաւնաւորեալ երկաքանչիւրքս՝* Մարգարէս *եւ* Սուփիաս, *միաշունչ եւ միախորհուրդ քննեալ ի բովս աստուածային եւ գտեալ եւ յստակ եւ առանց խառնուածոյ յամենայն չարեաց, սակաւիկ ինչս կալեալ եւ զկարիս ամենայն ի բաց եդեալ, եւ այնու գնեալ զԱւետարանս զայս՝ զբարբառս աստուածային սքանչելեաց, յաղագս ակատկարութեան հոգւոյ և մարմնոյ, եւ յանուն
218ա Աստուածածնին, զոր եւ // անուն տեզոյն* էրեզ *անուանի։*

---

[1] *Ձեռագրի մի մասն է կազմել Սամուել Անեցու տարեգրությունը, որը մինչև ՈԻԶ (1177) թուական հասուցանէ զթել տարեգրութեան իւրոյ որոյ վերջին բանքն էին հետևեալք. «ՈԺԲ (1163), յա(յ)սմ մեռաւ մեծ իշխանն Թորոս։*

*ՈԻԲ (1173). փոխի մահուամբ առ Քրիստոս տէր Ներսէս և փոխանորդէ զաթոռն տէր Գրիգոր։*

*Սույն Սամուել Անեցին ևս վերոյիշեալ Յովհաննէս քահանան գրեալ էր ի վանս Հոռոմոսի, ՈԼԲ (1183) թուականին Հայոց։ Զունէր յատուկ յիշատակարան» (էջ 36)։ Փիրղալեմյանը ելնելով վերջին թվականից, ձեռագիրը համարում է 1183 թ. գրված։ Հավանաբար նույնն է № 262 հիշատակարանի հետ։*

Արդ, կանայք Ն[ր]կուք բարեպ[ա]շաք եւ սրբասնեալք, որոց անուանք նոցա կոչին Գոհարս եւ Խոսրովիզուխտ, սոքա բարի խորհուրդ յանձն առեալ վասն հոգւոյ աւգտի եւ անուն յաւիտենական արարեալ, վասն յիշատակի իւրեանց եւ ծնողաց իւրեանց եւ ազգականաց իւրեանց, գնեցին զԱւետարանս զայս Գոհարս եւ Խոսրովիզուխտն՝ տուեալ զբազումս զգինս կանայքս այս, եւ զսակաւըն Մարգարէն եւ Սուքիասն, եւ եդուն յանուն Աստուածածն[ին] առաջի բազում [վկա]յից։

Արդ, եթե ոք հակառակ գտանի գր[ավեալ] կամ հետաքրքիր Աւետարանիս, որ կամեսցի յափշտակել յեկեղեցւոյս Աստուածածնէս, ի Փրկչէն մերմէ եւ ի ծնաւղէն իւրմէ և ի Սուրբ Երրորդութենէն եւ յամենայն սրբոց///[1] եւ մարմնով ամէն։

Արդ նորոգեցաւ Աւետարանս այս ի Թուականութեանն Հայոց ՈԼԲ
(1183), յամս աստուածապատիւ տեառն Գրիգորի Հայոց վերայդիտողի,
218բ եւ յանիշխանութեան ազգիս մերոյ, յորում տիր//եալ [է]ին տաճիկք[2]
ի վե[րայ բազո]ւմ եւ համատ[արած, ի ծ]ագաց մինչ[եւ ի] ծագս
երկրի, առեալ զամրոցանիս Հա[յոց] աշխարհաց եւ զտեարսն նոցա
մերկացուցանէին ի քրիստոսակ[ան] հաւատոցն, կամ սրախողխողս առ-
նեին, եւ ոչ մնաց ամենեւին ճարակ ծիավարժաց յազգս Հայոց։

Արդ յաւուրքս յայս չարութեան ոչ մոռացան զշահ հոգւոյ կանայքս այս՝ Խոսրովիզուխտ եւ Գոհարն, եւ Սուքիաս երէց վանաց սուրբ եւ ընտիր կրաւնաւոր, այլ արարին զԱւետարանս զայս յիշատակ իւրեանց եւ ծնաւղաց իւրեանց, եւ ազգականաց իւրեանց, ի վայելումն Աստուածածնին, եւ ոչ ոք կալցի ձեռն դորա, միայն Սուքիասն:

Տէր Յիսուս Քրիստոս, ի քո յահաւոր գալստեանդ ողորմեա Գոհ[ա]րին, եւ Գրիգորի՝ առն իւրում, եւ Խոսրովիդուխտոյ, եւ իւրոցն ամենայնի, եւ Սուքիասին, եւ նորա ննջեցելոցն, եւ ինձ նորոգաւղի գրոցս, եւ իմոցն՝ որոց են կարաւտ ողորմութեան քում, Տէր, զի տացես նոցա զխնդրելիսն, ամէն։

Յիսուս՝ լոյս փառաց, ողորմեա Վարդաւսանա, զի գործ մի բարի գործեաց յիս, ամէն։

6բ Տէր Յիսուս ողորմեա Սուքիասին եւ գծողին ամէն[3]։

---

[1] Մի տող քերված է։

[2] Խիստ մաշված է։ Հավանաբար Ս. Ջալալյանը, տեղ-տեղ Թանաքով միջամտել է բնագրին, և արտագրել ու հրատարակել է այդ մասը՝ այսպիսի սրբագրությամբ. «Ի Թուին Հայոց ՈԼԲ (1183), ի հայրապետութեան Գրիգորի Հայոց վերադիտողի եւ անիշխանութեան ազգիս մերոյ խղճալւոյ եւ քակելոց զամրոցն աշխարհիս եւ զզօրսն նոցա, եւ մերկացուցանէին ի քրիստոնէական հաւատոյն, կամ սրախողխող առնէին, եւ ոչ մնաց ամենեւին ճարակ ձիավարժաց ազգիս Հայոց» (Ս. Ջալալյան, Ճանապարհորդութիւն, Բ, էջ 380)։

Մենք վերծանեցինք գրերը՝ Թանաքակեր հետքերի ուշադիր զննությամբ։

[3] Գրված է նոր ավելացրած Թերթի վրա, Եվսեբիոսի նամակի վերջում։

## 258

## ՋԵՐՄԱՆՑ ՄԽԻԹԱՐՈՒԹԻՒՆ ՄԽԻԹԱՐԱՑ ՀԵՐԱՑՒՈՅ

*Երևան 416 (1280 թ.)*

*Հեղինակ՝* Մխիթար Հերացի

Բժշկարան անուամբն Աստուծոյ միայն, վասն երեք ազգ ջերմանցն, արարեալ Մխիթարայ իմաստուն բժշկի, որ ի Հեր քաղաքէ ծնընդեամբ և վարժեալ իմաստութեամբ Հելենացւոց, Հայոց, Արաբացոց և Պարսից:

*Ես՝* Մխիթար Հերացի՝ *տրուպս ի բժշկաց, որ ի մանկութենէ սիրող եղէ իմաստութեան և բժշկական արուեստից, և վարժեցայ ի դպրութիւն Արաբացոց, և Պարսից, և Հելենացւոց, տեսի յընթերցումն որ առ նոսայ գրոցն, զի ունէին զարուեստ բժշկութեան՝ լի և կատարեալ ըստ առաջինի իմաստնոցն, այսինքն զնախագիտութիւն, որ է իմաստ և վարդապետութիւն բժշկական արուեստից։ Եւ ի Հայք բնաւ ոչ գտի զվարդապետութիւն և զիմաստ նախագիտութեանն, այլ զստածումն միայն։ Եւ այս ոչ ըստ կարգի և լի, այլ համառատ և ծաղկաքաղ՝ աստի և անտի հաւաքեալ՝ յայլ և յայլ գրչաց և մտաց այլայլած։*

4բ *Կամեցայ, ապայ ըստ իմոյ կարողութեանս // առնել զգիրքս զայս միայն վասն երեք ազգ ջերմանցն համառատ, նախագիտութեամբն և ստեղծմամբն։ Զբաւանդակն, որ վասն արուեստի բժշկութեանն իմաստութիւն թողի, և երեք ազգ ջերմանցս միայն հաւաքեցի և թարգմանեցի ի հայ բարբառ, պատճառ ունելով այսմ աշխատութեան զսէր և զյաւժարութիւն սրբոյ և աստուածապատիւ կաթուղիկոսին Հայոց տեառն* Գրիգորի, *որ մակակոչի* Տղայ: *Սայ, որ էր յաջորդ յաթոռ Սըրբոյն* Գրիգորի Լուսաւորչին *Հայոց, զոր տեսի ամենայնիւ սիրող իմաստութեան և հըմուտ, և յաղագս այսորիկ յաւժարեցի ի պէտս և ի յաւգուտ սորայ առնել զգիրքս զայս ի հոռոմ և յարապիկ և ի պարսիկ գրենաց՝ ըստ իմոյ կարողութեանս և շնորհի, զոր ետ ինձ* Տէր *գիտութիւն լեզուաց և գրոց նոցայ։*

*Կարգեցի և շարեցի ըստ չորից նիւթոցն կարգի. զնախագիտութիւն*
5ա *և զստածումն բժշկութեան, վասն երեք ազգի ջերմերոյն միայն, // զբորբոսայինն և զանբորբոսն, զսուրն և զերկարաւրեայն, ղնուպայովն և զաննուպայովն, զսեռ նոցա և զտարբերութիւն, զտեսակ և զյատուկ, և զպատահումն՝ որք զկնի հիւանդութեանցն լինին։*

*Զի առին նախ բժըշկական վարդապետքն զհինկ ձայն Ներածութեանցն* Պորփիւրի *յառս (*)* Արիստոտելի *իմաստասիրի, եդին հիմն և կանոնք բժշկական արուեստին։ Նոյնպէս և մեք շարեցաք և հաստատեցաք ըստ կարգի հին և նոր վարդապետացն և արարաք զգիրքս զայս, և անուանեցաք Ջերմանց մխիթարութիւն, զի սա մխիթարէ զբժիշկն՝ ուսմամբ, իսկ զհիւանդն առողջութեամբ՝ ողորմութեամբ և աւգնականութեամբ արարչագործին Աստուծոյ։*



16—1130

Եւ արարի զսա գեղչուկ ե արձակ բարբառով, զի դիւրահաս լիցի ամենայն ընթերցողաց՝ առ ի յիշատակել զմեզ և խնդրել թողութիւն մեղաց ի մարդասիրէն Աստուծոյ։

Թարգմանեցաւ և գրեցաւ գիրքս այս յամի հազարերորդի հարիւրերորդի ութսներորդի չորրորդի (1184) Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ղալստեանն
5բ || յորում էր և թուականս Հայոց ՈԼԳ (1184), ի հայրապետութեան սրբազան կաթողիկոսին Հայոց տեառն Գրիգորի՝ որդոյ Վասլի բարեպաշտ իշխանի Պահլաւունոյ, որ և պատճառն է գրոցս։

## 259

## ԳԻՐՔ ԴԱՏԱՍՏԱՆԻ ՄԽԻԹԱՐԱ ԳՈՇԻ

Երևան 488 (1295 թ.)

Հեղինակ՝ Մխիթար Գոշ

Վայր՝ Հոռոմաշէն և Դաւնոյ անապատ

ա

1բ Յիշատակարան սակաւ

Եւ զի թէպէտ բնաւորական է ամենեցուն լաւին ցանկալ անսխալ յիրս յամենայն լինել, սակայն ոչ է հնար, որ ի լինելութենէ և յապականութենէ բնութիւնս, և այդ յոյժ քաջաբանից, որչափ ևս մեզ իցէ[1]
13ա ||, որ յամենայն ինչ գործ սխալեալն եղև, և գրեթէ յսկզբանէ, վասն որոյ զամենեսեան զկնի մեր եկեալսդ, զհարս և զեղբարսդ ի զանազան ժամանակս, աղաչեմ մաղթանաւք զյոլով գոլ սակաւ սխալանս ուղղեսջիք, պատահեալ ընթերցման Բ տառիս[2] և զիրաւացի թերին լցջիք, որպէս վերագոյնն ծանուցաւ, զի հասարակ և ի վեր քան զհասարակ զսխալանացն ունիմ զպատճառ. Նախ՝ զբիծս անձինս, որ զներգործութիւնն խափանէ զհոգւոյն, և ապա զախտս մարմնոյ։ Եւ զի յայտ անվարժութիւն համաւրէն է սեռի և յատկի, և դարձեալ անպարապութիւն, զի ընդ ստեամբ ախտաժետիւ ղմանկունս ունէի բանի և զպանդըխտութիւն և զանտեղութիւն և զանտեղեկութիւն գրչութեան, և զհակառակութիւն ներքնոց և արտաքնոց զգայութեանց տկարութիւն, և զմարտս դիւաց, և զպակասութիւն գործիեաց գծագրութեանց և զախքատութիւն մատենից, յորոց զնիւթս հաւաքել ի դէպ էր բանից։ Ապա թէ ընտանի ազգիս բարոյիւք սխալանացն լինիջիք պարսաւիչ և ոչ ուղղիչ, դիտելով գործ Հայկազնեացս ղայդոսիկ, միանգամայն ըզչափ անձին, անմեղադիր ձեզ այդոցիկ լինիմք։ Ապա թէ սիրով մերոյս պատահիք բանից, և խնամիչ կամաւք զթերին լնուցջիք, ի Տեառնէ զհատուցումն առջիք բարեաց, և զգանձս բարեաց ձերովք երկեամբք եկեղեցի ամբարիջիք՝ յիշատակ բարեաց մնալ ձեզ ի նմա։

Բայց ձեռնարկութիւն մեզ յայսմ իրողութիւն եղև ի թուականու-

---

[1] № 8938 ձեռագրում՝ «մեղիցէ»։

[2] Անդ «սք տառիս» (««սուրբ տառիս»)։

*թեանս Հայոց ՈԼԳ (1184), և շրջանին երթալոյ ի բաց ՃԱ (1185), որ*
*կոչի Փոքր, իսկ Հոռոմին ՆԵ, յամս անիշխանութեան թագաւորութեան*
*մերոյ ի վաղընջուց՝ ի ժամանակի մնացելոց սակաւ իշխանաց ի կող-*
*մանս Խաչենոյ, ընդ ժամանակս անուանելոյ Հասանայ կրանաւորեցե-*
*լոյ, և որդւոյ նորա Վախտանգայ, ի դղեկին, որ անուանի Հայրբերք,*
*գլխաւորի այլոց իշխանաց, և կողմանցն Կիւղիկեայ՝ մեծի իշխանին*
*Ռուբենին, յամի յորում մեռաւ յաղթող թագաւորն Վրաց Գէորգի, ի*
*հայրապետութեանն տեառն Գրիգորի Հայոց Մեծաց և ի դիտապետու-*
*թեան տեառն Ստեփաննոսի տանս Աղուանից, յաշխարհիս Առանայ, ի*
*նահանգիս, որ կոչի մայրաքաղաքին Գանձակ, յանապատս և յեղ-*
*բայրանոցս անուանեալ Դսսենոյ, սկզբնաւորեալ ի լեռնակողմն մէ-*
*նաստանին կոչեցելոյ Հոռոմաշէն, ընդ հովանեաւ սրբոյ եկեղեցեաց*
*կուսաստանացն յիշեցելոյ, ձեռնտուութեամբ հաւր Յովսեփայ և եղ-*
*բաւր Պաւղոսի յորդորմամբ առաջարկութիւնս։*

*Բայց գծագրութիւն յիշատակիս ի Նախադրութիւնս Գրոցս Դա-*
13ր *տաստանի եղև, զի կատարած // սորա ի ձեռն մեր միանգամ ոչ է որ-*
*պէս ասացեալ է կանխաւ զպատճառն։ Եւ արդ որքան է կար՝ ի գործ*
*անկանիմք, հիւսել զկնի գիրս դատաստանի։ Ընդ որս և ղայս մաղ-*
*թեմք, որ եթէ պատահի և հաճոյ ոմանց թուի յաւրինակէ աստի փոխել*
*զիրս դատաստանի, ընդ նմին փոխեսջիք և զյիշատակս զայսոսիկ, յի-*
*շատակել սոքաւք զմեզ, որովք և դուք համաւրէն յիշեալ լիջիք ի Քրիս-*
*տոս Յիսուս ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս, ամէն։*

**Բ**

2բ *Իսկ եթէ զի՞նչ եղև պատճառ մեզ ի յայս գալ առ ի գրել։*
*Ի բազում ժամանակաց տարակուսեալ լինէի վասն սորին իւրաց, ի նա-*
*խատելն զմեզ մերոց և աւտարաց։ Այլ և հարկեաց զմեզ յայս սի-*
*րեցեալ աշակերտն սուրբ գրոց Պաւղոս հարկեցուցիչ բանիւք, և ոչ կա-*
*րացի առնուլ յանձն՝ պատճառ ունելով զտգիտութիւնս, և զմարմնոյս*
*տկարութիւնս, և խորհեցայ աղաչել զայլ զաւրաւորս ի սուրբ վարդա-*
*պետաց, զի և բազումք էին 'անուանիք, գիտաւղք սուրբ գրոց։ Եւ սա-*
*կայն, գիտելով զանընդունելութիւն ազգիս, ոչ կամեցայ հալածել զոք,*
*բայց զարմացեալ էի, թէ ո՞րպէս յառաջելոցն և յանուանի սրբոցն*
*անփոյթ եղև այսպիսի մեծ գործ, և ածի զմտաւ, թէ եղև այս յանպա-*
*րապութենէ ժամանակին, և կամ ի հալածանացն, և կամ զի ոչ ոք*
*եղև խնդրաւղ և նոքա անձամբ ոչ կամեցան առնել՝ զարհուրեալք ի*
*պարսաւագիտաց, և կամ զի ընդ ծառայութեամբ էին այլոց ազգաց,*
*և նոցին դատաստանաւն բաւականանային, զի նոյն և այս ամենայն*
*պատճառս գոյր ի ժամանակիս մերում։*

*Բայց եղև պատճառ գրելոյ զսա ի հարկելոյ զմեզ տեառն Ստե-*
*փաննոսի Աղուանից կաթողիկոսի, մի անգամ և երկիցս, և ես պա-*
*(տ)ճառեցի զանձինս տկարութիւն և զտգիտութիւն, իսկ իբրև առաւել*
*ստիպեաց, յանձն առի՝ մոռացեալ զիմ զտկարութիւնս, գիտելով պարտ է*
3ա *հնա//զանդ լինել հոգևոր հրամանի, զի թէ յԱստուծոյ իցէ խորհուրդս,*

և կատարե[ց]ի նորին հանճարովւ Բարւոք է, ապա թէ ոչ՝ պատճառք լիցի այս ղի այլք կատարեալք շարժեսցին յայս և ի ղլուխ հանցեն. ղի ի սկզբանէ ամենայն արհեստք և գործք ոչ եթէ ի միոջէ սկսեալ և ի նմանէ կատարեալ եղեն, այլ ի բազմաց, ղի մասնաւոր գտեալքն ի միասին եկեալ գ[ոյա]ցուցին զարհեստն։ Դարձեալ և զմտաւ ածի, թէ յանկաշառ և յանողոքելի ատեանն Քրիստոսի մտանելոց եմ, և պարտ է ինձ գրել ձեռամբ իմով զհանդերձեալ դատաստանին աւրինակն։

Եւ արդ, մի ոք պարսաւեսցէ զասացեալս, զի թէ տխմար ոք իցէ՝ ուսցի, և թե կատարեալ՝ զպակասն ի սմանէ ինքն լցցէ, զերկուցունցն պատրաստիմք սիրով ընդունել զկամսն։

**260**

**ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՍՏԵՓԱՆՈՍԻ ԿՈՒՆԴԻ ԿԱՄ ՍԱՐԳԻՍ ԿՈՒՆԴԻ**

*Երևան 2609*

Գրիչ՝ Մարտիրոս

Վայր՝ Բռջնի

**ա**

318ա Աստանաւր յանդ ելեալ աւարտեցաւ տառս այս հրամանաւ սուրբ և յստակ յամենայնի Թադէոս վարդապետի, ընդրելոյ և իմաստնոյ, ընթերցասէրի և բարեպաշտի, վարժ և կիրթ յամենայն գործ բարեաց, ի լուսաւորութիւն սրբոյ եկեղեցւոյ և ի բարեխաւսութիւն անձին իւրոյ և ծնողաց իւրոց, ստանալով զսա յիշատակ բարի կենաց և մահու, ի ձեռն Մարտիրոսի անարհեստ և փցուն գրչի, և յետին ամենայն եբեցանց, ի դղեկ քաղաքէ Բռջնոյ, որ է մեր[ձ Դ]վինե քաղաք Հայոց՝ յարևեալս կոյս։

318բ Արդ աղերսիւ հայցեմք յամենեցունց, որք ժառ<առ>անդէք կամ ընթեռնոյք, կամ ի գաղափար առնոյք, զԹադէոս վարդապետ և զծնողսըն իւր յիշեսջիք ի Քրիստոս, ընդ նմին և զվարձկան սորին գրոց, զՄարտիրոս յիշեսջիք ի Քրիստոս, և դուք որ յիշէք, յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում փառք յաւիտեան յաւիտենից, ամէն։

Ի վեցհարիւրերորդի երեսներորդի երրորդի (1184) եղև կատարումն, սորայ, ի փառս Աստուծոյ։

Ո՜վ եղբայր և տէր իմ Թադէոս, ըստ կամաց և մտաց քոց յիշատակարան գծեալ, և մեզ թողութիւն շնորհեալ, զի և դու ևս առջիս թողութիւն ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

**բ**

242բ Ո՜վ ընդերձողդ և կամ ընդաւրինակողդ, յորժամ ի պէտս հաստատութեանն հաւատոյ լուծանես զզլուխ գրոցս, ասասջիր թէ Աստուած, որ կամիս զկեալ ամենայն մարդոյ, ողորմեալ ի քում մեծի գալստեանդ սուրբ վարդապ[ետ]ին Ստեփաննոս, որ կոչի Կունդ, և որք

ընդ նմայ աշխատեալք են ի գործս բարիոք գրոցս այսմիկ։ Ընդ նոսին
և ստացողի սորայ Թադէոս վարդապետի և ծնողաց իւրոց, և զիս զան-
պիտան և ղսուտանունս Մարտիրոս երեց ի դղեկ քաղաքէս Բռջենոյ, յի-
շեսջիք և ողորմութիւն ի Քրիստոսէ հայցեսջիք, զի կարող է Աստուած լի
243ա ձեռն այլոց այլում ողորմութիւն առնել, և դուք որ յիշեքդ, յիշեալ || լի-
ջիք ի Քրիստոսէ Յիսուսէ Աստուծոյ մերոյ, որու[մ] փառք յաւի-
տեանս յաւիտեանից, ամէն։

Խալատելոյս մի մեղադրեր, զի երեց խալատի[1]։

## 261
## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԵՒ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԱՑՆ ՍԱՐԳՍԻ ԿՈՒՆԴԻ

*Ալիշան, «Հայապատում» էջ 399*

Ստացող՝ Աստուածատուր

Վայր՝ Կեչառուս

Իղձք բաղձալեաց և տենչումն փափագանաց սիրոյ բնաւորեալ են զցանկալին իւրեանց մոռացումս առնել բնութեան, և անհաւանելեաց ձեռն արկանել, որ անդր քան զզաւրութիւնս իւրեանց, իբր ղլերինս ձեռամբ բերել կամ յաւդս և յերկինս ճանապարհ առնել. սակայն ապշեալքն ի ցանկութեանց՝ նկատիլ չանան։ Այսպէս ես՝ թշուառս Աստուածատուր, լոկ անուամբ կրաւնաւոր և անպիտան աբեղայ, ցանկացեալ սուրբ և երկնատեղեաց տառիս, զոր՝ ըստ աւրինի երփնազանց և պայծառացուցիչ ծաղկանց՝ ի միասին հաւաքեալ է աշխատասէր և արի մշակին Տեառն իմաստասէր և հանճարեղ իմաստուք հոգւոյն՝ Սարգիս կոչեցեալ և Կունդ, ժողովեալ զսոսա ի միասին, զերկոցունց գլխոց աւետարեր բանից Տեառն զմեկնութիւնս, ի բազում սրբոց ղխաւսեցեալսն ի մի վայր գումարեալ զՂուկասու և զՅովհաննու։ Որում և ես տառապեալս Աստուածատուր ցանկայի և ոչ զաւրէի, բայց սակայն պարտեալ ի փափագանացս՝ սկիզբն արարի. զոր և աւժտեալ ինձ և կարեկցեալ որդի իմ անդրանիկ ըստ հոգւոյս՝ Աղդէ, որ և նա տակաւին տկար գոլով մարմնով և անհմուտ գրչութեան արհեստի, սակայն անտես արարեալ զամենայն դանդաղանս տկարութեան՝ ըստ սիրոյ աւրինի, սկիզբն արար. իսկ ամենատես պարգեւաձիր Սուրբ Հոգին, որ մերձ է առ կարդացողս իւր, աւգնական եղեալ և զաւրութիւն պարգեւեալ, աւարտեցաւ բազում թախանձանաւք և տաժանմամբ։

Եւ արդ, գրեցաւ ի վանս հռչակաւոր և հրաշազան հանդիսարանիս Կեչառուս, ընդ հովանեաւ Սուրբ Լուսաւորչիս Գրիգորի, որ և պայծառապէս ճոխացեալ ի սկզբանն և դարձեալ խրթնացեալ ըստ յաճախելոյ մեղաց քրիստոնէից, զոր նորոգեաց սուրբ հայրն Պետրոս հանդերձ

---

[1] Նկատի ունի հավանաբար, ե և է տառերի շփոթը։

հարազատաւն իւրով տեառն Յուսիփաւ: Բայց զերանաւէտ անձին հաւր Պետրոսի աւրինակ բարեաց եղեալ ո՞վ ոք բաւականասցի պատմել զառաքինութիմս, զի որպէս ճշմարիտ է ասել, վայել է իսկ խնամոցն Աստուծոյ այսպիսում քաւարանի լինել այնպիսի նորոգիչ զի բնաւ զպատկեր առաքինութեան, մանաւանդ զհեզութեան և զխոնարհութեան, հանդերձ բնաւ առաքինութեանցն անդամաւք յաւրինեալ արար զմարդն Աստուծոյ կատարեալ տիպ մաքրութեան և պատկեր առաքինութեան, ինքն առաջին առնող բարեացն մաքրափայլ բազմալոյս, զի որ զկնի նորա ՙէաք՝ ի նա ամենեքեան նկրտէաք, և թէպէտ և անհասանելի էր այրն՝ սակայն պատճառ բարեաց հանդիսաւոր շնորհի սուրբ եղբայրանոցիս լինէր, և այնքան՝ մինչ զի զամենեսեան զգեստաւորեալ կրկին պատմուճանաւք, և ինքն զժամանակս ձմերայնոյ միով ասուեաւ դաժան և դառն սառ[ն]ամանեաց տեւէր. և ի թախանձել եղբարցն՝ հազիւ հնով յետնոյն թէ յանձն առնոյր շատանալ։

Իսկ վասն ակնառութեան արեան ընտանութեան և կամ կողմնաւոր սիրոյ՝ այսպիսի էր որպէս Տէրն վկայէր, թէ իմ եղբարք և մարք՝ սոքա են, որ զբանն Աստուծոյ լսեն և առնեն։ Իսկ վասն արծաթասիրութեան՝ որպէս կամակ և ախորժ է գայռ[1] փափկասուն արանց, այսպէս գրեսշիր և սորայս բարեսնունդ հոգի առ երկրաւորս ամենայն, իսկ աղաւթիւք՝ անշէջ շահից նմանեալ էր։ Իսկ աւտարսիրութեամբ և հիւրընկալութեամբ յաւէտ գերազանց էր, եթէ ոչ յանդգնութիւն է ասել՝ ըստ Աբրահամու աւրինացն, ըստ Յոբայն՝ հայր որբոց և հանգուցիչ պանդըխտացելոց, ըստ Մովսէսի՝ հեզ, ըստ Դաւթի՝ ողորմած, ըստ Սողոմոնի՝ հանճարեղ քան զամենայ նմանիսն, ըստ Երեմիայի՝ գթած և ամենեցուն փարելի, և ըստ Պաւղոսի՝ ընդ ամենայնի ամենայն, մինչեւ զամենեսին շահել, ըստ Յիսուսի՝ վասն ամենեցուն չարչարեալ և բնաւից հանգուցիչ։ Եւ այս փոքր ի շատէ գրեցաւ, զի բազումն ի սակաւուցն ճանաչի։

Եւ արդ, զի յիշատակ արդարոցն աւրհնութեամբ լի է՝ ըստ իմաստնոյն, զի որք ընթեռնուք և կամ աւգտիք և ընգաւրինակէք, նախ զհայր Պետրոս բարի յապահով մեր յիշեսջիք յաղաւթս, և ապա՝ զԱնդէ, գծող և զձեռասուն մանուկ մեր, և ապա զթշուառ Աստուածատուր՝ պատրաստիչ նիւթոց, և զԱռաքեալ համբակ քահանայ, զի յոլովս աշխատեցաւ ի սպասաւորութեան գրոցս։ Բայց գրեցաւ ի թուականիս Հայոց ՌԼԳ (1184)։

---

[1] «Թուի քայռամանեակ, վզնոց թանկագին»,—գրում է Ղ. Ալիշանը։

*ՈՃԶ* *1187*

**262**

## *ՃԱՌՔ ԵՊԻՓԱՆՈՒ ԿԻՊՐԱՑԻՈՅ*

*Երևան 949*

*Գրիչ՝* Փոշեկ աբեղա

*Վայր՝* Ջաւրմայրի գաւառ՝
Անապատ մենաստան

301բ *Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ,*
*այժմ և միշտ և յաւիտեանս։*

*Ի թուականութեանս Հայոց ի ՈՃԶ (1187) գրեցաւ աստուածահրաշ*
*պատմաբանութիւնս, որ ի ծոց իւր իբրև զշարս մարգարտեայ յեռեալ*
*մի զկնի միոյ քարշելով զառաջնորդականին խարսխեալ յԱստուածն*
*անհասանելի գնելով զհիմն համագոյից եղելոց՝ սատարութեամբ որ*
*լնու զամենայն զաւրութեամբ, որ է ինքն նախ առաջին աստուածաբան*
*մարգարէն Մովսէս, զոր տրամագրեաց Գիր արարածոց, յայտ ածելով*
302ա *զծածկեալ իմաստն || աւարտէ զմերն փրկութիւն ի փառս Աստուծոյ*
*հաւր։*

*Բայց գրեցաւ տառս այս ձեռամբ յոգնամեղ և անպիտան սուտա-*
*նուն աբեղայի* Փոշեկի *կոչեցեալ անիմաստ և թերավարժ գրչի, ի հայ-*
*րապետութեան տեառն* Գրիգորեսի *Հայոց կաթողիկոսի, ի գաւառիս,*
*որ կոչի* Ջաւրմայրի, *յաստուածընտիր մենաստանիս* Անապատ *յոր-*
*ջորջեալ, ընդ հովանեաւ Աստուածածնիս և Սուրբ Յարութեանս և Սուրբ*
*Սիովնի, յառաջնորդութեան մեծապատիւ և փառաւորեալ, հոգէշնորհ և*
*բարեպաշտաւն* Յովհաննէս, *կոչեցեալ, ունելով փոխանորդ իւր զլու-*
*սազարդ ե զամենիմաստ քուերորդի* զՍարգիս *և արբանեակ և սպա-*
*սաւոր զերանելի և զշնորհազարդ քահանայ, զլոյծ սիրեցեալն ի նմա-*
*նէ զա[յ]ս ի մէջ աստուածահաճոյ և խաչակրաւն, սրբափայլ և վն°ա-*
*գոյն եղբայրութեանց։*

*Արդ, որք աւգտիք և լուսաւ[որ]իք ի սուրբ և յաստուածային պա-*
*տուիրանէս և [կա]մ եթէ գաղափար առնուք, յառաջասա[ցեալ աս-*
*տուած]ասէր, ղտածող և ղողորմած հայրն* զՅովհ[աննէս] *ղստացւող*
*սուրբ և ընտրեալ կտակիս, որ թեպէտ զհիմն և զառաջարկութիւն սո-*
*րա սկզբնաւորաց փոխանորդ նորուն* Սարգիս՝ *աւգնականութեամ[բ]*
Աւետեացն, *արբանեկի նորա, մինչ դեռ զլուս[ա]ւորն հնտևէր ճա-*
*նապարհ, որ է կատարումն ամենայն պահողաց, որ և սա հայցեալ*
*Հոգւոյն Տեառն և սր[բոց]։*

302բ *Սակայն լրութիւն սորա ի ձեռն* Յովհա[ննիսի *եղև], որ և սոքա*
*միսն (°) ըստ փրկչին բանի, թէ Որ սերմանէն և որ հնձէն հաւասարակաց*
*ցնծասցեն, որ ստացաւ զսա ի յարդար արդեանց, թողլով զսա զաւակ*
*ի Սիովն և ընտանի յԵրուսաղէմ վերին, նաև գանձ անսպառ անկաս-*
*կած յուտիչ և յապականիչ ցեցոյ, այլ անապական և միշտ պայծառ*

մնալով՝ ոռոգէ յաւետահոս բղխմամբ և պարարէ զհոգի և զմարմին
աստուածասէր լսաւղաց և տենչմամբ սրտիւ ընդունողաց, որ և հա-
նապազ սիրտ և միտք յեցեալ և յուսացեալ հայի ի սմա ըստ Աւետա-
րանին սրբոյ, Զի ուր գանձն, անդ և սիրտն։ Նաև յիշատակ ծնողաց
իւրոց Գրիգորու և Հառուսկէ, և եղբարց իւրոց Մխիթարայ և Ստեփնայ,
որոց ողորմեսցի Քրիստոս բարեխաւսութեամբ Սուրբ Աստուածածնին
և ամենայն [սրբո]ց։

Նա և զՍարգիս զյառաջադիր գրոյս յիշ[ման արժ]անի արարէք և
զծնողս նորա և զեղբարս [և զԱւե]տիսն, որ աւժանդակ եղև և բա-
զում աղետիւ սպասաւորեաց տկարութեանս մերում, և ղծնողսն, և զեղ-
բարսն նորա յիշեսջիք ի Քրիստոս, որոց ողորմեսցի Աստուած։ Զնա-
խապատիւ և զհոգիազարդ քահանա զՎարդան և ղծնողսն և զեղբարսն
նորա յիշատակի արժանիսն մի մոռանայք, աղաչեմ։ Վարդապետ իմ
303ա և ուսուցիչ արհեստիս զԲարսեղն, //զՎարդան և զԳրիգոր արքանեակն
/// և զեղբարսն յիշեսջիք ի Տէր։ Զհրամաքուր /// ծարեալ մանկունս
եկեղեցւոյ զՓիլիպպոս զ/// և զԱսատածատուրն և զմիւս Աստուածատուր,
զԲարսեղն [զՅովհ]աննէսն Բ, և զՍտեփաննոս, որ բազում տա[ռապ]-
եցաւ ի սպասաւորութիւն ի նեղութեանն մերու[մ], /// ղծնողսն նոցա
և զեղբարսն, վասն զի բա[ղում] աշխատեցան ի նիւթ սորա և ի սպաս
գծա[գրելոյ] ///որդ հատուսցէ նոցա Տէր ընդ միոյ ղհա[րիւր]պատիկն,
և դուք յիշելոյ արժանի արարէք զնո[սա] ///զՄարգարէն, համարուեստ
եղբայրս ի[մ Առ]աքեալ կրաւնաւոր յիշեսջիք ի Քրիստոս և ղծնողս///։

Նա և յոյժ տառապեալս և ունայնացեալս ի /// բարութեանց,
ղանարժանս յիշատակի, զգրողս յ[իշման] առնէք ի սրբամատոյց ե
յաղթական յ[աղաւթս ձեր] ով աստուածապատիւ և սուրբ հարք և
ժառա///խորհրդոյն, սպասաւորք և ընդ[րեալ վարդա]պետ և յոյժ
ւտարացեալ ի շաւղ/// զայն ի ձեռն սիրոյդ և աղաչանաց ձ/// ողոր-
մութիւն գտանել, նա և զծնողսն [մեր որ] կոչի Մխիթար և զմայրն,
որ յայսմ ամի փ[ոխեցաւ ի Քրիստոս] և զեղբարսն իմ, և զքորսն
զկենդան[իս և զհանգուց]եալսն։ Նա և զՊետրոս, որ է ճշմար[իտ
եղբ]ար իմ ի Տէր, և ղծնողսն նորայ և զեղբ[արսն] /// աղաւթից ձե-
րոց տացէ նոց[ա] Տէր Աստուած///անս անվախճան ընդ սուրբս իւր,
ամէն։

Արդ Աստուածն անճառելի, Հայրն փառաց [և Որ]դին Աստուած
անճառելի հեղն և խոնարհն Յիսուս Քրիստոս, [և Հո]գին Աստուած
անճառ և անպատում լցուցիչն [բո]լոր բնութիւնս առատաձիր շնոր-
հաւք երի[ց բ]նաւորութիւնն և մի բնութիւնն, որ է ա[յժմ] և յաւի-
տեանս։ Այն, որ սակաւ հայցէ և բա[զում շն]որհէ, տացէ աննախանձ
և անմեղ///ով յիշողացդ և յիշեցելոցս լսել /// լուր բառբառն ի փառա-
ւորեալ գալս[տեան]ս յորժամ սարսափեալ դողան եզական ///ինք ան-
մարմնոց և մարմնաւորաց ո///ո աստուածացեալսն, ով արդեաւք այնք,
զոր եր///երանեն. Եկայք աւհնեալք Հաւր ի[մո]/// ընթացիցն ընդ լու-
սոյն կենաց ///ընդ խաւարին մահու, յորոց աք///մենայն հաւատացեալս
սրբոյ երբոր/// ընդ լուսաթռիչս զկնի իւր տանիցի ///աւթ և ի վանս իւր

հայրենի և նմա և /// Հոգւոյ Սրբոյ փառք, այժմ և միշտ և յաւի/տեանս, ամէն/: /Աղաչեմ/ անարհեստ գրոցս մի մեղադրէք զի Նոր[ուսում էի], ցաւեալ մարմնով և աղքատ հոգւով, որ /// կենարարի, զի ի տկարէ գործ հղ[աւր] ոչ պահանջէ:

Բ

Զստացող պատուական և աստուածահրաշ սուրբ կտակիս զհայր Յովհաննէս և զՍարգիս փոխանորդ նորա, և զԱւեաիս արբանեակ նորա, և զծնողս նոցա և զեղբարսն յիշեսջիք ի սուրբ յազաւթս ձեր մանկունք եկեղեցւոյ, աղաչեմ: Նա և զանարժան գրիչ, և զծնողս նորա, և զեղբարսն անմոռաց արժանի արարէք յիշատակի, և Աստուած զձեզ յիշէ:

263

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 345 (1270 թ.)

Հեղինակ՝ Ներսես Լամբրոնացի

(Ի կատարածի Երկոտասանից մարգարէիցն)

537ա Զոր մարգարէքս սպառնացան,
Երուսաղէմի յորժամ մեղան,
Առ մեզ կրկին ի յանկ ելան,
Ի դառն աւուրքս, որ այժմ հասան:
Զի ի վեցհարիւրս Հայոց թուական՝
Յերեսուն և վեց նորին շրջան (1187)
Եւ յիննսուն ամին լրման,
Հռովմայեցւոցն իշխանութեան,
Յովսեփ արքայ իմայելյան,
Որք Թուրքիման ազգք կոչեցան,
Յեգիպտոսէ գալով իշխան
Մինչ ի Բաբել, յԱսորեստան:
Զգեաց նա ձեռն յանդգնութեան
Ի նուրբ սահման քրիստոնութեան,
Քանզի մեղաւքն կորացան,
Եւ մեր իշխանքն յաղթեցան:
Գերեաց զքաղաքն աստուածական[1]
ԶԵրուսաղէմ և զիւրն սահման,
Արիւն բնակչացն, որ անդ գտան՝
Իբր զջուր ի գռեհս հեղան:
Մարմինքն անկեալ ոչ թաղեցան,
Եւ սուրբ տաճարքն խրթնացան,
Դրացիքն զմեզ ծիծաղեցան,

1 6230 ձեռագրում՝ «Տերունականն»:

Եւ սպառնալիքս կատարեցան։
Իսկ զաւետիս դարձին որ տան,
Աստ մարգարէքս աստուածաբան
Յարեմտից հնչէ մեզ ձայն,
Պետրոս ի Հռովմ մեծն փոխան։
Զի անդ ողբոցս հասեալ գուժկան
Կական բարձեալ ի սուգ նստան,
557բ Ի հայրապետէն առին // հրաման
Զխաչն բարձին և աստ հեղան։
Գոռհ տուեալ ազգք զանազան,
Բիւրք բիւրոց զաւրք միաբան,
Առագաստեալ ընդ ծովն գան
Ի Պտղոմիդեայ զետեղեցան.
Փոսս հատին և ամրացան
Եւ անդր կան այս երկրորդ ամ,
Ի պատերազմէն անխափան,
Եւ մահ ի դասսն յերկոսեան։
Այլ խաչընգալքն փութով գնան
յԵրուսաղէմն վերնական
Եւ նոցին եղբարքն որ աստ մնան,
Զմարտն դրդել ոչ ձանձրացան։
Հռովմայ արքա, որ Ալաման,
Բեւրուք ի յայս յոյսս մեռան,
Սակայն մնացեալքն ոչ կասեցան,
Եւս բաղում ընդ ծովն դան։
Այժմ Փռանգաց Փիլիպ արքայն,
Եւ Ընգլիզացն նմին նման,
Լծեալ ի գործ Տեառն հասան,
Եկին առ մեզ ի չորր[որ]դս ամ։
Սոքաւք սպասեմըք փրկութեան,
Եւ Աստուծոյ մեր ագնութեան,
Զի զմարդարէիցս դարձին զբան,
Վայելելոյ գտցուք արժան, ամէն։

## 264

## ՎԵՑՕՐԷԻՑ ԳԻՐՔ ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑՒՈՑ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱՄՈՒԷԼԻ ԱՆԵՑՒՈՑ

Երուսաղեմ 1801, Պողարյան, Յուցակ, Զ, էջ 162—163

Գրիչ՝ Յովհանէս

Վայր Հոռոմոսի վանք

ա

384 Աւրհնութիւն, եւ գոհութիւն, եւ բարեբանութիւն ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։

Կատարեցաւ աստուածահրաշ առասութիւնս Սրբոյն Բարսղի: ԶՅովանէս յիշեսջիք ի Տէր։

Վերատրեսցի դարձեալ աստանաւոր փառք, պատկանաւոր մըտաւք եւ գոհացողական բայիւ, եզակ եւ եռանձնեայ աստուածութեանն, որում դրուատազարդ, եւ շնորհանուէր երկրպագութիւն, այժմ եւ յապագայ. յաւիտեանին յաւիտեանց, ամէն։

Ով ամենիմաստ եւ բազմերգելի, չընչին եւ սուղամասնեա առասութեանցս, առլցեալ անբաւիւք զարմազան աստուածակերտ հրաշիւք, յոքումբք ըմբաղգատութեամբ, յարառոցեալ արտաճառութեամբ պատկանարար յատկութեամբ զիմաստս ամենայն գոյից մարմնոց եւ անմարմնոց։ Զորս թէպէտ ծայրագոյնն մարգարէից եւ աստուածատես այր՝ իբր զքննող եւ հմուտ խորոցն Աստուծոյ, եւ տեղեակ բոլոր իմաստից էից հոգւով արտատրեաց զընդհանուրսս, սակայն ոչ այնքան լուսաւոր, եւ բացայայտ զարմանալեաւք լի, որպէս մեծ՝ եւ սքանչելին Բարսիլիոս, որ եւ սա հոգւով լցեալ, մանր ծասկմամբ, ջամբեաց մանկանց եկեղեցւոյ, ի զարգացումն հոգեւոր հասակի։

Սակս որոյ ըղձմամբ սրտի տարփացեալ՝ չուառս քան զամենեսին յորդիս եկեղեցւոյ լոկ անուամբ միայն քահանայ Յովանէս, գծագրեցի զսա տկար մատամբ եւ անզաւր անձամբ, ի տիեզերահռչակ ուխտիս՝ Հոռոմոսի կոչեցեալ վանք, ընդ հովանեաւ Սուրբ Յովաննիսի, ի հայրապետութեան մեծարգոյ և հռչակավոր առնն Աստուծոյ տեառն Բարսղի, եւ եղբաւրդւոյ նորա աստուածարեալ մանկագոյն քահանայի Սարգսի, զորս պահեսցէ Տէր Աստուած ամենազաւր աջովն իւրով, հանդերձ եղբարբք եւ ազգաւ, արտաքոյ ամենայն վտանգից հոգւոյ եւ մարմնոյ, ի պարծանս մեզ։

Արդ աղերսահայց մաղթանաւք խնդրեմ յամենացուն, որ աւգտիք ի սմանէ, յիշեսջիք յաղաւթս զաճիւնացեալս մեղաւք զՅովանէս, եւ զեղբայրն իմ Վարդան միայնաւոր, հանդերձ ծնողաւք մերովք եւ եղբարբք։ Եւ Աստուած պյիշողք մեր եւ զամենայն հաւատացեալսդ աւրհնեսցէ եւ պահեսցէ ի խաղաղութեան երկակի կենդանութեամբ, ամէն։ Թուական հայոց ՈԼԶ (1187)։

Բ

297 Աղաչեմ զսուրբ եղբաւրսդ որք ընթեռնուք զաստուածահրաշ սքանչելիսս, յիշեսջիք ի Տէր զՅովանէս եւ զծնողսն իմ։

## 265

## ԴԻՐ ԵՐԱՆԵԼՈՅՆ ՓԵԼԻՔՍԻԱՆՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ԶՈՐ ԳՐԵԱՑ ՎԱՍՆ ՍԿԻԶԲՆ ԱՌՆԵԼՈՅ ԱՇԽԱՐՀԷՍ ՅԱՅՍՄԱՆԷ

Երևան 5435 (1413 թ.)

564բ Թարգմանեցաւ գիրքս խրատական սուրբ վարուց, հրամանաւ Տղայ տէր Գրիգորիսին Հայոց կաթողիկոսի, եղբոր որդոյ տեառն Ներսէսի, յասորի լեզուէ ի հայս, յամի ՈԼԶ (1187) թվականին։

## 266
### *ՇԱՐԱԿՆՈՑ*

***Ջմմառ 64, Քեշիշյան, Ցուցակ, էջ 104***

Դրիչ

*Ըստ խնդրոյ քրիստոսասէր* Լեւոնի *արքայի Հայոց, որ կոչի* Լեւոն *Երկրորդ, գրեցի. զՇարականս զայս ի թուականութեան Հայոց ՌԼԶ (1187), ի* Կիլիկիայ, *յամի Տեառն* 1186[1]: *Վասն գրողին աղաւթեցէք եւ յիշեսջիք զմեղսասէրս*[2]։

## 267
### *ԱԻԵՏԱՐԱՆ*

***Ն. Ջուղա, 22, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 33***

*Գրիչ՝* Վարդան

*Վայր՝* Մաշկեւորի վանք

*Փառք անսկզբնականին Հաւր եւ Որդւոյ նորա միածնի և ամենասուրբ Հոգւոյն ելաւղի ի նորին էութենէ։*

Զ*Վարդան* *սառասլեալ գրիչ յիշեսջիք ի Տէր, ընդ նմին եւ ըղծնաւղսն իմ և զամենայն համազգիոն իմ, զի և նոցա ողորմեսցի Քրիստոս Աստուած, ամէն։*

*Եւ արդ, գրեցաւ գիրքս սուրբ Աւետարանս, ձեռամբ* Վարդանա *կրաւնաւորի մեղապարտ և փցուն գրչի, ի վանքս* Մաշկեւորիս, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս և Սուրբ Կարապետիս, ի սահմանս* Սիսովն *քաղաքիս, ի դիտապետութեան տեառն* Դրիգորի *որ* Տղայն *կոչիւր և ի վերայկացութեանն իշխանութեան պատրոն* Լևոնի, *ի թուականիս Հայոց ՌԼԶ (1187)։*

*Եւ արդ, աղաչեմ զամենեսան, որք լուսաւորիք ի սմանէ, յիշեսջիք զհայր* Դաւիթ *և զ*Թորոս՝ *քեռորդի նորա, և զ*Պաւղոս, *որ զաւրինակն ետու, և զամենայն եղբայրութիւնս, զի ամենեցուն ողորմեսցի Աստուած։ Որպէս զի աղաւթիւք ձեր և ամենայն սրբոց հաճոյացելոց Տեառն ի սկզբանէ գտցուք միաբան արժանաւորք կենացն յաւիտենից՝ ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, ընդ որում Հաւր եւ ամենասուրբ Հոգւոյն վայել է փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

---

[1] *Թվականը գրված է եղել բառերով։*

[2] *Հիշատակարանը գրված է ուրիշ գրչի ձեռքով՝ հետագայում։*

## 268

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԵՄԻԱՅԻ ՄԽԻԹԱՐԱՑ ԳՈՇԻ

*Երևան 2606 (1198 թ.)*

Հեղինակ՝ Մխիթար Գոշ

Վայր՝ Գետկայ անապատ

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն,
եւ գոհութիւն որ ետ մեզ յանկել զայս ձեռնարկութիւն, որ ի վեր իսկ
255բ էր քան զկար մեր, և յամաւթ արար զամե//նայն խափանիչս այսմ տա-
ռի և զաւրացոյց տկարութիւն իմ և ծագեաց ի նսեմացեալ միտս զնշոյլ
լուսոյ իւրոյ աննախանձն յամենայնի պարգևս իւր, և զի սկիզբն արա-
րաք այսմ իրողութեան ի թուականիս Հայոց ՈԼԶ (1187) և կատարե-
ցաք զկնի միոյ ամի (1188)։ Եւ զի թէպէտ յաւժարեցաք զտիրագոյնն
առնուլ զմիտս և հակիրճ դնել բանիւ, այլ բազմապատիկ վրիպեցաք,
զի յոյժ սխալ և անգոյ պատահեցաք աւրինակի, և բազում հնչեաց ի
վերայ մեր փորձութիւնք ներքոյ և արտաքոյ, յորմէ յողդողդեցաք
մտաւք, և տկարացաք ոչ միայն յ[ը]նտրութիւն սրբոյն բանիցն Յո-
հաննու, այլ եւ յայնոսիկ, յոր զմնացեալսն ի նմանէ համարձակեց[ա]ք
լնուլ, զի բնաւիցն ոչ էր նորայն մեկնութիւն։ Վասն որոյ աղաչեմ զհարս
զեղբարս, թողութիւն առնել յանդգնութեան իմոյ, և սիրով Հոգւոյն
ուղղել զսխալանսն։*

*Այլ և բազում ամի սակս*[1] *մերոյս գործոյ առաւ քաղաքն սուրբ*
Երուսաղէմ *ի* Սալահադդին *կոչեցելոյ բռնաւորէ յաղագս բազմանալոյ
մեղաց քրիստոնէից, և գերի վարեցաւ նշանն սուրբ, հանդերձ թագա-
ւորաւն և բազում զաւրաւք։ Եւ թագաւորութիւնն Վրաց չփոթեալ կայր,*
256ա *զի* Թամարն՝ *դուստր* Գէորգեայ *թագաւորի, եթող զայրն առաջին//
[ո]րդ [ի թ]ագաւորին* Ռըզոց *եւ եառ այլ այր՝ յ*Ալանաց *թագաւորու-
թենէն, ի մայրենի ընտանութենէ իւրմէ* Սաւսլան *անուն, որ և* Գաւիթ
*ի թագաւորելն անուանեցաւ։*

*Եւ եղև այս ի հայրապետութեանն տեառն* Գրիգորի *Հայոց կաթո-
ղիկոսի, և յեպիսկոպոսութեան տեառն* Բարսղի՝ *հռչակաւոր ուխտիս*
Հաղբատայ: *Բայց գրեցաւ յանապատիս* Գետկայ, *ընդ հովանեաւ Սրբոյն
Գողգոթայի և Լուսաւորչին Գրիգորի։*

*Արդ, որք ընդաւրինակէք, անպարսաւ մտաւք յիշեսջիք զմեզ, ա-
ղաչեմ, ընդ նմին և զեղբարս, որ ընդ մեզ, և Տէր զձեզ յիշեսցէ, և
նմա փառք յաւիտեանս, ամէն*[1]*։*

---

[1] *Օրինակում «սակաւ»։*

[2] *Գրիչը այսուհետև շարունակում է իր հիշատակարանը այսպես. «Այս յիշատակարանս Մխիթար վարդապետին է Գոշին, յարմարողի զՄեկնութիւն կտակիս...» (տե՛ս 1198 թվաշարքում)։*

## 269
## ԱԻԵՏԱՐԱՆ

*Լենինգրադ, Արևելագիտության ինստիտուտ Ը5,*
*Մ. Տեր-Մովսիսյան, Համառոտ Ցուցակ, Աւետարանք էջ 93*

Գրիչ՝ Բարսեղ

Վայր՝ Խանատամլուց

*Որք զաստուածայինսն խորհին բարեպաշտութեամբ ուղղակի վարելով, վարդապետին ի պատուիրանաց Աստուծոյ՝ ընկալեալք իմաստութեամբ զթոշակս կեցուցիչ բանիւ, և սնբիծ մաղթանաւք զաչս մտացն բանալ հայցեն ըստ մարգարէին, եւ յաւրն զսքանչելիս արեանց հարսին եկեղեցւոյ զնուցողական եւ զուրախարար հոտումն, եւ ղարգացեալք հասանելով իմաստնանան, զի կարասցեն ի ձեռն հոգեւոր իմաստիցն արտամերժումն առնել երկրաւոր եւ կենցաղական պատ//աղմանցս Ըստ գաղափարութեան սրբասնեալ եւ երիցս երանեալ քահանայն, որ յանուանէ Յովաննէս, ստացաւ զսուրբ և զյստակահամ ակունս քառանկիւն յեղեմական գետոց՝ ի յարբուցումն եւ ի վայելումն անձին իւրում եւ լսողաց, եւ յետ յելից աստի՝ յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնաւղաց իւրոց եւ ամենայն ազգականաց։*

*Բայց գրեցաւ սուրբ Աւետարանս ի* Կարին *գաւառի, յանապատիս, որ կոչի* Խանատամլուց, *ընդ հովանեաւ Սրբոյն Ստեփանոսի, յառաջնորդութիւն հաւր* Կիւրակոսի, *եւ ի բռնակալութեան անաւրէն ազգին Քանանու Եւ էր թիւս Հայոց ՈԼԷ (1188), եւ յառաջին ամին Ադամայ ՑՈԺԲ (6612), եւ ի ծննդենէ///։ Արդ, աղաչեմ զձեզ, սրբազան քահանայք, յորժամ ընթեռնոյք զսա ի վերայ աստուածարեալ բազկաց եւ ի ժամ սուրբ պատարագին, յիշեսջիք յարժանաւոր յաղաւթս ձեր զյառաջասացեալ քահանայն* Յովաննէս՝ *զստացող սորա, եւ զծնաւղսն իւր, և զամենայն ազգայինս իւր՝ զկենդանիս եւ զհանգուցեալս, զի թերեւս ողորմեսցի նոցա Քրիստոս յիւրում գալստեանն, ամէն։*

*Ընդ նմին և զիս, զանարժանս եւ զվերջացեալս յամենայն բարեաց, զգծողս սորին* զԲարսեղս, *եւ զծնաւղն իմ, եւ զեղբարսն իմ, զկենդանիս եւ զհանգուցեալսն յիշեսջիք աղաչեմ, զի սովոր է Աստուած ի ձեռն այլոց այլում ողորմիլ...*[1]։

---

[1] *Ձեռագիրը այրված է և շատ բան անընթեռնելի է։ Լրացրինք Մ. Տեր-Մովսիսյանի Ցուցակից։*

## 270
## *ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԴԱՒԹԻ*

*Երևան 1526 (1294 թ.)*

*Հեղինակ՝* Սամուէլ

*Վայր՝* Սկեռայ

Պատմութիւն Ներսիսի վարուց եպիսկոպոսին, երգոցս Սաղմոսիս քննալի

853ա *Ընդ նուաղել թագաւորութեան և իշխանութեան Հայոց. յորժամ յափրշտակեցաւ յիսմայէլացւոցն մայրաքաղաքն* Անի, *եւ տարագրեցան թագաւորքն մեր ի գաւառս եւ յիշխանութիւնս արքայիցն Յունաց, այր ոմն յիշխանացն Հայոց* Ապլխարիպ *անուն՝ որ էր ի տանէն* Վասպուրականի, *իբրև զմտերիմ և զխոհեմ և զարի ի գործ պատերազմի՝ առաքեցաւ յինքնակալէն* Ալէքսէ *ի ռուսաս* Կիլիկեցւոց՝ *իշխել մայրաքաղաքին* Տարսոնի *և* Մամ[ո]ւեստիոյ, *որ եկեալ տիրէր սոցա հայրենի կարգաւք և ուրինաւք՝ և մնայր ի հաւատարմութիւնն Յունաց։ Եւ շինեալ տաճարք աղաւթից ի Լեռնային և ի Դաշտային գաւառս՝ որ և բազումք կան ի մէջ Յունաց հայասեռ ազգիս պաշտամամբք։*

*Սա եգիտ ի ստորոտս լերինս* Սորոսի *և ի գլուխ քաղաքիս* Տարսոնի *երկու անմատոյց դղեակս, միոյն անուն* Լամբրուն *և միւսումն* Պապեռաւն՝ *որք և ունէին շուրջ զինքեամբք գեաւղս և աւանս։* զՊապեռուն *իւր սեպհականեաց գանձուց ըշտեմարան, և շինեալ եկեղեցի մեծ՝ դամբարան հանգստեան սահմանեաց իւր և իւրոցն, և* զԼամբրունն *ետ ի մտերիմ և ի սիրեցեալ իշխանն, որ եկեալ էր ընդ իւր յաշխարհէն Հայոց անուն* Աւշին, *և աւանդեաց ի նա զմասն մեծի և գլխաւորի առաքելոցն Պետրոսի, զոր ունէին Հայք ըստ նախադրեալ պատմութեանն։ Եւ հրամայեաց հպատակութեամբ սպասաւորել յայսմ դղեկի Սրբոյ Առաքելոյն, և իւր սեպհական ունել զբերդս և զգաւառս, որ եկեալ ազգատոհմաւ իւրով և գտեալ զանառիկս ամա[յ]ացեալ՝ շինէր ըստ կարի և պատրաստեաց նախ ի ծայր բերդիս հանգստարան սուրբ և գլխաւոր առաքելոյն նշխարաց։*

*Իսկ* Ապլխարփայ *վաղճանեալ եդաւ ի* Պապեռոնն: *Եւ տիրեաց* Տարսոնի *մի յիշխանաց իւրոց փեսայ* Աւշին, *յորոյ աւուրսն արձակեցաւ ազգն իսմայէլացւոց ի վերայ գաւառիս* Կիլիկիոյ՝ *ի հինգ հարիւր թուականին Հայոց (1051) եւ զամենայն դաշտային գաւառսն աւերեաց, էառ և* զՏարսոն *և սրով ճարակեաց զքրիստոնեայսն։ Իսկ* Աւշինն *մե-*
853բ *նաց//եալ յանմատչելի ամուրս անփորձ՝ և մտերմացեալ Յունաց արքային, առնոյր ի նմանէ անուն պատուոյ և տուրս գանձուց առատապէս։*

Յետ սորա վաղճանին տիրեաց որդի իւր Հեթում հայրենի աթոռոյս,
և պատուեցաւ ի Յունաց արքայէն Ալէքսէ սեբաստաւս անուամբ, յորոյ
ժամանակն եկն Փռանգն և էառ զսուրբ քաղաքն Երուսաղէմ և զԱնաիոք
և զԿիլիկեցւոց քաղաքս՝ ի հինգ հարիւր քառասուն և եւթն (1098) թուա-
կանին։ Եւ յետ ժամանակաց անձուկ բազում նեղութիւն կրեաց ի նո-
ցանէ սեբաստաւսն Հեթում վասն հայրենի բերդիս, և ղերծեալ յամե-
նայնէ աւգնութեամբն Աստուծոյ և սուրբ առաքելոյն Պետրոսի, փար-
թամացաւ և մեծացաւ աւղնութեամբ թագաւորին Յունաց Յոհաննու:
Եւ ղի ունէր որդիս վայելուչս և դստերս՝ որք կատարեցան հասակաւ
առաջի իւր, ամուսնացոյց զոմանս ի նոցանէ, եւ զաւագ որդին որոյ
անուն Աւշին՝ եթող ընդ իւր մնալ առանց ամուսնութեան, իսկ Սմբա-
տայ՝ որ յետ նորա, ետ զՊապեռաւնն, եւ միոյ ի դստերացն փեսա-
յացոյց զեղբայր կաթուղիկոսին Հայոց Գրիգորի՝ զՎասիլ, որք էին թո-
ռունք Գրիգորոյ Մագիստրոսի Բջնեցւոյ:
Իսկ յետ վաղճանին Հեթմոյ պայազատեաց զհայրենի աթոռն հա-
րազատ որդի նորա Աւշին, և պատուեցաւ յարքայէն Մանուելի սեբաս-
տաւս անուամբ, և փարթամացաւ բազում գանձիւք։ Յորոյ ժամանակն
դարձեալ տիրեաց Յունաց արքայն Տարսոնի և այլ քաղաքացս Կիլի-
կիոյ: Սմա հարսնացոյց փեսայն իւր Վասիլ զդուստր եղբաւր իւրոյ
Ջաւրավար անուն, զանխլաբար ի կաթուղիկոսէն յեղբաւրէն իւր վասն
խղճին՝ որ կայր վասն խնամութեանն։ Եւ լեալ սմա կին ժրագլուխ և
պսակ առն իւրոյ՝ իբրև զայգի վայելուչ զնորատունկս զաւակաց ծաղ-
կեցուցանէր շուրջ զհայրենի սեղանովն, և մնային յաւրհնութեանն Աս-
տուծոյ։ Յորոց ծնաւ, յետ անդրանիկ դստերն, որդի Հեթում անուանեալ՝
ի վեց հարիւր (1151) թուականին, և երկրորդն հայրս մեր՝ վասն որոյ
բանս է։
Որոյ ի ստնդիաց հասակն պատահեալ ախտ ցաւոց՝ բերաւ ի հա-
ՑՆԺա ւատարիմ ծնողիյացն և ընձայեցաւ ամենաւրհնեալ և միշտ փառաւորեալ
Աստուածածնին ի տաճար անուան իւրոյ, որ ի վանքս Սկե(ւ)ռայ՝ առ-
ընթեր բերդիս։ Եւ սկսեալ ի դեռաբոյս հասակէն վարժէր յուսումն
դպրութեան ըստ յաւժարութեան ծնաւղացն ընդ այլ եղբարս իւր, մա-
նաւանդ ի քաջահաւատ մաւրէ իւրմէ դաստիարակեալ յամենայն եր-
կիւղ։
Իսկ բարեպաշտ իշխանն Աւշինն՝ բերեալ ուստերս հինգ և դստերս
երիս, և համբերեալ պէսպէս փորձանաց վասն առ Յունաց արքայն
հաւատարմութեան, լի աւուրբք ի ծերութեան հասակն յաթոռ իւր և ի
մէջ եղբարց և զաւակաց աւրհնութեամբ փոխեցաւ առ Քրիստոս, և
եցոյց անդրանիկ որդոյն Հեթմոյ զտէրութիւն հայրենի աթոռոյն, իսկ
նուիրելոյ որդւոյն, որ Աստուծոյ՝ կալ ի գլուխ առ յինքենէ շինեալ ե-
կեղեցւոյ սրբոյ և վանիցս, և տուեալ յԱստուծոյ շնորհ անդրանկին խո-
հեմութիւն և իմաստութիւն՝ գնաց առ արքայն Յունաց Մանուէլ, և փար-
թամ տրաւք առ զհայրենի պատիւ սեբաստաւսութեան։
Իսկ այս որ ի կրաւնաւորականս էր վիճակ՝ յետ դաստիարակելոյ
մանկան ուսմամբք, ի վեշտասան ամ ընթացից հասակին ածաւ յերկիւ-

ղաղարդ մաւրէն իւրմէ առ կաթուղիկոսն սուրբ Ներսէս, որ յաջորդեալ
էր զաթոռ եղբաւրն Գրիգորի՝ ամենայն իմաստութեամբ և գիտութեամբ
զարդարեալ։ Եւ սա ըստ հաւատով հայցուածոց դստեր եղբաւրն իւրոյ
զմանուկն ածեալ առաջի ձեռնադրեաց քահանայ ի կրաւնաւորական
ձև, և կոչեաց յանուն իւր՝ Ներսէս, զոր թողեալ մաւրն առ ոտս Նորին
ի վարժումն՝ գնաց յերկրպագութիւն սուրբ տեղեացն Երուսաղէմի։
Այլ Ներսիսի կացեալ ի հայրապետական աթոռն փոքր մի աւուրս՝
ի շնորհէ ձեռնադրութեանն զաւրացեալ հոգւով, տենչայր յանզբաղ
կեանս միայնութեան և ընթերցման։ Եւ սրբոյ հայրապետին ուրախա-
ցեալ ընդ յառատ ուսումն մանկանն, առաքեաց զնա ի վանորայս ի
Սեւն լերինն, յորս շրջելով գործիական նիազութեամբն և տեսողակա-
նին կրթութեամբ՝ յառաջէր և նկրտէր հասանել ի լրումն առաքինու-
854բ թեանն ի սէրն Քրիստոսի։ Եւ || յետ ամաց դարձեալ ի հայրենի աթոռս
և փափագանաւք ի ծնաւղէն և յեղբարցն, ոչ հաւանեցաւ կալ ի գլուխ
ուխտիս, որ աւանդեալ էր ի նմա ի հաւրէն իւրմէ, այլ ի մէջ լերինս
յամայացեալ տեղիս ընդ հոգևոր դաստիարակի իւրում Յոհաննու ե-
լեալ մնայր ի միայնութեան։ Եւ քաղցր էր նմա այն, քան զամենայն
հեշտութիւն։ Եւ կոչէր անապատն բնակութեան Աստուածածին Սաղ-
րուի, ի հոսանս գետոյն Ժեռակրա և մերձ նմին տաճար Սրբոյն Գէոր-
գեայ, յորում անձուկ սենեկին ի գիշերի և ի տունջեան անհանգիստ
էր յընթերցումն, և միայն կատարէր զգործ սուրբ պատարագին պաշ-
տաման։
Իսկ ի ՈԻԲ (1173) թուականին, փոխեալ առ Քրիստոս հայրապետն
սուրբ Ներսէս, և յաջորդեալ զաթոռն սուրբ Նորին եղբաւր որդին Գրի-
գորիոս՝ մակակոչեալն Տղայ, որ և քուեր որդի հաւր սորա, ձգէր յինքն
զմանուկս Ներսէս, հրամանաւ գրոյ, և սա վասն որ առ նա անանջրպետ
սիրոյ, եւ և վասն թերի ոմնելոյ զվարժումն գրոց՝ փութացաւ առ հա-
րազատն իւր՝ հայրապետն սուրբ, և Նորին խնամաւքն, ի ձեռն վար-
ժապետաց սրբոց, քննեալ տեղեկացաւ Հին և Նոր կտակարանաց իմաս-
տից, զոր քսան և երից ամաց ձեռնադրեաց հայրապետն եպիսկոպոս
Տարսոնի, նոյն և Լամբրոնիս և շրջաբնակ գաւառացս, եւ առաքեաց
առ իւրս պատուով։
Իսկ սորա եկեալ խուսափէր ի հովուութեան զբաղմանց և ի տեն-
չանս ընթերցման գրոց նկրտէր, և զի ոչ կարէր ըստ տափման իւրոյ
ունել զանզբաղութիւն, փախստական լինէր այսր անդր ի հեռաւոր տե-
ղիս։ Եւ զի վարժեալ էր ի մանկութեանն ջանիւք մաւր իւրոյ զհելլէ-
նացի գիրն տենչմամբ, որ առ նոսին իմաստութեամբն՝ եմուտ ի կղզին
Կիպրոս՝ աղքատապէս մնալ անդ ի կատարեալ ուսումն նոցին հռետո-
րութեանն։ Սակայն ոչ ետ թոյլ բաղձանք մաւրն և սէր եղբարցն, յոր-
ժամ լուան՝ ածին վերստին անտի բռնութեամբ։ Եւ ծանուցեալ թէ ոչ
կարէ հեռանալ, եղ դարձեալ յառաշին իւր յանապատն կոչեցեալն Սաղ-
րու, յորում և զանձուկն ունէր սենեակ, և զդաստիարակ հոգևոր հայրն
ա իւր || Յոհաննէս բնակեալ ի տեղոջն։
Եւ անդ հաւաքեալ զամենայն աստուածային գիրս՝ արգելաւ ի տեղ-

*ւոջն ամաց ժամանակ։ Եւ կայր ընդ մարմնոյ և բանիւ Աստուծոյ որ քաղցր է ի քիմս ծառայողացն քան զմեղր բնրանոյ, պաշտէր ի տէրունական տաւնս զգոհութիւն սրբոյ պատարագին խորհրդոյ, և յայլ աւուրս մնայ յառանձնական սենեկին յընթերցումն և ի գրութիւն և յաղաւթս զբաղեալ։*

*Իսկ հոգևոր հայրն իւր և դաստիարակն* Յոհաննէս *ի նստելն երբեմն առ նմա՝ քննէր զմիտս Սաղմոսացն, և ի լուծանելն աղաչէր գրել զնոյն, և թողուլ ի պէտս աւգտի զկնի եղելոցն։ Յայնժամ ըստ կամացն Աստուծոյ և ըստ հնազանդութեան խորհողին, սկիզբն արար գրել զքննութիւն երգոց Սաղմոսին ի շրջանս աւուրց ամաց իւրոց քսան և վեց թուոյ, և թուական ի վեց հարիւր և քսան և եւթանց (1178) ե կատարեալ ի քսան և ինն ամն։*

*Յետ այսր փութացաւ ի լեառն որ առընթեր մեծին* Անտիոքու, *ի վանորեայսն, որ ի Լատինացւոցն ե ի Հելլենացւոցն պայծառանային անդ աստուածահաչոյ կարգեաւք և կրաւնիւք։ Եւ բնակեալ անդ աւուրս ինչ՝ թարգմանեաց զՄեկնութիւն Յայտնութեանն Յովհաննու։ Եւ բռնադատեալ դարձեալ ի սիրոյ հայրապետին սրբոյ* Գրիգորի՝ *որ կոչէր հրամանակ[ա]ն սաստիւ՝ գնաց առ-աջի նորա, զոր ողոքանաւք և ահարկութեամբ հաւանեցուցանէր կալ ի գլուխ ժողովոյն, որ հաւատացաւ նմին ձեռնադրութեամբ այցելութեանն։ Եւ այսպէս զսլացումն մտաց ընդ իւր և նուաճեալ հոգևոր հաւրն, առաքեաց զսա ի նուաստ գձձութենէն յաթոռ իւր պատուով։*

*Ի սոյն ժամանակի և եղբայր իւր մեծապատիւ սեբաստաւսս Հե-*
Թում *ամենապատիկ վայելչութեամբ շինեալ էր զտաճար աղաւթից ի*
*սուրբ ուխտս, և նկարագրութեամբ պատկերաց զարդարեալ, յորում*
*ընկալեալ զեւլել յանապատէ փեսայն գեղեցկացեալ աստուածային հան-*
*ճարովն՝ որպէս լուսին, պայծառացեալ գիտութեամբ, որպէս զարե-*
*գակն, և հիացուցանող վարուք և բանիւք, կացուցին յաջմէ սորա զդշխոյ*
*սրբոյ տաճարիս զարդարեալ և պաճուճեալ՝ և բազմեալ ի քահանայա-*
855բ *պետակ[[ա]ն յաթոռն ի տամի իսկուհւոյն, եւ զխաղաղութիւն ժողո-*
*վոյս, և յարուցեալ կատարեաց զսքանչելի խորհուրդ սրբոյ պատարա-*
*գին, ի յիշատակ փրկագործութեանն Քրիստոսի և ի քաւութիւն ժողո-*
*վրդեանս։ Որոյ հաղորդեալ տեսութեամբն և ճաշակմամբ, ուրախու-*
*թեամբ մեծաւ մատուցաք փառս Քրիստոսի, և յայնմհետէ բուռն հա-*
*րեալ ի վշտակցութիւն ժողովոյս բարեկարգութեամբ տնաւրինէր ի հաւ-*
*րէն իւրմէ աւանդեալ սուրբ ուխտիս, իջեալ աւր ըստ աւրէ ի ժողով*
*քաղաքին* Տարսոնի՝ *մխիթարէր զնոսին վարդապետական բանիւ, և*
*հանգուցանէր յինքն զամենայն տեսաւղս և զլսողս, ոչ միայն զոր ի*
*Հայոց ժողովս՝ այլ և Փռանգաց. ազգ և զՅոնաց, իւրքանչիւր ազ-*
*գացն կարգաց և կրամից տեղեակ գոլով. և յընտրութիւնն հաւանե-*
*ցուցանող կամ հաւանեալ։*

*Իսկ յետ ամաց ինչ անցելոց զաւրանայր արեան հարազատ սոցա* Ռուբէն, *և յինքն նուաճէր յետ մահուանն* Մանուէլի *արքայի* զՄամիստայ *և* զՏարսոն: *Եւ ազահութեամբ, որպէս Ազայար յայգին Նաբովթայ,*

բռնադատէր զայս աստուածատուր ամրոցս ի սոցանէ։ Յորում մնացեալ
զամ մի ողջ յարդելանի և կրեալ զնորա թշնամութիւնն, դարձեալ այ-
ցելութիւն առնէր Աստուած և ուղղէր սոցա զխաղաղութիւն։ Եւ մանուկն
Ռուբէն ի գլուխ երկրորդ ամին վճարէր մահուամբ, եւ խնդրէր ի սոցա-
նէ ներումն թողութեան մանկական որ առ սոսին սխալմանն։ Եւ յա-
ջորդէր զիշխանութիւնն հարազատ եղբայր նորին բարեմիտն Լեոն: Եւ
կապէր ընդ սոսա անշրպետ խաղաղութեամբ, որ և ի տանս տէրունա-
կանս առ իւր տանէր զհայրս մեր, ե առ ի սմանէ վարդապետական
խրատով և սրբոյ պատարագին նուիրագործութեամբ մխիթարէր հան-
դերձ բաղմութեամբ ժողովոյն։

Իսկ զի ի սոյն աւուրքս առաւ ըստ մեղաց մերոց սուրբ քաղաքն
Երուսաղէմ յայլասեռից, և ինքնակալն Հռոմայ, որ Ալամնաց թագաւոր,
լուաք թէ յառաջէ յարենլս ի փրկութիւն սուրբ տեղացն, խորհուրդ էառ
մեծ իշխողս Լեոն՝ զհայրս մեր սուրբ առաքել ընդ յառաջ նորին հրեշ-
տակութեան, եւ վասն այսր մտածութեան գնայր առ սուրբ հայրապետն
856 է Գրիգորիոս առնել զնորին հրամանսն ե զկամսն ընդ իւր։ Եւ ի նոյն ճա-
նապարհն խորանաբնակ ազգն Իսմայէլի յարձակեցան ի վերայ, և
ճանապարհակից եղբարս և զկրաւնաւորս սրով ճարակեցին առ ըն-
թեր քաղաքին Մարաշայ, եւ զբեռնակիր գրաստսն յափշտակեցին՝
մնացեալ խնամաւքն Աստուծոյ միայն սա, և եպիսկոպոսակից հա-
րազատ իւր Յովհաննէս, և վարժապետն Գէորգ: Եւ զի ունէր ընդ իւր
զայլ Գիրս սրբոյ պատարագին քննութեան և եկեղեցական կարգաց
յինքենէ ասացեալ շնորհիւ սուրբ Հոգւոյն՝ յափշտակեցաւ յաւազակացն,
և չմնաց հաւասարն, տրտմեցաւ յոյժ։ Եւ ի դառնալն առ մեզ վերստին՝
զգուշացեալ զի մի և այս Մեկնութիւն Սաղմոսիս յիրիք շփոթմանէ՝
որ իւրն է դիր՝ պակասեսցէ և հաւասարն ոչ մնասցէ, յորդորեաց զկրաւ-
նակից զեղբայր մեր զԳէորգ սկսանել և գրել։ Եւ նա յօժարու-
թեամբ յանձն առաւ պատրաստեաց զնիւթն և սկիզբն արար։ Իսկ ապա
փութացեալ իշխանական հրամանն՝ զճանապարհն որ առ ինքնակալն
Հռոմայ թագաւորն Ալամնաց, ճանապարհակից էառ ընդ իւր զԳէորգ,
և ինձ Սամուէլի նուաստի, հրաման ետ զսկսեալն ի նմանէ աւարտել։
Զոր յաւժարութեամբ յանձն առի և պինդ հաւատով ի փառս Աստու-
ծոյ կատարեցի ի թուիս ՌԼԹ (1190)։ Այս ամք երեք են կործանման
սուրբ տեղեացն Երուսաղէմի:

Եւ յիջանել հայրս մեր ի Տարսոն, առ ի նաւարկել ի ճանապարհին
որ առաջի կայր, եհաս ինքնակալն յԻկոնիոն, եւ յետ փոքր ինչ աւուրց՝
զօրք նորին ի Տարսոն, և մնաց սոցին յառաջելն։

Իսկ իմ ի գրելոյ զմատեանս ոչ թուլացեալ, քանզի առնուի ի սմա-
նէ զլուսաւորութիւն հոգւոյ, յաղընթեր նստելս միայնութեամբ սուրբ
ուխտիս, այլ հրաժարեցի, և խնամաւքն Քրիստոսի ի վերջին կէտս ժա-
մանեցի և սպասաւորեցի զկնի եկելոցդ մատոուակութեամբ զխառնեալ
բաժակս աստուածային իմաստից ի հոգևոր մեր հաւրէս զմայլեցուցիչ
հոգւոց և մխիթարութիւն բժշկութեան ախտացեալ մարմնոց։ Եւ յաւար-
տումն սորին փոքր ինչ թողի ձեզ զպատմութիւն կենաց սորին ըն-

856բ թացից, ղի մի մնացէ տարակոյս յառաջել ժամանակին սորին || քըն-
նողի ո՞վն, և ո՞ւստն, և զիա՞րդն, որպէս և մեք այսաւր ունիմք ղրա-
ղում հարց մերոց և վարդապետաց Հայոց, այս ինքն զԴաւիթ Ներգի-
նեցի, և զԳրիգոր Նարեկացի, և զՄովսէս Խորէնացի, և զայլս, որոց
ի բանիցն պարարտութենէ զուարճանամք, և զիա՞րդն կենաց և վա-
րուց փափագելով՝ գիտել ոչ ումիմք և ոչ մի բան վասն երանելեացն
պատմութեան։ Յաղագս այսր զսորայս մինչ յայսաւր է կենաց իւրոց
ժամանակ ԼԸ (38) ամ, ցուցաք համառաւտ։ Եւ մաղթեմք Քրիստոսի
տալ զսոյն մեղ ես յերկարութեամբ աւուրց ի գլուխ բարի հովութեամբն
և հանճարեղ այցելութդամբն՝ խնամիչ սուրբ ուխտիս և առաջնորդ ժո-
ղովոյս։
Եւ զիմս աղքատութիւն դնել սորին աւրհութեամբ՝ ի դամբարան
հանգստեան ընդ սրբոց իմոց հարցն, որ այժմ հուպ եմ սոցին ծերու-
թեան ալեաւքս հոծեալ։ Իսկ եթէ այլ ինչ ի շնորհացն Աստուծոյ պտղա-
բերէ ծառս մեր տնկեալ ի գնացս ջուրց սուրբ գրոց մանկագունաց
աշակերտաց սորին, տացէ Աստուած ղաւրութիւն գրչաւ ի տառ գրոց
ժողովել և զընթացս յառաջատուութեան վարուց սորին և զկէտ զկնի ե-
կելոցդ պատմել։ Այլ ես աղաչեմ յիմս վաստակ սխալանաց բայից և
բառից թերութեան ընթերցողացդ ներումն շնորհել, զի այդչափ զաւ-
րեցի իմովս տկարութեամբ յարմարել. և ի վայելելն ի դոյն հոգւոյ
մխիթարութեամբ՝ ցաւղ աղաւթից ձեր կաթեսցէ ի գոգ մերոյն հան-
գստեան, և բեղմնաւորեալ սնուցէ զթաղեալքս յարգանդ երկրի գար-
նայնոյ յարութեանն պայծառանալ նորոգմամբ ընդ յառաջ Քրիստոսի,
և Աստուած խաղաղութեան՝ որ ետ մեղ զմխիթարութիւն շնորհաց և
յոյս բարեաց շնորհաւքն իւրովք՝ ի սուրբ մատենէ ատի մխիթարես-
ցէ զմիտս ձեր և հաստատեսցէ ի յոյսն և ի սէրն Քրիստոսի, որում
փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։
Ի թուականի Հայոց ՌՃԹ (1190) գրեցաւ աստուածախումբ մատե-
նիս աւրինակն ձեռամբ Սամուէլի նուաստ և յետին գրչի՝ հրամանաւ
857ա սրբասնեալ վարդապետի և արհ//եպիսկոպոսի մերոյ տեառն Ներ-
սիսի: Որոյ վստահացեալ յողորմութիւն Աստուծոյ և յանհաս գիտու-
թիւնն և յիմաստութիւնն իւր, համարձակեցաւ ի հոգելից Սաղմոսիս
մեկնութիւն և մեկնեաց զսա և եթող ի յիշատակ իւր և ի վայելումն
սրբոյ եկեղեցւոյ մանկանց այնոցիկ՝ որք ունիցին ականջս ուղիղ լսել
զբանս իմաստից սորա, և խնդրել զթողութիւն մեղաց ի Քրիստոսէ՝ որ
է աւրհնեալ յաւիտեան, ամէն։
Յայսմ ժամանակի յափշտակեցաւ սուրբ քաղաքն Երուսաղէմ ի
Յովսեփայ՝ որ տիրէր Եգիպտոսի և Արաբիոյ և Դամասկոսի, ի թուին
ՌԻէ (1178), և շարժեցան հրամանաւն հայրապետին Հռոմայ թագա-
ւորք և իշխանք բազումք, և անթիւ զաւրաւք յարևմտից, և գան կրելով
զխաչն Քրիստոսի առ ի փրկել զսուրբ տեղիսն։ Եւ այս ամք երեք յա-
պաղէ կամքն Աստուծոյ զփրկութիւն, և դեգերին տակաւին առընթեր
Պտղովմիդայ:
Գրեցաւ ի նախայիշատակեալ սուրբ ուխտս Սկեռայ, առընթեր հայ-

*ընատուր ամրոցի տէրանց մերոց Լամբրունի, յիշխանութեան մեծահանճար և աստուածասէր սևաստաւսին Հեթմոյ, և ի վերակացութեան տեառն մերոյ Ներսիսի և եղբարց սոցին Ապիրատի և Շաճնշահի, զորս տացէ Քրիստոս ի հոգևոր և ի մարմնաւոր իշխանութիւնս բազում ժամանակս, եւ ի փոխելն յաշխարհէս՝ ի պարս սրբոց հայրապետացն դասէսցէ ի ժողով արքայութեանն իւրոյ ընդ ամենայն սուրբս։*

*Յիշեցէք բարեաւ զբարի ծնողս սոցին զնախափոխեալն առ Քրիստոս ղմեծանունն Աւշին, հանդերձ երէց դստերաւն Մարեմաւ և կրտսեր որդեկաւն Գրիգորի՝ զի հանդիցեն ի գոգն Աբրահամու, և մխիթարեսցին փառաւքն Ղազարու, և մայր սոցին Շաճանդուխտ՝ ամենաբարի և ճգնազգեաց այժմ կրաւնաւորեալ ի ձեռաց որդոյ իւրոյ, սուրբ հաւրս՝ երկու դստերաւք Շուշանաւ և Տալիթայի, որք նորին ճգնող շաւղացն հետևին, ղի մխիթարեսցին ի կենսս զաւակաց իւրեանց և եղբարց, և սոքաւք ընդ նախահանդուցեալս փրկեսցին յիշխանութենէ խաւարի, և*
857բ *փոխեսցին յարքայութիւն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի// ի մասն վիճակի սրբոցն, ի լոյսն և յարայուարճ խնդութիւնն ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր։*

271

ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

*Երևան 3795*

Գրիչ՝ Փիլիպոս

Վայր՝ Այրիվանք

ա

291բ *Փառք ճշմարտին Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ և ընդ Հաւր իւրում և ընդ Հոգոյն Սրբո ա[յ]ժմ և անսպառ յաւիտեանս, ամէ[ն]։*

*ՈԼԹ[1] (1190)։ Շնորհիւ եւ ղաւրութեամբ բարերարին Աստուծոյ և Որդո միածնին Յիսուսի՝ հանուրց փրկագործողի, և ձեռնատվութեամբ ամենասուրբ Հոգոյն բոլորից նորոգողի, կատարեցի զայս երգ մատենիս*
292ա *աստուածային գանձարանի, որ կոչի Տ//աւնից պատճառ և Ընթեցվածոց Մեկնութիւն, զոր շարա[յա]րեալ են զսա սուրբ և ճշմարիտ արդիւնական վարդապետք եկեղեցո, յուրախութիւն հաւատացելոց՝ որգոց Նոր Սիոնի, վասն զի բոլոր իսկ տարին սովաւ պսակեալ բերկրի պայծառութեամբ՝ կատարելով զ[յ]իշատակ վկայից Աստուծոյ, զի յիշատակաւ արդարոց՝ հանդերձ գովութեամբ բերկրին ժողովուրդք։*

*Արդար և աններհակ ուրախութեան և հոգևոր ցնծութեան պատճառ է սա ուսումնասէր և տաճասիրաց անձանց, զի ամենայն տնաւրինականաց աստուածային բանին խորհուրդ սովաւ բացայայտին՝ ի լսելիս աստուածամերաց հաւատացելոց ի Քրիստոս, որով և հաշտեցաք*

---

[1] *Գրված է լուսանցքում վերից վար։*

ընդ Աստուծոյ մահվ[ամբ] Որդո նորա, և վերստին նորոգեցաք ի վտարանդեալ ծառաութենէ յազատութիւն և ի պատիւ փառաց որդոյն Աստուծոյ, որ է պատկեր աներևութիւն Աստուծոյ Հաւր։ Զի նովաւ ընկալաք զժառանգութիւն զխոստումն անճառ բարեացն, զոր ակն ոչ էտես և ունկն ոչ լվաւ, և ի խորհուրդ մարդկան ոչ անկաւ, պատրաստեաց Աստուած սիրոդաց իւրոց։ Ցաղագս այսր սուրբքն ամենայն ջերմութեամբ սիրովն և ցանկութեամբ մեծաւ կարաւտեալ պարգևացն Աստուծոյ՝ զանձինս իւրեանց մատուցին յաւժարութեամբ չարաչար և դառն տանջանաց, զի զբրաբիոնն տեսին և ընկալան յանձինս իւրեանց Քրիստոսիւ Ցիսուսիւ Տերամբ մերո, որու փառք յաւիտենս։

Արդ նոյն բաղձանաւք ես[1] Փիլիպոս. իմ ցանկացեալ երանութեան սրբոցն, ձեռնարկեցի ի սա յաղագս բաղում մեղաց իմոց և ստացց[ա] զսա ինձ գանձ անկողոպտելի, յիշատակ անմոռանալի, զաւակ անծե-
192ր բանալի, մեծութիւն անանցանելի, սփոփումն կարաւտութեան իմոյ // և տկարութեանն՝ ղաւրութիւն, վասն զի տեսի զանձն իմ թափուր յամենայն բարեաց, և կարի զարհուրեցա յիշելով զահագին աւրն, թե ղինչ արարից եղկելի անձամբս, և ով աւգնեսցի, ինձ, զի փրկեսցայց ի հրոյն յաւիտ[ենից]։

Միայն վստահ եղեալ յանբաւ ողորմութիւնն Աստուծոյ, սկսեալ գծագրեսցի զսա իմով ախմար և փցո[ւ]ն ձեռաւք տառապեալս և անարժան քահանա Փիլի[պո]սի յիշատակ ինձ և Մարեմ տիկնա, զի սաւաւ գտցուք թողութիւն բաղում յանցանաց մերոց։

Արդ հայցեմ և աղաչեմ զամենիսեն ընթերցողաց և լսողաց աստուածային պատւիրանիս, անմոռաց յիշմամբ յիշեսջիք զիս և զկենակից իմ ի սուրբ յաղաւթս ձեր, զի յուժ տառապանաւք և պանդխտութեամբ գրեցի զսա ի սուրբ ժողովարանիս Այրիվանից, ընդ հովանեաւ Սրբոյ Աստուածածնի և սուրբ վկաից, ապաւինելով յողորմութիւն սրբոցս, ղի ողորմ[ե]սցի բարերարն Աստուած։ Վասն որոյ աղաչեմ զամենիսեան, ուր և հասանի սա, և աւտիկ՝ զանարժանս զՓիլիպոս, և ղծնաւղս իմ, և զմայր մանկանց իմոց՝ զՄարեմախկին, ընդ նմին և զսիրելի որդեակս մեր՝ զԱլբայրիկ և զԳորգիոս, և զհարազատ եղբայր իմ՝ զՀարբ, և զԳրիգոր, և զՄամուկն, որ շատ աշխատեցան ի սպասաւորութիւն մեզ ի գրել ժամուս՝ յիշման արժանի արասջիք ի սուրբ յաղաւթս ձեր։ Եւ դարձեալ աղաչեմ էթէ ոք բան կամ գիր գտանէ ի սա, անմեղադիր լերուք, զի ի յաւրինակն ոչ տուն և ոչ կուտ էր, և ես հազիւ շարագրեալ ուղղեցի զսա՝ յաղագս հոգո իմո յիշատակի, և ոչ յիշեց[ի] զխոշորութիւն գրոյս։

Արդ աղաչեմք ղձեզ թողութիւն արարէք իմո տխմարութեանս, և բարերարն Աստուած ձեզ ողորմեսցի իւրում գալստե[ա]նն, ամէն։

---

[1] Սկզբից գրված է եղել «և», և ապա այն դարձվել է «ե» և տողամիջում՝ դրվել է «ս» տառը, որով և ստացվել է «Ես Փիլիպոս»։

Բ

398ա ... [դանձարա]նի որ [կոչի]Տանից պատճառ և Ընթերցվածոց Մեկնութիւն, զոր շարայարեալ են սուրբ վարդապետք եկեղ[ե]ցո, յո[ւ]րախութիւն մանկանց Նոր Սիովնի, վասն զի բոլոր տարին սովաւ պսակեալ բերկրի, ձեռամբ իմով անարժան Փիլիպոսի: Եւ ես ոչ է թե տեղեա[կ] էի արհեստիս, բայց յաղագ[ս] բազում մեղաց իմոց ձեռնարկեցի ի սա և ոչ յիշեցի զխոշորութիւն գրոյս, ըստ այնմ, թե սէր կատարեալ ի բաց մերժէ զերկիւղ։ Եւ արդ, ստացա զսա ինձ զերկիւղ և յիշատակ հոգո իմ[ո]։

Արդ որք ագտիկ ի սմանէ, և որք ժառանգէք՝ զանպիտանս և զծնողս իմ յիշման արժանի արասջիք, և Քրիստոս Աստուած յիշելեացն և յիշողաց ողորմեսցի։

Ընդ նմին և զկազմող սորա Աղբայրիկ և Գորգիոս:

Գ

15ա Բարեխաւսութեամբ Սրբոյն Դաւթի մարգարէին և սուրբ առաքելոյն Յակոբա, ողորմեա Քրիստոս Փիլիպոսի գրչի, ամէն։

Դ

49ա Քրիստոս Աստուած, բաբեխաւսութեամբ Սրբո Յոհաննու և Յակոբա եղբաւր իւրո ողորմեա Աղբայրկան, Գորգիոսի, Յովանիսի, և Փրերին, Մարդաձայնին:

Ե

71ա Քրիստոս Աստուած, քա սուրբ ծննդե[ա]մբդ և յայտնութեամբդ և մկրտութեամբդ ողորմեա Մարեմտիկնա՝ աղախնո՝ քո, ամէն։

## 272
## ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

*Երևան 3795 (1190 թ.)*

*Գրիչ՝* Փիլիպոս
*Վայր՝* Այրիվանք

ա

208բ *Ի ՌԽ (1191) թվին Հայոց կազմեցաւ Տաւնայպատճառս այս արդեամբ* Ցաւղկայ *աղախնոյն Քրիստոսի, լսելով բան ի սմանէ, ստացաւ զսա իւր յիշատակ։ Արդ աղաչեմ ղամենիսեն* գՑաւղիկ *աղախին Տեառն ի սուրբ յաղաւթս ձեր յիշեսջիք, ասելով՝ Քրիստոս ողորմեայ* Ցաւղիկայ[1]։

բ

*Ի թվին ՌԽ (1191) ես* Փիլիպոս *անարժան քահ[անա] եառւ զիմ Տաւնապատճառս* յԱստուծընկալ սուրբ Նշ[աՆ]իՆ, *զի տեսի զանձն իմ թափուր, հրամանաւ տեառն* Գրիգորի *սպասաւորի Սուրբ Նշանիւ Եւ նա խոստացաւ մեզ Դ (4) քառասունք ժամ զկնի ելից ի յաշխարհէս, Բ (2) քառասունք* Փիլիպոսի, *և (2) քառասունք զուգակցի իւրոյ* Մարեմտիկնայ:

գ

*Ստացող՝* Գրիգոր

*Եւ ես տէր* Գրիգոր *խոստացա հաստատութեամբ կատարել զյիշատակ սոցայ, եթե ի մեր յաւուրքս լինի վախճան սոցայ՝ մեք առնեմք, ապա թե ոչ, ով և լինի զկնի մեր սպասաւոր Սուրբ Նշանիս, նա կատարեսցէ աներկբայ զտաւռ յիշատակի սոցա, և թե ոք անփոյթ առնե ով և է, դատապարտեալ է յԱստուծոյ և* յԱստուածընկալ Նշանէս *և մասն նորին ընդ Գեեզի ագահի լիցի և ընդ Յուդ[այի լրբ]ոյ, թեպետ և առնեն զսոցայս անհնար ե հ//անել, բայց յԱստուծոյ*[2]։

---

[1] *Կազմի վրա՝ «Փիլիպոսի է սա», «ՋԱկոր յիշեայ ի Քրիստոս»։ Կազմը Մատենադարանի հնագույն կազմերից է, կազմող Հակոբի ստորագրությամբ, որը գծել է կաշվի վրա։ «Այս ձեռագիրը... պարունակում է հին տամականներից մեկը և Ընթերցուածոց մեկնությունը։ Արևելյան վանքերում է ծաղկում գրականության այս տեսակը, և նյութեր է բովանդակում մեր եկեղեցու ծիսակատարության զարգացման պատմության» (Յիշատակարանք, էջ 558)։*

[2] *ա և բ հիշատակարանները գրված են առանձին թղթի վրա և փակցված նույն բովանդակությունն ունեցող հիշատակարանի վրա, որը դարձյալ Փիլիպոսի գիրն է։ Ահա նրա վերջին մասը «...մեք առնենք, ապա թե ոչ ով որ լինի զկնի մեր սպասաւոր Սուրբ Նշանիս, նա կատարեսցե զտաւռ յիշատակիս, և թե անփոյթ առնե ովեւ վարձք զԳէզոյ ագահի առցէ և զՑուդայի լրբոյ»։*

## 273
## ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա, 23, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 34—35

Գրիչ՝ Քրիստոսատուր

Վայր՝ Կեսարիա

ա

Յիսուս լոյս հայրական յորժամ գաս փառաւք Հաւր ի դիտել զտիեզերս, յայնմ աւուր ազատեա զՔրիստոսատուր անպիտան գրիչ ծով յամենայն մեղաց իւրոց և յանցանաց, և զծնողսն իւր՝ բարեխաւսութեամբ աւետարանչացս, եւ քեզ փառք յաւի[տեանս, ամէն]։

բ

Փառք Հաւր ամենակալի և նախախնամողի և Որդոյն միածնի և փրկողի զտիեզերս, եւ Հոգոյն ճշմարտի և նորոգողի զարարածս, ամէն։

Արդ գրեցաւ, ցանկալի սուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց ՈԽ (1191), ձեռամբ Քրիստոսասիրի նուաստ կրամաւորի և անյարմար գրչի, յանուն քահանայի Գորգոյ և իւր ծնողացն և եղբարցն փոխեցելոցն առ Քրիստոս՝ Գրիգորոյ և սուրբ քահանային Առաքելին, որ ստացաւ զսա իւր կամաւոր յաւժարութեամբ, և այլ աստուածախաւս պատուիրանս և զՍուրբ Գրիգոր՝ տուն Աստուծոյ և քաւարան ամենայն հաւատացելոց, ի Կեսարեայ, իւր արդար վաստակոց, զոր ինչ և շանայր մարմնաւոր հոգւոյ տայր. եւ դնեաց գրեանք և եկեղեցի և զսուրբ Աւետարանս և արար իւր որդի հոգևոր զսուրբ քահանայն զԿոստանդին, զի ինքն վանից էրէց էր, զնա կարգեաց քահանայ ժողովրդեանն և հովիւ սուրբ եկեղեցւոյ, ի յիշատակ հոգոյ իւրոյ և ծնողաց և եղբարց իւրոց՝ կենդանեաց և մեռելոց։ Որոց վայելեալ տացէ Տէր Աստուած անձին իւրոյ որդեաց և յիշատակ հոգւոյ ծնողաց և, եղբարց՝ կենդանեաց և մեռելոց, ամէն։

գ

Յիսուս Քրիստոս ողորմեա գծողի սորա Քրիստոսատրու մեղապարտ եւ անարժան գրչի եւ ծնաւղացն, եւ թող զմեղս նոցա, և քեզ փառք յաւիտեանս. ամէն։



ՈԽԱ 1192

## 274

## ՃԱՇՈՑ

*Երուսաղեմ 121, Պողարյան, Ցուցակ, Ա, էջ 350—351*

Գրիչ՝ Վարդան

Վայր՝ Մաշկեւոր վանք

ա

609ա *Փառք անսկզբն եւ անժամանակ, աներր եւ անուրեք, անորակ եւ անքանակ, անքննին, գերաբուն եւ համագոյ, եռակի եւ եզակի տէրութեանն եւ միոյ աստուածութեանն, երկրպագութիւն եւ գովասանութիւն, յիմանալեացն եւ ի սգալեացս, ի մտաւորաց եւ ի բանաւորաց, եւ համանգամայն ի բոլորից սեռական կենդանեացս, սկզբանց եւ առյապա, անդր քան զյաւիտեանս, եւ յաւիտենից յաւիտեանս, ամէն, որ ետ զաւրութիւն տկարութեանս իմոյ յա՛ղ հանել զբազմագունեան ծաղիկս զայս փթթեալ առաքելական եւ մարգարէական եւ աստուածախաւս վարդապետութեամբ։*

*Ո՜վ հարուն Յիսուսի տրամախորհուրդ, դեղագեղեալ առաքելական եւ մարգարէական լուսափայլեալ ակամբք, եւ հոգիաստին սնեալ կաթամբ եւ սնեալն գեղեցկածաղիկ, աստուածազարդ բուրաստանին, հոգեղինաւ բոցով բորբոքեալ ի Քրիստոս համբակ, զոր բերեալ սահման կոչողին յարքունականն ճեմացուց ճեմարանին։ Ահա ծառ լի պտղալք բարութեան։*

*Յաղագս որոյ գոհանամ զգովելոյն լուսաստեղծ լուսաւորացն, զի ի ձեռն խաւարասգած իմում հոգւոյս* Վարդանեա, *գրեցաւ մարգարիտս այս ի զարդ եկեղեցւոյ սրբոյ Թագի։*

*Աւրհնեալ է նա յամենայն էից, եւ յանէից, ի տարբեց եւ յանտարբեց, եւ յանսահման, եւ յանկէտ, յանմիջակ, եւ յանեզրական յաւիտեանսն։*

*Եւ արդ գրեցաւ գիրսս շարայարեալ ձեռամբ* Վարդանա *նուաստ կրաւնաւորի եւ յետին եւ փցուն գրչի, ի վանքս որ կոչի* Մաշկեւոր, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս եւ Սուրբ Կարապետիս եւ այլ սրբոցս որք աստ են, ի սահմանս* Սիսովն *քաղաքիս, ի գաւառիս* Կիւ-ղիկեցւոց, *ի լերինս որ կոչի* Տորոս:

*Եւ այս եղեւ ի դիտապետութեան Հայւոց տեառն* Գրիգորի *որ* Տղայն *կոչիւր, եւ ի վերայկացութեանն իշխանութեամբ, քաջցր եւ բարեպաշտ պատրոն* Լեւոնի, *եւ յաղթող ամենայնի, զոր պահեսցէ Աստուած խաղաղութեամբ։*

*Բայց ի թուականիս Հայոց ՈԼԶ (1187) առաւ* Երուսաղեմ, *եւ խաւարեցաւ արեգակն։ Եւ ի ՈԼԹ (1190) ամի, Փռանկն եւ Ալամանն եւ մեռաւ։ Եւ ի ՈԽ (1191), Ընկլէզ Թագաւորն եկ, եւ առ* զԿիպրոս *կղզի եւ*

զԱfայ եւ զԱսիալան: Եւ սով եղեւ այս երկու տարիս խիստ։ Եւ ի ՌԽԱ (1192), դրեցաւ գիրքս այս։

Եւ արդ աղաչեմ զամենեսեան, որք ուսանիք կամ ընդաւրինակէք զհաւաքեալ ծաղիկս զայս, որ է զարդարեալ սա բանիւ եւ հրամանաւ, տնաւ եւ ստորիւ, զհայր Դաւիթ եւ զնորին քոյրորդին զԹորոս, որ են առաջնորդք անապատիս, եւ զԹած առ ամենեսեան, յիշեսջիք զնոսա եւ զծնաւղսն նոցա ի Տէր։ Եւ զամենայն եղբայրութիւնս այսր անապատի զկենդանիս եւ զհանգուցեալսն ի Քրիստոս, որք բարի եւ քաղցր խաւսաւք աւգնական լեալ են մեզ։

Ընդ նմին զաղչեալս մեղաւք զՎարդան եւ զծնաւղսն իմ, եւ զամենայն համազգիսն իմ, զի եւ նոցա ողորմեսցի Քրիստոս Աստուած յիւրում գալստեանն, եւ որք յիշեն զմեզ հաւատով՝ եւ նոցա։ Որպեսզի աղաւթիւք ձեր եւ ամենայն սրբոց հաճոյացելոց Տեառն ի սկզբանէ գտցուք միաբան արժանաւորք կենացն յաւիտենից, ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր։

Ընդ որում Հաւր եւ ամենասուրբ Հոգւոյն վայել է փառք իշխանութիւն եւ պատիւ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Բ

Գրիչ՝ Պաւղոս

64ա ԶՊաւղոսս յիշեա ի Տէր։

Գ

612բ Նաեւ զյետին տըրուպս զՊաւղոս յիշեցէք, եւ Աստուած զձեզ յիշէ, ամէն։

Գրիչ՝ Թոմաս

Դ

698ա Յիշեսջիք զԹոմաս միակեցն եւ Աստուած զձեզ յիշէ։

## 275

## ԽՐԱՏՔ ՊԷՍՊԷՍ ԵՒ ՔԱՂԱՔԱՎԱՐՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ՀԱՐՑՆ ՈՐՔ ԹԱՐԳՄԱՆԵՑԱՆ Ի ՍԻՄԷՈՆԷ ՄԻԱՅՆԱԿԵՑԷ Ի ՅՈՅՆ ԼԵԶՈՒԷ Ի ՀԱՅ ԲԱՐԲԱՌ

Զարբհանալյան, Թարգմանութիւնք նախնեաց, էջ 551—552

Գրիչ՝ Գէորգ

Վայր՝ Սկեւռայ

Յամի թուակ[անութեան] Հայոց ՌԽԱ (1192) և հայրապետութեան Գրիգորի՝ մակակոչեցելոյ Տղայի, և ի թագաւորութեան Յունաց Իսահակայ ի Կոստանդնուպալիս, գրեցաւ Վարք սրբոց հարցն և խաւսք աւգտակարք և բանք վարդապետութեան լրապէս, որ գտաւ այժմ ի զանազան աւրինակս՝ ի մի հաւաքեալ ի վանքս Սկեւռայ, ընդ հովա-

*նեաւ Տեառն Աստուծոյ և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի տաճարի և մաւր Աստուածածնի և կենսակիր պատուական սուրբ փայտիս, հրամանաւ ճգնազգեաց եղբաւր մերոյ* Խաչատրոյ, *քան զի այս աստուածային այրս ստիպեաց զիմ տկարութիւնս զհամակրաւն եղբաւրս իւր* Գէորգեայ՝ *լնուլ զփափաք տենչանաց իւրոց այսու մատենիւս։ Եւ ես ըստ յաւժարութեան նորա և ձեռնտուութեան աղաւթից, յանձն առի աւելի քան զկար իմ, և շնորհիւ Աստուծոյ կատարեցի, ընդ ձեռամբ հոգեւոր վերակացութեան տեառն իմոյ* Ներսիսի *արքեպիսկոպոսի սրբոյ, որ այժմ կայ ի գլուխ սուրբ և հռչակաւոր այս ուխտի միաբանութեան ժողովոյ և հովուէ զմայրաքաղաքն* Տարսոն՝ *հանդերձ գաւառաւք* Կիլիկիոյ: *Եւ քան զի այս աստուածային այր՝ ընթերցող գրոց Աստուծոյ և մեկնող, այլ և փափաքանաւք ի միասին հաւաքող, որոյ, եղբայրս այս* Խաչատուր *կամակատար սպասաւոր և մաքուր անձինն սրբութեամբ պաշտաւնեայ աշակերտեալ բանից և նմանութեամբ ընթացից և բաղձանաց ի նոյն նկրտել, որոյ և սա ըստ չափու իւրոյ ստացաւ մատեանս գրոց հաւասար տեառն իւրոյ և վարժապետի, և զսոյն ի նորին յորդմանէ և խրատու յաւժարութեամբ ետ գրել, քան զի միշտ լսէր ի վարդապետախաւս բանից նորին։*

276

*ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երևան 1888 (ԺԲ դ.)*

*Գրիչ՝* Դաւիթ

ա

270բ Զ*Դաւիթ եւ զանարժան քահ[անայ] յիշեցէք ի Քրիստոս։* Դաւիթ[1]:

բ

*Ստացող՝* Թորոս

Զ*Թորոս վարդապետ որդի* Ալամի՝ *ստացող սուրբ մատենիս յիշեցէք ի Քրիստոս, մանգումք սուրբ առագաստի, յորժամ հանդիպիք բանի պիտանացուի կամ աւրինակ առնել[ո], որ կարիք թէ հանդիպիք՝ և զվարդայպետն իմ* զԱրաքելն, զԳրիգորէս, զՎարդան, *զի յամենես[եան] եղև մեղ աւգտիչ։*

Զ*Ալամն և* զԴմլուճ *մայրս յիշման արժանի արարէք, ո՛վ սուրբ ընթերցող, վասն սիրոյն Քրիստոսի ասայ լի բերանով, թէ՝ Քրիստոս Աստուած չնչեայ զձեռայգիր յանց[ա]նաց նոցայ, և* զԲարսեղ *վարդայպետին և* զՊապ *սարգաւագին,* զՀայրապետ *վարգայպետին, զհայր*

---

[1] *Առաջին հիշատակագրության գրիչ Դաւիթը, հավանաբար, նաև նկարողն է խորանի։ Թորոսի Հիշատակարանի մի մասը գրված է խորանի մեջ, 1192 թ. առաջ, որովհետև ստացող Թորոս վարդապետի սրբագրությունները և լրացումները նախորդում են հիշյալ թվականին ստացող Հովհաննեսի սրբագրություններին (տե՛ս 323բ, 239բ, 240ա, 196ա և այլ էջերի լուսանցքները)։*

Կոստանդեա|, և զազգայինս մեր զամենեսեանսն՝ զՇատէրն իւր զաւակաւքն, զՎահրմառի ի[ւ]ր զաւակաւքն, զՋօխն իւր զաւակաւքն, զՊաղտատն և Փսիմիկուանէ, և զսուրբ հաւրեղբարքն իմ զՄարկոս և զՍիմէոն, և զննջեցեալ և զկենդանի ազգս մեր յիշէ Քրիստոս Աստուած, զթեալ ի ողորմեալ անսպառ յաւիտենին։

Գ

Հետ. ստացող՝

354բ Արդ որք ընթեռնոյք կամ աւրինակէք զաստուածաշունչ կտակս զայս, մեղաց թողութիւն շնորհեցէք Յոհաննիսի նու[աստ] քահանայի, ե հաւրն իւրոյ Կարապետի, ե մաւրն իւր Վահանաւրէ, և եղբարց իւրոց Կեփասի և Բանարզի, և առաւել զհայրն իւր յիշեսջիք, զի էր լցեալ աւուրք ծերութեան։ Եւ յորժամ փոխեցաւ պատուական քահանայն մեր Խաչուկն բարի խոստովանութեամբ ի Քրիստոս, նա շատ աշխատեցաւ ի վճ[ար]ոյ[1] սորա, զի էր յոյժ խոշմտեալ և աւուրք չարութեան, սովու ե փախստեան, յորժամ Աղլստին Սուրխակն զԹիլն եառ։ Եւ էր թուոյն Հ[այ]ոց ՈԽԱ (1192), և մեր առաք զգիրքս զայս ի յիշատակ հոգոյն սուրբ քահանային Խաչկուն և իւր էրիցկնոջն, և արարեալ ենք վճար դորա ժամ Լ և Ծ, զորս ե. ընգալցի Քրիստոս յիւրում արքայութեան և ողորմեսցի նոցա և ամենայն քրիստոսասէր քահանայիցդ և ընթերցողացդ, որք ընթեռնոյք և յիշէք զմեզ յարժանաւոր յաղաւթս ձեր և յիշողացդ ողորմեսցի Քրիստոս Աստուած, ամէն։

Սրբագրող՝ Յոհաննէս

Դ

218ա Յոհանէս մեղ[աւոր]։

Ե

322բ ԶՅոհանէս յիշէ[2]։

---

[1] Այս բառը Գ. Հովսեփյանը, իսկ նրանից առաջ Սահակ Ամատունին, որ հիշատակարանը արտագրել և կից դրել է ձեռագրի մեջ, կարդացել են «վ[երա]յ», «վե[րա]յ»։ Բառի առաջին երկու տառը, որ տողի վերջում է՝ շատ պարզ կարդացվում է «վճ»։ Հաջորդ տողի սկզբի երեք տառի չափ ջնջված մասին հաջորդում է «յ» կիսաձայնը։ Մեզ թվում է այդ «վճ[արո]յ» բառն է, նախադասության իմաստին համապատասխան, որը օգտագործված է նաև հաջորդ նախադասության մեջ։

[2] Ձեռագրի լուսանցքներում կատարված են լրացումներ, պարզաբանումներ, որոնցից երկուսի վերջում դրված են այս ստորագրությունները։

## 277

## ՏԵԱՌՆ ՆԵՐՍԵՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՍԱՑԵԱԼ ԲԱՆՍ ՄԽԻԹԱՐԱՆԱՑ ԱՌ ՍՈՒՐԲ ՀՐԵՇՏԱԿՍ ՈՏԱՆԱՒՈՐ ՉԱՓՈՎ

*Երևան 2496 (1294 թ.)*

*Գրիչ՝* Գրիգորիս Տղա

*Վայր՝* (Հռոմկլա)

346բ *Ասացաւ և գրեցաւ ի* Ներսէսէ *եպիսկոպոսէ՝ եղբաւրէ կաթողիկոսի Հայոց* Գրիգորիսի, *որ եկաց յաթոռ հայրապետութեանն զամս ԾԳ (53), ամաց քսանից նստեալ վերատեսուչ Ասքանազեանս տոհմի, և ապա հասեալ ի բարիոք ծերութեան, ձեռնադրեաց զայս* Ներսէս՝ *եղբայր իւր ըստ մարմնո և տիեզերալո;ս վարդապետ, և փոխեցաւ ինքն առ Քրիստոս, եղեալ ամաց եաւթանասուն և հնգից։ Եւ սա կացեալ ի հայրապետութեան անդ, ամս է (7), եղեալ ամաց յիսուն և վեցից, և փոխեցաւ առ Քրիստոս ամաց վաթսուն և երից, որ բազում իմաստութեամբ իւրով շանաց լուսաւորել զազգըս Հայոց, յորոց բազմացըն մի է և այս* Գովասանութիւն *սրբազնապետացն հրեշտակացն բան, ասացեալ նմա ի թուականիս Հայոց ՈԺԱ (1162), ի* Կլայն Հռոմկլան, *ի թըշուառութեան ժամանակի, զոր յիշել յաղաւթս աղաչեմ լսաւղքդ բանիս և ընդաւրինակողք ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս։*

Զ*Գրիգորիս *որդի եղբաւր սոցա՝ զայսոսիկ գրող յիշեցէք ի Քրիստոս*[1]*։*

## 278

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԻԳՆԱՏԻՈՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Երևան 1342 (1292 թ.)*

*Հեղինակ՝* Իգնատիոս վարդապետ

259ա *Ընգալ աստուածաի//նդ* Գրիգորիոս *զփոքրիմաց բանքս նուազ մերոյ տեսութեանս, զի թէպէտ և զչափ կամացտ լրման տալ ոչ ունի, սակայն ի մէնջ մեծաւ տարժանելի կրիւք յառաջ եկել, զի ոչ թէ հատուցաք ի ժողովս, որ դիւրին է բանարարաց, այլ դժուարաշարժ ձեռամբ և սևադեղով յանպատկանաւոր նիւթս հաստատեցաք, վստահացեալ յայն, որ տա խնդրողացն զբարձրագոյնս ի ներքս բերել զչա-*

[1] *Գրիչ Գրիգորիսը՝ Գրիգոր Տղան է, Շնորհալու եղբոր որդին և նրա հաջորդը (1173—1193)։ Գրել է կաթողիկոս եղած ժամանակ։ Հիշատակարանը դնում ենք հնարավոր վերջին թվականի՝ 1193-ի տակ։*

փաւորս, ղի յայտսիկ ոչ եթէ որ ոչ կարէ պարտապան է, այլ որ ոչ ախորժէ ընդ բանքասանօք Լ։ Վասն որոյ և մեք յայսմանէ ամփոփել զանձինս, ընդ միւսովն անխնայ արկաք, քանզի ոչ վրիպակ լինելն ի մերս առաջի եղել, որք ձգեն ընդդէմ այսոցիկ զկարծիսն ի դերև հանել անկիրթ վարկաք, և այսպէս կարգեցաք զբանս մեր, հաստուցանել զխնդիր խորհրդոյ լաւաղունից խնդրողիդ։ Եւ ունի սա յորում առանձինն են բանք այսմ գրողի ըստ կարգի տալ զզօրութիւն տեսութեան քննողացն ըղնա ի փոքուն յաւելել բազումս։ Իսկ որ ընդ երիցն լծորդել իցէ մեկնողօրէն, անցաք վստահութեամբ, քանզի ունի սա այլովքն լնուլ ղպէտս այսոցիկ օժանդակութեամբ այնմ որուն ի
250բ բանալ ի լնուլ ղպէտս հայցողին, վասն //որոյ և մեք յայսպիսի կատարումն ածել սահմանեցաք զբանս ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ, որում ամենայն փառք և զօրութիւն յամենայն Աստուծոյ, այժմ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

279

ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 9838

219ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւի[տեանս]։

Ի թուակ[անիս] ՌՃԲ (1193) գրեցաւ Երգարանս այս զկնի Զ (6)-ից անցելոց ամաց առման քաղաքին սրբոյ Երուսաղէմի, քանզի ի ՈԼԶ (1187) թուին Ալահրատինն Դամասկացի, ժողովեալ զբազմութիւն այլասևուիցն ազգաց, գայ յաշխարհն Պաղեստինացւոց Գալիլեա՝ մերձ ի
219բ //Տապարի, և ընդդէմ սորա ժողովեալ և քրիստոնեիցն ազգաց՝ հանդերձ թագաւորաւն, որոյ անուն Պաղտին: Եւ ըստ մեղաց մերոց յաճախման, պարտեալ եղեն ամենեքեան և ձերբակալ եղեալ թագաւորն, նաև պարոնաց [և] իշխանաց՝ ի շղթայս և ի սուր, և ի գերութիւն մատնեալ եղև և խաչն փրկչական։ Եւ ըստ այսմ գործելոյ փոյթ ընդ փոյթ եկեալ յամենագովելին Պաղոմիդես, և առ զնա, և չուեալ անտի յԱսկողոն, և ղնա(ռառ)։ Եւ յայնմ աւուր խաւարեալ արեգականն ի միջաւրեայ աւուր, մինչ վի աստեղք յերկինս երևեալ որպէս գիշերի։ Եւ ետ փոքր ինչ աւուրց գնացեալ յԵրուսաղէմ, և զնա պաշարեալ՝ առ, և մնացեալ միայն Սուրիայ և Տրապաւլիս: Եւ մինչ այս գործ դառնութեան գործէր ի Պաղեստաին, ելեալ ի նոյն ազգէն Իսմայելացւոց այլք ոմանք վատք և աղտեղիք, ոչ ի քաղաքաց և կամ դղեկաց, այլ ի լերանց և դաշտաց, նմանեալ շաղակեր գիշախանձ գազա[նացն]//[1]։

---
[1] Վերջից թերթ է պակասում։

## 280
## ԱՒԵՏԱՐԱՆ
*Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 270—272*

Վայր՝ Պաւղոսական անապատ

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սըրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*
311բ *Յամի Ո (հ)արիւրերորդի քառասներորդի երկրորդի Հայկազնեան տումարիս (1193), ի հայրապետութեանն տեառն* Տղայ Գրիգորի *կաթողիկոսի Հայոց, եւ յիշխանութեան բարեպաշտ իշխանին* Լեւոնի, *իսկ ի բռնակալութեան Հաքարացւոյ ումեմն* Սալահատին *կոչեցեալ ըստ իւրեանց առասպելաբանութեանն, որ եւ տիրեաց* Եգիպտացւոց *և մինչև ի կողմանս արևելից, եւ զբաղումս յազգայնոց իւրոց արկեալ ընդ իշխանութեամբ իւրով։ Եւ զաւրացեալ այսու, սկսաւ պատերազմել ընդ սուրբ քաղաքն* Երուսաղէմ, *և ընդ զաւրս նորա։ Զորս թուլագոյնս գտանէր ի հաւատս՝ զնոսա կարասեաւ եւ խոստմամբ պարտէր, եւ որ քաջ սպառազէնքն էին՝ բանիւք ողոքանաւք հաւանեցուցանէր, եւ զայլս ի*
312ա *մեծամեծացն // երդմունս հաստատէր, նոցա՝ ունել զտէրութիւն աշխարհացն, եւ այպիսի խորամանկութեամբ քակեաց զամենեսեան ի միմեանց և արար ի միում տան խռովութիւն։ Եւ զայս արարեալ ի բազում ամս ոչ կարաց յաղթել նոցա, եւ ապա աւրինաւք խնդրէր պատերազմել ընդ նոսա, զի գիտէր զթուլութիւն եւ զերկպառակութիւն զաւրացն, եւ զյետս կացելոցն ի սուրբ ուխտէն, եւ պատերազմեալ ընդ նոսա յաղթեաց, զի զաւրքն ընդ չորս մասունս բաժանեալ էին։ Եւ ձերբակալ արարեալ զթագաւորն եւ զարս պատերազմողս, որ կոչին փրերք, եւ զայլ զաւրսն կոտորեաց, եւ բռնացեալ առ զսուրբ քաղաքն* Երուսաղէմ, *եւ* զԱսկաղովն, *եւ զամենայն սահմանս աշխարհին, եւ գա ի սահմանս* Անտիոքու, *եւ քակեալ աւերեաց աշխարհն եւ զամուրս նորա։ Եւ*
312բ *անարին այն, որ [բր]ինձ կոչեցեալ, ոչ կարաց ելանել ընդդէմ նորա։*
*Իսկ նորա, կատարեալ զկամս իւրոյ չարութեանն, կամեցաւ մտանել յաշխարհն* Կիլիկեցւոց, *նոյնպէս կարծելով զնոսա անարիս գոլ, քան զի գայր իբրեւ զառիւծ զաւրաւոր, եւ դառնայր իբրև զաղուէս տկար։ Քանզի յառաջասացեալ հայրապետն սուրբ* Գրիգորիոս, *որ ունէր զաթոռ հայրապետական Սրբոյն* Գրիգորի, *որ եւ շառաւիղ գոլով նորին* Լուսաւորչին *Հայոց, պահպանեալ ընդ ամրածածուկ աջովն Աստուծոյ յամուր դղեկին կոչեցեալ* Ռոմելիոսի կլայ, *որ եւ սա բազում նեղութիւնս կրեալ ի շրջաբնակ այլազանիցն, ընդդէմ կացեալ աղաւթիւք եւ զաւրութեամբն Աստուծոյ։ Եւ ըստ տուեցելոյ նմա յԱստուծոյ ամենաշնորհ իմաստութեանն՝ խրատէր եւ զաւրացուցանէր զթագաւորն եւ*
313ա *զաւրսն* Կիլիկեցւոց *// ընդդէմ կալ նորա չարութեանն, որ եւ ոչ եւս կարաց ձեռն արկանել ի նոսա։ Այլ քանզի հայրապետն սուրբ տեսանելով զայսպիսի նեղութիւն տարակուսանաց՝ զառումն սրբոյ քաղաքին, եւ զաւերումն սրբոց տաճարացն, եւ զգերութիւն ժողովրդեանն Աստուծոյ, եւ զայլանդակ գործ պղծութեան նոցա, զորս ոչ է պարտ ար-*

կանել ընդ դրով, զայսոսիկ տեսեալ սրբոյ հայրապետին վշտացեալ
ի հոգի իւր, միշտ աղաւթից եւ արտասուաց պարապեալ, խնդրէր զփրր-
կութիւն սրբոյ քաղաքին եւ ժողովրդեանն Աստուծոյ, դրէր եւ ցուցա-
նէր զամենայն թագաւորացն Յունաց եւ Հռովմեացւոյ, զի թէ իցեն ինչ
ձեռնահաս՝ եկեսցեն յաւգնութիւն քրիստոնէից, եւ ինքն աղաւթից եւ
սրբութեան պարապեալ։ Եւ ապա շարժեալ մի ոմն ի թագաւորացն
313 Հռովմայեցւոց, Ալաման կոչեցեալ, գայ մինչեւ ի սահմանսն Կիլիկեցւոց,
եւ ոչինչ արիութիւն ցուցեալ, կատարի մահուամբ գետասոյզ եղեալ, եւ
զաւրքն ցրուեալ բաժանեցան։ Եւ մինչեւ ցայս վայր ինքն բռնացեալ
ունի զքաղաքն սուրբ, յառաջասացեալ գազանն Հաքարացի։

Եւ արդ յաւուրս յորս ասացաւ, ստացաւ եղեւ սրբոյ տառիս սրբա-
զան եպիսկոպոսն տէր Կարապետն՝ քուերորդի գոլով սրբոյ վարդա-
պետին Պաւղոսի, բնակելով առ սուրբ հայրապետին տեառն Գրիգորի,
որ եւ արժանաւորեալ աստիճանի եպիսկոպոսութեան, որպէս եւ վայել
է Աստուծոյ տնտեսի։ Եւ արդ սիրող գոլով պատուիրանաց Տեառն, մա-
նաւանդ աւետարանական քարոզութեան նորին, եւ արդ ստացաւ զսա ի
յիշատակ հոգւոյ իւրոյ, ի պարծանս եկեղեցւոյ։ Եւ գրեցաւ սա յանա-
պատիս որ կոչի Պաւղոսական, մերձ առ ամուր դղեկիս Կատինոյ, առ///

բ

13ա Աստուածապատիւ տեառն Կարապետին է, ստացեալ յիշատակ իւր
եւ ի վայելումն անձին իւրոյ, որք ընթեռնոյք յիշեսջիք ի Քրիստոս Յի-
սուս։ Եւ զսուրբ վարդապետ նորին զՊաւղոս, փոխեալ յաշխարհէ, եւ
զամենայն ազգատոհմ իւր աղաւթիւք յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս։

## 281

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 125, Սարգիսյան, Ցուցակ, էջ 557—559

Գրիչ՝ Կոստանդին

Վայր՝ Սկեռա

ա

Փառք ամենասուրբ Երրորդութեան այժմ և միշտ եւ յաւիտեանս
յաւիտենից, ամէն։

Գրեցաւ տիեզերակեցոյց փրկչական սուրբ Աւետարանս, յամս
թու[ին] ՌԽԲ (1193)՝ ի հայրապետութեան Հայոց տեառն Գրիգորի
եւ յեպիսկոպոսութեան Կիլիկեցւոց նահանգիս տեառն իմոյ Ներսիսի,
որ ստացաւ ի պատիւ եւ ի փառս սուրբ եկեղեցւոյս Ամենափրկչիս
զայս աստուածաբան մատեանս, ի վանքս Սկեռայ, առընթեր անմա-
տոյց բերդիս Լամբրանի, որոյ տիրէ բարեպաշտ սեւաստաւս Հեթում
հարազատ եղբայր սորա, քանզի երկոքեան սոքա ի վրդովումն աշխար-
հաց եւ գաւառաց, որք յայս աւուրքս հոգեւոր և մարմնաւոր անգոր-

*րութեամբ անվրդով պահեն զսոսա՝ որոց իշխեն, և ղարդարեալ սպայծառացուցանեն զայս աստուածաշէն միաբանութիւն հանգստարան նախնեաց իւրեանց, յորոց լրումն փառաւորութեան և զայս աստուածախաւս սուրբ Աւետարանս՝ հրաման ետուն ինձ* Կոստանդեայ *հոգեւոր երկամբք ծնեալ որդւոյ՝ սատարութեամբ գրչի աւարտել և երանգաւք ծաղկոց զարզարել, զի ի խորհրդական ժամու սրբոյ պատարագին աւր ըստ աւրէ ի տաճարս Աստուծոյ ընթերցցին, եւ ես ըստ կարի տկարութեանս յանգ հանի ըզպատուէր տերանց իմոց եւ իշխողաց։*

*Արդ աղաչեմ զկենարար մարմնոյ եւ արեանն Տեառն նուիրող քահանայպետսդ եւ զքահանայսդ, եւ զնորին փառացն պաշտաւնեայ սարկաւագսդ, ի կալն ձեր ի խորհրդական ժամուն բարեզարդութեամբ մարմնոյ եւ մաքրութեամբ ոգւոյ առաջի Աստուծոյ, յորում հրեշտակ լինիք առ ամենդիր ժողովուրդսն, որ ի սմա աւետեացս բարձրաձայն ընթերցմամբ ղրանիցս Աստուծոյ զարդարող սիրով եւ հաւատովք, ողորմութեամբ նիւթոցս զտէրս իմ* Ներսէս *եւ զիշխողս ղպատրոն* Հեթում *անմոռաց պահեցէք ի կարգ յիշատակացն, որ ի սուրբ պատարագն, զի որ սովաւ աւետարանել երկնային աւետեացն խոստումն՝ շնորհեսցէ սոցա Քրիստոս, եւ ուր ինքն է՝ անդ եւ զսոսա, որք են հաւատարիմ պաշտաւնեայք իւր, ընկալցի՝ տեսանել զփառս իւր եւ փառաւորել ընդ նմա ի մասն վիճակի համապատիւ սրբոցն յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Եւ ես գրիչս աղաչեմ զտեարսդ իմ և զեղբարսս՝ զնուաստութեանս իմոյ սպասաւորութիւն աստուածային մատենիս, աստուածապարգեւ արհեստիւս յիշատակի արժանի արարէք, զի գտից ողորմութիւն ի Քրիստոսէ։*

*Այս ամ հինգերորդ պղծելոյ զաստուածակոխ քաղաքն* Երուսաղէմ *գերութեամբն իւրեանց աղախնածին Հագարացւոցն, որոց շուրջ բիւրք բիւրոց ղաւրք Հռովմայեցւոց թագաւորաւք եւ իշխանաւք հեղուն զարիւնս իւրեանց անհանգիստ պատերազմաւ, եւ գնան որպէս զամպս թռուցեալ եւ իբրեւ ղաղամիս ձագախառն երամովին ժառանգել զՎերինն Երուսաղէմ։*

*Ողորմեա Քրիստոս* Վարդանայ:

Բ

*Ստացաւղի սուրբ մատենիս՝ տեառն* Ներսիսի *գերահռչակ վարդապետի, որդիք լուսոյ, աղաւթս արարէք խնկանուէր հայցմամբ ի ժամ սոսկալի պատարագի զենլոյն Յիսուսի, եւ մեղաւք դատապարտելոյս յետին գրչի։*

Գ

*Գերագոյն իշխանաց իշխանի՝* Հեթմոյ *սեւաստաւսի, ողորմեսցի Քրիստոս յաւուրն յաներեկի, եւ* Կոստանդեա, *մեղապարտ գրչի։*

## 282
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հալայան, Ցուցակ Վասպուրականի, էջ 79—80*

*Գրիչ՝* Պապէր

*Վայր՝* Սեբաստիա

*Փառք... Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՈԽԲ (1193), յամս աստուածապատիւ հոգևոր տեառն* Գրիգորիսի Տղայի *Հայոց ազգիս և ի թագաւորութեան Հայոց* Լեւոնի: *Արդ գրեցաւ այս ի քաղաքիս* Սեբաստիայ, *ընդ հովանեաւ Սուրբ Գրիգորի և Սուրբ Աստուածածնիս։ Իսկ որք ընթեռնոյք և լուսաւորիք ի սմանէ, մեղաց թողութիւն հայցեցէք* Վարդէ *քահանայի, ընդ նորին և որդեաց նորա* Յովհաննէսի *և* Պապէրի, *պապին՝* Խաչատրին, Աւեաեացն, Ծաղկանցի:

*Յոգնամեղ և անարժան քահանայս և յետին գրիչս* Պապէր, *որդի* Վարդէ *քահանայի, որդի* [Խաչատրի][1]: *Երես անկեալ աղաչեմ զամենեսեան ողորմիլ մեղաւորիս, յաղագս յիշել զիմ անպիտան զանարժանիս։ Յոյժ թշուառականս... հայցեցէք թողութիւն շնորհել բազում յանցաւորիս, յուրախութիւն Տեառն և դուք վայելիցէք յիշողդ անպիտանիս։*

---

[1] *Քերված է, լրացնում ենք ըստ նախորդ նախադասության մեջ առկա տվյալի* .

## 283

## ԱՌ ՈՐՍ ՃԱՌՔ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ

*Երևան 4146*

Գրիչ՝ Աբանաս

**ա**

242ա *ՈԽԳ (1194) թուիս գրեցաւ աստուածային ղանձ[ս ի ձե]ոն տխմար և անամաւթ գրչի յետին կրամ[աւորի] Աբանասի: Թողութիւն արարէք խոշոր[ութեան և ս]խալանաց, որ չափ կարողութիւն էր [ջ]անաց[ի]։*

*Քրիստոս Աստուած ողորմեա գրչի սորա և ծնաւղ[աց և] եղբարց սորա, ամէն։*

**բ**

*Լրացնողներ՝* Ասաուածատուր և Յակոբոս

242բ *Ո[ղորմի] աւրինակողաց տէր [Աստուած]ատրո և Յակովբի, որ ի բաղում տեղիս ղրաղում պակասութիւն սորա լցաք ի ճշմարիտ աւ- ր[ին]ակէ՝ աշխատասիրաբար և առանց ձանձրութեան, սակս եղբարց մերոց* Ոստակիսի *եւ* Աթանասի, *լուսո հարազատաց երիցունց։ Քրիստոս ողորմութիւն շնորհեա [նո]ցա ե[ւ] մեզ ի քո փառաւոր գալըստեանն, ամէն։*

*Այս որ պայծառ կազ[մու]թեամբ զարդարեցի զսա, մի մոռանայք յաղաւթից ///, եւ զվարդապետն իմ* զ[Յով]աննէս *առաւել յիշեցէք [աղ]աչեմ*[1]*։*

---

[1] *Լրացման հիշատակարանը դնում ենք գրության հիշատակարանին կից, նկատի ունենալով, որ այն գրվել է գրիչների մահվանից ոչ ուշ, նրանց հոգևոր եղբայրների կողմից։ Սրբագրողները սխալները առել են փակագծերի կամ շրջանակների մեջ։ Ձեռագրի առաջին պրակը այլ գրով է գրված և գրչի անունը չի հիշատակված։ Հենվելով սրբագրողների վկայության վրա, գտնում ենք, որ այն գրել է Ոստակեսը, որովհետև մյուս մասի գրիչը Աթանասն է։ Ոստակեսը վարժ գրիչ է և օգտագործել է օ տառը ինչպես և մյուս բոլորգրերը, առանց խառնուրդի։ Իսկ Աթանասի մոտ խառն է։ Ուրեմն այստեղ մենք ունենք օ տառի ամենավաղ օգտագործման փաստ։ Եվ որովհետև գրչության մեջ օ տառի մուծումը վերագրվում է Արիստակես Հռետորին, մենք նույնացնում ենք այս երկուսին, և ձեռագրի առաջին պրակի գրիչ համարում ենք Արիստակես Հռետորին, որի ժառանգությունից այս պրակը առայժմ հայտնի միակ նմուշն է։*

## 284
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 311 (1066 թ.)*

*Գրիչ՝* Գրիգոր Ապիրատ, որդի Զաւրավարի

82ա *Յիշեցէք ի Քրիստոս զբարեպաշտ իշխանն մեծ սեւաստիաւսն զԹա-*կուրանն՝ *զորդի* Սմբատա *որդւոյ,* Հնթմոյ *սեւաստաւսի, տեառն* Կամ-բրաւնին *եւ* Պապեռաւնին, *որում եւ զԱւետարանս շնորհեցի։ Ընդ նմին եւ զքրիստոսասէր ամուսինն իւր* զԹագուհի՝ *զքոյր մարմնոյ քոյր իմ, որոց ողորմեսցի Տէր Քրիստոս աստ եւ հանդերձելումն։*

*Ի թուին| ՈԽԳ (1194)*[1]*։*

## 285
## ՏԱՒՆԱԿԱՆ

*Փարիզ 110, Երևան, մանրաժապավեն 876*

*Գրիչ՝* Ստեփանոս

*Վայր՝* Նեզկուկ գետ

599ա *Փառք [ա]նհ[ա]ս, անսահման, անանշրպետ, միասնական Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Բաղում բաղձանաւք եւ բերկրաբեր սրտիւ եկի բերել մաւր իմոյ հաւատոյ, այսինքն քեզ, կաթողիկէ սուրբ եկեղեցի՝ ղնաղելի եւ զյոյժ ախորժելի, զգերապայծառ զայս հոգեւոր, զոր հոգեւոր վերադիտողացն աստուածարեալ հարցն՝ արանց աստուածասիրաց՝ աստուածեղէն իմաստութեամբ, Հոգւոյն Սրբոյ ձրիւք, իւրեւ զգործաւէր մեղու ամբարեալ հաւաքեցին ի հոգեւոր սննեակս զծաղկազարդ վարդապետութիւն աստուածաբանութեամբ, անշարժութեամբ հաւատոց, անարատ խոստովանութեամբ համագոյ Երրորդութեանն եւ բովանդակ տնաւրենութեան մարմնացելոյ բանին բազմութեամբ ճառիցս, որ ի սմա կան արձանագրեալք հաստատութեամբ հաւատոց, ընթերցուածոց դրութեան՝ Տաւնական տաւնից տէրունականաց, եւ խաչակիր վկայից եւ սրբոց առաքելոց եւ մարգարէից, բովանդակեալ ի ծննդենէն Քրիստոսի մինչեւ յաւարտումն բովանդակ տարւոյն, որ է կատարումն ընթեր-*

[1] *Հիշատակագրությունը Գրիգոր Ապիրատինն է, որին այդ ժամանակ պատկանում էր ձեռագիրը, և որի ձեռքով Նր գրված նաև Ներսես Շնորհալու կողմից Ավետարանը իրեն նվիրելու հիշատակարանը (Տես աստ՝ էջ 208)։*

*Սույն հիշատակարանից երևում է, որ Գրիգոր Ապիրատը «երկու քույր ուներ»,—գրում է Գ. Հովսեփյանը,—որոնցից մեկը՝ Շահանդուխտ՝ Ներսես Լամբրոնացու մայրն էր, իսկ մյուսը՝* Թագուհին՝ *Լամբրոնացու հորեղբոր որդու՝ Բակուրանի կինը։ Այս մի պատմական նորություն է, Պահլավունյաց ցեղի մեջ մի անձի հավելում, որ հիմնված է միայն այս հիշատակարանի վրա» (Յիշատակարանք, էջ 586)։*

ցուածոց տան սրբոց առաքելոցն, որդոցն Որոտման, լի եւ լի, հոյծ եւ պատարուն, լուսայեղծ եւ րաղմածաղով, որով բարգաւաճեալ լուսաւորին ընդհանուր ծնունդք որովայնի քո, այսինքն ազգն քրիստովնեութեան րոլոր սեռի, ոգեշահ հեղինակութեամբ, անկապուտ ճոխութեամբ ղմայլեալք ի մեծութենէ սորա նորոգին փառաց ի փառս եւ բում փեսայացեալ բանին գոհութեամբ հանապազ վերընծայեն ղաւրհնութեան։

Արդ, ղսորա բազմազան պայծառութիւնս տեսեալ աստուածազարդ եւ գերամաքուր հոգեւոր հաւրն Կոստանդեա, որ ըստ աստուածասիրութեանն եւ աղքատասիրութեանն նմանեալ հաւր մերոյ նախնոյն Աբրահամու՝ անարատ եւ անբասիր եւ անրամբաս քաղաքաւարեալ ի մարմնի, որ ի սուրբ աւազանին մերկացաւ զհին մարդն, այլ ամեննեւին ոչ աղտեղացուցեալ։ Սա յորդորական սրտիւ յոյժ ցանկացող եղեալ, ետ զսա գրել՝ ի յիշատակ իւր եւ ծնաւղաց իւրոց։ Տէր Յիսուս գրեսցէ զանուանս նոցա ի գիր կենացն յաւիտենից։

Արդ, եղեւ ղրաւ գրութեան սորա ի թուաբերութեանս Հայոց ի ՈԽԳ (1194), ի հայրապետութեան տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի, ի մանկական տիոց Տղայ կոչեցեալ, յեպիսկոպոսութեան տեառն Թեոդոսի, առ սահմանաւք անմատոյց բերդիս, որ կոչի Տիւրիկի, ի գեաւղս որ յորջորջի Նեզկուկ: Եւ կատարեցաւ ձեռամբ իմով տառապեալ եւ յոգնամեղ եւ ախմար գրչի Ստեփանոսի, որ յաւժարութեամբ սրտի եւ անվեհեր փութով գրէի, որ մեծաւ աշխատութեամբ գործ ի ձեռս առեալ ջանացայ եւ յաւարտումն ածի։ Եւ ես անարժան այսմ աստուածական
533բ սպասաւորութեան // ջան զանձամբ առեալ կատարեցի ոչ իմով զաւրութեամբս, այլ զաւրացուցչին իմոյ Քրիստոսի եւ առաջնորդութեամբ Հոգւոյն Սրբոյ։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ, զստացաւղ գրոցս զԿոստանդին եւ զՂաւկաս յիշատակի արժանի արարէք, որ բազում աշխատութեամբ ստացեցին ի պէտս գրոցս՝ ի սկզբանէ մինչեւ զկատարումն սորին, եւ ղայլ եղբարս իւր՝ զհոգեւորսն զամենեսեն միաբանեալ աշխատասէր, որ բարի կամաւք եւ քրիստոսական բաղձանաւք հաւանեալ կամաց սոցին ի սպասաւորութիւն սուրբ եկեղեցւոյ՝ զԳրիգոր, զՄարքեոս, զՊետրոս, եւ զկին ումն բարեպաշտ, որ եղեւ առաջարկութեան գրոցս անուն նորին Հռիփսիմէ՝ յիշեսջիք ի Քրիստոս։

Եւ զիս՝ զտառապեալս, զվերջացեալս յամենեսեան զՍտեփանոս գրիչ, եւ որ մի անգամ անձամբ աշխատեցան, եւ որք [նվի՞ր]ատուք եղեն զամենեսեան սրտի մտաւք յիշեսջիք ի Տէր։ Որք ընթեռնուք եւ լուսաւորիք ի սուրբ պատուիրանացս, զտառապեալ աշխատաւք սորա միաբան հայցեցէք ի Քրիստոսէ զթողութիւն մեղաց մերոց եւ հասանել անպատում պարգեւացն խոստացելոց ընդ ճշմարիտ աշխատասէրն, որ վասն Քրիստոսի աշխատեցաք։ Զի թէպէտ եւ մեր աշխատութիւնս սակաւ է առ այլ սրբոցն, սակայն յաւժարու//թենէ փափագին[1]

[1] Մի երկու բառ չի կարդացվում։

/// քանզի նոցայն առեալ բերէին, եւ ինքն Քրիստոս Յիսուս, որ ամենից պարգեւատուն է, զձեզ եւ զմեզ յիշեսցէ ի ժառանգութիւն Հաւրն երկնաւորի եւ Որդւոյն միածնի եւ Հոգւոյն Սրբոյ, այո, ամէն, եղիցի, եղիցի։

Տէր Աստուած ողորմեա Ստեփանոսի, որ զաւրինակն ետ, եւ գրեցաք։ Տէր Յիսուս գրեսցէ զնա ի գիր կենացն յաւիտենից, ամէն։

Բ

53բ Տէր Յիսուս ողորմեա ստացողաց գրոցս Կոստանդեա եւ Ղուկասու եւ գրչի իմում Ստեփանոսի, ամէն։

Գ

82ա Ո՞Հ, որ քունն նեղէր, ճանչն տանջէր, լուն խորովէր, գիրն ափրէր, սիրտս ցաւէր, հազար ու մի վնաս լինէր, և ո՞, որ մխիթարէր։

Դ

87ա Տէր Աստուած ողորմեա ստացողաց գրոցս Կոստանդեա, Ղուկասու եւ աշխատողի սորա, ամէն։

Ե

98բ Տէր Աստուած ողորմեա ստացաւղի գրոցս Կոստանդեա եւ Ղուկասու, եւ ամենեցուն, որք աշխատեալ են ի սմա եւ գրչի իմում մեղաւորի, ամէն։

Զ

140բ Նեղեալ եմ ի քնոյ սաստիկ և ահագին դողմամբ որպէ[ս]///։

Է

169բ Քրիստոս Աստուած ողորմեայ Թամարին հոգւոյն, ամէն։

Ը

276բ Ջստացաւղ գրոցս զԿոստանդին եւ զՍտեփանոս գրիչ։

Ժ

287բ Տէր Աստուած ողորմեսցի Յովհաննիսի հոգւոյն՝ յառաջ փոխեցելոյ [ի Քրիստոս][1], ամէն։

ԺԱ

300բ Տէր Յիսուս ողորմեա Կոստանդեա ստացաւղի գրոցս եւ ննջեցելեաց իւրոց, եւ մեղապարտ գրչի Ստեփանոսի, ամէն։

ԺԲ

311ա Տէր ողորմեսցի ստացաւղաց գրոցս Կոստանդեա եւ մեղապարտ գրչի, ամէն։

ԺԳ

420բ Յիսուս Քրիստոս բարեխաւսութեամբ ծնաւղի քո իսկուհոյ Աստուածածնի ողորմեա ստացաւղի գրոցս Կոստանդին եւ Ստեփանոսի, որ զաւրինակն շնորհեաց, եւ գրչի, ամէն։

[1] Խաչ է նկարված Քրիստոսի անվան փոխարեն։

ժդ

Ծաղկող՝ Պետրոս

Եւ ղծաղկաւղ սորա ըզՊետրոս եւ զմիաբանն իմ ըզԳրիգոր յիշեսջի Քրիստոս, եւ որ յիշէք, յիշեալ լիջիք և դուք առաջի Քրիստոսի, ամէն։

Եւ թէ վատիի գինով կամ խաղողսն մեղադրէի, զի անմար էի եւ ոչ էի, այլ արարեալ[1]։

Ո, դիր որ մնաս, ո ձեռք, որ հողանաս[2]։

---

[1] Վերջում գրված է հետևյալ ծածկագրությունը. «րոտ, իմակ, Նեմա, |ի|սա, չու Ռ (1000) Նեմաս։ Յուրաքանչյուր բառը պետք է կարդալ աջից ձախ՝ «որ կամի ամեն ասի, ոչ հազար ամէն»։

[2] Վերջում. «Քրիստոս Աստուած ողորմեա պարոն Ճոշլինի, որ ստացաւ զսա յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց, ամէն,. ամէն»։

## 286

### ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԵՄԱՑԻՈՅ ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ

*Երևան 975*

*Գրիչ՝* Մարկոս

*Վայր՝* Քարանձաւի անապատ
մերձ ի Սաղմոսի վանք

282բ *Փառք անսկզբանն՝ ըսկզբնաւորացս սկզբանն¹։*
*Փառք անվախճանին՝ վախճանաւորացս վախճանին։*
*Փառք անմահին՝ մահկանացուացս անմահութեանն։*
*Փառք անեղին՝ եղելոցս եղելութեան պատճառին։*
*Փառք ամենաւլաւրին՝ տկարացս ղաւրութեան։*
*Փառք միաբուն կատարեալ Սուրբ Երրորդութեանն*
*որի ի կատարածս Աստուած ղմեզ ամէն, ամէն։*

*Գերագոյն ղաանի սերն² Աստուծոյ երկնաւորացս ըստ գրելո առն իմաստնո, վասն զի պնդակազմ պատրաստ* Ե *զնիւթական զանկուած մարմնոյ ըստ պատկանաւորութեան վերնայգոյնդ խմբիցն։ Զի մարմնով մերձ գոլով առ նիւթականս երկիր եւ մտաւք տեսականաւն ներքին մարդոյն առ երկնաւին անցեալ հանդիսանա՝ պարս։ Եւ զամենայն աղցաւոր կրիւքս զներքնովքս եւ ղարտաքնովք քամահեալ ղյաղ-*
283ա *թանակն առնու երանութեան, ոմանց գոլով ի աե//սլարանի մարդկան խումբ՝ հիացուցանող եւ սառս[ռ]ալի առննի ծաղր արարեալ զնոքաւք առաջի նկարեն աչաց զահաւորն իշխանաց սնոտեաց, ղմարմինս իւրեանց ի խաչ հանելով չարչարանաւք ընծայեն Տեառն։ Եւ այլք ոմանք ըստ նոսին ի մանկութեան տիոց մինչ ի ծայր կենաց ընդդեմ ախտից բնաբոյս մարտ եղեալ և արկածից անբարեսերն վիրագի, ընդ բազմագլուխ վիշապին կռուելով ղերկասիրութեանն ջան առաքինացան քաջապինդ հաւատով, յուսով եւ սիրով։ Ի սույն սիրո Աստուծոյ շաղապատեալք ի սբաղմունս ատեացս կապեալքն ի կին եւ յորդիս եւ ի սորին խտտղական վայթեթս յանկարծակի իբրու ի քնո սգաստացեալք, յետս թողլով զամենայն ընթացան զկնի կոչման Աստուծոյ։ Եւ զանգամացեալն առ ինքեան ախտ կտրելով, լաւագոյն համարեալ մտանել անակն, մտանել ի կեանս, որ կտրումն նորին մանաւանդ տեսութիւն գործե, եւ առաւել լուսաւորութիւն։*

283բ *Վասն որո ի սորին // խարուկի ջերմութեան բորբոքեալ այրս այս* Յոհաննէս *կրանաւոր, որ ի մանկական տիւ.ց սկսեալ, որ եւ սնեալ*

¹ *Գ. Հովսեփյանը Յիշատակարանքում քաղել է Մատենադարանի № 666 ձեռագրից (գրված 1709 թ. Բջնիում), որը ընդօրինակված է սույն՝ № 975 ձեռագրից։ Հիշատակարանի սկզբում գրված է «Ջսորին օրինակի բուն յիշատակարանն է, յոյժ պատշաճ համարեալ գրեցաք»։*

2. *Գրիչը համարյա ամենուր Է-ի փոխարէն գրում է* Ե։

ի վանս, որ կոչի Սաղմոսի, ընդ որ հոսի գետ Քասախ, առ ոտն հոգեւոր
հաւր եւ սնուցողի սորա եւ մեր, նոյն անուանակիր Յոհաննէս կոչեցեալ,
մականուն Մունջ, առաջնորդ շինող անապատիս, այր զարդարեալ եւ ի
գործս առաքինութեան ամենայն պատուիրանապահութեամբ, այր ա-
նխինչ, անստացուած եւ վրէժխնդիր յաւրենս Տեառն, զոր Տէր Յիսուս
դասեացէ զնա ընդ սուրբս իւր, եւ աղաւթիւք սորա եւ ամենայն սրբոց
իւրոց պահեսցէ զանապատս եւ զընակեալքս ի սմա յամենայն վրդով-
մանց չարին ամէն։

Ի սորա մասին բարեաց արդիւնացեալ յառաջասացեալն Յոհան-
նէս, որ եր մաճակալ եւ ժիր մշակ տեղոյս, ցանկացող եղեալ այս աս-
տուածաշունչ տառի, որ շնչէ յականջս յեկեղեցւոյ, եւ կոչէ ի կոչումն
կենաց, զի ընծաեցուսցէ Աստուծոյ Հաւր, ստացաւ զսա ի պայծառու-
թիւն եկեղեցւոյ։ Զոր ըստ նախատեսութեան Հոգին Սուրբ Աստուծոյ
284ա իբր գործեալ առնն Աստուծոյ երանելեաւ// Կե(ւ)րղիւ հնչեաց հանուրց
ազգի մարդկան, որ վարժարան եւ դաստակ գոլով իբր տղայոց դաս-
տիարակելով ի մանկութենէ, այսինքն յանգ<գ>իտութենէ ճըշ-
մարտութեանն Աստուծոյ, Երկնէ աւագանաւն եւ առեալ սնուցանէ
աւրինաւք եւ մարգարէեւք, տեղեակ կացուցանէ յաւիտենական ան-
սկզբնութեան և մի իշխանութեան Սուրբ Երրորդութեանն մինչ ի կա-
տարել գիտութիւն փրկութեանն Քրիստոսի զարարածս եւ զմիւսանգամ
գալուստ Փրկչին զդատաստանն եւ զյաւիտենականն պսակ եւ կամ տան-
ջանս ընդունել որք զինչ վաստակեցին, եւ կատարեալ զամենայն մար-
մին եկեղեցւոյ յայբ կատարեալ կանգնէ, ստացաւ զսա անսպառ եւ յիշա-
տակ բարեաց իւրն եւ ծնողաց իւրոց։

Եւ գծեցաւ սա ձեռամբ իմ՝ յետին, անարժան եւ մեղապարտ Մար-
կոսի, զի եի անարհեստ յիմաստութիւն եւ ի գիծ, եւ տկար մարմնով,
այսինքն մի ոտանի, որ հոգով երկու ոտս կաղամ անբժշկելի, որ ի
հարկէ սորա եւ յաւժար կամաց իմոց գրեցի փանաք գրով, յընգիր
284բ //եւ յազնիւ աւրինակէ, զոր Սարկավագ քահանա, սպասաւոր սուրբ
կաթողիկէի մեծի որ յԱնի, ի բազմաց աւրինակաց, ի ձեռն եւ այլոց
գիտնականաց ղաւկտակարան առեալ հաւաքեաց ի մի դիր, եւ շարա-
գրեաց իւրով ձեռամբ ի դիւրալուր մտաց եւ գիտութեան, զոր սխա-
լեալ թիւրեցին անհանճարութեամբ գրիչք, որ միայն ողորկութեան գրի
ուշ եղեալ եւ ոչ ստուգութեան մտաց եւ բանից, ըստ աւրինակի չար
խոհակերի, անընդել գոլով տրոհութեանց։

Գրեցի զսա յանապատս Քարանձաւի, որ է մերձ ի վանս Սաղմոսի
ըստ չափոյ խարմանի ճանապարհի։ Եւ արդ հայցեմք մեծաւ մաղթա-
նաւք յամենեցուց ի ձենջ, որք լուսաւորիք եւ շահաւետիք ի սմանէ, յի-
շել ի սուրբ յաղաւթս ձեր, եւ ասել. Քրիստոս որդի Աստուծոյ, յորժամ
գաս հայրական փառաւք, թող զյանցանս ստացողի սորա Յոհաննիսի
եւ ծնողաց իւրոց ամեն, ամէն։

Արդ եւ ես տառապեալ գծողս հայցեմ հաննել մասն ի փշրանաց
եւ յիշել զիս, եւ զեղբարս իմ, եւ ծնողս, եւ զամենայն միաբանեալսն
285ա ը//նդ մեզ՝ հոգեւոր եւ մարմնաւոր մասամբ, եւ զՅովաննէս սրբասէր

քահանա, որ զընդրեալ գաղափարս եա, որ ի վանիցն Յովհաննու, յի-
շեսջիք ի Քրիստոս։

Ի ՈԽԴ (1195)։ Իսկ ի սկմանէ ի մեզ ծագման քաղցրութեանն Աս-
տուծոյ զլսյս ծանաւթութեան իւրո, բովանդակին մինչեւ առ մեզ ամք
ՊԾԵ եւ վերադիտողք այսոր կարգի ԿԵ, ի փառս Աստուծոյ։

Արդ մեզ, որ մաղթեմք, եւ ձեզ որ կատարեք տացէ Աստուած
զկենաց բարբառն եւ արժանաւորս արասցէ մամսին սրբոցն ի լոյս։
<Անտես արասցէ> Անտես արասցէ զյանցանս մեր եւ գթասցէ ի
մեզ առատապարգեւն, փրկելով յաստիս ի վնասից ոգւոց եւ յանձակ-
մանց անաւրինաց, ապրեցուսցէ զեկեղեցի, բարձրացուսցէ եւ հաս-
տահիմն արասցէ, սպասել արդար վաստակաւք եւ յուսով մեծաւ Քրիս-
տոսի Փրկչին մերո, նմա եւ ընդ նմին Հաւր եւ Հոգւոյն փառք այժմ
եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

բ

1բ Ի թվ. ՈԽԳ (1194), զՈվհաննէս ստացիչ եւ զմեղապարտ գրիչ եւ
ծնողսն մեր յիշեսջիք ի Քրիստոս աղաչեմ։

Վա՛յ քեզ սատանա, որ ասեիր զոր եւ ոչ բարի, եւ բարի եղեւ կա-
մաւքն Քրիստոսի։

գ

23բ Զստացող գրոցս զՅոհաննէս եւ զծնողս իւր յիշեսջիք աղաչեմ։

դ

169բ Աւա՜ղ վատութեան որակիս, թերեւս ողորմեսցի արնողին[1]։

ե

Տաղկող՝ Գրիգոր դեղիչ

2ա Ջխաչիկ պատուական քահանա յիշեցեք ի Տէր, որ առիթ եղեւ դե-
ղելոյս, և զԳրիգոր դեղիչ սորա, եւ զՄխիթար, ամեն[2]։

զ

95բ Յիշատակ է Սաղմոսավանքին[3]:

287

ԺԱՌԸՆՏԻՐ

Երևան 3777

Առաջին գրիչ՝

ա

21բ Զստացող սորա զՄարկոս կուսակրաւն քահանա յիշեսջիք ի Տէր,
ընդ նմին և զաղկաղկ գծողս։

---

[1] Այսպիսի մանր հիշատակություններ կան նաև 37բ, 112բ, 186բ, 212ա էջերում։

[2] Գրված է կիսախորանի մեջ։

[3] 288ա էջի ստորին լուսանցքում, երեք տողի վրա, գրիչը թողել է հետևյալ ծածկա-
գրությունը. «յ յաւասանւսրիլ փցնատշր
ամյմեն աաաղաաեիզրաին
աւշականոկուրատորա»

Բ

96բ Ստացող սորին զՄարկոս կուսակրաւն քահանա յիշեսջիք, ընդ նմին և զծրողս՝ ծերացեալ ալեաւք և մեղաւք։

Գ

Գրիչ՝ Մխիթար

135ա ԶՄարկոս եւ զհարազատ եղբայր իւր զՄխիթար յաղաւթս յիշեսջիք, եւ զբազմամեղ գծողս զՄխիթար ղի կարաւտեմ սուրբ աղաւթեցւ Զի սաստիկ վիրաւորեաց զիս դեւն։

Դ

141ա Զստացիչ գրոցս զՄարկոս յաղաւթս յիշեսջիք։

Ե

173բ ԶՄարկոս ստացիչ գրոցս, եւ զՄխիթար եղբայր իւր, եւ ղծնողս նոցա յիշեսջիք ի Քրիստոս, ընդ նմին զանպիտան գծողս զՄխիթար:

Զ

204բ ԶՄարկոս ստացիչ գրոցս, եւ ղհարազատ եղբարք իւր զՄխիթար եւ զՅոհաննէս, եւ ղծնողս նոցա վասն Տեառն յիշեսջիք ի Քրիստոս, ընդ նմին զախմար գծողս զՄխիթար, եւ դուք աւրհնեալ եղերուք ի Տեառնէ, ամէն, ամէն։

Է

Գրիչ և ստացող Մարկոս

107բ Զըստացող գրոցս և զգծող ճառիս զՄարկոս յիշեսջիք բարեխաւսութեամբ սուրբ Հայրապետիս, աղաչեմ, և ղծնողսն մեր։ Ցայսմ աւուր որ կատարէք զյիշատակ սուրբ Ցակոբիս, ղԳ աւր պատարագն ի յիշատակ մեզ, և թէ պակաս հանդիպի, մին այլ աւրն լմնեսցի, ղի կատարաւղքն աւրհնեսցին։

Ը

173ա Ո՞վ սուրբ ժողովք, ասացեք. Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ սրբոյս ողորմեա գծողաց սորա Մխիթարա և Մարկոսի մեղապարտի, ամէն։

Թ

192բ Զմեղապարտ գծողս Մարկոս, եւ զհարազատ եղբարք իմ զՄխիթար ե[ւ] զՈհաննէս՝ զփոխեալն ի Քրիստոս, եւ զամենայն ն[ն]ջեցեալսն մեր յիշեսջիք ի Քրիստոս յոյսն մեր՝ բարեխաւսութեամբ սուրբ կուսանացս...

Ժ

212բ Զսաացողքս եւ ղծնողսն մեր յիշեսջիք ի Քրիստոս բարեխաւսութեամբ սուրբ վկաիս, և Տէր ղձեզ յիշեսցէ։

ԺԱ

260բ ...Քրիստոս աստուած զյանցանս Մարկոսի, եւ եղբարց եւ ծնողաց

իմոց, եւ զհամեստ քեռն իմո Սառաի, որ տղա հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս...

ԺԲ

287բ Ով նահատակասերք, զստացողքս եւ զծնողսն մեր յիշեսջիք ի Քրիստոս, աղաչեմ, եւ զերջանիկն Ստեփանոս ստացաւղ աւրինակիս մինչեւ ցայս վայր, որ է Սուրբ Սարգսին, եւ որք մեզ շնորհեցին, որոց տացե Տէր ողորմութիւն յիշելեացս եւ յիշողացդ յաւուրն յետնում, ամէն։

ԺԳ

Չր Յետինքս ի կրաւնաւորքս եւ առաջինքս ի մեղաւորքս՝ ես Մարկոս եւ Մխիթար, ստացաք զգիրս զայս բազում աշխատութեամբ, զի գերեցին զմեզ եւ ալափեցին եւ տարան ի Դուին, եւ զմասն ի սմանէ ընդ մեզ, զոր դրամագին արարեալ, զարձուցեալ կատարեալ կազմեցաք ձեռամբ մերով եւ տուաք ի Սաղմոսավանք՝ յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց, ի դուռն եկեղեցեացս Սուրբ Գրիգորիս, Աստուածածնիս, Կարապետիս եւ Գեորգա զաւրավարիս։

Եւ կատարացեն ամ յամէ ի տարին Գ աւր ժամ, ի տանի Սուրբ Յակովբին։ Որք կատարեն աւրհնեսցին, իսկ որք անփոյթ արասցեն, աւա՜ղ, զի պատժեսցին։ Մանաւանդ, որ եկեղեցապանն է, կատարեսցէ, զի մի դատապարտեսցի, եւ զժամն վաղ զարթուսցէ, զի վճարեսցին մեծ ճառք, որ ի սմա։ Եւ եթէ ոք հեռացուսցէ զսա ի Սաղմոսավանաց, զինչ եւ է պատճառաւ, մասն նորա ընդ Յուդայի եղիցի, եւ ընդ Կաենի, եւ նզովք զաւձին ժառանգեսցի։

Ձեղբայրն մեր Քառասունքն կրաւնաւորական կարգաւք պատուեալ, որ զնիւթ կազմութեան սորա եբեր ի Տփխեաց, եւ զաւղ եւ կոճակ՝ յԱնո, յիշեսջիք ի Քրիստոս, եւ Տէր յիշողացդ ողորմեսցի, ամէն։

ԺԴ

313ա Այս գիծ առաջի[ն] դարձի գերութեան մերոյ, զոր գերեցաք յաւտար ազգաց։

ԺԵ

319ա Մինչ յայս ճառի էի, յամսեանն հրոտից, որ աւր Ա (1) էր, եւ առաջին ծնընդեան պահոցն, էհաս բարկութիւն սաստիկ յԱստուծոյ ի վերա մեք յաղագս ծովացեալ մեղաց մերոց, զի արք <ամբ>ամբարիշտք չարախաւսեցին զմենչ ի Դուին, եթե գողի հաց են տուեալ, եւ յանկարծ էհաս զաւրք հեծելոց ի վերայ մեր, որ եաք հինգ հոգի բնակել ի Ե (5) խցի, ի փախուցեալք յաշխարհի աբաղմանց, բնակեալ յանապատ, ոչ գործելով զգործ անապատի, հալածեալք եղեաք։ Որո ձերբակալ արարեալ զՄխիթար, զԿիրակոս, զՊաւղոս, զՍտեփաննոս յիւրաքանչիւր խցկան, զի ժամ էր ձմերային, եւ զամենայն կենաց մեր զպատճառ յաւարի առեալ տարան ի Դուին, զիս միայն թողլով՝ յաղագս տկարութեան իմո, զի Ա(1) ոտս կարճեալ էր, եւ ոչ կարեի ընթանալ։

Եւ տարեալ զնոսա ի տեղի պատուհասին, զի ի փայտ ելանիցեն։ Այլ

գթածն Աստուած, որ ոչ խպառ բարկանա, հասեալ յաւգնակ[ան]ու-
319բ թիւն, դարձոյց յայնմ չար խորհրդոց, բանդարգեալ արարեալ խ//ոշ-
տանկևին բազում տանջանաւք ի[ն]չս խոստանալ, ամսաւրեա աւուրբք
տանջեալք Կ (60) դահեկան ղլուխ կապեալ։ Զոր բարեպաշտ աստուա-
ծասէր ամենաւրհնեալ որբ եւ այրի կին մի Մարեմ եւ Տիկին անուն,
նմանեալ մաւրն Աստուծոյ, որով ղանուանակոչութիւնն ունի նաեւ
զվարս նորա, որ զայն աւուրս դարմանէր զնոսա ի բանդին, որո
տացէ Տէր հարիւրապատիկ եւ զվարձս նորա ի գալստեանն իւրում,
ամէն։ Զոր եւ զայս մասն դրած դերի առեալ վարեցին զկնի։ Զոր
եւ իմ՝ Մարկոսի տկար մարմնով հետամուտ եղեալ ի նոյն դղեակն, եւ
ամսաւրեա աւուրբք պանարն (խ[տ]ացեալ, դրամագին արեալ զայս
եւ գաւրինակ սորին, եւ այլ եւս գրեան, դարձուցի բազում նեղութեամբ։
Արդ՝ աղաչեմ ղամենեսեան զմեզ եւ ղյիշեցեալքս ի մենջ, եւ
ղծնողսն մեր, յիշեաջիք ի Քրիստոս և Տէր ձեզ ողորմեսցի։

ԺԳ

438բ Ով աստուածընկալ քրիստոսագաւր փայտ սուրբ, յորժամ ծագիս յարեւելից եւ պայծառացուցանե։ մինչ ի մուտս արեւու, յիշեա զեղկելի եւ զվարեալ հողմով մանկութեան եւ անկեալ ի վիհս-կորստեան զողորմելի անձն գծողիս Մարկոսի, զոր կանկնեալ աղաչեմ բարեխաւսութեամբ սուրբ եղբարցս որք լսեն, և ասեն, սուրբ զենարան, ողորմեա գծողի եղբարց եւ ծնողաց սորա ամէն, եւ նոյն Քրիստոս ձեզ ողորմեսցի։

ԺԵ

479բ Զպատուական եղբարն մեր Թաւմա, որ ղաւրինակս ետ եւ զմեղապարտ գծողս եւ ղծնողսն մեր, յիշեսջիք ի Քրիստոս, բարեխաւսութեամբ սուրբ Քառասնիցս, եւ նոյն Տէր ձեզ ողորմեսցի։

ԺԸ

Ծաղկող

192բ Զմեղապարտ ծաղկողս յիշեա, աղաչեմ։

## 288

## ՃԱՌՔ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀԱՄԱԲԱՐԲԱՌ ԱՒԵՏԱՐԱՆԱՑ ԵՓՐԵՄԻ

Ալիշան, Հայապատում, էջ 383

Գրիչ՝ Խաչատուր

Վայր՝ Հաղբատ

Ի թուականութեանս Հայոց ՌԽԴ (1195)-ից յանկ ելեալ կատարեցաւ աստուածաբուխ իմաստութիւն սրբոյ հաւրն Եփրեմի՝ Մեկնութիւն Աւետարանի համաբարբառ, եւս և Ճառք հոգեպատումք, զոր շարակարգեալ ի շահ աւգտութեան մանկանց եկեղեցւոյ։ Ընդ որս հայցեալ ի բազմաբեր բարեացն ամբարեալ ի սմա պտուղս, և որպէս աւանդ

հայրենի յաղագս որդոց յառաջապահեստ արարեալ, ղանձնալ և եղեալ սուրբ ե արդիւնակատար վարդապետ ոմն Անանիա, ժառանդողաց տանս Հաղբատայ, և ի լուսաւորութիւն հանուրց աշխարհի։

Արդ ես Խաչատուր այր ոմն անտոհմիկ, թափառական և աղքատ, սուտանուն աբեղայ, դիմեալ ի հրահանգս վարժից առ ոտս իմաստուն և սրբասնեալ վարդապետաց, դտեալ ապա իմ զայս աստուածատուր գանձարանս առ մեծարգի և իմաստուն վարդապետին իմոյ Դաւթի, և խնդրեալ շարադրեցի անարուեստ ե անվարժ գրով, զի սէր փափագանցս ստիպեալ հարկեցոյց զիս և կարի առաւել յորդորեաց, մանաւանդ համբաւ իմաստիցն Եփրեմի, որ ոչ միայն ինձ այլ և ամենեցուն է ցանկալի՝ առաջնոցն և վերջնոց, որ ե այժմս են։ Իսկ եթէ կորովութեամբ և /// ութեամբ մտաց ե ծաղկոց բուրաստան /// շընչմամբ հոգւոյն որպէս անաւսր և քաղցր ///ագով հովահարեալ զովանան և պար[արին քիմք] նոցա, և որ ծանծաղութեամբ և վեր վեր [թեթեւա]մտութեամբ մտանէ՝ սնամահակ ելանէ/// ոչ այլ ուրեք այլ ինքեան զինքն։

Բայց [գրեցաւ] գիրքս այս ի գաւառիս Ձորոյգետ, ի վանքս Հաղբատ, ընդ հովանեաւ Սուրբ և կենդանարար մաւրս լուսոյ կաթողիկեի և ամենայն, որ ի նմա սուրբք իցեն, յեպիսկոպոսութեան տեառն Յովհաննիսի, և ի մահուան տեառն Գրիգորի Հայոց կաթողիկոսի, ի վարդապետութեանն Դաւթի, Պետրոսի, Իգնատիոսի, և զկնի մահուան Վարդանայ վարդապետի, յորում ամի գերեալ ի Վրաց գաւառն Կարնոյ, և վանաւրայն յաւերումն, յառ և ի գերութիւն մատնեցան։

Յայսմ ժամանակի ես Խաչատուրս տկարացեալ և խելայեղեալ՝ գրեցի զգիրս զայս խոշոր և անյարմար՝ յանպիտան նիւթից։ Եւ արդ յերեսս անկեալ աղաչեմ չլինել մեղադիր, այլ յիշել սրտի մտաւք և ցաւակցաբար զիս և զվարդապետն իմ Դաւիթ, որ զաւրինակս շնորհեաց, և զծնողս իմ և եղբարս։ Եւ որ յիշէ, յիշեսցի ի Քրիստոս, հանդերձ Հարբ և Սուրբ Հոգովն, որում փառք յաւիտեանս։

Ո՜վ եղբայր, որ կարդաս, գիտեմ որ մեղադրես, բայց [հ]աւատաս ու տեսանես որ /// յայս [չափս] կարացի։ Թէ դու լաւ ես, նիստ և այլ [գրեա]. բայց, վասն քո հոգոյդ, ինձ մի մեղադրես։

...Աւարտեցան ճառք աւետարանկանք խորհրդաւորք Աբբա Եփրեմի, ի փառս ամենասուրբ Երրորդութեանն, յաւիտեան, ամէն։ Զարդիւնակատար սուրբ և ամենաերջանիկ վարդապետն Վարդան՝ զաստուածասէր հոգին, ի մանգութենէ մինչեւ յաւագոյթ ի Քրիստոս միացեալ, զՀոգոյ Սրբոյ բնակարանն, զլցեալն ամենայն տեսակաւք բարութեանց, զզարդարեալն ամենայն առաքինութեամբ, զապաւէնն, տնանկաց, զվերակացուն աւտարաց, զսիրողն աղքատաց, զբժիշկն հոգոց, զհայրն որբոց, զպարծանսն քրիստոնէից, զլուսաւորիչ եկեղեցոյ, զհովիւն բանաւոր ոչխարաց, զհոգին աւրհնեալ, զարժանին Աստուծոյ, զդերազանցեալ քան զգովութիւն, զփոխեալն ի կենաց և զհանգուցեալն ի Քրիստոս, և զԳրիգոր վարդապետ՝ նորին հարազատ, և զԽաչատուր որբացեալ աշակերտ յիշեսջիք յաղաւթս, ո՛վ ընթերցողք սուրբ ման-

կումք Նոր Սիովնի և որդիք Վերինն Երուսաղէմի, և ուսումնականք և աշակերտեալք բանին Աստուծոյ։

## 289
## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀԱՄԱԲԱՐԲԱՌ ԱՒԵՏԱՐԱՆԱՑ ԵՓՐԵՄԻ

*Ալիշան, Հայապատում, էջ 423 (լուսանկար)*

*Գրիչ՝* Ներսէս Լամբրոնացի

*Փառք և գոհութիւն նմա, որ սկիզբն է և կատարած, ի նուաստ վաստակաւորէ* Ներսիսէ:

*Տառապեալ* Ներսես *վրիպեալ յառանձինն խոկմանէ վերակացութեամբ* Տարսոնի *քաղաքին և որ ի նմա մեծի եկեղեցւոյն պաշտմամբ, գրաւսանս իմոյ զբաղմանցն ստացայ զվաստակ գրչութեան ի մատեանս աստուածային, լեզուաւ բաղում անգամ ղքաղաքականն լնլոզ Հոէս, և հիւսմամբ ձեռին և մտաց աստ ղնգերելով՝ ղբնականն և զկրթականն խոկմամբ յաստուածայինս կերակրելով ղոգի։ Ո՜հ, ո՜հ, թերեւս ըստ մեծ Քրիստոսի գթութեանն պատահեցայց ի ղերկնից արքայութիւն բոնաբարողացն ի թու[ին] ՈԽԴ (1195)։*

## 290
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա 24, Տէր Ավետիսյան, Ցուցակ էջ 36*

*Գրիչ՝* Կոստանդին

*Վայր՝* Կիլիկիա

ա

295բ *Գրեցաւ տիեզերակեցոյց փրկական սուրբ Աւետարանս, յամի թուականութեանս Հայոց ՈԽԴ (1195), ի հայրապետութեան տեառն* Գրիգորիսի *տանն* Թորգոմայ *դիտապետի, եւ յեպիսկոպոսութեան* Կիւլիկեցւոց *նահանգիս տեառն* Ներսիսի, *եւ յիշխանութեան մեծանուն սեբաստոսի* Հեթմոյ, *որ տիրէ անմատչելի ամրոցին* Լամբրաւնի. *որոյ հարազատ եղբայր սորա մեծանուն իշխան* Ապիրատ, *որոյ փափագ ըղձիցն յաստուածայինսն և ի հուր սիրոյն միշտ և հանապազ բորբոքէր աւրստաւրէ աճմամբ, խորհուրդ բարի ի միտ իւր արկեալ, ետ գրել ղլուսաեղձ սուրբ մատեանս աստուածային, ի վայելումն կենաց իւրոց, և յետ վախճանի յիշատակի իւր և ծնաւղաց իւրոց։ Արդ՝ աղաչեմ զկենարար մարմնոյ և արեան տեառն նուիրող քահանայապետսդ և զքահանայսդ և զնորին փառաց պաշտանեայ սարկաւագսդ, ի կալն ձեր ի խորհրդական ժամուն բարեզարդութեամբ մարմնոյ և մաքրութեամբ հոգւոյ առաշի Աստուծոյ յորում հրեշտակ լինիք առ ունկնդիր ժողովուրդսն, ի սմա աւետեացն բարձրաձայն ընթերցմամբ, ղբանիցս Աստուծոյ*

զարդարող սիրով և հաւատովք որակութեամբ նիւթոցս, զբարի իշխանաց իշխան Ապիրատ, անմոռաց պահեցէք ի կարգ յիշատակացն, որ ի սուրբ պատարագն, զի զոր սովաւ աւետարանեալ երկնային աւետեացն խոստումն շնորհեսցէ Քրիստոս և ուր ինքն է՝ անդ և զսա, որ է հաւատարիմ՝ պաշտաւնեայ իւր ընկալցի տեսանել զփառսն իւր և փառաւորիլ ընդ նմա ի մասն վիճակի համապատիւ սրբոցն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Եւ ես գրիչս Կոստանդին աղաչեմ զտեարսդ իմ և զեղբարսդ, որք վայելէք ի սմա, ղնուաստութեանս իմոյ, սպասաւորութիւն աստուածային մատենիս աստուածապարգև արհեստիւս յիշատակի արժանի արարէք, զի դտից ողորմութիւն ի Քրիստոսէ։ Եւ որք յիշէքդ և դուք յիշեալ լիջիք յողորմութիւնն Աստուծոյ։

Բ

Գիրք յիշատակի ննջեցելոց[1]:

Յամսեան մայիս ԺԷ (17) հանգեաւ ի Քրիստոս մեծանուն սեբաստաւսն Աւշին, հայր սեւաստաւսի Հեթմոյ, տեառն Ներսէսի, Ապիրատի, Շահինշահի և Գրիգորի, և քուերց սոցին՝ Մարեմ թագուհէ[2], Թագերի, Շուշան թագուհէ և Տալիթայի:

Յամսեանն ապրիլի ԻԶ (26) հանգեաւ ի Քրիստոս մայր սոցին Մարիամ կրաւնաւոր՝ ամենայն առաքինութեամբ զարդարեալ։

Յամսեանն յունիս Բ (2) վախճանեցաւ ի Քրիստոս Մարեմ թագուհի եւ ի մայիս Ե (5) Շուշան թագուհի՝ քորք սոցին։

Յամսեանն ապրիլի ԺԸ (18) փոխեցաւ ի Քրիստոս եղբայր սոցին Գրիգոր, որոց ողորմեսցի Քրիստոս։

[1] Գրված է կարմիր թանաքով։
[2] Գրված է լուսանցքում «քուերց սոցին» բառերի դիմաց։





## 291

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 948

Ժողովածուի կազմող և
գրիչ՝ Յովհաննէս

ա

170բ Փառք Սուրբ Երրորդութեանն, Հաւր եւ Որդւոյ եւ Սուրբ Հոգոյն, ամէն։

Ի գեղեցիկ եւ յանուշահոտ եւ ի քաղցրահամ բուրաստանաց ի մի գումարելով՝ գրեցի զհրաշապատում գիրս վասն կարեաց, առ ի յագեցումն քաղցելոց եւ ի զովացումն ծարաւեաց, ըստ այնմ՝ Եթէ ոչ սով հացի, եւ ոչ ծարաւ ի ջրոյ, այլ սով ի լսելո զբանն Տեառն։

Արդ, մեծաւ յուսով գրեցի ես՝ Յոհաննէս, աղաչեմ զամէնեսեան, որք աւգտիք ի սմանէ, յիշեսջիք ի Քրիստոս զիս, եւ զծնողսն իմ, եւ զեղբարսն իմ, եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս։

Ի թւիս ՈԽԵ 1196։

բ

231ա Ես՝ Յովհաննէս անարգս ի քահանայս և յետինս ի կրաւնաւորս ցանկացող եղեալ, ախմար արուեստիւ հաւաքեալ զծաղկաքաղս զայս, որպէս զի ընթեռնելով զսոսա, յիշեսցեն անմոռաց առաջի Քրիստոսի զիս, եւ զծնողսն իմ, եւ զեղբարսն, զի թերեւս գտցուք ողորմութիւն յահեղ աւուրն դատաստանի ի բարերարէն Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Աղաչեմ, զձեզ սուրբ հարք եւ եղբարք ի Քրիստոս, յիշեսջիք անմոռաց յաղաւթս ձեր զհարազատն իմ զՍմբատ՝ տարաժամ՝ երթեալն առ Քրիստոս։

Ի թւիս ՈԽԵ (1196) գրեցաւ[1]։

գ

145ա ԶՅովհաննէս գրողս եւ զհայր իմ զՍարգիս բժիշկն յաղաւթս յիշեսջիք, եւ Աստուած զձեզ յիշէ։

դ

214ա Աստանաւր ի Սուրբ պասեկիս յիշեսջիք զՅովհաննէս եւ զծնողսն իմ ի Քրիստոս։

---

[1] Այս և նախորդ հիշատակարանի թվականները ցույց տվող նախադասությունները գրված են այլ թանաքով։

Ե

169բ *Աստ պակաս է երկու աւետարանիչքն, որ գտանես, գրէ*[1]․

Զ

176բ *զզ.աա, զերկու նշանագիրն հետ իրար որ չփոթիս՝ ոչ գիր*[2]։

Է

218բ *Ավա՜ղ մտացս շարժման, վասն զի ոչ տա թոյլ հանգչել*։

Ը

Այլ գրիչ

276բ Զ՚Ջաւալին յիշտյ ի Քրիստոս և ծնողս իւր։

---

[1] Խոսքը բնագրի Ղուկասի և Հովհաննեսի մասին հատվածներին է վերաբերում։

[2] Գրականիչները այստեղից զույգ-զույգ տառերով է նշանակել։ Զգուշացնում է, որ, եթե կխանգարեն դրանք, ընգօրինակելիս կարելի է կենտ-կենտ տառերով նշանակել։

ՌԽԶ 1197

## 292

## ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌԱԿԱՑ

*Երևան 4211*

*Հեղինակ՝* Ներսէս Լամբրոնացի

*Վայր՝* Սկեւռայ

229բ *Սկսեալ ի քննութիւն աստուածախաւսն իմաստիցս երեք ամաւք յառաջ քան զայս, որ է ՌԽԶ (1197) թուական, ի հիւանդոտ մարմնոյ եւ ի ծանրութենէ հոգոյ դանդաղէր միտք նուաստութեան մեր քննել և ձեռն ի գրելւ Յայսմ ամ գնացեալ իմ ի* Կոստանդնուպալիս, *եւ խնդրեալ ի նորին պատրիարգէն, զոր առ նոսին տեսութիւն Առակացս եւ Յոբայ, եւ ընթերցեալ տեղեկացայ, զի որ ի մէնջ պտղաբերէր շնորհ Սուրբ Հոգոյն, ոչինչ նուաղէր յայնմանէ, եւ նախաքննեալն համաձայնէր եւ ոչ աւտարանայր։*

230ա *Եկեալ ի յարկս իմ երկրպագու//թեամբ գոհացայ զԱստուծոյ եւ քաջալերեցայ ի քննութիւնս՝ տառապեալ հողս* Ներսէս, *որ ի* Տարսոն, *անուամբ այցելու, եւ ի* Սկեւռայ *աւթեվանիս բնակեալ ի հանգիստ։*

## 293

## ԲԱՆՔ ՆԵՐՍԻՍԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՏԱՐՍՈՆԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ

*Երևան 3276 (ԺԷ դ.)*

*Ստացող՝* Ներսէս Լամբրոնացի

*Վայր՝* Կոստանդնուպօլիս

73բ Ներսէս *նուաստ ըստացօղ մատենիս, գրչութեամբ որդւոյ իմոյ* Գրիգորիսի, *ածի զսուրբ տառս ընդ իս ի* Կոստանդնուպօլիս, *ի թվիս Հայոց ՌԽԶ (1197), և աստ նամակօքս արարեալ խօսակցութիւն, գտաք զսոսա անծանօթ ի սոցանէ թանձրաբարբառք և հրէական կամօք ընդ նիւթս կապեալ, որք ոչ ախորժեն ծառայել Աստուծոյ նորոգութեամբ հոգւոյն, այլ հնութեամբ գրոյն և ստրջացեալ ի հոգևոր կամս մեր, դարձաք յիմաստախոհ յուսոյ սոցա ամօթով։*

*Նամակքն այս են. Գիրք Երեմիայի և Գերմանոսի, և Փոտայ թուղթքն, որ ի Հայք վասն հաւատոյ, և Աթանասի և Մանեա։*

*Ռկէ* **1198**

## 294
## *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ*

*Ալիշան, Հայապատում, էջ 441—448*

*Գրիչ՝* Յակոբ
*Վայր՝* Հռոմկլա

ա

*Զպարծանս բնաւին մանկանց Նոր Սիովնի և զծաղիկ եկեղեցւոյ և զպսակն ամենայն գիտնական և վարժ վարդապետաց, զերեքերանեանն զտէր* Ստեփաննոս, *մականուն* Տիրացու, *մեծաւ թախանձանաւք և գովասանական նամակաւ ի հոգևոր տեառն* Գրիգորիսէ *կոչեցեալ լինէր ի* Կլայն, *զոր Հռոոմ կոչեն, և նորա հնազանդեալ հոգևոր հրամանացն ոչ դարձևալ ընդդէմ կամ պատճառևալ զծերութիւն կամ զինչ և իցէ, այլ որպէս վայել էր իւրում զուարթ և զուարճածաղիկ ալեացն, խլու և հպատակ եղեև վեհին և սիրալիր կոչողին, յուղի անկեալ պատրաստեցաւ առաջիկայ ճանապարհին, ընդ իւր տարեալ և զիս։ Եւ զբազում աւթևանաւք զանց արարեալ հասաք ի բաղձալին, և ի տեսանելն զիրեարս մոռացաք զաշխատութիւն։ Եւ ի լինելն անդ՝ ետես զգիրքս զայս և փափաքեաց, որպէս ընդդէմ ծաղկանցն՝ գործողն քաղցր և ախորժ ճաշակացն, ի սապէս և հայրս իմ ըստ հոգւոյ, հրամայեաց շարայարել ի քարտիզի՝ զտեսիլ մաքրեցելոցն ի կրական ախտից, որ ի մեզ, և զԿաթողիկէիցն Թուղթ, զոր բացայայտեալ էր իմաստունն և հանճարեղ, և զՊատմութիւն սրբոյ վկային Քրիստոսի Սարգսի պաւրաւարի, և ի շարադրելն իմում անդ, դային առ իս այլք ոմանք, և հոգաբարձու եղեալ առ իս, օգնել կամեցեալ՝ գրէին և նոքա որպէս երեւիդ։*

*Եւ զկնի աւուրց այլ ճանապարհ առաջի եդաւ իմում տեառնս և կաթողիկոսին Հայոց, զի կոչեցեալ եղեն ի* Լեւովնէ, *որ այժմ զվաղընջուցն ի մերմէ տոգէս և զընկեցեալն յերեսաց տեսողէն՝ զթագաւորականն անունն, զոր ունէին Հայք, սա միայն ստացաւ զաւգոստական զծիրանափայլ պատմուճանն և ընկալաւ աւծումն որպէս զմեծն* Տրդատ, *կամակցութեամբ, արիական ազգին Յունաց, բերեալ նմա նշան զխաչանիշ թագն։ Եւ նորա պատուասիրաբար կոչեցեալ զհոգևոր տէր* Գրիգորիս, *զի երթիցէ և աւծցէ զնա սրբարար և մաքրագործակ մեռոնաւն և պսակեսցէ զգլուխն խաչանշան դրոշմաւ։ Եւ հոգևոր տեառն ընդ իւր տարեալ զիմ տէրն՝ յաղագս անհաս գիտութեանն և կատարեալ իմաստութեան և անարատ մաքրութեան և հռչակաւոր բարի անուանն, որ ի տղայական տիոցն մինչ ի կատարեալ ծերութիւն՝ առ դուրս իմաստութեան դեգերեալ՝ ըստ աստուածայնոյն Սողոմովնի խրատուն,*

թէ Նաւ է իմաստութիւն քան զոսկի և քան զամենայն մեծութիւնս երկրաւորս, և դարձեալ յաճախէ զասելն, թէ Ի բովանդակ կեանս քո ստացիր զնա. է՞ր վասն. զի Առ դրունս հզօրաց յաճախէ և ի հրապարակս համարձակութիւն բերէ։

Որպէս արդիմական վարդապետս և տէրս իմ՝ որպէս զարեգակն փայլեալ ի մէջ իւրոց նմանեացն, զի ղոր աւրինակ յաստեղս արեգակն՝ սապէս և ի բանաւոր իմաստունս երեւեալ, ղի այս զգալի արեգակնս զտեսանելի աշխարհս լուսաւորէ, իսկ սա զհոգի և զմարմին առ հասարակ ճառագայթաձև յաւրինէ. այս արեգակն զրոյս և զտունկ ատոքացուցանէ, իսկ սա զմտաւոր և զիշխանականն առ երկնիւքն բարձրացուցանէ, այս արեգակն ղժախահոտ և զխոնաւուտ վայրս սառաւտեալ ցամաքեցուցանէ, իսկ սա զնեխութիւն և զաղտեղութիւն հոգւոց և մարմնոց հրացայթ և լուսատեսակ գործէ. այս արեգակն առ երկրաւորս ճանապարհ անմոլար տանի, իսկ սա զմոլորեալս յուղիղ և ի բարի ճանապարհէն՝ անվեհեր և անմոլար առ երկնային և խաղաղ նաւահանգիստն Քրիստոս հասուցանէ։ Զոր մաղթեմք յընթերցողսդ, ղի ի մաքուր և ի սրաթռիչ յաղաւթս ձեր հանապազ հայցելով ի վերնատուողէն, զի շնորհեսցէ զսա մեզ և ամենայն Հայաստանեա[յ]ց՝ առանց ամենայն փորձանաց՝ ընդ երկայն աւուրս, ամէն, յարամնաբար մնալ մինչեւ ի խոր ծերութիւն. և յետ աստեացս՝ յաթոռս առաքելոցն և ի տաղաւարս մարգարէիցն և ի դասս սուրբ վարդապետացն, և զտուեալ տաղանդն լիապէս մատուսցէ իւրում տեառնն, բազմապատիկ առաւելութեամբ, և զերանականն լսել զձայն, թէ Բարի և հաւատարիմ ծառայ, որովհետև ի սակաւուցդ հաւատարիմ գտար, ի վերայ բազմաց կացուցից զքեզ. յաւելուլ ի հինգն այլ եւս հինդ, և յերկուսն՝ այլ երկու, և ղուարթացուցեալ ամենավայելուչ աչալրջութեամբ՝ պայծառ փառաւք ընկալցի զբրաբիովն յաղթութեան ընդ ամենայն սուրբս, ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, ընդ որում Հաւր և ամենասուրբ Հոգւոյն։

Եւ ղիս զտառապեալս Յակովբ՝ զսակաւ աշխատողս և զամենաբարի զհարազատն իմ զՅովհաննէս, զընտիրն ի բեմբականս և զանյաղթն յերաժշտականս և զանձանձրոյթն ի գրչութեան անճոնջ, ղդովելին յամենայն բարեձեւութիւն, և զԳիորգ և ծնողսն իմ բարի մասին արժանի արարէք՝ յիշմամբ ի Քրիստոս, և դուք յիշեալ եղիցիք յողորմութիւն....։

Ընդ նմին և զամենահրչանիկ կրաւնաւոր և զբարի հոգի զհայր Յակոբ, որ հայր է վանից, և զհաւատարիմ եղբարս զԴաւիթ և զՍարգիս, հանդերձ (այլովք) յիշեսջիք ի Քրիստոս՝ ղկազմող գրոցս։

Եւ գրեցաւ ի ՈԽԷ (1198) թուիս լուսերանգ և հրաշապատում տառս առաքելագիծ մատենիս, բազմազան բարութեամբ և իմաստութեամբ լցեալ, զոր Տէրն մեր և Աստուած վայելել տացէ տէր Ստեփաննոսի՝ մականուն Տիրացու, բաղում ամաւք խաղաղականաւք, և առողջ մնալ հոգւով և մարմնով, և իւր ժառանգին՝ տէր Սարգսին, նորընծայ եպիսկոպոսի, բարի և իմաստուն պատանեկի, զոր ընտրեաց և կառոյց իւր

փոխան և տեսուչ անապատիս Սուրբ Խաչի, ստացուածոց և ամենայն գոյից, բազում և պէսպէս պնդութեամբ կտակաւ /// գրով, կամակցութեամբ և յաւժարութեամբ եպիսկոպոսաց և վարդապետաց և համայրէն քահանայից և /// անց, այլ և դատաւորաց և իշխանաց Շամիրամաշէն քաղաքի և այլ գեաւղից. և /// այ, եդեալ ղաւրհնութիմն Աստուծոյ և ղնորին հակառակն, ղի որք կամակից և աւդնական լինի՝ ղաւրհնութիմսն ժառանդեսցեն, իսկ որք ղիմասցին և ի հակառակութիմս հատանիցին, այնպիսիքն անիծիւք պատուհասեսցին առաջի ահեղ ատենին Քրիստոսի։

Այլ զտէր Սարգիս ղաւրացուսցէ Քրիստոս և ճեղամուտ արասցէ, ղի զՏէրն շահեսցէ և զնորին պատուական որդիացեալսն, նա և զինքն իսկ գլխովին և ղՔրիստոս զտուիչ իմաստութեան, և նմա փառք այժմ և միշտ և յաւիտեանս...։

Բ

Ջաստուածապսակեալ և զսուրբ դիտապետն Հայաստանեա[յ]ցս՝ զտէր Գրիգորիս արժանապատիւ կաթողիկոս Հայոց, զմեծ գիտնական և վսեմափայլ առաջնորդ յիշեսջիք ի Քրիստոս, յորոյ աւրինակի գրեցաւ դիրքս այս, զոր հաւաքեալ մեծաւ աշխատութեամբ՝ իբրեւ զգործաւէր մեղու՝ զԹուղթս սրբոց Կաթողիկեայց, զոր և մեր եկեալ աստ տեսաք ղսա ուղիղ յարմարեալ ըստ պատշաճի դրութեամբ։ Որում ցանկացող եղեալ այսմ հոգեշահ առաքելական մատենիս՝ տէր Ստեփաննոս արդիմաւոր գիտնական, որ և Տիրացու յորջորջի, և ետ գրել հոգւոյ որգեկի իւրոյ Յակովբայ, ի վայելումն անձին և ի յիշատակ հոգւոյն։ Արդ որք ըստ պատահման հանդիպիք տեսութեան գրոյս, յիշեսջիք աղաւթիւք ի Քրիստոս զտէր Գրիգորիս կաթողիկոս Հայոց և զտէր Ստեփաննոս վարդապետ, նա և ընդ արժանապատիւ յիշատակելոցս և զգրողս Յակովբ մի մոռանայք յաղաւթից, որդիք լուսոյ։

Գ

Վայր՝ Սուրբ Խաչ

Եւ ընդ աւանդել հոգւոյն տիւ եղեւ, այ վայ հազար բերանով զյետ մնացեալս, որ զրկեցաք իքաղցրահոս աղբիւրէն և յոլորտածաւալ ճառագայթիցն, ղի ի մեծի երկշաբաթոջս խաւարեցաւ [արեգակնս] մէտուղիեան... Տէր Ստեփաննոս մականուն Տիրացու... Ա թու///

Դ

Տէր Յիսուս, ի քո սոսկալի գալստեանդ ի ծաւալումն ծիածան ճեմարանացն, պարծանաց պսակաւն զարդարեա ի շուք շնորհի անմարմնոցն տեսաւորեալ զտէր Ստեփաննոս:

## 295
## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԵՄԻԱՅԻ ՄԽԻԹԱՐԱՅ ԳՈՇԻ
*Երևան 2606*

Գրիչ՝ Դաւիթ

Վայր՝ Հաղբատ

**ա**

256ա *Այս յիշատակարանս* Մխիթար *վարդապետին է,* Գոշին, *յարմա-*
*րողի զՄեկնութիւն սրբոյ կտակիս*[1], *զոր և ես սիրող և համակամ և*
*յորդորիչ նորին* Դաւիթ, *յիմումս եդի աւրինակի, վասն յաւերժութեան*
*նորայն անուան յամենայն աւրինակս, որոց ախորժելի երևի ի գծել*
*զսա։ Հաւանութեամբ և սիրովն ընկալայ, և շնորհակալ եմ քում նա-*
*զելի և երկիւղած պարկեշտութեան, ով պատուականդ ինձ, և սիրող*
*ճշմարտութեան։ Զի թեև սուղ տարացուցի է յարդարել, բաւական է*
256բ *իմաստնոց յաճմունս բանից և յեղաշրջմանց, ի նշանակս //խորհրդա-*
*կանս և զի անպարապ եղեալ իմոյս անձին ի ժամանել և դրոշմել*
*զսա, այլ և այլում տխմարաց ևոու դծել և ապաշաւ ունիմ թեպէտ և*
*ուղղեցի յետոյ։ Արդ, ոյք ընդաւրինակէք ընդ ախմարացն գիծս՝ ղդու-*
*շութեամբ հայեցարուք և ուղղեցէք զոր ինչ սխալ գտանի և զիմդ ան-*
*երկևան ընկալարուք, և զմեզ ևս մաւնաւորեցէք աղաւթից։*

*Եւ արդ, իմում դրութեան զայս տառ երկոտասան ամ էր առմանն*
Երուսաղէմի, *որ և տակաւին ևս ի ձեռս է այլազգեաց, ըստ յաճա-*
*խութեան մեղաց մերոց և ԽԷ (47) է առ Ո (600)-ով թուականս Հայւոյց*
*(1198)։ Եւ զի թեպէտ նախանձու մեծաւ վասն սրբոյ քաղաքին ելին ի*
*կողմանցն* Իտաղացւոց *թագաւորք և զաւրագլուխք արիականք ընդ* Թի-
րակ *և ընդ մէջ* Անգղատական *ովկիանոսի, և անցին կէսք ի կողմանս*
Ասիացւոց *և* Սիկիլիկացւոց, *և այլք միջածովեալք ելին* յԱլեքսանդր Ե-
գիպտոսի *և ոմանք* յԱքիայ *ծովեզերեայ, սակայն զրաւ եղեալ կե-*
*նաց թագաւորի նոցա, ցիր և ցան եղեալ զաւրքն ամենայն, ընդ կրուկն*
*դառնային, և կէսք աստին մնացին՝ ամրացեալք ի քաղաքս ծովեզե-*
*րայս, մինչև այց արասցէ բարձրեալն ի բարձանց և անդրէն դար-//ձու-*
*ցէ առ մեզ զքաղաքն իւր սուրբ* զԵրուսաղէմ *և զախրացեալ սիրտս*
*մեր վերստին զուարճացուսցէ և զցրուեալքս կրկին ժողովեսցէ ընդ*
*թևին իւրովք, և զմեզ և զձեզ առ հասարակ յիշեսցէ յանմոռաց գութն*
*իւր և յողորմութիւնն ամէն։*

**բ**

Գրիչ՝ Առաքեալ

56ա *Զտառապեալ* Առաքեալս *յիշեա ի Քրիստոս, աղաչեմ*[3]։

[1] *Խոսքը մինչ այդ գրված Գոշի հիշատակարանի մասին է, որը գրված է 1188-ի թվա-շարքում։*

[2] *Այստեղ հիշատակարանն ընդհատվում է, թուղթ ընկած լինելու պատճառով։ Լրացնում ենք Մատենադարանի № 3007 ձեռագրից, որի մեջ հիշատակարանը լրիվ է։ Սրան հետևում է 1653 թ. նորոգողի և արտագրողի Հիշատակարանը գրված Արտզու վանքում (Նորոգող Սարգիս, կազմող՝ Վարդան Բաղիշեցի)։*

[3] *Առաքեալը Գ պրակի գրիչն է։ Նրանից առաջ ձեռագրի ընդօրինակման աշխատանքները կատարել են երկու գրիչներ, իսկ նրանից հետո՝ չորս-հինգ այլ գրիչներ։*

## 296
## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 6499*

Գրիչ

ա

*Աւրհնութիւն և փառք Հաւր և Որդոյ և Հոգոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս, ամէն։*

183ա *Տէր ողորմեա մեղաւորիս,*
*Որ չեմ արժան յիշել ի գրիս։*

բ

214ա *Աւրհնեալ է ամենասուրբ Երրորդութիւն յաւիտեանս, ամէն։*
*Տէր Աստուած ողորմած և մարդասէր, ողորմէ անարժան և անպիտան գծողիս։*

գ

Կազմող՝ Պաւղոս

236ա *Կազմեցաւ սուրբ Աւետարանս ձեռա[մբ]ս [մեղա]պարտ և անարուեստ գրչի* Պաւղոսի, *որ զանունս ունիմ /// Կազմեցաւ Աւետարանս ի թվականիս Հայոց ՌԽԷ (1198)։ Աստուած ողորմի բարեմիտ քրի[ստոսասէր] և աստուածասէր* զՎայրդայզիզի, *[որ աշ]խատեցաւ և գնացեալ///*

դ

Գրիչ՝ Կոստանդի՞ն

108ա *Այս է յիշատակ* Մինային, *որ ստացաւ իւր հալալ ընչիցն։ Ով կարդայ, նայ մեղաց թողութիւն խնդրէ յԱստուծոյ իւր և ծնաւղաց իւրոց, ամէն։*

ե

190ա ԶԿոստընդին *արեղայ, աղաչեմ յիշել...*

## 297
## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՐԿՈՍԻ ԲԱՐՍԵՂ ՃՈՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Ն. Ջուղա 372 (1797 թ.), Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 566*

*Մեկնութիւն սրբոյն Աւետարանին, որ ըստ Մարկոսի աւետարանչի, արարեալ դիւրալուր ոճիւ վարդապետական եղանակաւ ի ձեւ քարոզի, հանդերձ բնաբանիւ, ի* Ճոն *կոչեցեալ* Բարսղ *Հայոց վարդապետէ, ի վայելումն եկեղեցական մանկանց և սուրբ վարդապետաց, ի Հայոց թուականիս ՌԽԷ (1198) օգոստոսի վերջն։*

## 298
## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Տէր-Մովսիսյան, Համահավաք ցուցակ, Յայսմավուրք, էջ 8

Աղաչանաւք սորա, Քրիստոս Աստուած, պահեա անփորձ և անարատ հոգւով եւ մարմնով Ռիբայ՝ մայր թագաւորի, եւ զքեւ ածեալ թագաւոր մեր Լեւոնն[1]:

## 299
## ՍԿԵՒՌԱՅԻ ԱՒԵՏԱՐԱՆ

Ակինյան, «Սկեռայի Աւետարանը»
Վիեննա, 1930, էջ 6—8

Ստացող՝ Ստեփանոս, մականուն
Ադամ
Վայր՝ Սկեւռա

Փառք ամենասուրբ Երրորդութեան՝ն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Յանծայրածաւալ ծովէն յանքնին և յանճառ էութենէն յանհուն խորոցն անգիտելի և անասելի պատճառաւ խորհուրդն, որ ծածկեալ մեծ և սքանչելի, շնորհեցաւ մեզ ի Հաւրէն բարեաց և երեւեցաւ մարմնով ընդ մեղ լինելով և յայտնեցաւ անմարմնոցն մեաւք՝ բազմապատիկ իմաստութիմն Աստուծոյ ըստ Պաւղոսի, զոր ծանեան արժանապէս և ըստ արժանւոյն և փառաւորեն անլռելի գոհացողական ձայնիւ ղանկարաւտ բնութիւնն Աստուծոյ. իսկ եթէ նոքա այսպէս ըստ իւրեանց բնութեանն և մերձաւորութեանն, առ որս ենն, մեք աւտարացեալքս և կարաւտքս ամենայնի, մանաւանդ զի վասն մեր այսքան շնորհք պարգեւեցան, և ատեցեալքս սիրեցեալք եղեաք՝ և յաճախեաց ի մեզ շնորհք ըստ առաւելութեան մեղաց, որպէս Պաւղոս Քրիստոսիւ վկայեաց ոչ փառաւորել միայն կամ գոհանալ, այլ և զանձինս տալ փոխանակ մահու նորա որպէս առաքելոց և մարտիրոսացն դասքն. բայց քան զի վերջացաք ի մարմնոյս կրից և ի չար պատահեալ աւուրցս, որ դիւրին է առ ձեռն պատրաստ՝ զայս ըստ կարի հատուցուք պատմել ղփառս նորա և յիշել զերախ///[2] ռացն, զի զբեւեռեալս յաստիս արձակեսցէ և զպարտութիւն ծանրութեանս մերժեսցէ ի մէնջ, և այսպէս մի ըստ միոջէ, հայհոյութեամբն և նախատանաւք ղանարգեալս ի պատիւ փոխեսցէ, կալով առաջի Պիղատոսի և Հերովդի, ի ծառայութենէ մեղացն արձակեաց, ռեղեան քաղցրացոյց և ծարաւմամբն զջուր կենաց պարգեւեաց, խոցմամբ կողին ետ մեզ զարբումն կենդանութեան՝ շինելով զմեզ տեղի և տաճար աստուա-

[1] Մեսրոպ Տեր-Մովսիսյանը գրում է, որ այս գրված է Երուսաղեմի մի Ճարակնոցի մագաղաթյա պահպանակի վրա, «Վկայութիւն սրբոյն Եփիմեա կուսինն» հատվածի վերջում։
[2] Թերթ է ընկած։

ծութեանն. սքանչելի և մեծապատիւ արեամբն գնեաց, և թաղմամբն ի գլորմանէն ի վիհս մեզաց կանգն[ե]աց, և աստուածահրաշ յարութեամբն կենդանացոյց, և համբարձմամբն զթողեալս ի դժոխս ի վերինն հրաւիրեաց ի կեանս, տալով զՀոգին սուրբ առաքելոցն գրաւական լինել մեզ մինչեւ ի կատարած աշխարհի, որպէս և ինքն անսուտ բանիւն խոստացաւ ընդ մեզ լինել զամենայն աւուրս կենաց մերոց. ուստի և մեզ պարտ է գոհացողական ձայնիւ զմարգարէին ձայն ասել, եթէ Ո՜ խաւսեսցի զզաւրութիւնս Տեառն. լսելի արասցէ զամենայն աւրհնութիւնս նորա։

Արդարեւ մե՜ծ է զաւրութիւն մեծի մարդասիրութեանն նորա ի մեզ հաւատացեալս, զիարդ զաւրհաց արեամբ և մահուամբ շինել զեկեղեցի և փոխարկել աստուածային հարշիւք զանէծսն յաւրհնութիւն, զմեղացն ախտ յարդարութիւն, զորս թէ կամեսցի ոք հաւաստեաւ զմեծութիւն պարգեւացն փոքր բանիւ չափել զանչափ աստուածատուր շնորհն, անհնար է, վասն զի ինքն եղեալ առաջին վկայ՝ քարոզ և աւետարանիչ ճշմարտութեանն, և ապա ընտրեաց աւետարանիչս, զորս Հոգին Սուրբ որոշեաց որպէս զՊաւղոս, զի Բազումք յաւժարեցին, որպէս Ղուկաս ցուցանէ, բայց սոքա միայն ընտրեցան որպէս և Մատթէոս, որ քարոզեաց ի Հնդիկս և ի Հրէաստան և գրեաց եբրայեցոց բարբառով զկնի է (7) ամի վերանալոյ Փրկչին, իսկ Մարկոս ի հրամանէ Պետրոսի հռովմանցւոցն իւրեանց լեզուաւն՝ զկնի ԺԺ (15) ամի։ Ղուկաս յոնարէն ասիացւոցն և բիւզանդացւոց։ Իսկ Յովհաննէս զկնի Ծ (50) ամի գրեաց յԱսիա և ի Պատմոս կղզւոջն։ Արդ զի որպէս ղտնաւրէնութիւնն յառաջագոյն գուշակեցին, այսպես և վասն աւետարանչացն ցուցին. Մովսէս զչորս առաջս գետոցն. Եզեկիել զկառսն, և Յովհաննէս մեծն ի ծնունդս կանանց կառք եղեւ ըստ վերնոցն՝ զՏրրորդութիւնն ի վերայ ինքեան բառնալով թողում ասել զայլն։

Արդ զի մեծ են շնորհքս և անհամեմատելի պարգեւքս, որ տուաւ մեզ, զոր ուսեալ ի հոգւոյն սրբոյ աւետարանչացն՝ ետուն աւետիս մեզ զորդեգրութիւն և զերկնից ժառանգութիւն, զանմահութիւն և զանապականութիւն, ի ծառայութենէ զազատութիւն, ի մեղաց զարդարութիւն, և բովանդակ փոփոխումն լինել ի ստուերատեսակ և ախտալից կենացս յանախտ և ի լուսաւոր և յերկնային կեանս։ Եւ մեր զայս ամենայն երախտիս ընկալեալ զբարեաց, մահու չափ պարտապան եմք հատուցանել փոխարէնս ամենայնիւ յամենայնի. մանաւանդ ես՝ եղկելի և թշուառս՝ Ստեփաննոս՝ մականուն Աղամ, ի բանականս՝ անբանս, յիմաստունս՝ անիմաստս, ի շնորհաւորս՝ անշնորհ, ի հանճարոյ և ի մտաց ներգործականի պակասեալ, և զայս ոչ եթէ առ խոնարհութեան ինչ ասեմ, այլ արպէս եմս տիրապէս և ճշմարիտ։

Եւ արդ, իմ այսպէս գոլով՝ պատահեցի աւուրցս չարութեանն և ժամանակի, մանաւանդ դժոխակիր և ընդդիմահար մարմնոյս, ոչ ունելով կարողութիւն խաչիւ և չարչարանաւք լնուլ զհրամանս փրկչին, և անհաղորդ կալ կարի անտեղի և մեծագոյն տուգանք, համարձակե-

ցայ ըստ սիրոյ և գործոց նորին, որ Բան էր և թանձրացաւ և վասն մեր մարմին եղեւ, զոր ընկալաք և շաւշափեցաք և վայելեցաք և ունիմք զնշան և զհացն կենարարար մինչև ի գալուստ նորին, սոյնպէս և ես ղրանս նորա որ հոգի է կեանք, աշխատութեամբ նաւեցի ի Կիպրոս և գտեալ Նիւթ՝ զբանն ի մարմին փոխարկեցի, ղի անյագաբար վայելեցից ուրախութեամբ, ձեռամբ շաւշափմամբ, համբուրիւք և մտաւք, և հոգւով ի բանէն կենդանացայց, և զայս ոչ վայրապար, այղ ի ձեռն մեծահռչակ գովեալ գրչի, որ գեր ի վերոյ և անհաս զտաւ ի սեռս մեր ոչ մելանաւ միայն, այղ և երանգոց և ղեղոց նկարազարդ վայելչութեամբ, ոչ ըստ զաւրութեան և կարողութեան իւրոյ արուեստին, այղ ըստ իմումս զիջեալ աղքատութեամբս։

Արդ մի ոք աղարտեսցէ, աղաչեմ, ղխակամտութիւն մանկութեանս, որ զանճառ և զաստուածազարդ քրիստոսախաւս կենդանի և կենսածին բանս յարմարմամբ ի նիւթս գեղապանծ պաճուճիւք պանծալի փայլմամբ ի տեսիլ աչաց ցուցանել, վասն զի սա ինձ կենաց կցորդ հաւատ առ հանդերձեալսն և յոյս առ նոյն ինքն Բան, որ մարմին եղեւ, որչափ եմ ի տաղտկալի և ի թանձրադանդաղ մարմինս և զկնի աստի ելից յիշատակ հոգւոյ իմոյ։

Արդ, ի թուականիս Հայոց Ռխէ (1198), յ[ը]նծայելն թագաւորութեան Հայոց Լե[ւ]ոնի քրիստոսասիրի, որ յՌոբինեանց, և ի հայրապետութեան տեառն Գրիգորիսի կաթողիկոսի, գրեցաւ երկու հռչակաւոր ուխտս, որ առընթեր ամուր դղեկաց, ի ստորոտ լերինս Տաւրոսի և ի գլուխ մայրաքաղաքին Տարսոնի, սկզբնաւորեալ ի մեծանուն անապատ Մլինի՝ ընդ հովանեաւ Սրբոյ Աստուածածնին, որ է դամբարան իշխողաց ամուր դղեկի Պապառաւնի, և կատարեալ առընթեր անառ ամրոցի Լամբրաւնի յաւթեւան հռչակաւոր ուխտ Սկեւռա, առաջի սրբոյ և սքանչելագործ Նշանի և Փրկչին տաճարի։ Արդ, տեարք, որք յիմոյ նուաստութեանս աստուածասիրութեան պտուղս նայիք ոգւոյ աչաւք ի բանիցս աւետարանութիւն, որով ղՏէրն մեր Յիսուս Քրիստոս ի սմա տեսանէք, և մարմնոյ հայելով ի պաճուճանս զարդուս, որով պսակեաց զգեղեցիկն քան զամենայն որդիս մարդկան, որ սփռեաց ի շրթանց իւրոց զայս Աւետարան, նախ աւրհնութիւն, գոհութիւն և երկրպագութիւն մատուցէք Աստուծոյ Հաւր և միածնի իւրոյ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և մխիթարիչ Սուրբ Հոգւոյն, որ արժանի արար զաղքատ և զկործանեալ մարդկութիւնս այսպիսի սքանչելի նորոգման և փրկութեան, որ ի սմա պատմի, և ի մէնջ, որք յայս շնորհ վայելեցաք և այժմ ի կարգ մեռելոց դասեցաք, գոհութիւն, աւրհնութիւն և անուանն Յիսուսի Քրիստոսի ծընրադրութիւն ընդ երկնաւորացն և երկրաւորացդ և ի սանտարամետական մեռելոցս, իսկ առ սէր եղբարցդ, խոնարհութեամբ և արտասուաւք աղաչանաւք, ղի մեք, որ մեռելութեամբ մարմնոյ մոռացեալ եմք ի սրտէ աններեւութացեալ յաչաց, որպէս զանաւթ կորուսեալ, այս արժանամեծար առհաւատչէիւս յիշատակեսցուք ի բանս մաղթանաց ձերոց առաջի փրկչին մերոց Քրիստոսի· որ ես զՍտեփանոս, որ մեծաջան աշխատութեամբ և ըղձմամբ

սրտիւ ստացայ զսուրբ մատեան․ս, արժանի արասցէ իւրում ողորմութեանն, հանդերձ ծնաղաւքն իմովք, և քերբ, որ ըստ իմում աղքատութեանս ղդեցուցի Աւետարանի իմոյ զայս նիւթեղէն պաճուճանքս։

Այղ և Գրիգոր դրիչ, որ յաւժար կամաւք յանձն առ և աշխատեցաւ ի սուրբ մատեանս, լիցի ի գթութենէ ձերմէ առ Քրիստոս յիշման արժանի, և ինքն Տէրն և Աստուածն մեր, որ կոչեաց զամենեսեան յիւր արքայութիւնն և ի փառըս, ժառանգս արասցէ զծառայքս իւր վիճակի սրբոցն ի լուսաւոր արքայութիւնն իւր, և եղիցի աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Գրիչ՝ Գրիգոր

Բ

Ստացաւղ սրբոյ Աւետարանիս՝ զՍտեփանոս պատուեալ աւծութեամբ քահանայութեան ի դասու կրաւնաւորաց յիշեսջիք ի Տէր։

Գ

Ի յարութեանն Հասարակաց ամենեցուն, Տէր ողորմեա ստացաւղի սորա՝ Ստեփանոսի և ծնաւղաց իւրոց, ամէն։

Դ

Ընդ աւետալուր քարոզիցն համաղասեսցես և զստացաւղ սորա՝ զՍտեփ[անոս]:

300

ՑԱՑՏՆՈՒԹԻՒՆ ՅՈՀԱՆՆՈՒ

Երևան 10480 (1286 թ.)

Հեղինակ՝ Ներսէս Լամբրոնացի

[Ա]յս Յայտնութիւն աստուածաբան աւետարանչին Յոհաննու, որբոց հարցն մերոյ վարդապետութեամբ, պատուեալ ի պէտս վկայութեանց, զերծաւ ի գա[յ]թակղութեան կարծեաց ոմանց, որք այլանդակս իմացան ի սմանէ, քանզի մեծն Դիոնէսիոս յաստուածաբանական ճառսն հիւսեաց զվկայութիւն սորա, և Իրենիոս Մեզաղու եպիսկոպոսն, Գրիգորիոս Աստուածաբանն՝ ի հրաժարական ճառն, Գրիգոր Նիւսեայ յեպիսկոպոսացն ժողովոյ, և մեծն Կիւրեղ, Մեթոդիոս, և Հ[ի]պողիտոս, նաև անփորձն Իւսեբիոս, զոր պատուեալ է եկեղեցի ըստ նոցին հաւանութեանն, դասեաց ի կարգ աստուածաշունչ նորոց կտակարանացն, որոց եղեալք և մեք ընթացակից ի սուրբ եկեղեցւոյ մանկունս, աւանդեցաք զսոյն ի դասակարգութիւն առաքելական մատենիցս, որպէս զարդարև զառաքելական Յայտնութիւն։

Եւ ստուգարան[1] արարու վերստին [յ]երիւրեալ ի հելլենացւոյն իմով նուաստ Ներսէսի թարգմանութեամբ, ընդ որ և զքննութեամբ մեկնութիւն սորին ածի յեկեղեցիս Հայոց։

[1] Բառը մաշված է, թանաքով սխալ են վերծանել։

Արդ, որք յետ մեր լինիք սմին ընթերցաւղք և պայծառութեամբ աստուածաբան մատենիս վայելաւղք, տացէ ձեզ շնորհ Սուրբ Հոգոյն քաղցրութեամբ առնուլ ի քիմս մտաց հոգւոյ զբանս Աստուծոյ, որ ախորժ է քան զմեղր բերանոյ, քանզի յարդարև յիմանալն ի սմանէ թիկունս դարձուցանէ ատելութեամբ ըստ Երգողին յամենայն ճանապարհս չարեաց, այլ թէ և առ մեզ ողորմութիւն ըստ հրամանի խաւսքն, Որ վարեցաք զաշխարհս ի ժամանակիս, յորում էանց սորին վայելչութիւնն, քան զի ակն էր և աչաց մերոց սուրբ աստուածակոխ քաղաքն Երուսաղէմ, յափշտակեցաւ ի սպասաւորութէնէ քրիստոնէից սրով Իսմաելացոցն, ի ՈԼԶ (1187) թւին Հայոց, ի վերա որոյ բաղում արեանց հեղմունք եղև լատինացոց բազմացեղ ազգաց, որք զաս զաս առագաստեալ նաւաւք և քաջապինդ հաւատով և սրտաշան արութեամբ հասին ի Պառեստին, և անդ զիակնացեալք, շուրջ զքաղաքաւն ըստ երզոյն.
435ա Եւ ոչ ոք էր, որ թաղէր, և մեք մնացաք նախատինս ‖ դրացեաց մե[րոց մին]չև ի լրումն թուիս ՌԽԷ (1198), յորում ամի վերապատուեցաւ թագաւոր Հայոց Լևոն, որ յՌոբինեանց բարէպաշտ և յաղթաւղ Աստուծով։ Որոյ հռչակ արութեանն շարժեաց զմեծ ինքնակալն հին Հռոմա զՀենրի և զնոր Հռոմա զԱլեքս, որ պսակեցին զսա քարամբ պատուական, յեկեղեցի Տարսոնի, որ իմ անարժանութեամբ հով[վ]ի։

Զսա Քրիստոս Աստուած մեր շնորհեսցէ մեզ երկայնութեամբ աւուրց անվանելի յաղթութեամբ, և ի փոխելն անտի սրբոց թագաւորացն արասցէ պսակակից և խորանակից ի լուսեղէն յարկսն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 301
## ՀԱՄԱՌՕՏ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՅՆ ՀԻՊՊՈՂԻՏԱՅ

Երևան 4066 (1283 թ.)

Գրիչ՝

349բ Զերջանիկ հայրապետին Հիպպողիտա Համառաւտ մեկնութիւն Երգոյ երգոցս... դրեալ յոյժ գեղեցիկ՝ սրբոյ հաւր մերոյ տեառն Ներսիսի Տարսոնի եպիսկոպոսի, և ի միջոցն ի վեր, իւր իսկ մեկնեալ[1]։

## 302
## ԳԻՐՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԿԻՒՐՂԻ

Ալիշան, Սիսուան, էջ 71

Գրիչ՝ Ներսէս Լամբրոնացի

Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, ողորմեա Սմբատա Գուն(դ)ստապլի:

---

[1] Այս և հաջորդ հիշատակարանները, որոնք կապված են Ներսես Լամբրոնացու հետ, դնում ենք նրա մահվան թվականի (1298) տակ։

## 303

### ԱՏԵՆԱԽԱՒՍՈՒԹԻՒՆ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

Երեւան 2588 (1294 թ.)

Հեղինակ՝ Ներսես Լամբրոնացի

201բ Սիրալիր մտաց կարեւոր համարեցաւ նուաստս յոքունց Ներսէս, վի ասել զանուն աստ իրաւացի է ի փառս խորհրդածութեան սրբոյ պատարագին, եւ խորհրդածութիւն առ մեզ աւանդել ի սրբոյն Յոհաննու Ոսկեբերանի Սահմանադրութեանցն։

Աղաչեմ ընդունել սիրով, եւ թէ այլ ոք, քան զմերս, այլ յետ մեր դեղեցկացուցանէ զնոյնս՝ եւ զնորայն ի փառս Քրիստոսի եւ ի պարծանս յեկեղեցւոյ, յորում աւրհնի նա յաւիտեանս, ամէն։

## 304

### ՔՆՆՈՒԹԻՒՆ ԱՂԱՒԹԻՑ ՅՈՀԱՆՆՈՒ ԱՒՁՏԱՐԱՆՋԻՆ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ[1]

Երևան 1418 (1286 թ.)

Հեղինակ՝ Ներսէս Լամբրոնացի

Ծւ մանաւանդ ի քոյդ, որ յամենայնի ես ճշմարտասէր եւ իմաստա-
221ա սէր, մինչ զի ոչ քովդ բաւական//ացեալ, այլ եւ զմեզ ձգեցեր հաւանութեամբս ի յանդգնութիւն, ո՛ հայր պատուական Ստեփանոս, զոր ի գլուխ էած շնորհն Աստուծոյ զխնդրելիս, ի ձեռն տառապեալ գործարանի, ի փառս իւր եւ ի վայելս քումդ հաւատոյ, եւ ճշմարիտ, որ առ աստուածաբանս սիրոյ։ Ոչ եթէ ըստ որում պարտն էր կամ զբովանդակն ածեալ ի լոյս զսորա զաւրութիւնս, որ անհաս էր յինէն, այլ փութացեալ միայն հնազանդութեամբ որդիականս հպատակութեամբ պատճառս նիւթել իմաստնոյդ, առ ի ելս սորին իմաստութեան բարձրանալ շնորհաւքն Քրիստոսի Աստուծոյ յուսոյն մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն[2]։

---

[1] Ամբողջական վերնագիրն այսպիսին է. «Տեսութիւն քննութեամբ աղաւթից սուրբ աւետարանչին Յոհաննու, ի խնդրոյ վարդապետին Յակոբայ, ի տէր Ներսիսէ հոգևոր որդւոյ եղբաւրէ պարոն Հայթմոյ» (էջ 129ա)։

[2] Ներսես Լամբրոնացու համար գրված օրինակից է արտագրվել (1671 թ.) Մատենադարանի № 10000 Մովսես Խորենացու «Հայոց Պատմութիւնը. «Բայց օրինակ և նախագաղափար եղեալ յաղագս Ներսէսի Լամբրոնացւոյ արքեպիսկոպոսի սրբոյ, Տարսոնի քաղաքին (էջ 218բ)։

## 305

## ՎԵՇՏԱՍԱՆ ԱՍԱՑՈՒԱԾՔ ԵՓՐԵՄԻ ԱՍՈՐՒՈՅ

Երուսաղեմ 326, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 199

Գրիչ՝ Յովհաննէս

Վայր՝ Սկեւռայ վանք

ա

284բ Զտէր Ներսէս սրբասէր անձն եւ տիեզերական վարդապետ, ստացւող աստուածեան մատենիս, յիշեսջիք ի Քրիստոս, եւ նոյն ինքն ձեզ ողորմեսցի, ամէն։

բ

295բ Զտէր Ներսէս սրբազն արքեպիսկոպոս Տարսոնի, եւ առաջնորդ սուրբ ուխտիս Սկեւռոյ, որդի Աւշնի սեւաստոսի, ստացւող սուրբ մատենիս յիշեսջիք ի Քրիստոս, հանդերձ գեղեցիկ եւ ծաղկեալ չորեսին հարազատաւքն՝ Հեթմիւ, Ապիրատիւ, Շահանշահիւ, եւ Գրիգորիւ, եւ զիս զմեղուցեալ գրիչ Յոհաննէս՝ աշակերտ նորին, եւ Աստուած ձեզ յիշողացդ եւ յիշելոցս ողորմեսցի, ամէն։

գ

301ա Զտէր Ներ<սեր>սէս առաջնորդ սուրբ ուխտիս Սկեւռոյ՝ հանդերձ մեծանուն մարբ իւրով, յիշեշսջիք ի Քրիստոս Յիսուս, եւ նոյն ինքն ձեզ ողորմեսցի, ամէն։

դ

349բ Զտէր Ներսէս ամենամաքուր անձն եւ անյաղթ գիտնականն յիշեցէք ի Տէր Քրիստոս, եւ զհարազատ նորուն զՀեթում սեւաստաւս, զի աստ երկարեսցին ամաւք խաղաղութեամբ, եւ անդ արքայութեանն երկնից արժանի լիցին, եւ զՅովհաննէս գրիչ։

ե

369ա Ես Յովհաննէս դեռաբոյս ի գրչաց, հրամանաւ Ներսէսի, իմոյ դաստիարակողի եւ զիս յաստուածայինս ձգաւղի, սկսայ ողբքս զայս եւ զոգեշահ բանքս սուրբ հաւրն մերոյ Եփրեմի, զոր ասացեալ է վասն Նիկոմեդեան քաղաքի, եւ կատարեցի։

Արդ, որք ընթեռնույք զսա, յիշեցէք ի Քրիստոս զտէր Ներսէս զսուրբ եւ զընտիր եւ զտիեզերական վարդապետ, ընդ նմին եւ զաստուածասէր մայր իւր, տիկնաց տիկին Շահանդուխտ կոչեցեալ, եւ զհարազատս իւր զՀեթում սեւաստաւս, եւ զԱպիրատ, եւ զՇահնշահ, եւ զԳրիգոր, եւ Աստուած ձեզ ողորմեսցի։

զ

Գրիչ՝ Վահրամ

356ա Տէր Յիսուս, ողորմեա տեառն Ներսէսի, առաջնորդի մերոյ եղբայրութեանս, ընդ նմին եւ մաւր նորայ մեծանուն սեւաստուհւոյ, եւ այնոցիկ, որք յիշեն զնոսա, ամէն։

Է

364բ Վանեմայ գրչի ողորմեա Քրիստոս։

Ը

Ուղղող [Ներսէս Լամբրոնացի՞]

369ա Եւ գրչիս յիշման արժանի արարէք, եւ ղաշխատողս ի յուղղելս[1]։

## 306

## ՃԱՌՔ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ[1]

Երևան 989

Վայր՝ Գեմբոձգեր

270ա Փառք քեզ Երրորդութիւն սուրբ, համապատիւ և համագոյ բնու-
թիւն, աստուածութիւն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։
Շնորհիւ ամենակալին Աստուծոյ Հաւր և կամաւք բարերարի Որդ-
ւոյ, ելաւղին ի նոցունց էութենէ՝ Հոգւոյն Սրբոյ սկսայ և կատարեցի
զլուսաժողով ամենանոյշ վարդապետութիւնս տեառն Յոհաննու Ոսկէ-
բերանի, ի չրջաբերութեան թուածին անուիս Հայկազնեան տոհմիս ի Ոխ
և ևւթեանց (1198), ի տասներորդում ամի գերութեան քաղաքին սրբոյ
270բ Տեառն իմոյ Յիսուսի, ի թագաւորու‖թեանն Հայոց բարեպաշտ և քրիս-
տոսասպսակ արքային Լևոնի, որ է յաղթող և ահարկու ի վերայ թըշ-
նամեաց խաչին Յիսուսի, ի հայրապետութեանն տեառն Գրիգորիսի
Հայոց հեղինակի, և յարհիեպիսկոպոսութեան մայրաքաղաքիս Տարսոնի
տեառն Ներսիսի որդւոյ Աւշնին սեբաստաւսի, և յիշխանութեանս անա-
ռիկ դղեկիս Լամբրունի աստուածասէր և բարեպաշտ իշխանաց իշխա-
նի Հեթմոյ սեբաստաւսի, ունելով իշխանակիցս իւր եղբարս հարազատ
զԱպիրատ ու զՇահնշահ՝ յարտաքին գաւառս տիրողք, որ ունի և ծաղ-
կեալ զաւակս զԱւշին՝ անդրանիկ իւր և զԿոստանդին, զոսա աղաւթե-
ցէք առ Քրիստոս, զի յաճախութեամբ փառաց տացէ՝ ի մեծապատիւ
իշխանութիւնս, և յետ աստի փոխմանն իբրև զաղնիւ ծառայ և զհաւա-
տարիմ ի վերայ բազմաց կացուսցէ թագաւոր յերկնից արքայութիւնն։
Եւ գրեցաւ յեղբայրանոցս, որ ի գաւառիս Լամբրունի, որ գեղջուկ
բարբառով ի հին սովորութ[են]էն և Գեմբոձգեր յորջորջի, ընդ հովա-
նեաւ Սուրբ Աստուածածնիս, և յառաջնորդութեան սրբասէր և հարա-
զատ եղբարց Աւետեաց և Յոհաննիսի:
Արդ, որք վայելիցէք հոգեշնորհ վարդապետութենէս, և ի բարէ-
նախանձ բանիցս վարդապետին՝ Բերան Ոսկի կոչեցեալ, յիշեցէք ա-
ղաւթիւք զստացող գրոցս այսմիկ, զտէր Ներսէս աստուածային շնոր-

[1] Գրված է այլ գրությամբ, հավանաբար Ներսես Լամբրոնացու ձեռքով։

[1] Խորագիրն ըստ ցանկի է՝ «Գիրք Անդրիանդեայք կոչեցեալ սրբոյն Յովհաննու Ոսկե-
բերանի Կոստանդնիպօլսի եպիսկոպոսի ասացեալ» (էջ 7բ)։



20—1130

Հաւքն զարգարեալ և գիտութեամբ լցեալ, որ ի սոյն ամի Հանգեաւ ի Քրիստոս, զոր Տէր Աստուած հանգուսցէ ընդ սուրբս իւր, նաև զծնաւղս իւր, և զազգականս և զբարեկամս իւր, որ մեծափափագ ըղձիւք գրել զսա ի պայծառութիւն և ի զարդ եկեղեցւոյ իւրոյ։

Եւ զիս զմեղապարտ և զախմարս |||[1]

---

[1] Հաշորդ թերթն ընկած է։ Տեր Ներսեսը, անշուշտ, Ներսես Լամբրոնացին է, որ մահացել է 1198 թ.։ («Ի 'վեց ձխի (1198) թվականին փոխի մահուամբ առ Քրիստոս տէր Ներսէս Լամբրոնացին, խԶ (46) ամաց։ Սայ մեկնեաց զՍաղմոսն, եւ զԱռակն, եւ զՊատարագի խորհուրդն, եւ թարքմանեաց բազում գիրքս ի յունաց եւ ի ֆռանգաց, ընդ որս եւ զՑո՞ւաննու Տեսիլն մեկնած թարգմանեաց յԱնտիոք, եւ զէր ընդ եղբարս ինքն մեկնեաց» (Երուսաղէմ, 1801 (1187 թ.), Ցուցակ Զ., էջ 162)։

Լամբրոնում Ս. Աստվածածնի անունով եղբայրանոցը Սկևռայի վանքն էր։



ՌԽԹ 1200

## 307
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2589*

*Ստացող՝* Կոստանդին քահանա

**ա**

338ա *Շ[նորհիւ կենարա]րին Աստուծոյ, որ զաւրացուցանէ զանզաւրս եւ կանգնէ զանկեալս, եւ ի յոյս բարեաց ածէ զյուսահատեալս, որ եւ զիս զանարժանս արժանի արար հասանել յաւարտ գրոյս։*

*Քանզի ես՝* Կոստանդին *քահանայ, տրուպս եւ անարժանս ներողութեամբն Աստուծոյ ցանկացայ եւ խնդրեցի զմեծագին մարգարիտս*
338բ *զայս ըստ բանին Տեառն, եւ վաճառեցի զամենայն ‖ընչեանս իմ՝ ստանալ զսա յաղքատ եւ ի դառնաբեր ժամանակիս, բազում ջանիւ եւ խանդաղակաթ սիրով, զի թեպետ եւ ոչ գոյին ինչք պատրաստականք ըստ մեծամեծ նիւթիցս, սակայն սէր աստուածային փափագմանս մռացումն արար յոչ կարեմն, քաջալերեաց եւ առատապէս շնորհեաց ծախս սուրբ Աւետարանիս, զոր սկսեալ սարկաւագին* Սարգսի *գրով աւարտեաց, ծաղկեցաւ երանկաւք ի ձեռն Հայրապետ քահանայի, ի թուականութեանս Հայոց ՌԽԹ (1200), ի թագաւորութեանն Յունաց* Անկելոսի, *ի դիտապետութեանն Հայոց տէր* Գրիգորիսի Ապիրատ *անուն կոչեցեալ, յերեքտասան ամի առման* Երուսաղէմի, *եւ յերրորդումն ամի թագաւորութեանն Հայոց* Լեւոնի *բարեպաշտի, ի բռնակալութեանն այլասեռիցս* Ուգնատնին:

*Ես* Կոստանդին ///[1]

**բ**

*Ծաղկող՝ Հայրապետ*

3բ *[Քրիստոս Աստուած] ողորմեա ստացողի [սո]րա* Կո[ստա]նտն[ի], *զի մեծաւ ջանիւ եւ սերտ սիրով ետ գրել զսա ի վայելումն անձին իւրոյ և ի բարեխաւսութիւն մեղաց իւրոյ*[2]*։*

**գ**

38ա */// ծն /// ժամանակի սովոյ եվ ///*[3]

---

1 *Թերթ է ընկած։*

2 *Գրված է Մաթեոս ավետարանիչի նկարի շրջանակի մեջ, ստորին մասում՝ կարմիր բոլորգրով։*

3 *Գրված է Ավետարանի վերջում, ավելին չի կարդացվում։ Ձեռագրում կան այնպիսի հիշատակագրություններ. «Քրիստոս Աստուած աւրհնէ զխոջայ* Յովհանէս *մուղդուսին, զ*Քրդըստա–

## 308
### ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 121 (1366 թ.), Սարգիսյան, Ցուցակ. Ա, էջ 548

Գրիչ՝ Բարսեղ

ա

315բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն ի բարձունս, Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն, այժմ և միշտ, յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Որ արժանի արար պանարժան ծառայս իւր զԲարսեղս հասան[ել] ի վերջ սուրբ Աւետարանիս։ Ի թուականութեանս Հայոց ի ՈԽԹ (1200) գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Բարսղի մեղուցեալ աշխատողի։ Արդ, աղաչեմ զամենեսին, որք կարդայք կամ աւրինակէք, վասն սիրոյն Քրիստոսի, յիշեցէք ի Քրիստոս զամենամեղ աշխատողս զԲ[արսեղ], եւ զծնողսն իմ՝ զԳրիգոր և զԲանիրիկ, և զքոյր իմ զՇահաստ[սն], յիշեսջիք և զուսուցիչսն մեր և զառաջնորդ տեղոյս զՂեւոնդ եւ զՆերսէս, և զամենայն հաւատացեալս ի Քրիստոս, և զձեզ յիշէ, որ է աւրհնեալ յաւիտե[ա]նս, ամէն։

բ

90բ Քրիստոս Աստուած ողորմեա Բարսղի և Գրիգորոյ և Բահրկանն և Շահաստնա, ամէն։ Բարեխաւսութեամբ սուրբ Աւետարանչացս և ամենայն սրբոց և աղաչեմ յիշեա տէր Բարսեղն, և ողորմեաց նմա ըստ մեծի ողորմութեան քո։

## 309
### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3793 (1053 թ.)

309բ Տէր Աստուած ողորմեա Միխայլ ոսկերչին և ծնողաց իւրոց ի Քրիստոս հանգուցելոց, ամէն։ Տէր Յիսուս ողորմեա սակաւ գծոյս գրողին, ամեն, ամեն։

Որք ընթեռնոյք և վայելէք ի սուրբ Աւետարանս, Միխայլին և ծնողաց իւրոց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ՝ յուտյն մերմէ, և Աստուած որ առատն է, ձեզ և մեզ առ հասարակ ողորմեսցի, ամէն[1]։

նին, որ ստացաւ զսուրբ Աւետարանս ի ձեռաց այլազգաց...» (էջ 97ա), հավանաբար ԺԸ դարից։ Նույն դարից նոտրգրված ծածկագիր մի հիշատակագրություն (էջ 158ա). [Ներսէս] վարդապետ գրեցի», ապա՝ թվ ԽԹ (1200)»։ Վերջինս ձեռագրի գրության թվականն է։

Ձեռագիրն ունի գեղեցիկ զարդագրեր և գլխազարդեր Հայրապետ ծաղկողից։

[1] Գրված է գլխավոր հիշատակարանից հետո (1053 թ.) և նախորդում է 1201 թ. վերըստին կազմել տվողի հիշատակարանին, ուր հիշվում է նաև Միխայիլ ոսկերիչը, որպես Ավետարանը շնորհողը։ Նշանակում է այն գրված է 1201-ից առաջ, ուստի հիշատակարանը դնում ենք 1200 թ. տակ։

## 310

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1658*[1]

Գրիչ՝ Անդրիաս

353բ *Փառք ամենասուրբ Երրորդութեանն, որ արժանի արար զմեզ հան-*
*դերձեալ երբեմն մտանել յաստուածային ծաղկաւետ, փայլեալ բու-*
*րաստանս՝ ամենայլի, զանայզան, և դունակ դունակ, ամէնառատ,*
*մրգաբեր, ծառայխիտ, գեղեցկայզան տնկաւք, որք ցանկան յաւետ*
354ա *բաղձանաւք հայեցեալ որումն իշխանութիւնն հաւատացեալ է, // իսկ*
*որ Տէրն պարգևին շնորհեա յարժանեացն, ըստ հանդիսի ճգանցն*
*նմայնապէս և զմայլեցուցեալ ղճաշակէլեացըն ընդունարանսն, կամ*
*էթէ փոքր մի յափուցանեալ զկոկորդացն ղպասքումն կամ էթէ զովա-*
*ցուցանել յաստուածային աղբերացն առատայբուխ հոսմամբ՝ իջանե-*
*լով ի վերուստ տուեցելոյ շնորհաց Հոգւոյն Սրբոյ, ղոր յոքունք առ-*
*թեցին սիբայլիր սիրով սրբայնեալ ըստ աստուածայհաճոյ վարեաւք,*
*ղրանն աստուածային խոհեմայզույն լրացուցին իմաստիւք զգիտնա-*
*կանաց և ղհանճարեղաց միտս, առ որս և խնդիր եղեալ առ ի հաւա-*
*քեալ սակս այնորիկ յոքնակի և մեծ ջանիւ, աշխատութեամբ և գանա-*
*գործել ոգւով չափ, իբրև զխրձնեալ ծաղիկս հովտաց և ի լերանց և*
*ղանուշաբարս և ըղղուարճացուցիչս հաւաքեցաք ի գիրքս յայս, որով*
354բ *անըշփոյթ դրութեամբ ղիշատակ տերունական// տաւնից տարեկանաց*
*տաւնայխ[մբո]ւթեանբ, սկսեալ ի Դաւթէ Յակովբայ եղբաւրն Տեա-*
*ռըն, մինչև ցաւանս սրբոյ Խաչին։*

*Դարձեալ և Ընթերցուածոց մեկնութիւն, բոլոր Աղուհացիցն և այլևս հարցման զանազան և պատասխանիք բան առ բան, նմանայ-պէս և անուշ եղոցն խառնուածն, ղոր Մովսէսն կազմեաց ի հրամանէ Աստուծոյ, քահանայական և թագաւորական աւծման։ Եւ այս է ցնծութիւն հոգւոյ և ղուարճութիւն մարմնոյ, և ուրախութիւն սրտի, և բերկրութիւն մտաց ոչ միայն ասողին, այլ և լսաւղացն, որք յաւ-ժարութեամբ փափաքանաւք լսեն նոցայ է պարգեըն և շնորհքն։*

---

[1] *Ժողովածուն կազմված է երկու տարբեր ձեռագրերից, ընդ որում հին ձեռագիրը հա-ջորդում է համեմատաբար նորին՝ Եղիշեի Վարդանանց պատմության, գրված 1207 թ.։ Հնագույն ձեռագիրը, որը բովանդակում է մի շարք գործեր, գրված է ԺԲ դարում։ Այն նախ ստացել է Թորոս վարդապետը՝ սրբագրություններ և լրացումներ է կատարել, ապա 1192 թ.՝ Հովհաննես քահանան, որը նույնպես լրացումներ է կատարել։ 1687 թ. շատ առաջ այս եր-կու ձեռագրերը արդեն միասին են կազմված և արդեն քայքայվել էին, երբ Զմյուռնիայից Հովանավանք է բերել տալիս Զաքարիա Սարկավագ Քանաքեռցին և վերստին կազմում։ Ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ ձեռագրերը առանձին-առանձին պրակակալված և էջակալված են։ Առաջինն ունի ՃԼԱ (131) թերթ (սկզբից և մեջտեղից լրացրել է Զաքարիա Սարկավագը), իսկ երկրորդը՝ ՄԻԵ (225), և երկու թերթ Զաքարիայի հիշատակարանը։*

Արդ, սայ պարծանք և պսակ պարծանաց սրբոյ եկեղեցւոյ, ա-
խոյեան ընդդէմ չարին, սրբիչ և մաքրիչ ուղղափառ հաւատոյս ամէնե-
ցուն, բղխեալ յորդառատ աղբիւրէն ղամենիսեան յորդորէրն Աստուծոյ
ուրախարար բաժակաւն, լնոյր դսիրտս քրիստոսասիրացն, որպէս Քրիս-
33ա տոս յայնձն[է] առ ղմահ խաչին, նոյնպէս սորայ յանձն առեալ ղտար-
ժանումն և հաւաքեալ զգեղիցկայղան բուրաստանս, զսա ստացեալ
պաշար ճանապարհին կենաց։ Այլ որ զսա ունի չիք նմայ կարաւտա-
նալ գիտութեան։

Արդ, շնորհիւն Աստուծոյ և ողորմութեամբ նորին էութեան, ես մե-
ղաւորս և անպիտանս ի կրաւնաւորս, որ անուամբ միայն ճանաչի և ոչ գործով, ստացուած ստացայ ինձ հոգևոր։ Արդ, որք կարգայք կամ ընդաւրինակէք, մեղաւորի և տգիտի և անարժանի բարոյ, վասն զի ոգով կուրացեալ եմ և մտաւք որպէս ջուր [յ]որդայհոս ոչ ունի դադարումն, նոյնպէս և ես ոչ ունիմ յապումն ի գործելոց զմեղս։ Արդ, ղընթերձողս աղաչեմ և առ ոտս անկանիմ՝ Անդրիասի, և ծնաւղաց իւրոց, և եղբարց ըստ մարմ[ն]ոյ և ըստ հոգոյ, մեղաց թողութիւն խնդրեցէք յԱստուծոյ, որում փառք յաւիտեանս, ամէն։

## 311

## ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 9296

Գրիչ՝ Առաքեալ

ա

32ա Զստացող գրոցս զտէր Գրիգորէս և զծնաւղսն իւր յիշեցէք, ընդ նոսին եւ զեղկելի գրիչս Առաքեալ, աղաչեմ։

բ

1բ Յիսուս Քրիստոս, ի ձեռն քո սուրբ վկաիս բա[րեխ]աւս[եա եւ ողո]րմեա տէր Գրի[գոր]իսի ստացողի գրոցս[1]։

---

[1] Ձեռագիրը վերստեղծվել է վերջերս. «Սույն ձեռագրի թերթերը,— գրում է Լ. Խաչիկյանը այդ առթիվ,— միմյանց փակցված վիճակում օգտագործված էին որպես № 4057 ձեռագրի կազմի ստվարաթուղթ։ Անջատել և մուծվել են ձեռագրաց հավաքածու 9296 համարի տակ 1948 թ. օգոստոսի 14-ին»։ Այնուհետև, 1960 թ. Օ. Եգանյանը սրանց է միացնում № 8206 ձեռագրի 8 թերթ-պահպանակները, ինչպես նաև № 9092 ձեռագրի 2 պահպանակները։ Վերջին երկու ձեռագրերը Մկրտիչ գրչի կողմից գրված Յայսմավուրքներ են (վերջում ունեն Ն. Շնորհալու Հանելուկները)։ Հիշատակագրություններից պարզվում է, որ XVI դ. վերջերում Բաղեշի Պոռ գյուղում ոմն Մկրտիչ Ճառընտիրն օգտագործել է որպես ուրիշ ձեռագրերի համար պահպանակի և կազմի նյութ։

Ձեռագրի գրիչ Առաքելը նույնն է հաջորդ գրչի հետ, որն ընդօրինակել է մի Տոնապատճառ։ Այս երկու ձեռագրերն ունեն միևնույն գրությունը։ Հաջորդի մեջ հիշված ուխտի առաջնորդ Գրիգորեսը պետք է նույնը լինի այս հիշատակարանի Գրիգորեսի հետ։

## 312
## ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

*Երևան 1007*

Գրիչ՝ Առաքել
Վայր՝ Հոռոմայր

ա

466ա *Փառք անհաս վեհի, անկարատ հզաւրի, Հաւր անսկզբնականի, և*
*Որդո անսկզբնակցի, և Հոգոյն գոյակցի, որ դիմ տկարութիւնս ղաւ-*
*րացոյց և հասոյց յաւարտ գրոցս ի հրաբուն սնոյց և ի բանաւոր կեն-*
*գաննաց, և յիմո անարժան բ[ե]րանո աւաք[է յայ]ժմու յաւիտենիս և*
*անվախճան յաւիտենին, ամէն և եղիցի։ Գալուստ Տեառն մերո յերկնից*
*յերկիր յառաջագոյն պատմեցին մեզ մարգարէքն ի հայրական ծոցո*
*յաղքատ մեր բնութիւնս, յանճառ փառաց ի մեր նուաստութիւնս, յան-*
*ճառ բարձրութենէ յանքնին խոնարհութիւն առնուլ մարմին ի սուրբ և*
*յանարատ կուսէր Մարիամա։ Եւ Հոգոյն Սրբո տնտեսութեան եղեալ*
*մարդ ճշմարիտ ի վեր, քան զմարդ որպէս ինքն միայն է գիտելի, զի*
*ոչ միտք քննել կարեն և ոչ լեզուք պատմել զանհաս մարդասիրութիւնն*
*Քրիստոսի Աստուծոյ մերո։*

*Ուստի սկիզբն տաւնից փրկութեան մերո առաջին եպիսկոպոս ձեռ-*
466բ *նադրեալ յառաք//ելոցս յ*Երուսաղէմա *անտրանիկ որդին Յովսեփա, որ*
*մաւտակայ էր անճառ ծննդեան նորա ի սուրբ կուսէն, և ի տաճարն*
*ընծայելոյն, և յ*Եգիպտոս *գնալոյն փախստեամբ, և ստէպ գիտեր զա-*
*միսն և զաւետիսն Գաբրիէլի առ կոյսն, և զծնունդն, և զաւր չարչարա-*
*նացն, և զերկինս վերանալն, և զիջումն Հոգոյն Սրբոյ յառաքելսն։ Եւ*
*նա կարգեաց զսկիզբն տաւնից տերունականաց. զծնունդ փրկչին յոմն-*
*վարի ի վեցն, խորհրդաբար ընթերձւածաւք ութ աւր կանոնեալ տաւ-*
*նել ամենայն հաւատացելոց ի Քրիստոս։ Եւ ի Յակոբա պահի մինչև ի*
*ժամանակս* Դիոկղիտիանոսի Աղեքսանդրու *հայրապետին։ Եւ ի նմա-*
*նէ աւանդեցաւ առ Անդոն անապատական։ Եւ յԱնտոնէ բերեալ լինի*
*ի մեծ ժողովն և ընկալեալ փառաւորեցին զԱստուած, և առեալ սփռե-*
*ցան իւրաքանչիւր գաւառս, յորմէ կարգէ սկսեալ, ապա, մեծին* Կուրղի՝
*գտաւղի փրկական սուրբ խաչն, զկարգս երախայիցն և զսուրբ աղու-*
*հացիցն ընթերձւածսն, որ յառաջն ի դիրս անկան։ Եւ ի մերս բերաւ աշ-*
*խարհ ի սրբոյն* Ռստակիսէ: *Բերաւ յետո և կարգեալն ի* Կուրղէ:

*Արդ, զսոցա բանքս առեալ սրբո հայրապետին մեր* Զաքարիայի *և*
*այլ սրբոց վարդապետաց, լուսաւորեցին զամենայն հաւատացեալս ի*
*Քրիստոս, եւ ցուցին մեզ զտաւնս և զպատճառս նոցա. զծնունդ փրկչին*
*մերո և զընծայումն քառասնաւրեա ի տաճարին, զկարգաւորութիւն*
467ա *պահոց// աղուհացից, զյարութիւն Ղազարու, և զամենաւրեալ գալուստն*
*Քրիստոսի Աստուծոյ մերոյ յԵրուսաղէմ, զփրկագործ չարչարանս և*
*զթաղումն եռեքաւրեա, և զյարութիւնն աստուածապէս, զհամբարձումն*
*առ հայր, և զառաքումն Հոգոյն Սրբո յաշակերտսն, զայլակերպութիւնն*

Աստուծոյ մերո ի Թափորական, և զփոփոխումնն Աստուածածնին, կարգաւորեցին և լուսաւորեցին զոր ինչ և գ[տ]ին անաւթ եկեղեցո՝ ի փոքրկանց մինչև զմեծամեծս։ Ցուցին մեզ ղշարշրանս հայրապետացն սրբոց, թէ որով աւրինակաւ և զանտես տանջանս մարտիրոսացն ի տեսութիւն ածին, թէ որով խորհրդով զամենայն շաբաթ աւր պարտ է տաւնել մարտիրոսաց, յ[այ]տնեցին զահաւոր, զահագին, զսոսկալի, զերկրորդ գալուստն Քրիստոսի Աստուծոյ ահագին փառաւք՝ ի հատուցումն գործոց մարդկան։

Արդ, զայս տե[սե]ալ վաճառական ումն Յովանէս քահանա և հայեցեալ ի բան Տեառն, որ ասէ թէ՝ Երթեալ վաճառեաց զամենայն և գնեաց զայն մարգարիտ, և բազում անգամ ընթերձեալ սորա զՀին և զՆոր կտակարանսն, և ուսեալ զամենայն զհրամայեալսն զյանցաւորս եւրնմնացականէն, և զայն լեալ թէ Երանի, որ ունի զաւակ ի Սիոն և ընտանեակս յԵրուսաղէմ, զսա կարգեաց զաւակ և ընտանեակ ի վերին քաղաքին յԵրուսաղէմ, ի մայրն անտրանկաց, ուր ակն ունի ար-
467ր ժանանալ և վաճառեալ զամենայն զգոյսն իւր, յուղի// անկեալ երթա ի քաղաքն Երուսաղէմ և երկրպագէ սուրբ տեղեացն, ղփափաքն իւր լցեալ դառնա անդրէն, և գա բնակէ ի բնիկ տեղի սնընդեան իւր, ի վանս Հոռոմայրո, որ է յաշխարհիս Այրարատեան, ի գաւառիս Դվին քաղաքի, մերձ առ դղեկին Քեղայոյ, որ վերահայի ի գետն Ազատ, և ետ գրել ղսա յիշատակ իւրն և ծնաւղաց իւրոց Պատրկին և Հերիֆայի, և եղբարցն Լիպանոսի և Մխիթարա, և վարդապետաց իւ[ր]ոց Ստեփանոսի և Կարապետին, և քերցն Ջուհալին և Լիբանանու, և զաւակաց իւրեանց Սարգսի, Մխիթարա, Խարիֆշահին և Կարապետին, քեռոյն իւրո Մարեմտրո, և զաւակաց իւրոց՝ Ստեփանոսի և Մխիթար քահանայի, և ձեռասուն աշակերտաց իւրոց Հայրապետ քահանայի և Պատրիկ սարկաւագի, ընդ նոսին և միւս այլ աշակերտի Կարապետ քահանայի, զոր աղաչեաց յիշել հանդերձ մարբ և եղբաւրովն իւր։ Եւ ետ դրել զսա ի յարդար և ի քրտնախոնջ վաստակոց և ոչ ամենևին ի պարգևաց այլոց, և յետ զսա սրտի յաւժար կամաւք ընձա աստուածաբնակ սուրբ ուխտին, որ կոչի Մաղարբէ վանՖ՝ հիմնացեալ ի սուրբ առաքելոցն Բարթողոմեոսի, և կրկին նորոգեալ հրամանաւ մեծ թագաւորէն Աշոտ անուն, զոր կանգնեալ եկեղեցին յանուն Նախավկային Սրբոյն Ստեփաննոսի և սուրբ ղաւրավարն Գէորգա, և այժմ ունի զառաջնորդութիւն սուրբ ուխտին տէր Գրիգորէս, որդի Ապիրատին, այր հեզ և սրբասէր, հաճո Աստուծոյ///

Բ

14ր Ավա՜ղ, ղի այս տետրերս վատ էր նշանած, տխմար էր խաղողն։

Գ

16ր Զստացող գրոցս զՅովանէս կուսակրաւն քահանա, եւ ըծնողսն իւր՝ զՊաարիկն եւ զՀերիֆա, եւ զամենայն ազգայինսն իւր յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, և դուք լիջիք յիշեալ ի Քրիստոսէ Աստուծոյ։

Դ

34ա Ո՜վ պատուեալ եղբարք եւ հարք, զստացող գրոցս զՑովանէս քահանա, եւ զվարդապետ սորա զՍտեփաննոս միակեցն, եւ զՍարապեան յիշեցէք աղաչեմ։

Ե

60ա Զստացող գրոցս զՑովանէս քահանա, եւ զեղբարսն իւր զՄխիթար եւ զԼիանոս, եւ զամուսինն իւր զԱզիզն յիշեցէք աղաչեմ, ընդ նոսին եւ զեղկելի գրիչս։

Զ

74ա Զստացող գրոցս զՑովանէս քահանա եւ զծնողսն իւր յիշեցէք աղաչեմ, ընդ նոսին եւ զեղկելի գրիչս Առաքեալ։

Է

103բ Զստացող գրոցս զՑովանեսս քահանա, եւ զԳրիգոր, եւ զՑիկնածայրն յիշեցէք աղաչեմ, և զեղկելի գրիչս։

Ը

182բ Տէր Աստուած, ողորմի Վահանա և մնացելոցն, և Գրիգորո և Հայրապետին, և իւր ընկերացն, զի քաղում վիմունք ի վեր՝ ի յընձանին որմն հանին ի գլուխն։

Թ

156բ Զստացող գրոցս զՑովանէս եւ զծնողսն աշակերտն իւր՝ զՍարապեա երեց Զաղացանեղոյ յիշեցէք, եւ զիս եղկելի գրիչս։

Ժ

158բ Զստացող գրոցս զՑովանէս եւ զՀայրապետն՝ որդի քեռն իւրո, յիշեցէք աղաչեմ։

ԺԱ

162ա Զստացող գրոցս զՑովհանէս քահանա, եւ զԳրիգոր Շամբեցի, և զՑիկնածայրն յիշեցէք, աղաչեմ։

ԺԲ

196բ Այսաւր պարոն Վարդիկն զպարտն, որ պարտ էին, եթող, զի աղքատ էր, չկարէր տալ։

ԺԳ

245բ Իսկ որք յայսմ ժամանակի բախէք եւ հայցէք, զՑովաննէս քահանա ստացող գրոցս յիշեցէք, ընդ նմին եւ զեղկելի գրիչս Առաքեալ որ բաղում մեղա///

ԺԴ

253ա Ո՜վ հարք եւ եղբարք, զստացող գրոցս զՑովանէս քահանա եւ զհաւրեղբաւրն իւր զՊետրոս, եւ զզաւակսն իւր յիշեցէք աղաչեմ։

ԺԵ

265 Ո՜վ պատւեալ եղբարք եւ հարք, զերիցս երանեալ հայրապետն զտէր Գրիգորէս յիշեցէք, ընդնմին եւ զՅովանէս ստացող զրոցս, աղաչեմ։

ԺԶ

389ա Աւա՜ղ, զի սատանա աւճիրս գործեաց յայսմ ժամու

ԺԷ

419ա Ո՜վ պատւեալ եղբարք, զստացող գրոցս զՅովանէս քահանա եւ զՄանւէլ եղբայր մեր յիշեցէք, եւ զիս զեղկելի գրիչս Առաքեալ։

ԺԸ

429բ Զստացող գրոցս զՅովանէս քահանա եւ զծնաւղսն իւր յիշեցէք, աղաչեմ, եւ ընդ նորին զՍտեփաննոս՝ հայր վանացս։

ԺԹ

462ա Զստացող գրոցս զՅովաննէս քահանա եւ զծնաւղսն իւր յիշեցէք, ընդ նմին եւ զԼրչիկն, զի բազում սպասաւորեաց ինձ։

313

ԱԻԾՏԱՐԱՆ

Երևան 4258

Գրիչ՝ Առաքել

187ա Աւրհնեալ վերածագողն, որ արժանի արար տեսանել զվերջին գիրս, զմեղաւոր և զանարժան կոչեցեալ Առաքել, յիշել ի Քրիստոս։

Յիշեցէք ի Քրիստոս սրբասնեալ քահանայ անուն կոչնցեալ Մատթէոս և ղծնողսն նորա, որ ի մանկութենէ խրատեալ էր ի կամս Աստուծոյ, և ինքն որ խրատիչն է ամենեցուն, զիւրեանցն յայն ձայն ուղղէ, որ ասէ. Թէ Եկայք առ իս, և հանգուցանէ իւր հանգիստն և նմայ փառք, ամէն։

314

ՃԱՇՈՑ

Երևան 2948

Գրիչ՝ Աստուածատուր

126բ ԶԱստուածատուր յիշեցեք, յաղաւթքս[1]։

[1] Ձեռագրի 142բ էջում կա այսպիսի հիշատակագրություն.

«Խաւճա Առիծ, զփտեալ և կտրատեալ գիրքս գնէ գուոն կու շրջեցուցանես, էստուր գինն քո զոր պակասութիւն կու լնուլ, մեծ մեղք է քո հոգոյդ։ Գերի կու գնեն ու կազատեն, դու զգիրքս կու ծախես։ Ինչ վարձք կունես, մեկ տեղ տուր, որ կարդան՝ քեզ յիշատակ»։ Գրված է ԺԵ դարի բոլորգրով։

## 315
## ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆՆ ԵՍԱՅԵԱՅ ԵՒ ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

*Ն. Ջուղա 13, Տէր-Աւետիսյան, Ցուցակ, էջ 22*

Գրիչ՝ Աւետիս

ա

*Փառք Սուրբ Երրորդութեան՝ Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Ստացողք սուրբ մատենիս* Սիմ[էոն] *և* զՍիոն *ղսուրբ մարգարէական բանիցս, աղաչեմ յիշել ի Տէր, որք ընթեռնոյք և կամ ընդաւրինակէք։*

բ

*Զշարեհամբաւեալ քահանայքն* զՍիմէոն *և* զՍիոն՝ *ղերաժիշտք և ղկուսակրաւնք, ղստացաւղ սուրբ գրոցս յիշեցէք ի Տէր Յիսուս, և զգրող* զԱւետիս *սարկաւագ։*

գ

*Զմեղաւք դատապարտեալս* զԱւետիս *գրիչ, աղաչեմ յիշել ի Տէր Յիսուս, որք ընթեռնոյք կամ ընդաւրինակէք։*

## 316
## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Վենետիկ, 352, Երևան, մանրաժապավեն նո. 1071*

Գրիչ՝ Գրիգոր

Վայր՝ Հաղբատ

ա

61բ *Յիշատակաւք ճառիս որ պատմեցան եւ հոգիապատում աստուածաբանութեամբ... ծայրաքաղեցի զկայտնին եւ որ դիւրընկալ է իմոյ եւ որ ըստ իս են պակասիմաց ուսումնասիրաց անձանց, յոր սուղ ինչ աշխատեցաւ բանաքաղութեամբ եւ տոմատութեամբ համբակի միում* Քրիստափորի Մրգուզ *գրչի եւ անվարժ գրողի, որք ընթեռնուք...*

բ

279բ *Կատարեցաւ Ղեւտականի մեկնութիւնս ի ձեռն նուաստ գրչի* Գրիգորոյ: *Որք կարդայք եւ աւկտիք, անմոռաց յաղաւթս յիշեսջիք աղաչեմք։*

գ

402բ Գրեցաւ *աստուածային տառս այս ձեռամբ նուաստ գրչի* Գրիգորոյ, *ի մայրաքաղաքիս* Հաղբատայ, *ի յառաջնորդութեան տեառն* Բարսղի, *զոր սկիզբն արարաք ղԱրարածոց մեկնութիւն, զոր ոմն ի վարդապե-*

տաց եկեղեցւոյ համառատեալ էր, ընդ նմին եւ զՂեւտականն եղաք յայլ եւ այլ աւրինակէ...[1]

317

ՏՕՆԱԿԱՆ

Երևան 3782

Գրիչ՝ Գրիգոր

ա

44բ Քրիստոս Աստուած, քո սուրբ եւ բարեյաղթող վկայիս Սարգսի բարեխաւսութեամբ ողորմեա ստացողի գրոցս Յովաննէս քահանայի, եւ ծնաւղաց իւրոց՝ Թորոսոյ եւ մաւրն, եւ մեղուցեալ գրչինս

բ

55ա Քրիստոս աստուած, քո աստուածային սուրբ գալստեանս բարեխաւսութեամբ ողորմեա ստացաւղի սուրբ կտակիս Յովաննէս քահանայի, եւ ծնողաց իւրոյ, եւ մեղուցեալ գրչի Գրիգորոյ, ամէն։

գ

118ա Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ սրբոյ քառասնիցն ողորմեա ստացաւղի սրբոյ կտակիս Յովաննէս քահանայի, եւ ծնաւղաց իւրոց, եւ եղբարց Սարգսի եւ Կոմանոսի, և մեղաւոր գրչին, ամէն։

դ

145բ Քրիստոս Աստուած, ողորմեա ստացաւղի սրբոյ կտակիս Յովաննէս քահանայի, եւ ծնաւղաց իւրոց, եւ եղբարց՝ Սարգսի եւ Կոմանոսին և Եղբարոսին եւ Տիրանցին, ամէն, եւ մեղապարտ գրչին, ամէն։

ե

118ա Տէր Աստուած, ի քո մեծ անուն գալստեանն ողորմեայ Կիրակոս կաշէգործին և ծնողաց իւրոց, որ զհորթվենիս շնորհեց գրոցս։

Նորոգող՝ Աստուածատուր

Վայր՝ Կարին

զ

133ա Ո՛վ մանկունք սուրբ եկեղեցոյ, որք կարդաք, ի մաքրափայլ յաղաւթս ձեր յիշեցէք զտէր Աստուածատուրս Կարնոյ քաղաքայ, որ զՏաւնականս բաղում///[2]

է

246բ Ո՛վ մանկունք սուրբ յեկեղեցոյ, յորժամ ընթեռնուք զՏաւնականս, ի մաքրափայլ յաղաւթս ձեր յիշեցէք զտէր Աստուածատուրս Թէոտոյ-

[1] Հիշատակարաններն ուղարկել է հայր Ներսես Տեր-Ներսեսյանը, որին հայտնում ենք մեր շնորհակալությունը։

[2] Նորոգողի հիշատակարանը գտնում ենք կից, որպես նույն դարի հիշատակարան։

սպալսի, որ զգիրքս նորոգեցի, կարկատեցի, կազմեցի, ընդ նմին և զնախնիքն մեր զտէր Գրիգոր /// [Թա]ճկխարուն և զեղբարն իմ գՔն-միլճ///

## 318
## ՃԱՌՔ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ

**Երևան 946**

Գրիչ՝ Գրիգոր

ա

2բ ԶԳրիգոր քահանայ յիշեսջիք, ով սուրբ ընթերցողք։

բ

28բ Յովանէս ասե՝ յիշեա։

գ

127բ Քրիստո՛ս, քո սուրբ պասեքիս բարեխաւսութեամբ ողորմեայ Գրիգորոյ և Վաճանայ՝ աշխատողաց գրոցս։

դ

Գրիչ՝ Յովճաննէս

195բ Քրիստո՛ս, քո սուրբ մկրտութեանս բարեխաւսութեամբ ողորմեա Գրիգորոյ և Վարդին՝ հարազատացս։

ե

100բ ԶՅովաննէս մեղաւք մեռեալս աղաչեմ յիշել ի Տէր։

զ

162բ Սուրբ Հոգի Աստուած, նորոգեա զհոգի Գրիգորոյ և Յովանիսի, քո մեղուցեալ ծառայիցս, ամէն։

## 319
## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

**Երևան 4035**

Գրիչ՝ Գրիգոր

39ա Զստացող սուրբ կրոց Աղաւթարանիս զՆսսաանդին յիշեսջիք յաղաւթս ձեր, ո՜վ աղաւթասէր եղբարք, ընդ նմին և զեղկելի գծողս զԳրիգոր:

## 320

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՅՑ ԹՂԹՈՅ

Երևան 1408

Գրիչ՝ Գրիգոր

ա

70բ Տէր Յիսուս, ողորմեա անարժան Գրիգորի:

բ

72բ Խաւարելոյս, արարիչդ լուսոյ, ողորմեա։

գ

73բ Մարդասէր Յիսուս, աւգնեա ինձ, ըի գինք արեան քո եմ։

դ

86բ Յոյս և ակնկալութիւն Յիսուս, փրկեա ի հրոյ գեհենոյն։

ե

87բ Կանգնեա ղանկեալս ի գլորմանէ։

զ

91ա Նեղելոց աւգնական, աւգնեա ինձ[1]։

## 321

## ՄԱՇՏՈՑ

Վենետիկ 324, Սարգիսյան, Ցուցակ Դ, էջ 97—98

Գրիչ

ա

Տէր Աստուած, երկնից անթառամ և անանց պսակին արժանաւորեա ըստացող սորա եւ ըծնաւղսն նորա, եւ ըլոյժ գերի գծողիկս, ամէն։ ԶՄխիթար տէր երէցս։

բ

ԶՄխիթար երէց ստացող կտակիս եւ ըորդի նորա Կարապետ՝
ժառանգորդ այսմ տառի,
Յիշել ի բան բարի
Ի տեղ[ւ]ոջ, ուր ժողով լինի,
Նա եւ յիշողացդ Տէր ողորմի։

գ

Ստացողի այսմ Մաշտոցի
Սրբասիրի քահանայի,
Որ Մխիթար անուն կոչի,
Եւ որդւոյ նորա Կարապետի,

[1] Բոլորը գրված են նշված էջերի ստորին լուսանցքներում։

Տէր ողորմեա եւ աւգնեա յամենայնի,
Նաեւ գծողի բաղմամեղի
Եւ յոյժ անպիտանի։

Դ

Քրիստոս Աստուած, ի քո միւսանգամ գալուստդ ողորմեա Պետկանն եւ Խնձորին, ծնաւղի, այսմ տառի, եւ ինձ գծողի՝ մեղապարտի։

Ե

Նշան<ան> անպարտելի,
Աւգնեա Գրիգորի,
Որ ըղսամղն երետ ձրի։

Զ

Սարգսի եւ Թորոսի
Տէր ողորմի,
Որ մատուցին անձանց ընծա,
Տէր ողորմեա նոցա։

Է

Ողորմեա տէր Կոստանդեա, որ առ քեզ եկն։

Ը

Աւրհնեա Տէր Քրիստոս զՍեբիոս քահանայ, որ զԹուղթս զնեաց հաւատով, եւ արա զնա որդիս լուսոյ եւ առւընչեան։

Զամենալի հաւատացեալքս ի քեզ՝ զՍարգիս եւ զՍիոն ողորմեա։

## 322

## ԱՒՍՏԱՐԱՆ

Երևան 3723 (1045 թ.)

Գրիչ

182բ Առ Աստուած սիրոյ նշանակ եւ յարացոյց, որոց մեծաւ տենչանաւք ախորժալն կամին յաւժարական մտաւք, յայս ինչ փութան հանապազաւր զնորայն խոկալով եւ ղնորայսն աղաչելով, ղսուրբս արգահատեն զփրկութիմ անձանց, ըստ որում որք զթագաւորս սիրելն կամին, զորդիսն և զսպասաւորսն սիրելով այնու ցուցանեն զմտերմութիւն իւրեանց, այսպէս փափագ [ը]ղձից եւ գութ սիրոյ յանձին կալեալ Կոստանդին հաւատարիմ ծառայ Աստուծոյ, եւ ստացաւ ղԱւետարանս զայս յիւր յարդար վաստակոց եւ յիրաւացի աշխատանաց՝ յիշատակ իւր և ծնողաց իւրոց, ի փրկութիւն հոգւոյ իւրոյ եւ ի քաւութիւն մեղաց իւրոց։

Արդ, որք ընթեռնոյք և լուսաւորիք, կամ ընդաւրինակէք զԿոստանդին եւ ղծնողսն իւր յիշեսջիք առաջի զենմանն Քրիստոսի, զի ողոր-

մեսցի նոցա իւրում գալստեանն, եւ դասեսցի ընդ սիրելիս անուան իւրոյ, և դրեսցէ ի դպրութիւն կենաց և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Աղաչեմ և դիս յիշեսջիք ի Քրիստոս։

## 323
## ԱՒԾՏԱՐԱՆ
Երևան 379

Գրիչ

ա

53բ Ջստացող սորա զՊետրոս կրաւնաւոր յաղաւթս յիշեցէք։

բ

148ա Աղաչեմ զամենեսին մեղադիր մի լինիք սխալանացս, զի չէի շատ դրել և էի երիտասարդ և անհաստատ։

գ

Ստացող՝ Պետրոս

18ա Հիշեայ զանյիշելիս զՊետրոս, ո՛վ սուրբ եղբարք և զայլ աւգնաւղքն[1]

## 324
## ՃԱՌՔ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ
Երևան 2600

Գրիչ

ա

116ա Ջստացաւղ գրոցս տէր Գրիգորէս կաթողիկոս Հայւոց յիշեսջիք ի Տէր, վասն կենդանութեան սորին։

բ

121ա Ջտէր Գրիգորէս կաթողիկոս Հայոց եւ ստացաւղ գրոցս յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս ամենայն որդիք Սիովնի[2]։

## 325
## ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ
Երևան 786

Գրիչ՝

66ա Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ Սրբոյն Մակարայ ողորմեա Գրիգորոյ ստացողի սորա եւ ծնողաց իւրոց, ամէն։

---

[1] Շատ ինքնատիպ գրություն ունի ձեռագիրը։ Գրված է բոլորգրով և ուղղահայաց տառերով, որոնք սկսվում են սուր ծայրերով, ինչպես գոթական այբուբենի տառերը։ Շատ ինքնատիպ են ձ, և, չ, ժ տառերի հնագույն ձևերը։ Ունի նուրբ լուսանցազարդեր և կիսախորաններ։

[2] Այս կարգի հիշատակարաններ կան նաև 26ա, 79ա, 83ա, 158բ, 181ա, 240բ էջերում գրված երկաթագրով և կարմիր թանաքով։ Ձեռագիրը սկզբից և վերջից լրացրել է Վարդան վարդապետ Բաղիշեցին 1677 թ. (էջ 255բ)։

## 326

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1672*

Գրիչ՝

127բ Զտառապեալ գծողս յիշեայ ի Տէր, եւ զստացող սորա զՊետրոս եւ զծնողսն իւր, ողորմութիւն հայցելով յամենեցունցն Աստուծոյ, ամէն։

## 327

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4807*

Գրիչ

152բ Որ ողորմի ինձ և ասէ. Ողորմած Աստուած, ողորմեա մեղուցեալ գրողի սորա աննմանի և սևերեսի, յամենայն կողմանց տնանկի, Աստուած իւրն ողորմի։

## 328

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4258*

Գրիչ

187ա Յիշեցէք ի Քրիստոս զսրբասնեալ քահանայ անուն կոչեցեալ Մատթէոս և զծնողսն նորա, որ ի մանկութենէ խրատեալ էր ի կամ Աստուծոյ, և ինքն, որ խրատիչն է ամենեցուն զիւրեանցն յայն ձայն ուղղէ, որ ասէ թէ Եկայք առ իս, և հանգուցանէ յիւր հանգիստ և նմայ փառ[ք], ամէն։

## 329

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 9026*

Գրիչ՝ Թորոս

184բ Տէր Աստուած ողորմեա ստացողի սորա պատուական քահանայի Ներսէսի եւ ծնողաց իւրոց։

Ընդ նոսին եւ ինձ անարժան գրչի Թորոսի, ամէն։



21—1180

## 330
## ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետիկ 106, Սարգիսյան, Ցուցակ, Ա, էջ 472—473*

Գրիչ՝ Խաչատուր

ա

76բ *Սուրբ աւետարանչիս բարեխաւսութեամբ, Քրիստոս, ողորմեա գծողի սորա մեղապարտի* Խաչատրոյ *անպիտան աբեղի։*

բ

1ր *Ցիսուս յոյս ամենեցուն, ողորմեայ* Խաչատրոյ *անպիտան կրաւնաւորի և յոյժ մեղապարտի։*

գ

*Ծաղկող՝* Վարդ

4ր *Զ*Վարդ *ծաղկողս յիշեսջիք ի Տէր աղաչեմ*[1]*։*

## 331
## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Երևան 2840*

Գրիչ՝ Խաչատուր

ա

86ա *Զ*Խաչատուր *անպիտան գծողս և ըզստացաւղս զսորին աղաչեմ անմոռաց յիշել*[1] *ի սուրբ յաղաւթս ձէր, և եղիջիք յիշել ի Տէր, ամէն։*

բ

19բ *Սուրբ առաքեալ Քրիստոսի, աղաչեմ վասն քո չարչարանացն յիշեա զստացաւղն եւ զծնողն քո սուրբ Աւետարանիս, և քառութեանս քո սուրբ առաջի ատենին Քրիստոսի՝* զՄեսրոբն, *զայլ եղբայրսն, և զծնաւղս իւր առնել ողորմութիւն նոցա ի յաւուրն յայնմիկ, ամէն։*

գ

73ա *Զստացող սուրբ Առաքելոցս* զՄեսրոբն, *և զծնաւղսն ի[ւր], և զեղբարսն, և զգիրչն յիշեցէք ի Տէր, աղաչեմ։*

## 332
## ԸՆԴԴԷՄ ԵՐԿԱԲՆԱԿԱՑ ՑՈՎՀԱՆՆԻՍԻ ՍԱՐԿԱՒԱԳԻ

*Երևան 777*

*Վայր՝* Հաղբատ

51ա *Այս բանք քերդողականք ասացեալ մեծի պուէտիկոսին* Սարկաւագին, *որ ի տիեզերահռչակ ուխտին* Հաղբատ, *գտի ես նուաստ ոմն ի մանկումս եկեղեցւոյ։ Արդ, մի ոք յանդգնեալ իշխեսցէ յաւելուլ կամ*

[1] *Բ և գ հիշատակարանները գրված են համապատասխան էջերի խորանների ներքևում։*

պակասեցուցանել ի բանից կամ ի տանց եւ յարուեստից, զի եւ մեք ոչ իշխեցաք յաւելուլ եւ պակասեցուցանել, զոր ինքնին իւրով ձեռամբն գրեալ էր, եւ ըստ այմ աւրինակի էր Կտակն, յորում էր սա, սկիզբնն եւ կատարածն եղծեալ։

Եթէ գտցես ուրեք զբովանդակն, գրեա՛, եւ զմեզ յիշեա ի Տէր։

## 333

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երեան 1897

Գրիչ՝ Հայրապետ

ա

92բ Զմեզաւք մեռեալս Հայրապետս, որ շարադրեցի զսոսա ի շահ և ի յաւգուտ մանկանց եկեղեցւոյ, յիշեսջիք ի Տէր, ո՛վ արժանաւոր ընթերցողք, և ծնաւղսն իմ, և եղբարսն, և Աստուած զձեզ և մեզ առհասարակ ողորմեսցի, ամէն։

բ

107բ Զբազմամեղ անձն իմ Հայրապետիս և եղբարց իմոց Կարապետին և զխաչատրին յիշեայ, ո՛վ պատուական վերծանող եղբայր ի Քրիստոս, զի ողորմեսցի քեզ և մեզ։

գ

183ա Հայրապետ վարդապետ և մեղապարտ գրիչ յիշեսջիք ի Քրիստոս, ո՛վ աստուածասէր ընթերցող ուսմամբ։

## 334

## ՃԱՌԸՆՏԻՐ

Վենետիկ 201, Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 63—66

Գրիչ՝ Հայրուկ

ա

Փառք անսկիզբն եւ անժամանակ, աներբ եւ անուստեք, անորակ եւ անքանակ, եւ անքնին, գերաբուն եւ համագոյ, եռակի եւ եզականի տէրութեան եւ միոյ աստածութեանն երկրպագութիւն եւ գովասանութիւն...

Արդ ընկալ մարդասիրապէս ի հաճոյս կամաց քոց, զջան եւ զվաստակ աշխատասէր գործոյս, զոր յանուն քո աւարտեցաւ զգերապայծառ սրբոց քոց զճառս վկայական հանդիսից... Եւ ձեզ, ով առաքեալք, սուրբ հայրապետք եւ վկայք Քրիստոսի, գոհաբանութիւն եւ աւրհնութիւն յիմմէ տկարութենէս գերապայծառ ճառագայթք, արփիափայլ լուսովն աւլցեալք, գանձք աստուածայնւոյն ամբարեալք յերկինս՝ յանեղաշէն բնակութիւնս անճառ լուսոյն, որ աւժանդակ եղէք այմ հոգեւոր աշխատութեանս՝ յաւարտումն հասուցանել...

Արդ եւ դուք ով ճգնաւորական դասք, մանկունք սուրբ եկեղեցւոյ, հրեշտակերամ լուսածիր գունդք կրաւնաւորաց՝ որք էք ի սրբարնակ մենաստանս առկայեացեալք, ի վրդովմանց կենցաղոյս փախուցեալք, եւ ունէք փոյթ աշխատակիր կրաւնից... եւ մաքուր մտաւք առ Աստուած հայիք հանապազ, աղաչեմ զձեզ յիշել զրազմամեղ եւ զանարհեստ գրիչս Հայրուկս եւ զծնաւղսն իմ եւ զեղբայրսն ի Քրիստոս, որք վայելէք ի հոգէատուր վկայութեանցս՝ ընթեռնելով եւ լսելով զաստուածահաճոյ ճգնութիւնեւ զբանս սրբոցն՝ չարչարակից եղեալ նոցունց սիրով եւ զղջմամբ սրտիւ եւ արտասուրալի տամախմրութեամբ։ Վասնզի զմեծապայծառ վկայիցն Աստուծոյ զհանդէս ի գլխաւորագունից աշակերտաց Փրկչին առաք հրաման յիւրաքանչիւր ամի նոյն աւրին համախումբ ժողովով պայծառ շահալուցութեամբ, եւ երգովք հոգեւորաւք եւ մաքուր վարուք եւ սրտի մտաւք ի լուր ամենեցուն տաւնել ի փառս եւ ի գովութիւն Սրբոյ Երրորդութեանն։

## Բ

Տէր իմ Յիսուս Քրիստոս որդի Աստուծոյ, Աստուած ճշմարիտ, ողորմեա գրողիս Հայրուկի եւ եղբարցն իմոց Ստեփանոսի եւ Սարգսի եւ Գրիգորի, եւ այլ եղբարցն եւ ծնողացն, եւ ազգականացն եւ ամենայն քրիստոնէից, ամէն։

## Գ

Տէր Յիսուս Քրիստոս Աստուած ճշմարիտ, քո սուրբ թաղմամբդ եւ յարութեամբդ ողորմեա Հայրուկի մեղապար գրչի եւ եղբարց իմոց... եւ Յոհաննիսի՝ յաւրինակս շնորհողի, եւ ամենայն քրիստոնէից, ամէն, ամէն։

## Դ

Գրիչ՝ Սարգիս

Բարեխաւսութեամբ սուրբ հայրապետիս՝ Քրիստոս Աստուած ողորմեա ստացողաց սորա Ստեփանոսի եւ Հայրկանն եւ ծնողացն իւրեանց, եւ Սարգսի մեղապարտի, ամեն։

## Ե

Գրիչ՝ Վարդան

ԶՍտեփանոս կրաւնաւոր եւ զՍարգիս, եւ զՀայրուկ եւ զՎարդան մեղապարտ գրիչ յիշեսջիք ի Տէր։

## 335

## ՋԵՐՄԱՆՑ ՄԽԻԹԱՐՈՒԹԻՒՆ ՄԽԻԹԱՐԻ ՀԵՐԱՑՒՈՑ

Երուսաղեմ 370, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 284

Գրիչ՝ Հեթում սեւասաաւս

## ա

Յիսուս Քրիստոս, որ բժիշկդ ես հոգւոց եւ մարմնոց, բժշկեա զվէրս հոգւոյ եւ մարմնոյ ծառային քո Հեթմոյ սեւաստաւսի, որդւոյ [Աւ]շնի, եւ քեզ փառք յաւիտեանս, ամէն։

Բ

*Տէր Յիսուս վայելել տացէ Բըժշկարանս մեծի և բարեպաշտ իշխանին սեւաստաւսին Հեթմոյ՝ որդւոյն Աւշնի բարեպաշտի*[1]։

## 336
## ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

*Վենետիկ 192, Սարգիսյան, Ցուցակ, Ա, էջ 804*

*Ստացող՝* Հեթում

ա

96ա *Զբարեհամբաւեալ վարդապետն* զՀեթում *զստացւող դորա յիշեցէք ի Տէր։*

Բ

66ա ԶՀեթում *վարդապետ զստացւղ սորա յիշեցէք ի Տէր։*

## 337
## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երուսաղեմ 1706, Ն. Պողարյան, Ցուցակ Զ, էջ 146—149*

*Գրիչ՝* Մատթէոս

ա

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամմէն*[2]։

Բ

ԶՎանճան և զՄատթէոս *նուաստ ծառայք Աստուծոյ յիշեսջիք ի Տէր, աղաչեմ։*

գ

ԶՄաթէ *նուաստ ծառա Աստուծոյ եւ* զՎանճան *եղբայր իմ յիշեսջիք ի Տէր աղաչեմ։*

*Նկարող՝* Թեոդորոս

դ

ԶԹեոդորոս *նկարող սորին յիշեսջիք ի Տէր*[3]։

ե

Մատթէոս *ծառա Քրիստոսի*[4]։

---

[1] *Գրված է բժիշկների պատկերներով առաջին մագաղաթյա պահպանակի վրա։ Բ հիշատակարանը վերցրել ենք Ցիշատակարանքից (էջ 669)։*

[2] *Էջի մնացած մասը դատարկ է։*

[3] *Մատթեոս ավետարանիչի նկարի տակ, ծաղկագիր։*

[4] *Նկարված է Քրիստոսը, որ օրհնում է գրիչ Մատթեոսին, նկարի վերևում հունարեն գրված է «Յս Քս», իսկ հիշյալ գրությունը՝ նկարի ներքևում։*

## 338
## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՈՑ

*Գուշակյան, Ցուցակ Սերաստիայի, էջ 101*

Գրիչ՝ Մխիթար

ա

138 *Աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք զաստուածաշունչ կտակքս, որ ի բազմազան ծաղկանց ժողովեալ է, զ*Մխիթար *գծող բոլորգրոյս և զծնողսն մեր յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր, և որք յիշէք, յիշեալ եղիջիք։*

բ

Գրիչ՝ Պետրոս

500 *Ճշմարիտ Քրիստոսի բանին նորընծայ սպասաւոր վարդապետ* Մխիթար, զՊետր[ոս] *մեղաւոր յիշել աղաչեմ։*

գ

525 *Զընտրեալ եղբայր սրաբազան զվարդապետդ* Մխիթար *աղաչեմ տառապեալս համանուն յիշել ի Տէր և խնդրել ողորմութիւն ինձ յԱստուծոյ։*

## 339
## ՏՕՆԱԿԱՆ

*Փարիզ 111, Երևան, մանրաժապավեն 924*

Գրիչ՝ Յակովբ

ա

17ա *Զտառապեալ գծաւղս զաստուածանակ տառիս զերանեալ եւ քաջ նահատակիս Թէոդորոսի, յիշեա որ ընթեռնոյքդ, ով աստուածասէրք, աղաչեմ։*

բ

39ա *Ով վատ նիւթիկս, զի Ե լաւ զայս դրիկս։*

գ

42ա *Տէր Աստուած բարեխաւսութեամբ սրբոյ վկայիս Արդլմսեհի, ողորմեա մեղապարտիս* Յակովբայ *եւ գծողի տառիս։*

դ

74բ *Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ ամենայն սրբոց ողորմեա մեղաւք մեղապարտ գրչիս, տարտամ երիտասարդիս, հնացեալ մեղաւորիս, դատարկացեալ կրամաւորիս, ամէն։*

ե

80բ *Ընդ նոսին վայրավատ գրչիս* Յակոբայ *եւ ծնաւղաց իմոց եւ եղբարց եւ քեզ փառք յաւիտեանս, ամէն։*

## 340
## ԱՒԵՏԱՐԱՆ
Երևան 6384 (1042 թ.)

Ստացող՝ Յոհաննէս
Վայր՝ Դեղձուտի վանք

ա

107ր Ես նուաստ Յոհաննէս ստացա զսուրբ Աւետարանս յիմ հալալ արդեանց եւ ետու վասն միաբանութեան յիշատակ հոգւոյ իմոյ, ի սուրբ վանքն Դեղձուտ: Արդ, մի ոք իշխեսցէ հանել զսա յայս վանիցս, զի մի եւ ինքն ելցէ ի կենաց որդւոյն Աստուծոյ։

բ

Զվերջացեալս մեղաւք յիշեսջիք զՈհան զտառապելիկս, այլ եւս յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս Տէր մեր[1]։

## 341
## ՃԱՌԸՆՏԻՐ
Երևան 1522

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Յոհանու վանք

ա

ԶՌուբէն զստացող գրոցս եւ զՅոհաննէս գրիչ յիշեսջիք յաղաւթս եւ ողջ լերուք ի Տէր։

բ

Զստացող գրոցս զՌովբէն աստուածասէր քահանայ եւ զգծողս Յոհաննէս յիշեսջիք ի Տէր։

գ

82ր Զաշխատողքս յիշեսջիք։

դ

» Զստացող գրոցս զՌուվբէն սրբազան քահանայ եւ զմեղ[ա]պարտ գրիչ զՅոհաննէս յիշե[ս]ջիք աղաչեմ ի սուրբ յաղաւթս, եւ Տէր զձեզ յիշեսցէ, ամէն։

ե

208բ Բազում ողորմած, ողորմեա Ռուբենայ քահանայի ստացողի եւ մեղապարտ գրչի, եղբաւր իմոյ Սուքիասի քահանայի, եւ քեզ փառք յաւիտեանս, ամէն։

զ

272բ ԶՌուբէն կուսակրօն քահանա, որ ետ գրել ի հալալ արդեանց, սակս յիշատակի հոգւո իւրոյ, յիշեսջիք ի Տէր։ Ընդ նմին՝ զշունս։

---

1 Գրված է նախորդի վերևում, մանր երկաթագրով։

է

95 *ԶՌուբէն կուսակրան քահանայ, որ ըստացաւ զկտակս զայս յիշեսջիք ի Տէր։ Եւս և զանարժանս յորդիս Ադամա, զմեղաւոր շունս։*

ը

305ա *Եւ ես մեղացեալ անարժանս ի կրամաւորս* Ռուբէն, *որ և տրուպ ա-մենայն եղբարցս, որք կան ընդ հովանեաւ Սուրբ Կարապետիս ի* վանս Յոհանու, *յիշել հայցեմ, որք կարդայք։ Եւս և զյետին գրիչս զմեղաւորս։*

թ

340բ *Զմեղաւոր շումս յիշեա։*

ժ

369ա *Զստացող սորին* զՀռոփէն *քահանայ յիշեսջիք եւ ըծնողսն իւր։ Ընդ նմին և զմեղաւոր շումս։*

ժա

404բ ԶՀռուբէն *ստացող սորին յիշես ի Տէր, եւս եւ զլի գործովքս անաւրենու թեանս։*

ժբ

Գրիչ Յոհաննէս

504ա *Ամէնողորմած Աստուած քոց սրբոց բարեխաւսութեամբ ողորմեա* Ռով-բէնի *քահանայի ստացողի գրոցս, ընդ նմին եւ յոքնամեղ գրչի* Յոհան-նիսի, *եւ եղբաւր իմոց* Սուքիասու *նորոգ վարդապետի ասացէք ամէն։*

ժդ

539ա *Կարի շտապով գրեցի, դի զաւրինակն խլեին* զՅովանիսի խոյլինց։

ժդ

543ա *Այ վայ, ի քիթս ածին աւրինակիս տէրքս։*

ժդ

567բ *Բազում նեղութիւն կրեցի ես* Յոհաննէս *նուաստ գրիչ ի Սուրբ Գրի-գորիս, ոչ մարմնոյ վաստակ կամ նեղութիւն, այլ մտաց և խորհրդոց, յաղագս աւրինակի այսց ճառից, քանզի եղբայր ոմն կաթարոս, որոյ անուն* Խոյլենց Յովանէս *ճանաչի, որոյ իւրն էր աւրինակ մեծ գիրք, ոչ տայր ի գաղափար, կարծեմ վասն նախանձու կ յորժամ վանքս և հայրն եա, նա զչարեալ, գայր յափշտակել, իսկ ես ողոքանաւք խնդրէի։ Հազիւ կարացի դրել իբրև Ը (8) ճառ, և ապա խլեաց և տա-րաւ և Թ տետրն անգիր մնաց, իսկ իմ տարանակուսեալ յԱստուած ապա-ւինեցի, յանկարծ պատահեցաւ գիրք մի Տաւմացուցակ։*

## 342

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7779

Գրիչ՝ Յովանէս

ա

231բ Փառք եռակի եւ եռահիւսակի, եռարուն, տերունական, համագոյական, աստուածական բրխման յորդ[ա]ռատութեան, սա և Աստուած Աստուծոյ, սա է տէր[տ]էրանց, սա է անմահ [Աստուա]ծ յայտնել աշխարհ[ին ս]ա է բժիշկ հոգոց եւ մարմնոց, սա է երկինք եւ [եր]կիր, սա է ամպհովանի ||| քաղցրաճաշակ, սա է հայր որբոց եւ այրեաց, յորմէ ծնե[ա]լքս աւաղանի ճանաչեմք եւ ապաւինեմք եւս Փառք Հ[ա]ւր եւ Որդո եւ Հոգւոյն Սրբոյ։

Արդ աղաչեմ ղամենեսե[ա]ն որք աւգտիք կամ աւր[ին]ակեք, յիշեք անարժան եւ զ[մ]եղսամակարդ Յովանես [ք]ահանայ։

բ

105ա Զմեղապարտ գծողս յիշե աղաչեմ, ով ծաղիկ եկեղեցու

գ

Գրիչ՝ Կիրակոս

209բ Ես Կիրակոս երէց ստացայ տարեն մին ժամ Տէրտէր իրիցին, որչափ կարող լինիմ թե ղհասուցեմ առաջի ահեղ ատենին, յիւր հոգին հասուցեմ։ Վկա Աստուած, ու Խայչատուրն, ու Վարդիկն:

## 343

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆՉԻՆ

Երևան 5938

Գրիչ՝ Յոհաննէս

ա

71ա Քրիստոս Աստուած ողորմեսցի գրողի սորա Յոհաննէսի:

բ

198բ Զտառապեալ ծրողս Յոհաննէս յիշեցէք ի Տէր։

գ

125բ Տէր Աստուած ողորմեսցի Դաւիթ քահանաի եվ ծնողաց իւրոց, ամէն։

դ

226բ Քրիստոս Աստուած, քո սուրբ առաքելոցն՝ երկոտասանիցն և եւթանասնից, և սուրբ հսկող վարդապետին Գրիգորի, և ամենայն սրբոց բարեխաւսութեամբ ողորմեա Թոմաին, և ծնողաց իւրոց, և

*գծողի սորա* Յոհանիսի, *և կարդացողիս, և լսողացս ամէնեցուն, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։*

**344**

**ԱՒԵՏԱՐԱՆ**

*Տեր-Մովսեսյան, Համահավաք Ցուցակ, Աւետարանք, էջ 119*

*Գրիչ՝* Յովհաննէս

ա

*Տէր Յիսուս, ողորմեա ապիկար գրչիս* Յովհաննիսի *եւ* Ջաւրվ[ր]ին:

բ

*Քրիստոս Աստուած ի քո գալստեանդ ողորմեա ապիկար գրչիս* Յովհաննիսի *եւ եղբաւր մեր* Ջաւրվրին:

**345**

**ԱՒԵՏԱՐԱՆ**

*Վենետիկ 102, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 454*

*Գրիչ՝* Յուսիկ

20բ *Տէր իմ Յիսուս, ողորմեա քո ծառայի* Յուսկան *մեղաւորի, ամէն։*

**346**

**ԼԱԶԱՐԵԱՆ ԱՒԵՏԱՐԱՆ**

*Երևան 6200 (887 թ.)*

ա

110բ *Անուամբն Աստուծոյ եւ Սուրբ Աստուածածնին ես տէր* Յուսիկս, *եւ* Ռըստագէս, *եւ* Ստեփանոսս, *եւ* Խաչատուրս, *եւ Մեծ երէց /// որ կատարենք ուխտ առ Աստուած, շնորհիւ Սուրբ Աստուածայծնին եւ ի մարդկանէ՝* Կարապետիս, *եւ* Նորշահիս, Տոնականիս, *եւ* Մեհրուիս, *եւ* Սարգսիս, *և* Շահ[ան]ա, *եւ* Շահիս, *և* Գոզոյիս, *և* Շահերս, *և* Աւաքս, *[և* Վ]րտանիսիս, *և* Սիմաւոնոյս, *և* Վարդապետ[իս], *եւ* Աղուիս, *եւ* Կարապետիս, *եւ* Խաչատրուս, *և պարոն* Սևասայս, *և մեք սարկաւագոյնս եւ երկոյ* Գրիգո[ր]ս, *որ միայբանեմք Սուրբ Աստուածայծնին եւ Աստուածոյ, և եղբարք եմք իրերաց, և կենքն և մահն լինի ի մէնջ, և Աստուած խաղ/աղ/ութիւն պահէ ղեղբարութիւնս և ննջեցելոցն ողորմութիւն շնորհէ։*

բ

*Գրիչ՝* Յոհանէս

129բ *Զտէր* Յոհանէս *յիշեցէք ի Քրիստոս և ձեզ յիշեսցի Քրիստոս յիւր արքայութիւն, ամէն։*

Գ

129բ *Զտէր Յոհանէս յիշեցէք ի Քրիստոս։*

*Ստացող՝* Պաղիկ

Դ

2ա *Յանուն Աստուծոյ ես՝* Պաղիկս *և իմ որ/դ/ի* Վարգե[գ]ունս, *որ գնեյցաք զսուրբ Աւետարանս մեզ ի յիշատակութիւն, և սորայ [առ]աջին մեղաց թողութիւն և ի յիշատակութիւն, և Հասուտին: Եւ [որ] զայս սուրբ Աւետարանս կարդայ՝ զմեզ և զմեր [ն]նջեցելս առ Քրիստոս յիշե[ս]ցէ և մեղաց թողութիւն հա[յ]ցե, և Աստուած զձեզ յիշեսցէ իւր արքայութեանն, ամէն։*

*Եւ ապայ գնեցաք զսուրբ Ուխտի Աւետարանս իմ եղբաւրն* Թորոսի, *որ իր աւգնական լինի, և իր տղայոյցն՝* Տերպապուն *և* Սիմատնի, *ամէն։*

Ե

*Գրիչ՝* Նախորդի ծոռ Գրիգո՞ր

*Եւ որ զայս ոուրբ Աւետարանս կարդայ, մեղացս թողութիւն հա[յ]ցէ իմ պապում* Վարդեգունին *եւ իմ մաւրն* Հասուտին, *և Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն*[1]*։*

Զ

107ա *Փրկայ դիս ի թշնամեաց իմոց Աստուած, և յաւ[գնեա՞] /// զաւկաց իմոց /// կայցիս ///* [Գրի]գոր:

## 340

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2877*

*Կազմող՝* Յուսեփ

*Վայր՝* էրեզ

2ա *Աւրհնեալ է ամենասուրբ Երրորդութիւնն, որ արժանի արար զմեզ* զՎահանս *և* զԲահրս *միւսանգամ նորոգել զսուրբ Աւետարանս, ի յիշատակ մեզ, և ծնողաց մերոց, եւ եղբարց մերոց հարազատաց՝ կենդանեաց և մեռելոց։*

*Արդ, աղաչեմ առհասարակ զմիաբանութիւն հարց եւ եղբարց, որք կարդայք եւ լուսաւորիք, եւ ընդաւրինակէք եւ աւկտիք ի սմանէ՝ գանձ անկողոպտելի։ Արդ աղաչեմ զամենեսեան անմոռաց յիշմամբ յիշեսջիք զնորոգող եւ զկազմող սուրբ Աւետարանիս զպարոն* Վահանս *եւ զտիկին* Բահրս, *որ բազում ինչս ծախեցաք ի դմա, եւ արարաք զսա յիշատակ հոգւոց մերոց, եւ ստացաք զսա մեզ զաւակ ի Սիոն եւ ընդանեակ յԵրուսաղէմ։*

---

*1 Դ—Ե հիշատակագրությունները գրված են Եվսեբիոսի Թղթի լուսանցքում։ Պապի և ծոռան հիշատակագրությունները գրված են շղագրով։*

*Բայց արդ, ով աստուածարեալք եւ քրիստոսազարդեալք մանգունք առագաստի Նոր Սիոնի, ոչ եթէ ի մթերից ընչից մերոց կամ յաւելորդաց արարաք զսա, այլ ի հալալ յարդեանց եւ յաշխատութեանց, զծախս հոգւոց մերոց և զմասն մարմնոց մերոց աշխատեցաք ի սուրբ Աւետարանս, զի ընդ միոյն հարիւրապատիկ ընգալցուք ի Քրիստոսէ Աս-*
2բ *տուծոյ մերոյ զանվախճան ուրախութիւնս // ընդ ամենայն սուրբ նորա, զի ոչ եթէ յաղագս աշխարհի պատուի, կամ յաղագս սնափառութեան արարաք զայս ամենայն, այլ յաղագս յերկնաւոր լուսոյն եւ յերկնային ուրախութեանցն։ Բայց արդ, դարձեալ աղաչեմք զամենեսեան առհասարակ, արտասուագոչ պաղատանաւք անգանիմք յոտս ձեր եւ խնդրեմք զթողութիւն բազում յանցանաց մերոց, զի ի ձեռն բարեխաւսութեան ձերոյ լիցի մեզ թողութիւն, զի թերեւս արժանի եղիցիմք յաշակողմանն հանդիպիլ ընդ ամենայն սուրբս։ Եւ որք յիշեքդ եւ հաւատով խնդրէք թողութիւն, թողցէ ձեզ Քրիստոս զ[յ]անցանս ձեր եւ յերկնից արքայութեանն արժանի արասցէ։*

*Բայց արդ կազմեցաք զԱւետարանս եւ ետուաք ի ձեռն պատուական քահանայի* Սուքիասի, *որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, եւ Աստուած ողորմեսցի նմա եւ ծնողաց նորա, զի բազում աշխատեցաւ ի սմա։ Բայց յո եւ անգանի Աւետարանս, պարտական է ամենայն տարոյ երկու ժամու, մինն Վարդեւորին, եւ մինն՝ Յայտնութեաննն։ Եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս յաւիտեանից, ամէն։*

*Զնուաստս եւ զբազմամեղս* զՅուսեփ *յիշեսջիք և Աստուած զձեզ յիշեսցէ, ամէն, ամէն։*

## 348

## *ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ*

*Վենետիկ, 20, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 162*

*Գրիչ՝* Որդանան

ա

8բ *Զողորմելի գծողս* զՈրդանան, *յիշեա ի Քրիստոս, աղաչեմ։*

բ

30բ *Զստացող սորա զհայրս* Սանակ *և զողորմելի գծողս* զՈրդանան *յիշեցէք ի Քրիստոս աղաչեմ, ո՛վ պատ[ու]եալ վերծանօղք։*

գ

49բ *Զխոհեմամիտ և զհսկող ճգնաւորն Քրիստոսի* զՍանակ՝ *ստացող սուրբ տառիցս յիշեցէք առաջի զենլոյն Քրիստոսի՝ ծնողաւք և ուսուցչաւք և ամենայն արեան մերձաւորաւք, ընդ նմին և զողորմելի գրչակս* զՈրդանան, *և որք յիշէք բարի մտաւք՝ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեան։*

դ

148բ Անապատս ամաի է և ես երկնչիմ ի գազանէ. կրկին աւա՜խ զեղկելիս։

ե

165ա Աւրինակս եղծած է, փտել մագղաթ է. և ոչ կարեմ վերծանել. թողութիւն շն[որհ]է վասն Տեառն։

Եռակի տաուիցս աւարտման, եռանձնեայ աստուածութեանն և եզակի բնութեանն փառք յաւիտեանս։ Զստացող սորին և զողորմելի գրչակս յիշեցէք ի Քրիստոս[1]։

զ

Ի վեր սորա յիշեսջիք զճգնազգեստն զՍահակ:

## 349

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4753

Գրիչ՝ Վարդան

ա

391բ Փառք եռանձնեան եւ եզաբուն, համակամ և համագոյ, միահեծան եւ միայզաւր իշխանութեանն յաւիտեանս, ամէն։

բ

114բ Զստացաւղ սուրբ Աւետարանիս զՍարգիս քահանա Աստուծոյ եւ զգրիչս Վարդան յիշեցէք ի Քրիստոս աղաչեմք[2]։

գ

233ա Աւախ տեար ծուռ այ քանոնած, չեմ քանոնել։

դ

24ա Քունս ղիս տարաւ։

ե

86բ Զագ ելաւ ձագանոց չկայ։

զ

185 Աւա՜խ, ի ճանչես նեղեալ եմ։

է

178ա Աւա՜ղ, հիքոյն Յուգաի։

ը

234ա Ի ճանչես նեղել եմ տողն ի մէջ։

---

[1] Այս և նման հիշատակարաններ կան համարյա բոլոր գլուխներից հետո։

[2] Այսպիսի հիշատակագրություններ կան նաև 187ա և 305բ էջերում։ Ձեռագիրը հետաքրքիր է իր ինքնատիպ գրչությամբ և նկարներով։

Բ

367ա Աւա՜ղ, թուխտս թանաքս առուլ չէ դժար։

Ժ

398բ Աւաղ խիստ նեղել եմ։

## 350
## ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆ

Երևան 2840

43ա Տէր Յիսուս ողորմեա ստացողին
Մեսրոբին, յափտեան, ամէն։

## 351
## ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 171, Լ. Մինասյան, Ցուցակ Ջուղայի, Բ, էջ 183

ա

71ա Յիշեսցի ա///աւր պարոն Դաւթի բար[ի ծ]ա[ռայի] Աստուծոյ, աղաչեմ։

Բ

185ա Ջստացաւղ սուրբ Աւետարանիս զԴաւիթ զաստուածասէր իշխան՝ որդի պարոն Քրդին, յիշեսջիք ի Քրիստոս, որք կարդայք[1]։

[1] «Դաւիթ որդի Քրդի իշխանի Կայենոյ, եղբայր Սադունի. օգնեց Մխիթար Գոշին շինելու համար Նոր Գետիկը (1198 թ.)» (Հ. Աճառյան, Անձնանունների բառարան, Հ. Բ, Երևան, 1944, էջ 41)։

## ՀԱՎԵԼՎԱԾ

ՉԼԵ 1286

### 352
### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1135*

*Գրիչ՝* Սիմեոն

*Վայր՝* Սուրբ Սիոնասար

ա

223բ *Փառք համագո Սուրբ Երրորդութեանն Հաւր և Որդ[ւ]ո և Սուրբ Հոգոյն, որ արժանի արար հասանել ի վերջ աստուածաշունչ տառիս, նմա վայել է ուրհնութիւն և գոհութիւն անսպառ յաւիտեանս, ամէն։*

*Գրեցաւ Մեկնութիւն Արարծոցս ձեռամբ մեղապարտի և անարժանի* Սիմեոնի, *յանապատիս որ կոչի Սուրբ Սիոն, ի թուաբերութիւն Հայոց ՉԼԵ (1286)։ Գրեցաւ սա հրամանաւ երջանիկ և անյաղթ վարդապետին, որ կոչի* Թումա, *ի վայելումն անձին և յիշատակ հոգու։ Եւ ակլմ է կար մեր։ Վասն գրոյս որ մեր յիշէ, յիշեսցի ինքն ի Քրիստոսէ, որ է ուրհնեալ յաւիտեանս։*

բ

184բ *... և ակնկալութիւն նորա ի վերա իւրոցն՝* Վարդանա *վարդապետին և* Թումա *վարդապետին ողորմութիւն ի նմանէ։*

ՉԼԷ 1288

### 353
### ԱԻԵՏԱՐԱՆ

*Գ. Աբգարյան, Հինգ ձեռագիր Ախուրյանի Ջրառատ գյուղում, «Էջմիածին», 1963, Ա, էջ 62*

*Գրիչ՝* Աբրահամ

*Վայր՝* Արճէշ

ա

*Ով սրբասնեալ եղբայրք և բաշխողք մարմնոյ և արեանն Տեառն, զանարժան գրողս, որ չեմ արժանի տեսանել զսուրբ և զսոսկալի աստուածաբարբառ կտակս, աներկեղաբար մերձեցայ և ծրագրեցի սուրբ Աւետարանս ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի։ Գրեցաւ ի քաղաքի, որ կոչի* Արճէշ, *ձեռամբ բազմամեղ և անարժան գրչի, սուտանուն քահանայի, որոյ* Աբրահամ *ճանաչի... ի թուականութեանս Հայոց ՉԼԷ (1288), ի ժամանակին, որ է տեղապահ աշխարհիս ղան* Արղուն, *որոյ տացէ նմա Տէր Աստուած վայելել զաթոռ իւրոյ իշխանութեան, եղբարց և զաւակաց իւրոց և զթշնամիս իւրեանց հալածական առնէ։*

Բ

Ով սուրբ քահանայք և մանկունք սուրբ եկեղեցոյ, որք ընթեռնուք զսուրբ Աւետարանս կամ աւրինակէք, յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր զիս, զծովացեալս մեղաւք, զգրող սորա զԱբրահամ զսուտանուն քահանայ և ղծնողս իմ աղաչեմ ղձեզ զամենիսեան յիշեսջիք ի Քրիստոս և զձեզ Տէրն յիշեսցէ յիւր արքայութեան...

ՉԽԳ 1294

354

ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 90, Լ. Մինասյան. Ցուցակ Ջուղայի, Բ, էջ 98, 99

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Կայծառաւնի վանք

Ցիշատակարան

Աստանաւր բանս դադարմանց զկայառզէ վճռիվ...

326ա ԶԲասիլ քահանայ ստացող սորին

Եւ զՎարդան զգծող գրիս
Ընկալ Տէր ընդ նոսին,
Աղաչանաւք սրբոյ գնդին,
Եւ եղեռուչ մի երեսին,
Եւ յանսպառ յաւիտենին։

Ի թուականութեան Հայկազեան սեռիս ի ՉԺԽԳ (1294), ի հայրապետութեան տեառն Գրիգորի եւ ի թագաւորութեանն Հեթմոյ աթոռապահի գրեցաւ սուրբ Աւետարանս ի վանս Կայծառաւնի, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ կենսունակ աստուածընկալ սուրբ նշանիս, ձեռամբ Վարդան անարհեստ գրչի, ի յիշատակ Բասիլ քահանայի, եւ ծնողաց իւրոց, հօր Գրիգորի եւ մօր Գեռանդխտի եւ ամենայն զարմից, եւ քուերն Թագուհէ, եւ որդւոց իւրոց եւ տարաժամ ամուսնոյն Կալամառէ եւ դեռաբոյս տղայոցն մերոց, եւ պատուական քահանային Կոստանդեայ ծերունոյն՝ հաւրեղբաւր իմոյ եւ քուեր հաւր իմոյ Մարէի, եւ որդւոց նորա, եւ հաւրեղբաւր որդոյ Վասիլ քահանայի, եւ Պաղտնի: Ողորմեսցի Քրիստոս Աստուած եւ հոգեւոր քուեր իմոյ Մարիամի, եւ մեր երախտաւորացն եւ ուսուցանողացն եւ ամենայն հաւատացելոց։ Եւ որ յաւժար կամաւք զամէնն ասէ, ողորմեսցի նմա Քրիստոս Աստուած ի յիւր միանգամ գալուստն սուրբ Աւետարանչացն բարեխաւսութեամբ, եւ գծողիս Վարդանի ողորմեսցի Քրիստոս Աստուած, ամէն։

Եւ զկազմաւղ սրբազան քահանայն Գրիգոր եւ զծնօղս իւր յիշեսջիք ի Տէր, եւ Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։ Եւ զմիւս Գրիգոր՝ յաւրինիչ խորանացս, աղաչեմ յիշել ի մեղաց թողութիւն։

## 355
## ՄԱՇՏՈՑ

*Ն. Ջուղա 175, Մինասյան, Ցուցակ Ջուղայի, Բ, էջ 186*

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Բագ[ա]ւան

ա

*Ողորմեա ինձ մեղուցելոյս Քրիստոսի* ///Բագւանայ: *Արդ երես անկեալ աղաչեմ* /// Առաքել ///

բ

*Աղաչեմ զձեզ եւ խոշորութեան գրիս մի մեղադիր լինիք, զի շնորհս այսչափ էր, եւ որք յիշէք, յիշեալ եղերուք ի Քրիստոսէ Աստուծոյ, որ է ասրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

գ

///. /:: //::::/ ////:. ////:: ///::. //:::: ///::. ////:: ///.
*Մ ե ղ ա ա ր ո ղ ո ր մ*
/:: //. ///:. //:::. //:: / *Ո* / //. ////. ///: ///::.
*ե ի ն ձ ծ ա ռ ա ի ս լ ո*
////: / ///:. //. ////. //. ////.
*վ ա ն ի ս ի ս*

*Ով գիտէ կարդա, ով չգ/ի/տէ՝ նա լանկոտա։*

դ

142ա *Աղաչեմ զամենիսեան յիշեցէք զգծող սորա* յՅովհաննէս *մեղուցեալ եւ սուտանուն քահանայ*[2]։

---

[1] *Գրիչը ծածկագրելիս ընթերցման սովորական կարգը խախտել է։ Ուղղահայաց գիծը ցույց է տալիս թվերի կարգը՝ մեկ գիծը (I) միավորներ, երկու գիծը (II) տասնավորներ և այլն, իսկ նրանց կից կետերը—նրանց շարքում թվի հերթական արժեքը, այսպես՝*

*/. նշանակում է միավորների առաջին տառը—այսինքն Ա, /: Բ և այլն։ Բայց այստեղ գրիչը ուղղահայաց գծերը նույնպես հաշվել է, այսինքն /=ա, /.=բ, //=ժ, //.=ի և այլն։ Ուստի ծածկագիրը կարդացվում է «Մեղա Տ[է]ր, ողորմեա ինձ ծառայիս* Յովանիսիս»: *Այս* Յով-հաննէսը, *Բագավանի առաջնորդն է և նույնը չէ գրիչ* Յովհաննէսի *հետ։ Հմմտ. ԺԶ դ. հիշատակարաններ, էջ 691։*

[2] *Նույնը 162բ, 180ա, 184բ, 202բ էջերում։*



22—1130

## 356
## ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՒՐՀՆՈՒԹԻՒՆԱԲԵՐ ՑՈՒՑԱԿԻ[1]

Երևան 2607 (1300 թ.), Զարբհանալյան,
Հայկական թարմութիւնք ստխնեաց, էջ 246—248

Հեղինակ՝ Մովսէս Խորենացի

Վայր՝ Քաղաքուղաշտ
(Վաղարշապատ)

Յետ ՃԺԱ (111) ամի սրբոյն Գրիգորի եղև թարղմանութիւն հայերէն լեզուիս։

Երանելին Մովսէս թարգմանիչ, որ էր գրիչ սրբոյն Սահակայ, որդւոյ սրբոյն Ներսիսի, (ի) ԻԳ (23) ամի թարգմանութեան Մեսրովբայ, առաքեաց սուրբն Սահակ ի Նազիազ յաթոռ Աստուածաբանի, և եա բերել զՍերմաւրհնեքն՝ զկալի և ղհնձանի, զոր արարել էր Աստուածաբանի ի Ե (5)երորդ ամի հայրապետութեան իւրոյ[2]։

Իսկ զԿանոն ջուր աւրհնելոյն, զոր ասացեալ է տեառն Բարսղի, ի Է (7)երորդ ամի հայրապետութեանն իւրոյ, ի Կեսարիա Կապուտկացւոց[3] քաղաքի, ի յԵրուսաղէմ[4] հանդիպեցաւ Խոսրով թարգմանիչ՝ հրամանաւ սրբոյն Սահակա՝ և անտի գրեաց և եբերի ի Հայս:

Իսկ Ապաշխարող կապել և արձակել մեծի Ե (5)շաբաթուոյն երանելւոյն Կիւրղի Երուսաղեմացւոյ գրեալ ի ԻԱ (21) ամի հայրապետութեան իւրոյ, ի գուռն սրբոյն Սիոնի, յաւուր յորում ընծաեցուցաներ զԵրդովմաեցիսն Աստուծոյ, Ընծակ[5] և Կորիւն թարգմանիչք բերին ի Հայս:

Իսկ զՄայրաւրհնեքն սրբոյն Կիպրիանոսի Կարգեդովնացւոցէ արարեալ, որ և զսուրբն Յուստիանէ արար՝ մայր կանանց վանաց[6]։

Իսկ զԱգաբսն որ է Ոգէհանգիստ և ղՔահանայաթաղն[7] տեառն Եփրեմի Խորին Ասորոյ ի Նիկոմեդէս[8] քաղաքի արարաեալ՝ յետ Բ (2) ամի հայրապետութեան իւրոյ Ղազրիկ թարգմանիչ եբեր ի Հայս ի ԳԺ (13) ամի թարգմանութեան Սրբոյն Սահակայ, որ Թ(9)երորդ թիւ էր ի սրբոյն

---

[1] Լրիվ խորագիրն է. «Կարգաւորութիւն աւրհնութիւնաբեր ցուցակի, որ ունի յինքեան զժամանակ իւրաքանչիւր կարգեալ կանոնացդ զտեղիսն, թէ ով ո՞ք, կամ յորմէ՞ գաւառէ, զհայրապետացն ժամանակն նշանակեցից, թէ ով եբեր ի Հայոց աշխարհս, և որոյ հրամանաւ կարգեալ ճառեցին։

[2] Տպագիրը (Զարբհանալյան, Հայկական թարգմանութիւն նախնեաց), որի հետ համեմատում ենք, սկսվում է այսպես. «Երանելին Մովսէս Խորենացի թարգմանիչ, որ էր գրիչ սրբոյն Սահակայ՝ որդւոյն սրբոյն Ներսէսի։ Յետ հարիւր մետասան ամին սրբոցն Գրիգորի՝ եղև սկիզբն թարգմանութեան ի հայերէն լեզու։

Իսկ ի (քսան) երկրորդում ամի թարգմանութեան՝ առաքեաց սուրբն Սահակ (զՄովսէս) ի յԱնձիանձու քաղաքն և ետ բերել զՍերմնօրհնեքն զկալի և զհնձանի, զոր արարեալ էր ի հինգերորդ ամի հայրապետութեան սրբոյն Գրիգորի Աստուածաբանի»։ ԻԳ (23) կամ ԻԲ (22) սխալմամբ կարդացել են ի Գ (3) կամ Բ (2)։

[3] Տպագրում՝ «Կապադովկացւոց»։ [4] «...Քաղաքի, ի հոսանս Յորդանանու...»։ [5] «Արգեւան»։ [6] Այս կանոնը բացակայում է տպագրում։ [7] «...որ ունի ութևտասան Աւետարան՝ արարեալ է...»։ [8] «Նիկոմեդացւոց»։

Գրիգորէ յետ Ժ (10) ամի անցելոյ յորժամ այս ամենայն հաստատեալ կարգեցաւ հրամանաւ սրբոյն Սահակայ, ձեռամբ Մովսէսի գրչի։

Իսկ Տեառնականն և զԱղաւրհնէսն Յոստոս Երուսաղէմա եպիսկոպոսն է արարեալ, որ չորրորդն էր Յառաքելոցն[9]։ Ի Գ(3) ամի սրբոյն Սահակայ մինչև ԳԺ (13) ամի նորին, կատարեցին ի փառս Աստուծոյ[10]։

Իսկ զՍքեմաւրհնէքն Թէոդորոս Պանփիւլայ քաղաքի՝ հրամանաւ սրբոյն Անդոնի արարեալ, Բ՝ Թեբայեցւոց սուրբ հաւրն Ամոնի, Գ՝ Սկիւթացւոց սուրբ լերինն[11]։

Իսկ վասն Գրակարդացած և Կիսասարկաւագաց, և Նկարեալ եկեղեցւոյ, և յետոյ Դուռն եկեղեցւոյ դնել, և դնշխարհս սրբոց ի հանգիստ փոխել, այս յիշատակ սրբոյն Գրիգորի է մեզ[12]։

Իսկ զՔահանաաւրհնէսն սրբոյն Սահակայ գծեալ՝ յետ ԻԱ (21) ամի արքեպիսկոպոսութեան իւրոյ, ի Նաւասարդի ամսոյ որ աւր մի էր, և ի Քահանայաթաղն այլ աւէլ է աւետարան։

Նոյնպէս և զԱշխարհաթաղն՝ ի Քաղաքուդաշահի[13], ի վկայարանս սրբոյն Հռիփսիմեանցն։

Եւ յետ սրբոյն Գրիգորի ՃԺԱ (111) ամին մինչև ցայն վայր հնովն վարէին։ Արար սուրբ Սահակ և զԴ (4) քարոզսն զԳիշերւոյ և զնոցին աղաւթսն։

Իսկ զՀիմնարկէք և զԵկեղեցւոյաւրհնէք և // զՍրբել տաճարի, և ժամահարի և ·Սկի և Մաղզմայի և Հանդերձի սպասու, և Աւազան և Մկրտութիւն առնել, խաչաւրհնել, և Պսակ դնել և Պահոց քարոզին և Աղաւթնին զայդ Մանդակունի է արարեալ, որ ԴԺ (14) թիւ էր ի սրբոյն Գրիգորէ մինչև ցաս։

357

ԱՒԵՏԱՐԱՆ

*Մատենադարանի արխիվ, Ս.Տեր-Հակոբյան ֆ. թղթ. 72 վավ. 1դ, էջ 817—818*

Վայր՝ Կաեճռ գաւառ, Միափորի
ձոր ի վանս Ջարմագանից

... Երթեալ վաճառեաց զամենայն զոր ինչ ունէրն եւ գնեաց զմարգարիտն զայն։

Սոյնւրինակ եւ սրբավան եղբայրս այս Գրիգոր, վաճառեալ զամենայն ինչս իւր՝ զկա(յ)ուն եւ զշարժուն, եւ զթափուր մնացեալ յամենայն ընչից, ոչինչ առեալ յումեքէ աւգնականութիւն ամենեւին, ոչ իւբայոց, եւ ոչ յաւտարաց, եւ ոչ ի վանիցս յորում աւարտեցաւ իսկ, այլ ստացաւ զսա յարդար վաստակոց իւրոց. մերկանալով յամենայն

---

[9] Այս վկայությունն աղճատված է։ Վերջում ճիշտն է դրված, լրացնում ենք այնտեղից։
[10] Այս վկայությունը չկա։ [11] «Իսկ Սքեմաւրհնեքն երեք կարգի է. մին Թէոդորոս եպիսկոպոս Սիդարէ Պամփիւլացոց քաղաքին արարեալ, հրամանաւ սրբոյն Անտոնի. երկրորդ Թեբայեցւոց Ամոնի սուրբ հօրն, երրորդ՝ Սկիւթացւոց լերինն»։

[12] «Այս ամենայն յիշատակ է մեզ ի սրբոյն Գրիգորէ մերոյ Լուսաւորչէն...։ [13] Վաղարշապատ քաղաքն է։

արղեանց, ի միտ առնլով զհրաման՝ փրկչին, որ առ մեծատունն. ղվաճառել զամենայն զգոյսն եւ ստանալ զգանձս յերկինս։

Նոյն ապրինակ սրբարանեալ այս՝ ստացաւ զսա գանձս յերկինս։

Արդ գրեցաւ եւ աւարտեցաւ սուրբ Աւետարանս ի գաւառիս Կանճոյ, ի ձորս որ կոչի Միափոր, ի վանս Ջարմազանից, ընդ հովանեաւ սրբոյն Ստեփաննոսի, յառաջնորդութեան տեառն Յովհաննիսի Աղուանից կաթողիկոսի սրբո եւ բարեսիրի, զոր Տէր Աստուած ամբողջ պահեսցէ այժմ եւ յապագայսն եւ յաւիտենից բարեացն արժանի արասցէ։

Յայսմ աւուր թագաւորութեանս Լաշաի, զոր Տէր Աստուած երկարակեաց արասցէ։

Յայսմ աւուր զաւրավար էր Վրաց աշխարհիս Զաքարիա եւ Իվանէ, արիք եւ քաջք ի պատերազմունս, զոր պահեսցէ զնոսա Տէր Աստուած յամենայն փորձութենէ եւ վանեսցէ զթշնամիս նոցա[1]։

---

[1] Ձեռագրի մասին ունենք հետևյալ տեղեկությունը. որը պատկանում է հիշատակարանը արտագրող աղգագրագետ Սարգիս Քամալյանցի գրչին։ Առաջին տետրակում (վավ. 1ա, էջ 18) գրում է. «Միափոր գաւառի Ջարմազանից վանքում ԺԳ դարի սկզբին գրված մեծագիր մագաղաթե Ավետարանի հիշատակարան»։

Չորրորդ տետրում (վավ. 1դ, էջ 817) Հիշատակարանից առաջ գրում է. «Մեծադիր, մեսրոպեան երկաթե գրերով մագաղաթե Աւետարանի թերթ է. երեսի լայնությունը 26 սմ, երկարությունը՝ 36 սանտիմետր։ Իբրև վերջին թերթ՝ հիշատակարան է, գրված Թամար թագուհու որդի Լաշաի թագաւորութեան օրով, Միափորի (ներկա Շամշադնի) Ջարմազանից վանքում։

Ըստացել եմ Արղարեանց ընկեր Ս-ից, ծնընդով՝ Նախչըվանցի էր։ Չի իմանում թե ինչպէս է ընկել այս խոշոր մագաղաթե հին Աւետարանը հայրական տուն, ուր ամեն մի այցելող մի թերթ պոկել է իբրև հիշատակ, հետը տարել։

Բարեբախտաբար ինձ բաժին ընկաւ հիշատակարանը՝ ամենահետաքրքիր մասը, որը արտագրում եմ այստեղ»։ Անշուշտ անհայտացած ձեռագրի ամենաթանկագին մասն է հիշատակարանը, որը մեզ է ընծայում մի ձեռագրի մասին տեղեկություն, գրչության մի կենտրոն է հայտնի դարձնում՝ գավառի անունով։

Հիշատակարանը գրված է մինչև 1212 թ. Զաքարեի մահը։ Հիշատակարանի մասին մեզ տեղեկացրեց Մատենադարանի աշխատակից Գ. Գրիգորյանը, որին հայտնում ենք մեր շնորհակալությունը։



## ՑԱՆԿ
## ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ

*Հիշատակարանների աղբյուրները ներկայացնում ենք ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր Մ. Մաշտոցի անվան հին ձեռագրերի ինստիտուտ—Մատենադարանի ձեռագրական հավաքածուներից։ Նշում ենք ձեռագրերի հերթական համարը, դիմացը՝ նրանից քաղված հիշատակարանի համարը՝ ժողովածուի մեջ։ Հայերեն ձեռագրերի դրսի հավաքածուների Երուսաղեմի, Վենետիկի և Նոր Ջուղայի ձեռագրերը ներկայացնում ենք նույն կարգով, մյուս դեպքերում՝ ձեռագրացուցակների և զանազան ուսումնասիրությունների հեղինակների ազգանվան այբբենական հաջորդականությամբ։ Տրվում է ժողովածուի մեջ զբաղեցրած հիշատակարանի համարը։*

*Առանձին տրվում է ուսումնասիրության և ծանոթագրությունների համար օգտագործված գրականության ցանկը։*

*Այս և հաջորդ՝ (անձնանունների, տեղանունների, առարկայական) ցանկերը կազմել են գիտաշխատողներ Կ. Ա. Մաթևոսյանը և Ա. Հ. Ղազարոսյանը, որոնց հայտնում ենք մեր շնորհակալությունը։*

### 1. ԵՐԵՎԱՆ, ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

#### Ա. Ձեռագրեր

166—231
193—4
275—130
283— 99
—253
288—141
311—124
—227
—284
313—220
345—263
379—323
416—258
488—259
567—120
659—5
699—27
—132
777—332
785— 57
786—325
147
822— 23
832—198
844—206
946—318
948—291
919—262
970— 50
975—286
979—162
988—110
989—306
995— 98
1007—312
1013— 34
1109—79
1135—352
1214—181
1267—11
1315— 71
—129
1328— 70
1342—278
1347—179
1408—320
1418—245
—304
1522— 16
— 40
—142
—171
—205
—341
1526—270
1530—200
1531— 29
1568— 93
—229
1672—326
1718—112
1888— 10
—276
—310
1890—223
1896—211
1897—333
1902— 59
1912—190

1958—149
1999—145
2374—85
2496—277
—337
2588—303
—304
2589—307
2600—324
2606—268
—295
2607— 20
—356
2609—260
2679— 17
— 25
— 81
—150
2680—184
2684— 75
—207
2825—172
2840—331
—350
2865— 94
—134
2877— 88
—257
—347
2948—314
3034— 41
3031— 74
3082—214
—233
3208—175
3276—236
—293
3711—47
3723—109
—322
3782—317

3784—118
3792—248
3793—114
—309
3795—271
272
3845—228
3906—219
4035—319
4066— 24
—301
4149—191
4166—44
—283
4211—292
4258—328
—313
4477—212
4508— 53
4515—186
4753—349
4803—38
4804—118
4807—327
4810— 66
4947—244
5365—80
5432—153
5435—265
5547— 55
5551— 37
—202
5602—242
5619—225
—237
5938—343
5980— 73
6196—136
6200— 49
—346
6201—103

6202— 63
—210
6264—255
6273—235
6333—138
6384—107
—340
6499—296
6763—177
6764— 2
7347—215
7357—170
7574— 46
7659—158
7729— 39
—133
7735— 82
7736—113
7739— 90
—111
7779—342
8100— 31
8906— 84
9026— 329
9027— 286
9296— 311
9838— 279
10099—119
—125
10100— 48
10110— 58
10147—157
10360—208
10434— 1
—127
— 69
10451—61
10480—300
10554—154
10680— 30
10780—135

### Բ Պատառիկներ

1252—104
1259—148
1277—146

### Գ Պահպանակներ

1501—156
5521— 89
6969—101
7048—159
10283— 52

### Դ Դրսի մանրաժապավեններ

876—285
879—155
1071—316

### Ե Լուսանկարներ

281— 38
308— 33

1. Անտիպ ձեռագրացուցակներ

ա. Տեր-Մովսիսյան Մ. *Համառավաք ցուցակ հայերէն ձեռագրաց, Մատենադարան, Անտիպ ձեռագրացուցակներ*, №№ 133—68, 137, 126, 169, 182, 197, 216, 222, 298, 344

բ. *Մատենադարան, Արխիվ, Ս. Տեր-Հակոբյանի ֆ. թղթ. 72, վ. 1դ.-357*

2. Երուսաղեմ. *Սրբոց Յակոբեանց մատենադարան*, Ն. Պողարյան, *Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց սրբոց Յակոբեանց, Երուսաղէմ, հ. Ա.—Թ 1966—1979 թթ.*

| | | | |
|---|---|---|---|
| 1— 18 | 234—116 | 999— 60 | 1862— 77 |
| — 65 | 256—100 | 1072— 32 | —139 |
| —163 | 313—246 | 1141— 78 | 1924—123 |
| —167 | 326—305 | 1268—217 | 2556—121 |
| —174 | 370—122 | 1303—166 | 3133—254 |
| —204 | 725—218 | 1365—189 | 3152—188 |
| 89—165 | 787—161 | 1706—337 | 3299—251 |
| 121—274 | 799—179 | 1801—264 | 3524—105 |

3. Վենետիկ. *Ս. Ղազար, Մխիթարյան մատենադարան*, Բ. Սարգիսյան, *Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, Վենետիկ, հ. Ա, 1914, հ. Բ, 1924 թ.*, Բ. Սարգիսյան, Գ. Սարգիսյան, *հ. Գ, 1966 թ.։*

| | | |
|---|---|---|
| 1— 62 | 123— 64 | 201—334 |
| 20—348 | —193 | 231—164 |
| 86— 42 | —221 | 237— 95 |
| 87—250 | 125—281 | 314—226 |
| 102—345 | 126— 92 | 320— 56 |
| 103— 58 | 192—336 | 324—321 |
| 106—338 | 159—195 | 325—316 |
| 116— 96 | 179—196 | 873— 33 |
| 121—308 | 187—205 | |

4. Նոր Ջուղա. *Ամենափրկիչ վանքի մատենադարան*, Ս. Տեր-Ավետիսյան, *Ցուցակ հայերէն ձեռագրաց Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի, հ. Ա, Վիեննա, 1970 թ.*, Լ. Մինասյան, *Ցուցակ հայերէն ձեռագրաց Նոր Ջուղայի, հ. Բ, Վիեննա, 1980 թ.։*

| | |
|---|---|
| 13—315 | 390—230 |
| 19—102 | 395—249 |
| 21—240 | 541—140 |
| 22—267 | 90—354 |
| 23—273 | 171—351 |
| 24—290 | 175—355 |
| 372—297 | |

2. ՁԵՌԱԳՐԱՑՈՒՑԱԿՆԵՐ

*Սկզբում դրվում են ցուցակի համառոտագրությունը, ապա՝ լրիվ վերնագիրը և ցուցակից քաղված հիշատակարանի համարը։*

1. Ակինյան Ն., Ոսկյան Հ., Ցուցակ. *Ցուցակ հայերէն ձեռագրաց Զմմառի վանքի մատենադարանին, Վիեննա, 1971 թ.—136, 160, 180։*

2. Դաշյակյան Հ., Ցուցակ Սեբաստիոյ. *Ցուցակ հայերէն ձեռագրաց ս. Նշանի վանուց ի Սեբաստիա, Վիեննա, 1961 թ.—338։*

3. Թոփչյան Ց., Ցուցակ Արմաշի. *Ցուցակ հայերէն ձեռագրաց Արմաշի վանքին, Վենետիկ, 1962 թ.—26։*

4. Լալայան Ե., Ցուցակ Վասպուրականի. *Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի, պ. Ա, Թիֆլիս, 1915 թ.—117, 282։*

5. Կյուլեսերյան Բ., Ցուցակ Անկիւրոյ. *Ցուցակ ձեռագրաց Անկիւրոյ Կարմիր վանուց և շրջակայից, Վենետիկ, 1969 թ.—22, 45, 83, 239։*

